PK8000
A7 D
Item 118

H. Ghewond V. M. Alishan
Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

Hayastan

# ՀԱՅԱՍՏԱՆ

Yarhaj kan zlineln

## ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶԼԻՆԵԼՆ

Hayastan

## ՀԱՅԱՍՏԱՆ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1904

547

Digitized by Google

# ՑԱՆԿ

DS181
A415
MAIN

*
* *

*Նորագոյն գիւտերու և ուսումնասիրութեանց վրայ ալ յստակ գաղափար մը տալու համար՝ հարկ տեսնուեցաւ գրքին ետեւը մի քանի նոր ծանօթութիւններ աւելցնել՝ մեր կողմանէ։*

*Այսպէս կարելի չէ այժմ Հայոց ծագման վրայ խօսիլ՝ առանց Հայաստանի հնագոյն բնակիչները — Ուրարտացիները — յիշելու։ Հայկազունեաց պատմութիւնը մասամբ կը գտնուի անոնցմէ մնացած արձանագրութեանց մէջ. այսպէս Մենուաս = Մանաւազ, Արամիս = Արամ, Էրիմէնա = Արմենակ, և այլն։*

*Եէնսըն գերմանացին Հայերը կը նոյնացնէր Հատ (= Հայ) կամ Հիտտիտ կամ Քետացի ազգին հետ։ Կարելի չէր այս տեսութիւնն առանց յիշելու անցնիլ։ Կը թողունք ուրիշ ստուգաբանական, աշխարհագրական, մատենագրական կէտեր՝ ուր ստիպուեցանք զարտուղութիւն կամ դիտողութիւն մ՚ընել։*

*Վերջին տեսակէն է, օրինակ իմն, Կեղծ—Սեբէոսի նուիրուած քննութիւնը, զոր Բուզանդէ գրուած կ՚ենթադրենք։ Այս կարծիքը, զոր առաջին անգամ հոս առիթ կ՚ունենանք ներկայացնելու, յուսանք զուրկ չի մնար գիտական ուշադրութենէ։*

*
* *

*Քանի մ՚օրէն՝ Նոյեմբերի 21ը պիտի գայ, Հ. Ալիշանի մահուան երրորդ տարեդարձը։..*

*Ազգային սուգ մ՚է ան, որ թրթռուն յիշատակներ կը զուգէ անոյշ ըղձացումներու հետ։*

*Այդ օրը, սոյն գիրքը պիտի տանինք իր դամբանին վրայ զետեղելու համար։ Այն ատեն աւելի խաղաղ պիտի ըլլայ իր նիրհը դրախտի չորս գետերէն ոռոգուած, աւելի հմայիչ՝ երբ դրախտի վարդերն և անտառները՝ իրենց հովանին ձգեն իր երազուէտ ճակատին վրայ։..*

8 Նոյեմբեր 1904

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի՞նչ էր հայ բնաշխարհը՝ երբ դեռ հիւրասիրուած չէինք իր վսեմ լեռներուն, բեղնաւոր հովիտներուն մէջ։

Ըստ Ալիշանի՝ դրախտ մ'էր...

Այս մտածութիւնն ինքնին քնարերգութիւն մ'է։ Բայց նա չուզեր որ միայն բանաստեղծական ենթադրութիւն մ'ըլլայ այս, այլ գիտնական ճշմարտութիւն մը, կրօնական դաւանանք մը՝ որուն հակառակողը՝ Աստուածաշունչի թշնամին համարուի։

Եւ, այս գաղափարով վառուած, պատանեկան հասակի բոլոր ոգեւորութեանը մէջ, Հ. Ալիշան ձեռք կ'առնու գրիչը՝ մարդկութեան և հայ ազգի սկզբնաւորիլը երգելու համար. Ադամէն՝ Հայկ, Հայկէն մինչեւ Տիգրան Ա. որուն հետ կը սկսի ազգային անկախ թագաւորութիւն. ահաւասիկ Հայաստան նախ քան զՀայաստան։

Հ. Ալիշանի այս գործը խառնուրդ մ'է երգի և քննութեան, օփերէք մը, ինչպէս են ընդհանրապէս իր մանր երկեր։ Աւարայրի սոխակն է՝ որ դրախտի մէջ պիտի երգէ։ Հոս է գիտնական Ալիշանը՝ բանաստեղծ Նահապետին հետ, հոս են իրարու քով՝ իր գրիչն ու տաւիղը։ Վերը կը սաւառնի իր հաւատացեալի խորհրդապաշտ հոգին, որու մէջ կը տեսնենք, անուղղակի, բոլոր կախարդանքներն ապագայ աշխարհի մը՝ զոր երբեմն Հայաստանէն անցած կ'ենթադրէ։

Ո՜հ ի՜նչ նկարչական է այն վայրկեանին՝ երբ դրախտի սահմանները պիտի գծէ. իր գրիչը կը սահի երեւակայական քարտէսի մը վրայ ուր քաղաքներու տեղ ցանուած են լեռներ, լճակներ, անտառներ՝ հրեշտակաց երգեւոյլը սարսուռն։

Ի՛նչ խնամքով կը շարժէ գրիչը, վախնալով մի՛ գուցէ Հայաստանի բլուր մը, բուրաստան մը, առուակ մը, աղբիւրիկ մը՝ սխալմամբ դրախտի սահմանէն դուրս մնայ։

Անզգայ պէտք է ըլլալ՝ յիշելու համար այդ վայրկեանին, թէ դրախտի

Digitized by Google

քննութիւնը դադրած է հետաքրքրական ըլլալէ, թէ այդ բանը աւելի Ս. Գրոց մեկնութեան կը վերաբերի քան հայկական գիտութեան, կամ թէ վերջապէս կորուսեալ դրախտ մը՝ ո՛ և է օգուտ չունի մեր ներկայ գրութեան համար։

*
* *

Հ. Ալիշան նոյն գործը սկսած է շատ կանուխ պատանեկան հասակի մէջ, ինչպէս լսինք։

Հեռի զայն հրատարակելու դիտումէն, անխնամ թողուցած էր իր անտըպագրելի գործոց շարքին մէջ։

Զարմանալի չէ ուրեմն՝ եթէ բոլոր հին կարծիքներ կը գտնուին հոն, նորագոյնները կը պակսին։ Ով որ տեսած է անձեւ կմախքները, որոցմէ Արարատի, Սիսուանի, Սիսականի պէս հոյակապ գործեր ելան, պիտի կարենայ գուշակել թէ Ալիշանի նոյն երկը որքան պիտի գեղեցկանար՝ եթէ իր գրիչը անգամ մ'ալ անոր վրայէն սահելով նորութիւններով զայն ոսկեզօծէր։

Իր անունը—արդէն նուիրական և սրբագործուած—փառաց հաստատուն կէտի մը վրայ է, և ոչ մէկ նոր գործ պիտի կարենայ այդ փառքը նուազեցնել կամ աճեցնել։

Եւ սակայն, նոյն իսկ այս գործին մէջ, կը գտնուին այնպիսի հմտական հատուածներ, որոց նմանը հազիւ թէ կարելի ըլլայ այլուր գտնել։ Համեմատուին, օրինակ իմն, այն գլուխներն, յորում ազգաց բաժանման և հայ ազգի ծագման վրայ կը խօսուի. այնքան ճոխ, մանրակրկիտ, հմտական մատենախօսութիւն մը պիտի գտնուի հոն՝ որուն նմանը Հայոց ծագման վրայ խօսող բանասիրական ոչ մէկ գործ ունի թերեւս։

Գիտնական մը, այդ ցուցմունքներէն առաջնորդուած, աւելցնելով անոնց վրայ քննադատական դժուարահաճ ոգի, պիտի կարենայ այդ խնդրի աստիճանաբար զարգացման խորագոյն ուսումնասիրութիւնը գրել։

Ուրեմն այս երկը, Հ. Ալիշանի հոգեբանութիւնը ամբողջացուցած ժամանակ, եթէ ոչ նոր՝ գոնէ թաղուած գանձեր պիտի յայտնէ գիտնոց։ Եւ գովելի է յոյժ Մեծապ. ԳՐԻԳՈՐ ԱՂԱ ՔԷՕՐՕՂԼԵԱՆ ազգասէրն՝ որ պատճառ եղաւ անոր հրատարակուելուն, ինչպէս նաեւ հայկական երախտագիտութիւնը՝ որ իր մեծ ջահին ամենէն աղօտ նշոյլն ալ կը պահանջէ մեզմէ։

Digitized by Google

# ՀԱՅԱՍՏԱՆ ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶԼԻՆԵԼՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## Ա

## ՀԱՅՐԵՆԻՔ ՄԵՐ ՍԿԶԲՆԱՎԱՅՐ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ

### ԴՐԱԽՏՆ ԱԴԻՆԱՅ



ՆՁՈՒԱՆ *հիմայ տեսանք՝ Հայաստանեայց հանդիսատեղիս նկատելով զդիրս և զբնութիւն երկրին. Բայց այսուհետև տեսանել զհանդիսականս. և ի բնականէն անցանել ի բանականն, և քննել որ ինչ յընթացս ժամանակի գործեցաւ հոն և յիշատակեցաւ վկայութեամբ մարդկան։ — Եթէ բնաւ գրաւոր կամ աւանդական վկայութիւն մը Թացած չըլլար մեր և կամ որ և է աշխարհի վրայօք, և միայն ձեռագործ յիշատակարանք Թացած ըլլային, անոնցմէ պիտի գուշակէինք երկրին բնակչաց պատմութիւնը. և եթէ այն յիշատակարանք ալ պակսէին բայց նախուստ գիտնայինք թէ հոն ժամանակաւ ազգ մը բնակել և հանդիսացել է, նոյն երկիրն իր հանգամանօքն՝ այսինքն կազմութեամբն, դրիւքն, զանազան ձեւերովն, բարձրութեամբ և ցածութեամբ, կլիմայովն՝ միանգամայն ասել՝ ամենայն բնական երեւութիւք պիտի ծանուցանէր փոքր ի շատէ իր բնակչաց պատմութիւնը կամ բարքը, անոր՝ որ ուրիշ աշխարհաց ներկայ և անցեալ ազգաց պատմութիւնը գիտէ կամ կու տեսնայ, և կրնայ բաղդատել զերկիր ընդ երկրի և բնակիչ ընդ բնակչի։*

*Քանի որ ներկայէս ի վեր ելլանք դարերով և քանի ժամանակին*



Digitized by Google

սկիզբներուն մօտենամք, երկրիս վրայի ազգք և ժողովուրդք սկսեալ ի նարազունից կամաց կամաց կու սկսին աղօտանալ, մթանալ, ծածկուիլ աներևոյթ ըլլալ, և երկիրս չորս կողմերնիս կ'աննպատանայ ի մարդկանէ. յանկարծ առաջ անապատ անբնակ մնացած մասերն կու սկսին բնականալ, հին մոռացեալ և հիմայ ջնջեալ ազգեր յերևան կ'ելլան ժամանակի սկզբանց մօտ, ինչուան որ աւելի վեր ելլալով անոնք ալ անյայտ կ'ըլլան, և հազիւ քանի մը ազգք ներկայէս սկսեալ ինչուան խորագոյն հնութիւն ժամանակի միշտ տեսանելի կու մնան ի վերայ երկրի, և գրեթէ ժամանակի ծայրերուն կը հասնին, որ է ըսել թէ պատմական ժամանակն կու սկսի անոցմէ: Մինչդեռ ի վերայ մէկ այլ ազգաց, աշխարհաց՝ խոր խաւար և լռութիւն տարածեալ է. ասոնց վրայ գտնեայ աղօտ նշոյլ մը կու փայլի, ուրով կու նշմարին շարժմունք և հին կենդանութիւն: Ընդհանրապէս հիմկու ծաղկեալ և պայծառ ազգաց սկիզբը ժամանակի սկիզբներուն չեն հասնիր, այլ գրեթէ անթափանցելի մթութեան մէջ են. գիտելի չէ թէ քանի մը (2 կամ 3) հազար տարի առաջ ինչ հանդիպած է այն աշխարհաց վրայ. ընդհակառակն կան քանի մը ազգեր ալ որ գրեթէ տեղերնուն պէս անշարժ մնացած անոր նման ալ հնութիւն մը և յիշատակներ ունին. կան ալ որ եթէ նոյնպիսի անփոփոխութեան բաղդը չեն ունեցեր, այլ շատ յեղափոխութեամբ և տեղաշարժութեամբ դեռ նոյնպէս և թերևս աւելի հնութիւն մ'ալ ցուցանեն. և ասոնք կրնան կոչիլ անդրանիկ որդիք ժամանակի:

Ցայսպիսեաց մէկն է և Հայոց ազգն, յայժմու մեծաւ մասամբ բնակեալ ի Հայաստան և ի փոքր Ասիա, ի Միջագետս և յԱսորիս, և յարեւելեանն Եւրոպա, և մասամբ ալ ցրուեալ ի զանազան կողմանս Ասիոյ, Եւրոպայ և յեգերս Ափրիկիոյ. ոչ իւր բնական երկիրն քաջ և աղէկ քննուած ու ծանօթ է այժմ, ոչ շատ հին յիշատակարանք կու տեսանին հօն և ոչ շատ պատմութիւնք աւանդեն անոր երկայն կենաց դէպքերը[2]. սակայն և երկիրն և մնացեալ յիշատակարանք և պատմութիւնք՝ դեռ բաւական ցոյց և վկայութիւն կու տան թէ հնութեանը, և թէ զանազան անցեալ դիպուածոց: Եթէ հասարակաց և արտաքին վկայութիւն չունենայինք թերևս պէտք էր մեզի վախել որ ազգային եռանդով մը չմոլորէինք մեր ազգին և երկրին խոր հնութիւնը տեսնալուս. սակայն բաղդաւոր եմք բաւական լոյս ունենալուս տեսնելու առանց խաբէութեան մեր աշխարհին հնագոյն դարերն ալ, շատերէ և թերևս ամէն աշխարհէ աւելի. և այսքան լոյսը անտես ընելով ուրիշ ազգաց պէս մեր երկրին պատմութեան սկիզբն

Digitized by Google

*ալ խաւարապատ և աննշոյլ ըսելն՝ կամաւոր կուրութիւն և յամառոտ տգիտութիւն սեպեմք։*

*Եթէ Հայոց ազգն ճանաչուած է իբրեւ մի ի հնագոյն ազանց յաւուրց անտի առաջին պատմչաց և աշխարհագրաց Յունաց (Եկատ. Երոդ. Եփոր) Քաղդէից (Բերոսոս Աբիւդենոս), և Հրէից (Տովբիթ, Երեմիա [3]), Հայաստան ճանաչի հնագոյն մասն քաղաքապատում երկրի և առաջին աշխարհ մարդաբնակ, վկայութեամբ հնագունին և ճշմարտագունին գրոց և հաւանութեամբ ամենայն ողջախոհ բանասիրաց։ — Աւանդամոռաց և բանագիւտ իմաստասէրք ժամանակիս քննելով զլեզուս և զդիրս երկրի ուզեն հասնիլ ի բնավայրն մարդկութեան. գեղեցիկ հնարք, այլ պակասաւոր, վասն զանց առնելոյ զաւանդութիւն իրաւացի. իրենց գիւտն կ'առաջնորդէ ի բարձրաւանդակ աշխարհս Հնդկաց և Գիպեթաց, ուր թէ լեզուաց հնութիւն և թէ երկրի բարձրութիւն կու գտնեն իբրեւ յարմար ի տարածել սփռել մարդկան ընդ չորս կողմանս. սակայն նոյն իսկ չափազանց բարձրութիւն երկրի՝ մեզ անյարմար երեւի ի նախնի բնակութիւն և ի սփիւռս մարդկան. և լեզուաց հնութիւն ալ ըստ հմտագոյն քննաբանից նախերիցութիւն կամ աղբիւր մը չեցոյց, այլ հաւասար հարազատութիւն մը [4]. և ամէնէն կատարեալ և ճոխ հին լեզուն՝ Հնդկաց՝ այսօր ոչ մայր այլ քոյր ճանաչի զանդկին Պարսից և մեր հայկականին։ Քան զբարձրութիւնն յարմարագոյն է ի սփիւռ մարդկութեան այնպիսի աշխարհ մը որ երկրիս մեծամեծ և ծովազատոյց մասանց ալ հաղորդելի և միջադիր ըլլայ. և այս դիրքս շատ աւելի քան զՀնդկաց բարձրաւանդակս ունի Հայոց բարձրաւանդակն, և աւելի քան զամենայն աշխարհս։ Դրիցն օժանդակ հաստատութեան են աւանդութիւն և հաւանութիւն և մանաւանդ նախայիշեալ հնագոյն պատմութիւնն, որ է Մովսիսի գիրք, աստուածային ազդմամբ գրեալ աստի 3500 տարի առաջ, որ է յառաջ քան զողջոյն կէս պատմական ժամանակի։ Հարկ է մեզ ընթեռնուլ այս նախապատիւ և նախաժէք գրոց սկիզբն որ զամենայն ազգաց սկիզբը յանդիման բերէ. և ամենուն նախահօր բնավայրը ի վերայ երկրի, զոր մեք իբրեւ առակ սովորեալ, կ'ըսեմք թէ էր ի Հայաստան, և ցուցանել թէ արդարեւ էր հոն, թէ և հեղինակն աշխարհին անունը չիտար, և անոր համար այնքան խնդիրք և վէճք եղած են վասն տեղւոյ դրախտին և առաջին բնակութեան մարդոյն։ Արդ Ս. Գիրք Մովսիսի այսպէս կ'ըսեն վասն տեղւոյ դրախտին ըստ գեղեցիկ հայ թարգմանութեան գրոցն յեօթանասնից յունական թարգմանութենէ. «Տնկեաց Աստուած զԴրախտն» յԵդեմ ընդ արեւելս... Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն.*

Digitized by Google

» և անտի բաժանի ի չորս առաջս. անուն միումն Փիսոն. նա է որ » պատէ զամենայն երկիրն Եւիլատայ, անդ ուր ոսկին է, և ոսկի երկրին » այնորիկ ազնիւ. և անդ է սուտակն և ակն դահանակ։ Եւ անուն գետոյն » երկրորդի Գեհոն. նա պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց։ Եւ գետն » երրորդ Տիգրիս, նա է որ երթայ յանդիման Ասորեստանի։ Եւ գետն չոր- » րորդ Եփրատէս »։ — Երեք նշան կամ տեղացոյց տայ Դրախտին նկարա- գրութիւնս այս. նախ՝ տեղւոյն անունն Եդեմ, երկրորդ՝ արեւելեան դիրք և երրորդ՝ գետերն. և այս ետքինս է ամէնէն գլխաւորն և հետաքննելին։ Առաջ- նոյն համար գիտելի է որ Եդեմ անուամբ տեղ կամ տեղիք կու յիշուին ի Ս. Գիրս, և միշտ անորոշ է դիրքն, բայց միայն Եդեմ քաղաք մը ի Լի- բանան. մեր, ինչպէս ուրիշ թարգմանութեանց մէջ ալ, փոխանակ Եդեմայ, Եդոմ[5] կամ Եմաթ կամ ուրիշ անուանք կու դրուին։ Աւելի կարեւորն այս է որ Եդեմ անունն ոչ այնքան բնական անուն է տեղւոյն, որքան անոր նշանակութիւնն, որ է փափկութիւն, և այսպէս իսկ անուանի (Ծննդ. Գ. 24) կամ փարթամութիւն, և շատք Բարձրաւանդակ իմանան Եդեմ անուամբ. և նոյն իսկ Պարտէզ բառն, որով օտարք (Հրեայք) Յոյնք և Լատինք կ'անուանեն զԴրախտն, (Բարատիզուս Paradisus) ըստ սանս- կրիտ լեզուի նշանակէ Բարձրատեղ[6] ։ Ուրեմն այսու նշանաւ այսչափ ստու- գուի որ դրախտն ցած երկրի մի վերայ չէր, որպէս Ասորիք, այլ բարձրա- դիր, որպէս էր և Հայաստան[7] ։

Երկրորդ նշանն ալ, այսինքն յարեւելեան կողմն ըլլալու դրախտին, շատ ընդարձակ կրնայ ձգուիլ, որ և է երկիր Պաղեստինու արեւելակողմը. բայց սկսեալ ի մօտէն՝ Արաբիոյ և Քաղդէացւոց և Միջագետաց չի յար- մարիր, անոնց ցածութեանն համար, այլ անոնցմէ անդին Հայոց և Մա- րաց կողմերուն. ճշգրիտ նայելով Հայաստան աւելի Պաղեստինոյ հիւսի- սային կողմն է քան յարեւելս. սակայն իր մեծագոյն տարածութիւնն կար- ձեալ յարեւելս է. մանաւանդ եթէ Մովսէս նկատմամբ Եփրատայ և Տի- գրիսի կու նկարագրէր՝ արեւելք կ'անուանէր զերկիրը յորմէ գային գետերն և յարեւելից Պաղեստինոյ անցանէին[8] ։

Բայց Դրախտին երկրին կարեւոր նշանքն են գետերն. սակայն ատոնք իրենց երկուքին անուան և անցած երկիրներուն վերայ եղած պէսպէս կարծեօքն բոլոր Եդեմայ դրից վերայ ալ տարակոյս և մթութիւն ծագեր են. մէկ այլ երկուքին, այսինքն Եփրատայ և Տիգրիսի վերայ բնաւ տարա- կոյս չէ եղած. այլ մանաւանդ անոնցմով առաջիններն ալ գուշակեն ոմանք։ — Ըստ նկարագրութեան Մովսէսի յԵդեմայ մեծ գետ մը կ'ելլար

Digitized by Google

և անոր չորս առաջքն կամ Թեւերն էին այս չորսերս և իրենք ալ գետ կ'ըսուին։ Ի գետոյ միոյ չորս մեծ գետ ելլալ և զանազան կողմ երթալ՝ ոչ միայն չի տեսնուիր հիմայ երկրիս ոչ մէկ կողմը, ուր կրնայ դրախտ կարծուիլ, այլ և ոչ կու հասկըցուի թէ ինչպէս կրնայ ըլլալ այս բանս. արդ նոյն Ս. Գիրք քիչ մը յառաջ նոյն բանը յիշելով աւելի պարզ կ'ըսէ. «Աղբիւր ելանէր յերկրէ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի»։ Այս աղբիւրս կա՛մ ըստ սովորական նշանակութեան ջրարձակ կամ ջրամբար տեղ մ'էր ուսկից չորս գետերն ալ իրենց սնունդը կ'առնուին, և կամ որ աւելի հաւանական է քաղցր ջրոյ ծովակ մը կամ լիճ մ'էր ի մէջ Եդեմայ, ուսկից կ'ելլային չորեքին գետերն։ Արդ յայտ է որ այս դիրքս ալ հիմայ չերեւար. կան լճեր ուսկից քանի մը գետք կ'ելլեն, բայց չկայ մէկ մը ուսկից Եփրատ և Տիգրիս ելլեն. հարկ է ըսել որ ջրհեղեղին մեծ երկրափոխութիւնն այն եդեմական աղբիւրը կամ գետը խորասուզելով տեղը կա՛մ ջրալողակ պարահովիտ մը, բարձրաւանդակ մը թողուց և կամ լեռնակոյտ մը կանգնեց, որոյ եզերքէն կամ ծածուկ ծոցերէն կու բղխեն դեռ այն քառառաջ գետերն. որոնց ակնաղբերքն միայն այլափոխած են, իսկ ընթացքն քիչ մը միայն։ — Որո՞նք են այս գետերս։

Մովսէս որ այնչափ մօտ կամ հեռու էր ի ժամանակէ դրախտին կամ ջրհեղեղին որչափ հիմայ մենք, աստուածային և աւանդութեան լուսով մեզմէ աղէկ գիտէր զանոնք և կարգաւ մը կու նշանակէ, որ յարեւելից և հիւսիսոյ կու գան յարեւմուտս հարաւոյ. մենք հակառակ կարգաւ սկսիմք քննել, վասնզի մեզի վերջիններն ծանօթագոյն են քան զառաջինս։ Արդ Գետն չորրորդ ըստ կարգի Ս. Գրոց և առաջինն ըստ մեզ, որ և ըստ բնութեան այսինքն է ըստ կարեւորութեան՝ է Եփրատ, յառաջակողման Ասիոյ մեծագոյն և հռչակագոյն և գրեթէ սրբազան գետն. որովք, միանգամայն և մերձաւորութեամբն ի Պաղեստին՝ անկարօտ կը համարուէր բացատրութեան յիշատակելու և սահմանագրութեան. այս գետոյս վերայ ընաւ տարակոյս չէ եղած առ քննիչս Եդեմայ. բայց մենք որ գիտեմք թէ հիմայ յերկուց օժանդակաց միութեամբ է Եփրատ, այսինքն Արածանւոյ և Վտնակայ, կրնամք հարցընել, թէ ո՞ր առաջն էր եդեմաբուխն. և պատասխանը թողումք յետոյ։ Երկրորդ ըստ մեզ և երրորդ ի կարգիս ջրոց՝ է Տիգրիս, զոր երրայեցին Հիտտէ քէլ կոչէ, և Դիկլար ձայնը կամ դիքլէ լսեցընէ, որով հիմայ ալ կ'անուանի գետն, և գրեթէ Տիգրիսն ալ նոյն ձայնն է (ր և լ լծորդ ըլլալով). այսոր համար կ'ըսէ Սրբազան պատմիչն, թէ «Երթայ » յանդիման Ասորեստանի », որով կ'իմացուի Ասորեստան աշխարհին

յառաջակողմը կամ վերնակողմը, որ է կործայից սահմանակից. ապա ինչպէս անտարակոյս է այս գետս այլ, այսպէս և անտարակոյս է Երթալ նորա ի Հայոց աշխարհէ յանդիման Ասորեստանի, որպէս և մինչև ցայժմ տեսանի։ Երրորդ գետն ըստ մեզ և երկրորդ ըստ կարգի գրոց Գեհովն հարկ է որ ըլլայ յելից Տիգրիսի, և (նկատմամբ դրից Եփրատայ) նաև ընդ հիւսիսոյ նորա. միանգամայն և շատ հեռի չըլլայ այն երկուքէն, մանաւանդ աղբիւրն՝ նոցա աղբերակնէն. վասն զի քառատաջ աղբեր կամ գետոյն յիշատակն քաջայայտ նշանակէ թէ չափաւոր էր տարածութեամբ թէ՛ ինքն և թէ Եդեմայ երկիրն, յորմէ դուրս կ'ելլային գետքն. և ոչ թէ անհուն տարածութիւն մը երկրի, ինչպէս շատք կարծեն, չմտածելով զայս իրաւացի տեսութիւնս, այլ միայն կա՛մ գետոց անուան նմանութիւնը և նոյնութիւնը դիտելով, կամ անոնց անցած և պատած երկրին անունը և բերդերը. և այսու ինչպէս Եփրատայ և Տիգրիսի վերայ՝ ամէնքն միաբան են, Գեհոնի և Փիսոնի վերայ գրեթէ ամէնքն տարաձայնք, և ոչ այսչափ միայն, այլ և հեռաւոր աշխարհներ դնեն զանոնք։ Զգեհոն՝ որոյ համար Ս. Գիրք կ'ըսեն թէ «պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց», ոմանք ըստ անուան գետոյն համարին զՃիհուն մեծ գետն արեւելից և խոր Ասիոյ, որ և Ոքսոս. որ թափի ի ծովն Կասպից. ոմանք ալ համարին զՆեղոս մեծ գետն Հնդկաց, զայս աշխարհ համարելով Եթովպիա կամ Քուշ (ըստ Եբրայականին). վասն սեւութեան բնակչացն և վասն Քուշ—կանտաւա կամ Քուշա երկրին՝ որ ի միջին ընթացս Հնդոսի. իսկ ոմանք բուն Եթովպիոյ աշխարհը նկատելով զՆեղոս համարին. մանաւանդ զի և Գեհոն իսկ կոչուած է գետս այս մեծ և աշխարհահռչակ։ Սակայն ոչ միայն նա և Ոքսոս, այլ և շատ գետեր՝ որք նեղ ձորերէ և յորձանօք և հերձմամբ կ'անցնին՝ նոյն անունը առած են, որպէս և Ճիհունն Կիլիկիոյ, ըստ մեզ Ջահան և Պիւռամոս ըստ Յունաց. ի Պաղեստին անգամ պզտի գետակ մի կայ Գեհոն անուամբ։ Այլ այսքան հեռաւորութիւնն անտեղի և հակառակ իսկ է կարգի գետագրութեան Ս. Գրոց. և հարկ է թէ ըլլայ Գեհոն, որպէս ըսինք, ի հիւսիսոյ արեւելից Տիգրիսի, միանգամայն և ակունքն մօտ ականց նախայիշեալ երկուց գետոց. և արդ մերձագոյն գետ նշանաւոր Տիգրիսի և Եփրատայ է Երասխ սեփական գետ Հայաստանեայց, և հաւանին այսմ բազումք յողջամտաց։ Իսկ անհաւանք[9], թէ և դրից համար չունին ինչ ասել, գոնէ զանունն և զերկիրն զոր պատէ՝ կրնան ընդդիմադրել. — Այլ ոչ միայն դրից յարմարութիւնն յաղթէ ընդդիմադրութեանն, այլ և զանունն և զերկիրն անգամ կարեմք ստուգել հաւանօրէն, և նախ ինչպէս ծանուցինք՝ Գեհոն նշանակէ

Digitized by Google

ըստ Եբրայեցի բնագրին յախուռն և երագ ընթացք մը, նոյնը ճշմարտեալ և վկայեալ է վասն Երասխայ ի հնագոյն նախնեաց օտարաց և մերոց, և անունն իսկ Երասխ՝ Երագս կամ հերձումն նշանակէ, ըստ նոցին իսկ օտարաց (Յունաց)։ Այս չէ շատ դժուար ընդունելի անհաւանից, վասն զի գետոց անուանքն շատ փոփոխութիւն կրած են, և Եփրատ ու Տիգրիս իրենց մեծութեամբն և շատ ծանօթ աշխարհներէ անցնելով աշխարհածա-նօթ և անփոփոխ մնացեր են. այլ աւելի դժուարին է Եթովպացւոց երկիրն Երասխայ ընթացից տակ. — սակայն որք զԵթովպիա կամ Քուշ բնտռեն յամենայն Ովւաքնակ աշխարհս, կրնան ի Հայաստան ալ բնտռել թէ կա՞ր արդեօք այնու անուամբ աշխարհ[10] մանաւանդ Քրիստոսէ 1600 տարի կամ աւելի առաջ, ըստ ժամանակին յորում գրէր Մովսէս. և կ'ասէ վասն գետոյն թէ «պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց». արդ ոչ Նեղոս և ոչ Օքսոս և ոչ Ջահան՝ եթէ և Եթովպիոյ երկրէ մը անցնին՝ բայց կա-տարելապէս չեն պատեր երկիր մը. իսկ Երասխ՝ բաւական է որ աշ-խարհացուցի վերայ նայիմք և կու տեսանեմք որ նեղ Քարաձորէն ելլալով յԱյրարատեան դաշտն՝ ընդ հարաւ և ընդ արեւելս պատի զԱռան աշխար-հաւ որ շատ յառաջ քան զՄովսէս, ըստ պատմչաց մերոց կոչուէր և կոչի իսկ Սիւնիք կամ Սիսական. և յետոյ երկու աշխարհ բաժնուեցաւ ի մեծ և ի փոքր, որոց երկրորդն կոչեցաւ և Արցախ։ Գետոյն պատուածք յարեւ-մտից, ի հարաւոյ և յարեւելից ակն յայտնի և անտարակոյս է, այլ եր-կրին անո՞ւնն։ Եթէ յառաջ քան զՀայկն Քուշացի սերունդք բնակեալ էին ի Սիսական, չեմք գիտեր, թէ և ոմանք գաւառաց Արցախոյ Քուստի մակ-անունն ունին մօտ Քուշ անուան. այլ բուն անունն ըստ մերոց պատմը-չաց առեալ է յորդւոյն Գեղամայ նահապետի ի Սիսակայ (Խոր. Ա. ԺԲ) բայց զի Սիսնիք կոչի ի մերոցս և չէ նման և չի կրնար ծագիլ ի Սի-սակ անուանէ, պէտք է ըսել թէ այդ նահապետին կոչումն նուազական կամ փաղաքշական է (որպէս և Աղու կոչումն նորա) իբր Սիս—ակ. ապա բուն անունն էր Սիս կամ ասոր նման. ի Սիսայ ալ Սիւնիք չի ծագիր, հաւանական է թէ էր Սեաւս կամ Սեաւ[11] կամ Սի յորմէ Սիւնիք իբր Սեւ-ունիք[12]։ Պէտք է յիշել որ Երասխայ և Կուրի միջոց ուրիշ նշանաւոր տեղ մ'ալ կայ Սեւանուն մարզկան, Սեւորդեաց աշխարհ կամ Ջորն, անմիջա-պէս Արցախոյ և Ուտիոյ սահմանամէջ, Կուրի պարահովտին սեփական, բայց հին ատեն ընդարձակ ըլլալով մինչեւ աշխարհ կոչուէր և իբր զատ թա-գաւորութիւն կամ երկիր մը յիշուէր յԱրաբացի պատմչաց ալ, և մինչեւ ի Սիւնիս կու ձգէր, հնագոյն ատեն թերեւս աւելի ալ ընդարձակ էր. և

անունն առած էր ի Սեւուկ նահապետէ, որոյ ժամանակն անյայտ, նոյնպէս նոյն կամ օտար ըլլալն ի Սիսակայ։

Եթէ յետ այսքան նշանաց Սեւանայ, Սինեաց և Սեւորդեաց չշատանայ եթովպախնդիրն և եբրայական Քուշն ալ պահանջէ, զայն ալ կու գտնեմք հոս ի հայկազնն Գուշար որ էր յորդւոց Շարայի Թոռնորդւոյն Հայկայ ըստ պատմչին մերոյ, և բնակէր Սեւանայ ծովուն մօտերը[13]. ապա եթէ ոչ ի Հայկայ՝ այլ ի Քամայ պահանջուին Քուշացիք՝ ահաւադիկ և Քանանացիքն բնակեալք ի նոյն ծովեզերս Սեւանայ, յիշեալ ի պատմչէն մերմէ[14]։ Այս ամէն փաստքս միաբան առնլով, չափ մի հաւաստիք տան Գիհոնն համարելու զԵրասխ, և Քուշ՝ զՍիւնիս, կամ զմիջագետս Երասխայ և Կուրի։

Մնայ արդ գետն չորրորդ, որ է առաջին ըստ Գրոց, Փիսոն. և ըստ գրիցն պիտի ըլլայ ի հիւսիսոյ Երասխայ և մերձաւոր աղբերականց նորա և Եփրատայ. և անշուշտ ոչ միայն ի Ս. Գրոց այլ և յարտաքնոցն փասիս կոչեալ պիտի ըլլայ. որով անուամբ ոչ մի՝ այլ քանի մի գետք կան ընդ մէջ Հայոց և Վրաց. նախ հիւսիսագոյնն բուն Փասիս, որ հեռաւորութեամբն անյարմար է Ս. Գրոցն Փիսոն ըլլալու. երկրորդ՝ Ճորոխ կամ Ակամսիս, երրորդ՝ Կուր գետն մեծ, որք ի Փասիս կոչմանէ ազատ չեն մնացեր. ինչուան ոմանք[15] զԵրասխն իսկ ի սկզբանն նոյնպէս կոչուած համարին, հաւանօրէն Բասեան գաւառին համար ուսկից որ կը բղխէ ատուգիւ։ Արդ ո՛ր յայս գետոցս է «որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ»։ Հոս այլ դժուարութիւնն Եւիլատ երկրին գիւտն է. զոր ոմանք ի բերոցն գտանելով, (որ է ոսկի ազնիւ, ակն սուտակ [զոր հիմայ կ'իմանան Rubis[16]] և գահանակ, ռէհնէձ ըստ պարսկին), ոսկեբեր և գոհարաբեր երկիր մը կու բնտռեն, և պարձեալ ի հարուստ Հնդկաստան խոտորելով զԳանգէս համարին Փասիս, կամ զՀիւփաս որ և Հիդասպ, յետ Գանգիսի և Ինդոսի մեծագոյն գետ Հնդկաց. սակայն այնչափ անհաւական և անտեղի է այս՝ որքան Գեհոնն Ինդոս կամ Նեղոս լինելն։ Ապա թէ ըստ բնական երեւութին ի հիւսիսոյ Երասխայ խնդրելու է ոսկեբեր գետն և երկիրն, երեք մեքոյնշեալ գետերն ալ այնպիսի երկիր կ'ոռոգեն կամ կու պատեն. Փասիս, գետն Կողքեաց՝ որ յԱրգոնաւորդաց ժամանակէ ի վեր հռչակեալ է ոսկեբեր աւազով կամ բովուքն. Կուր, իր ընդարձակ պարահովտին պէսպէս հանքերով, յորս ոսկւոյ հետք ալ յայտնուած են նաեւ ի մօտ ժամանակս[17]. Ճորոխ արծաթաբեր բովուքն Սպերոյ ինչուան հիմայ հռչակեալ է, և ոսկի ալ ունենալն ալ վկայուած է[18] զսա կարծենք Փիսոն սուրբ գրոց, և հօս

զուկին ազնիւ, որ անշուշտ հին ատեն աւելի հոչակեալ և հարուստ էր, այս ուրեմն է երկիրն Եւիլաթայ որ է Խաւիլաք ըստ Եբրայեցւոց՝ է Խաղտիք աշխարհ, ուր և Խոշյաղ լեառն և Խայք ժողովուրդ մինչև ցայժմ պահեն զհին անունն, զոր և հին Հելլէնք կոչէին Խալիւբս և Հայախալիւբս և Քաղդեայս այսինքն Խաղտիս. եթէ գիտէին զայսոսիկ քաջ բնաբանք[19] կարծեմ զիջանէին թէ Խաղտիք ունին հաւանականութիւն Եւիլաթայ առաւել քան զԿողքիս՝ և առաւել քան զԽուալիսի Ուրալ լերանց և Վոլկայ գետոյ մօտ՝ յորոյ անուն Ռուսք զԿասպից Ծով կոչեն Խուալիսեան ծով. Ճորոխ՝ պատէ զերկիրն Խաղտեաց, յայտնագոյն եւս քան Երասխ զՍիւնեաց, իսկ այլք ի կարծեցեալ գետոցն՝ ոչ նոյնպէս զմերձակայ երկիրս։ Զատ յոսկւոյն երկու բերքն երկրին Եւիլաթայ, այսինքն Սուտակն ըստ մեզ, որ է խնկախէժ ծառոյ մը ծորուած (պտղոյխ ըստ Եբրայեցւոց, Պտեղլիոն ըստ Յունաց) և Դահանակն[20] որ ծովագոյն բեւրեղ կարծի, հիմայ ծանօթ չեն ոչ ի Խաղտիս, ոչ ի Կողքիս և ոչ ի Խուալիս։

Գեհոնի և Փիսոնի կամ Երասխայ և Ճորոխի վերայ առանց այսչափ տեղեկութիւն ունենալու այժմեան քննիչք և մեկնիչք[21] չեն տարակուսիր որ դրախտն ալ իր չորս գետերն ալ ի Հայս էին, և որք շատ ընդարձակ համարին զերկիրն Եդեմայ՝ անհրաժեշտ զՀայաստան ալ ի մէջն բովանդակեն։

Հետաքննելի է թէ արդեօք և նախնիք մեր ունէի՞ն այս հաւանութիւնս և պարծէի՞ն ի վերայ դրախտին, որպէս անշուշտ կ՚ընէր որ և է ազգ և կ՚ընեն իսկ շատք առանց այսքան հաւանութիւն ունենալու. — Հնագոյն և հեթանոս նախնեաց աւանդութիւն չունիմք. իսկ քրիստոնեայ նախնիք մեր ըստ հասարակաց կարծեաց Ս. Հարց՝ զԳեհոն և զՓիսոն հեռու աշխարհներ կու տեսնային, և երկու գետն միայն իրենց սեփական գրէին, որպէս ասէ Եղիշէ հեզաբան պարծանօք. «Երկու գետովքս և տա-
» պանաւն գեր ի վերոյ եմք քան զյոլովս». ուրիշ ոմն[22] կ՚ընդունի երեք գետ և զողջոյն դրախտն, «Յայսմ կողման (ի Հայս) աստուածատունկ
» դրախտն... և եղեմաբուխ երից գետոցն հոսումն»։ Ուրիշ մ՚այլ ողբալով հայրենեաց անշքութիւնը գոչէ «Աւա՜ղ երկիր Հայոց գաւառ գեղեցիկ,
» աշխարհ արեւելեան, հուպ առ Եդեմ»։

Հիմայ անտարակոյս Եդեմայ ի Հայաստան ըլլալուն, կու մնայ տեսնել թէ յո՞ր կողմն է. ոմանք յայժմու բանասիրաց յարեւելեան կողմն համարին, Վանայ Ծովուն եզերքն, ի մէջ փակելով զնոյն ինքն ծովակն, Թերեւս Եդեմայ գետարձակ աղբիւրը սեպելով, որուն արդարեւ մօտ են

Digitized by Google

ինչուան հիմայ Տիգրիսի արեւելեան աղբերակն և ոչ հեռի Արածանոյն. բայց հեռագոյն մէկ այլ գետքն որոց ամենուն աղբերականց միջոցը կու վայլէ որ ըլլար Եդեմն, և էր ըստ իս ի Բարձր Հայս, և թերեւս յանուն բարձրաւանդակ դրախտին այս աշխարհս ի վաղուց կոչեցաւ այսպէս, այլ և Կատար երկրի. կամ լաւ եւս բարձր և Դ Հայոց միջոցն, գլխաւոր մասն կամ կեդրոնն էր Եդեմայ, իբրու թէ ի սահման հիւսիսոյ ունելով զՏայախաղտեաց լերինս մասամբ փորակացն Տայոց, յորս և Պարտիզացփոր յարեւելից զԱյրարատեան[23] և (մասամբ Բասենոյ) զՏուրուբերան աշխարհս, ի հարաւոյ զբազուկ Հայաստաւրոս լերանց զանջրպետ Տիգրիսի և Արածանւոյ, յարեւմտից զԱնտիտաւրոս առ Եփրատաւ. ի գետոց երեքին ինչուան հիմայ ակունքն Կարնոյ դաշտին մէջը և երկու կողմերը՝ յայտնի են. չորրորդն Տիգրիս հիմայ հեռու մնայ և իր և անոնց միջէն կ'անցնի Արածանի յԵփրատ դիմելովը. սակայն յառաջ քան զջրհեղեղն՝ եթէ ծովակ մը ծածկէր զմասն մի եդեմական երկրիս, հարկ է որ դիրքն ալ այլակերպ էր. և շատ հաւանելի է, նաեւ երկրաբանական դիտմամբք, որ այն ատեն Արածանի չկար, կամ թէ հիմկու ճամբան չունէր, այլ թերեւս ի Վանայ ծովն կամ յայն կողմն իջնար. բարձր և Դ Հայոց բարձրաւանդակք միակիցք էին առաջտաձեւ, և Սրմանց ջրաբուխ լճաշատ լեռնատափքն (Պինկէօլ) Կարնոյ դաշտէն սկսեալ երկայնաձիգ ծովակին կամ աղբերն յատակն էին, որք յետ ջրհեղեղին ամբարձան, և նախնի յուռթի գետնէն բղխեն այժմու լճակներն. այն ատեն Տիգրիս ալ այն ծովաղբեր հարաւային եզերքէն կ'իջնար ընդ հարաւ, որպէս Եփրատ ընդ արեւմուտս, Ճորոխ ընդ հիւսիս և Երասխ ընդ արեւելս:

Ոչ ծովաղբիւրն, ոչ լերանց և ձորոց դիրքն, և ոչ փափկութեան պարտիզին անկարեբրութիւն մնացին նշան Եդեմայ, որ անշուշտ և յառաջ իսկ քան զջրհեղեղն անշքացաւ և թերեւս մեծամեծ սասանութեամբ և հրաբղխիւք այլայլեցաւ, և այնուհետեւ կարօտ չէր բոցասուր սերովբէից պահպանութեանը՝ որ անարժանք չմտնեն ի ներս: Յետ ջրհեղեղին այլ աւելի կերպարանափոխ եղաւ երկիրն և բարեխառն կլիմայն մեծապէս ցրտացաւ. բայց ի վերայ այսր ամենայնի ինչպէս գետոց հին նշանքն մնացին, այսպէս և եդեմաշունչ օդոց նշան է բարձր Հայոց և Սրմանց բարձրաւանդակաց գարնանային և ամառային օդոց պարզութիւնն և քաղցրութիւնն և անապակ շունչն, հանդերձ պայծառութեամբ և քաղցրութեամբ ջրոց, որոնց միայն պակասութիւն է մշտատեւ չըլլալն, այսինքն երկայն ձմերուկ մը խափանութիւնը որ ամէն տարի դրախտին կորուստը կու կրկնէ բայց դար-

Digitized by Google

*ձեալ կու նորոգէ ամենազուարճ գարունով, և պայծառ արեգակամբ. որուն ամառն ալ որչափ կարճ՝ այնչափ ալ բարկ և բեղմնաբեր և եթէ կարճութեամբն՝ ջերաւէր բուսոց բարգաւաճանաց անբաւական է, բայց ոչ սակաւ պտղոց և մանաւանդ արմտեաց, եւս առաւել բանջարոց, և առաւել եւս ալպեան կամ լեռնական բուսոց այնքան գեղեցիկ աճումն և զանազանութիւն կու տայ, որ և բազմատես բուսաբանից ոչ միայն զմայլումն բերաւ այլ և համարձակ ըսել տուաւ որ անշուշտ հոս եղած պիտի ըլլայ փափկութեան դրախտն ։*

*Որքան ախորժելի և միանգամայն տխրաբեր յիշատակք և զրոյցք եղած պիտի ըլլան մեր ազգին նախահարց մէջ և մեր երկրին առաջին բնակչաց մէջ, որք ի հարկէ ոչ միայն զդրախտին յիշատակն կենդանի ունէին այլ և գիրքն լաւ քան զմեզ ճանչնային. անկարելի էր Նոյի և իր որդւոցը որ նախաջրհեղեղեան անձը ճանչցեր էին և ադամբնակ տեղուանք տեսած էին, շատ հաւանութեամբ, յետ ջրհեղեղին այն տեղուանց հետքը չի բնտռել, և իրենց որդւոց ալ չաւանդել. և այսպէս շարունակել այն յիշատակը առ որ կու ձկտի ամենայն ազգ. մինչեւ կրօնից փոփոխութիւն և օտար ժողովրդոց բռնի բնակութիւն՝ փոխեցին, այլայլեցին, լռեցուցին այն յիշատակները. բայց խպառ մոռնալ անհնար էր, նաեւ յետ հազարաց ամաց. և եթէ հեռաւոր արեւելեայք իրենց սահմանները դեռ կու բնտռեն և պատմեն դրախտի յիշատակ կամ գեղեցկութիւն, աւելի իրաւացի չէ՞ անոնց լսել որոնց երկիրը կ'ոռոգեն անտարակուսելի գետքն Եդեմայ. ախորժելի ըլլայ ուրեմն լսել զրոյց մը, զոր Գերմանացի ճանապարհորդ[25] մը լսեց շատերէ, ջրառատ Պինկէօլի լերանց բնակող հին Հայոց սերունդներէ, մանաւանդ ի Պասքամ գիւղ Վարդոյ վիճակին, որ հին Հայ նահապետի մը անուն կրէ ցարդ[26] ։ Այն յուռթի և պարարտարօտ լերանց բարձրաւանդակի մը վերայ դրախտին ծովակն կու տարածուէր իր չորս գետերը բղխելով[27] ։ Ամենայն աւանդութիւնք ալ միաբանին ընդ մեկնըչաց Ս. Գրոց թէ դրախտն ի բարձրաւանդակի կամ ի լեռնավայրի էր. Զանդիկք յէլպորճ կամ ի Դէրէզադ սրբազան լերին համարին, մերձ յէրիմէնէ-վէճոյ, և ունէր ծովակ մը զոր Զարեհ կոչեն, և առանձին անուամբ Ֆէրահքանտ. առատ ջրարձակութեան համար կոչէր և Նագետորոյ (պորտ), յորմէ ստուգաբանի և Նպատ լերին անուն, որ ըստ մեզ Արածն աղբերականց մօտիկ է, և ըստ Հելլենաց բոլոր Հայաստաբոս լերինք Նպատք կոչին. միայն թէ Զանդիկք երկու իրեք վիճակ կ'ընծայեն այս տեղերու. մէկ մը բուն եդեմական կամ նախատեղծ մարդկան*

Digitized by Google

երկիր. մէկ մ'ալ բուն Երանելեաց գրգարան, և դադար Որմզդի, և ըստ
այսմ Էլպորճ անհուն բարձրութիւն ունի արեգակնաչափ, 800 տարի եր-
կրիս ծոցէն դէպ ի վեր բարձրացեալ: Ասոր նման կարծիք մը ունէին
նաեւ Հայք և մեկնիչք Ս. Գրոց, դրախտն երկրիս արեւելեան ծայրերը
և լուսնի չափ բարձր լերան մը վերայ համարելով[18]. բայց յետ արտասահ-
մանութեանն Նախածնողացն այսպէս տարապայման բարձրացեալ, իսկ յա-
ռաջն չափաւոր բարձր, և միշտ ի լերին. այս կարծիս հաստատէ մեր
նախնի վարդապետ մ'ալ «Օրհնեաց Աստուած զնախաստեղծսն ի լերինն
» յԱդին ընդ արեւելս». որ և որոշ լեռ մը կ'իմանայ յԵդեմ, մանաւանդ
զնոյն իսկ Ադին կ'իմանայ անուն լերին և տեղւոյ Դրախտին: — Այս-
պիսի տեսութիւն մի կ'ընծայէ և Եզեկիէլ մարգարէ (ԼԱ. 8) անտառային և
լեռնային ծառեր յիշելով ի դրախտին սարդ և սարոյ նոճ մայր և սօսի:

Արդ այս լեռնավայր բարձրաւանդակին վերայ պատրաստեց Արարչապետն
դրախտն փափկութեան հանդերձեալ մարդոյն, ամենատունկ, ամենապտուղ
ամենահոտ, ամենագուարճ երկիր մը, քաղցր աղբերածովուն եզերք, բար-
ձրաբերձ և հովանաւոր ծառօք պարսպեալ. վասն այնորիկ և Պարտէզ կոչե-
ցաւ, որ է շրջափակ կամ մացառապատ դրախտ, որչափ Ս. Գիրք և ա-
ւանդութիւն միաբանին յաւանդել. «Տնկեաց Աստուած դրախտն յԵդեմ
» ընդ արեւելս... և բուսոյց եւս տէր Աստուած յերկրէ զամենայն ծառ
» գեղեցիկ ի տեսանել և քաղցր ի կերակուր. և զծառն կենաց ի մէջ
» դրախտին. և զծառն գիտելոյ զգիտութիւն բարւոյ և չարի»: Յետ այս-
պիսի պատրաստութեան (որոյ վերայ խորհրդածել կամ շատ յերկարել՝
մեր նպատակէն դուրս է) «Ասաց (Ս. Երրորդութեան Անձինք յանդիման
» ամենայն հրեշտակաց) արասցուք Մարդ ըստ պատկերի մերում և ըստ
» նմանութեան, և իշխեսցեն ձկանց ծովու և թռչնոց երկնից և անասնոց,
» և ամենայն երկրի, և ամենայն սողնոց որ սողին ի վերայ երկրի:
» (Ծն. Ա. 26). Եւ ստեղծ Տէր Աստուած զմարդն հող յերկրէ, և
» փչեաց յերեսս նորա շունչ կենդանի, և եղեւ մարդն յոգի կենդանի:
» (Բ. 7). Եւ արար Աստուած զմարդն ի պատկեր իւր. ըստ պատկեր
» Աստուծոյ արար զնա: (Ա. 27). Եւ առ Տէր Աստուած զմարդն զոր
» արար, և եդ զնա ի դրախտին փափկութեան գործել զնա և պահել»: (Բ.
15): Մարդոյն հրաշալի և ամենաստուածեան ստեղծումն, արժանի զմայ-
լական խորհրդածութեանց, ընդհանուր պատմութեան մարդկութեան կամ
կրօնից վերաբերելով քան ազգային պատմութեան՝ թողումք ի հաճոյս
իմաստասիրաց. իսկ այդ ի մէջ բերեալ Ս. Գրոց վերջին տունն՝ ազգային

Digitized by Google

պատմութեան կամ աշխարհագրութեան պատմութիւնը դարձեալ ի յուշ
բերէ, Եղեմայ դուռը բանալով առ նորաստեղծ մարդն. որ որպէս Ս. Գիրք
ցուցանեն ստեղծաւ արտաքոյ դրախտին, և յետոյ դրուեցաւ հոն. և թե֊
րեւս, դարձեալ ըստ նոյն Ս. Գրոց ցուցակութեան, նախ ստեղծաւ, ապա
դրախտն պատրաստեցաւ և յետոյ մուծաւ հոն։ Դրախտին առաջ կամ
յետոյ պատրաստուելուն որն ալ ըլլայ, ստոյգ է որ Ադամայ ստեղծման և
ի դրախտ մտնելուն մէջ ժամանակ անցաւ քիչ կամ շատ։ Ո՞ւր ստեղծաւ
Ադամ, կամ յետ որքան ժամանակի մուծաւ ի դրախտն, Ս. Գիրք չըսեր.
միայն տայ գուշակել թէ ոչ տեղն հեռի էր և ոչ ժամանակն ուշ[29]։ Մեկ֊
նիչք զանազան կարծիք ունին, որ մեզ աւելորդ է յիշել, բայց միայն
զմէկն, ոչ իբրեւ ընդունելի, այլ իբրեւ ազգայնիշատակ. և է յանուն Ս.
Եպիփանու ասացեալ Արարածոց մեկնութիւն, և գրեալ վասն բարեկամին
իւրոյ հայկազն Եպիփանու իմաստասիրի և ճարտասանի Եդեսացւոյ. որ և
ասէ ի Սիոն լերին Երուսաղեմի ստեղծեալ բանին Աստուծոյ զԱդամ, ա֊
ռեալ հող ի լեռնէն և ջուր յաղբերէն որ ընդ գեթսեմանի իջանէր ի ձորն
կեդրոնի, և յետ ստեղծմանն իջուցեալ յաղբիւրն սելովամայ և լուացեալ,
և օրհնեալ. և բերեալ ի Գողգոթայ լեռնակն և ի սահմանս տեղեացն՝
զոր ինքն Աստուած մարդացեալ յետոյ սրբացոյց տնօրէնութեամբ իւրով.
և հոն ստեղծեալ զԵւա, (որում բնաւ ոչ հաւանիմք) և վեց օր այն տնօ֊
րէնութեան տեղուանքը շրջեցընելով, ի վեցերորդ աւուր ստեղծմանն որ
է երկրորդ հինգշաբթին «Հանէ զնոսա ի սուրբ լեռնէն Ջիթենեաց. և յերրորդ
» ժամէն մինչեւ ի վեցերորդ ժամն աստուածային զօրութեամբ առանց աշ֊
» խատութեան հասուցանէր զնոսա յԱրարատեան Գաւառն միջամուխ
» Հայաստանեայց աշխարհին, յարեւելս կոյս, ի լեռնն յորում տապան
» Նոյի այժմ հանգուցեալ կայ։ Նաեւ զամենայն թռչունս և զգազանս և
» զանասունս և զսողունս ընդ նոսա. ուստի և յերկրորդում ուրբաթուն ընդ
» մերկանալ լուսոյն յառաւօտէն փոխեաց զնախաստեղծ կուսանսն զԱդամ
» և զԵւա մեծապայծառ փառօք, և եդ զնոսա ի մէջ իւրաստեղծ սուրբ և
» լուսազարդ անապական դրախտին, որպէս փեսայ և հարսն ի մէջ ա֊
» ռագաստի» և այլն։ Բայց մեք զԱդամ գիտեմք նախ միայնակ եղած ի
Դրախտին. ուսկից ալ հոն մտած ըլլայ՝ ի միայնութեանն ճանչցաւ զԱս֊
տուած, զինքն և զշրջակայ արարածս, զկենդանիս և զանկենդանս. և թէ
ո՞րպէս կամ զի՞նչ զգաց, թողումք պերճաբան Պիւֆոնի կամ վսեմախոհ Միլ֊
տոնի նկարագրել[30]։ Ի միայնութեան նախ «Պատուիրեաց Տէր Աստուած
» Ադամայ և ասէ, Յամենայն ծառոց որ է ի դրախտիդ ուտելով կերիցես,

Digitized by Google

» բայց ի ծառոյն գիտութեան բարւոյ և չարի՝ մի՛ ուտիցէք. զի յորում » աւուր ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռանիցիք»։ (Ծննդ. Բ. 16–17)։ Այն բազմավտակ հայկական բարձրաւանդակները զոր այսօր Քուրդք և Թուրք իրենց հօտերովը ծածկեն, և որոյ եզերքը Յաջորդք հին ժողովրդեան Հայկայ իրենց կէս ստորերկրեայ գիւղից մէջ ապաստանին, այս աստուածային առաջին պատգամները և առաջին զրոյցք մարդոյ լսուեցան, որուն սովրեցունէր արարիչն գործել զդրախտն, այսինքն պարմանել զծառսն գեղեցիկս ի տեսանել և զքաղցունս ի կերակուր, որք էին զբօսանաց տունկք և ծաղկունք և պտղատու ծառք և պահել, զվայելչութիւն տեղւոյն, զգուշանալով կամ նորոգելով զնաս որ ի տարբերաց կամ յանասնոց և կամ ի նախաչարէն, որուն թշնամութիւնը կ՚իմացընէր Աստուած պատուիրանաւն զգուշութեան արգիլեալ ծառոյն և մահուն սպառնալեօք։ — Այսպիսի է վիճակ մարդկան ի վերայ երկրի յառաջին վայրկենէ անտի լինելութեան նախահօրն մինչեւ ի վախճան. ընդարձակութիւն ըղձից և ազատաձգութիւն մինչեւ յերկինս, չյագենալ բոլոր զգալի աշխարհաւս, և անձեռնհասութիւն, չափաւորութիւն կարողութեան, նա մանաւանդ անբաւ տկարութիւն. այլ նշան և զուշակ ամենամեծ կարողութեան և կատարելութեան զոր ի յուսացեալ և ի հանդերձեալ կեանս պիտի ստանայ, եթէ գոհանայ յայսմ վիճակի ըստ կամաց նախախնամող Արարչին։ Սակայն եթէ այսպէս մէկէն ի մէկ հրաման և պատուէր մը կու տեսնամք մեր նախահօր չորս դին, չի զարհուրինք չի տրտմինք. այն պատուէրն բարոյապէս աւելի բան չէր քան զբնական դրախտին շրջապատ հովանաւոր ծառերն, որ կ՚ամփոփէին զեդեմայ ազատ տարածութիւնն. և եթէ Ադամ այն պատուիրանաւ կ՚իմանար իր չափաւորութիւն և կախումն յԱստուծոյ և վտանգն ի չար ոգւոց, կ՚իմանար իր գերագոյն բնութիւնն ալ ի վեր քան զամենայն երկրաւոր արարածս, և իւր իշխանութիւնն ի վերայ նոցա. վասն այսորիկ «Ստեղծ եւս Տէր Աստուած զամենայն գազանս վայրի և զամենայն » թռչունս երկնից, և ած զնոսա առ Ադամ տեսանել զինչ կոչեսցէ զնո- » սա. Եւ ամենայն շնչոյ կենդանոյ՝ զինչ և անուանեաց Ադամ՝ այն ա- » նուն է նորա։ Եւ կոչեաց Ադամ անուանս ամենայն անասնոց և ամե- » նայն թռչնոց երկնից և ամենայն գազանաց վայրի»։ — Ս. Գրոց մեկնիչաց և բանասիրաց կը թողումք զքննութիւն կենդանեաց ադամային անուանցն, թէ ըստ բնութեան նոցա յարմարեցուց Ադամ եթէ ըստ արտաքին երեւոյթին միայն. և աւելի կարեւոր խնդիրը թէ ինչ բառերով զանազանեց անոնց անուանքը, և կամ թէ արդեօք այն բառերը, միով

Digitized by Google

բանիւ Ադամայ խօսած լեզուն՝ մինչ արդեօք քիչ շատ հիմակուան լեզուաց մէջ. և թէ կարելի՞ էր լեզուաց մէջ առաջնութեան խնդիրը հանել մինչև ցԱդամ[31]։ Շատ ըլլայ մեզի նկատել զհայրն մարդկան և զիշխան երկրի, նստեալ ի մենաւոր իշխանութեան խրում յԱդէն, որ ապա մեր ազգային հայրենիքն եղաւ և ի հանդիսի անցնելով զանասունս երկրի և օդոց՝ անուանել և հրամայել նոցա. և միանգամայն քննել զանբան կենդանեաց բնութիւն և ընկերութիւնն. և զինքն արտաքին մասամբ մի նման անոնց և միայն անընկեր կամ աննման ի բոլանդակ բնութեան. «Բայց Ադամայ » ոչ գտաւ օգնական նման նմա». (Ծննդ. Բ. 20). և առ անծանօթ ընկերն ձկտիլ, կամ ըղձալ յԱրարչէն, որ և ասաց. «Ոչ է բարւոք մարդոյդ միայն » լինել, արասցուք դմա օգնական ըստ դմա։ (Ծննդ. Բ. 18). Եւ արկ Տէր » Աստուած թմբրութիւն ի վերայ Ադամայ և ննջեաց. և առ մի կողից նորա » և ելից ընդ այնր մարմին. և շինեաց Տէր Աստուած զկողն զոր առ յԱ- » դամայ ի կին, և ած զնա առ Ադամ։ Եւ ասէ Ադամ. Այս այժմիկ ոսկր » յոսկերաց իմոց և մարմին ի մարմնոյ իմոյ, սա կոչեսցի կին, զի յառնէ » իւրմէ առաւ վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր և երթիցէ » զհետ կնոջ իւրոյ»։ Ոչ ի հեռուստ ընդ Ադամայ մտաւ նախամայրն ի դրախտն. այլ ի դրախտին ստեղծաւ, և միայն արարած որ ի փափկութեան և յերջանկութեան տեղւոջն ստեղծաւ, միայնակ գեղեցիկ շինուած Աստուծոյ, զի զայլ ամենայն արարածս կամ ըստ և եղեն, կամ ստեղծեց, կամ արար որպէս զմարդն, իսկ զկինն շինեաց, իբրև ճարտարագոյն արուես- տաւորութեամբ, վասն զի յարդէն գեղարուեստ և կենդանի նիւթոյ առաւ անոր նիւթը։ Եդեմայ ի Հայաստան ըլլալուն փափկագոյն պարծանաց գլուխն անշուշտ Եւայի հոն շինուիլն է, և միանգամայն մարդկան նախածնաց ըն- դունարան ըլլալն. զորս «Օրհնեաց Աստուած և ասէ. Աճեցէք և բազմա- » ցարուք և լցէք զերկիր և տիրեցէք զմա, և իշխեցէք...» (Ծննդ. Ա. 28–30)։

Որչափ ժամանակ տևեց նախածնողաց երանական անարատ կեանքն ի փափկութեան Եդեմայ[32]. որչափ ժամանակ մեր երկրին նախաջրհեղեղեան հողն մշակեցաւ անոնցմէ և անոյց իր անմահունակ մշակները, քանի՞ առաւօտ արեգակն յարևելեան դրունս դրախտին բարձր ծառակամարաց վրայէն իր ոս- կեծիրանի նշոյլը վառեց անոնց հեշտալի հովանոցին վերայ, և կամ քանի՞ իրիկուն յետ օրուան զուարճախառն վաստակոյ քառառաջ գետոց մէկու աղբերահոսանց եզերք նստած՝ նորահրաշ արարչութեան վերայ կամ իրենց ապագայի ծննդոց և երկրիս բաղդին վերայ կու խօսէին, ոչ գիտեմք, ոչ

*քննեմք. և ոչ իսկ այն սրբազան և խորհրդաւոր միայնութեան կամ միացութեան մերձենայինք, եթէ հայրենական երկրին յիշատակը չի համարձակեցընէր պահ մը կանգ առնլու հոս՝ մտածել ոչ միայն նախածնողացս այլ և մեր իսկ նախ սահմանեալ վիճակը, որուն Արարչապետն բնութեանս մերոյ նոյնպէս նախասահմաներ է պահարան տեղի զՀայաստան, իբրև սեամ և դուռն մարդկութեան ի մուտս ընդարձակութեան երկրի։ Եթէ չէք հնար ներքն յետս դառնալ և մտնել այն փակեալ դուռը, յետս դարձնել զերանութիւն, մեզի որ ոչ միայն ի նախածնողաց ժառանգեալ աղէտքը ունինք այլ և ի դարուց կուտակեալ բիւր չարիք, գոնեայ քիչ մ՚ալ ուշանամք նախածնողաց և մեր երջանիկ վիճակին տեսարանօք. Թարգման և առաջնորդ ընտրելով, փոխանակ մեր հին և կորուսեալ Եդեմահայեակ երգչաց, զԱլպիոնի երգչին գրուածը*

Արդ երեկոյն խաղաղաւիք տակաւ գալով գետ եւըս գայր,
Եւ իւր լուրթն աղօտալոյս զտարերս ի զգօնն համակէր թոյր.
Ընկեր էր իւր՝ լռութիւն, զեռունք և հաւք մեկնեալ կային՝
Ի կանաչ նոքա խշտիս մարեաց իւրեանց, սոքա ի բոյնս։
Ծիծեռնիկ եւեթ ըսկէր՝ գեղգեղելով զգիշերն ի բուն
Զգոյլայլիկըն սիրային. զըւարճացեալ կայր լռութիւն։
Նոյնժամայն ի կենդանի շափիղս երկինք շողշողեցան.
Գիշերավարն որ ածէր զաստղականաց բանակաց բոյլն՝
Ընթանայր բոլորափայլ, մինչ ամպաշուք ծագեալ լուսին
Բամբիշն յայտնատեսիլ՝ զանհամեմատ լոյսն հոլանեաց,
Ըզշըղաշն արծաթափայլ արկեալ ի ստուերըսըն խաւարի։
«Գեղեցիկդ իմ ամուսին, ասէ յայնժամ Ադամ ցԵւա,
Գիշերաժամս և ամենայն ինչ ի հանգիստ իւր փութացեալ՝
Ըզմեզ ի նոյն հրաւիրեն. առ յԱստուծոյ փոխանակաւ
Կարգեալ վաստակ և հանգիստ մարդոյ 'ւստ տուընջեան և գիշերոյ,
Շաղ քընոյ ի դէպ անկեալ անոյշ և թանձր թըմբրութեամբ
Հակէ զարտեւանունս։ Այլ արարածք զօրըն ցերեկ
Սահեալ դատարկ և անգործ, չեն հանգըստեան ինչ շատ կարօտ.
Մարդոյս մարմնոյ կամ հոգւոյ սակեալ է գործ օր ըստ օրէ,
Նըշան պատուոյն, և յամենայն ի գնացըս իւր երկնի խնամոցն։
Իսկ անասունք վայրապար շըրջին անգործ վարատական.
Եւ Աստուած ոչ ունի զվարկպարագի գործոցն համար։
Այգուց, չեւ զուարթարար առաւօտուն յելից մարզէ
Զառաջինն ազդ արարեալ ըզնորամուտ լուսոյն գալուստ,
Պարտ է մեզ վաղայարոյց ի հեշտակիր կանխել վաստակս։
Մեզ մընան անդ հովանոցըքըդ ծաղկավարս առ ի սըրբել,
Եւ փողոցըքըդ գալարուաք՝ միջօրէի մեր ճեմարանք,
Զորս ոստոցն անտառամոլք ի խեղդ արկեալ հեղձուցանեն.
Ծիծաղին զանրաւական մըշակութեամբս, և ըղձանան
Ձեռս առաւել քան ըզմեր՝ կըշտել զմոլին շըռայլութիւն։

Digitized by Google

Ծաղկունքդ իսկ այգոյին և հոյզք կաթեալ՝ հոսեալ դընին
Երկրաքարշք, գետնաթաւալք, գըձձատեսիլք և խորտաբորտք·
Հարկ է քաղել ըզդոսին, թէ սիրիցեմք հեշտի՛ հեծել.
Այժմ՛ ըստ կամըս բնութեան՝ գիշեր հրաման տայ մեզ զհանգիստ։ »
  Եւայն ամենագեղ շնորհազարդեալ՝ կըրկնեաց անդրէն.
« Նախատիպըն իմ և իշխան, քո հրամայեալ՝ հնազանդիմ ես.
Աստուած այսպէս պատուիրէ, նա քեզ օրէնք է և դու ինձ։
Զըգիտել ինչ աւելի՛ փառք են կընոջ, ուղիղ հանճար։
Խօսակից ընդ քեզ եղեալ՝ ըզժամանակըն մոռանամ,
Ցեղանակք և յեղյեղմունք նոցին համակ ինձ քաղցրանան։
Քաղցր է շունչ առաւօտին, քաղցր է ծագումն առաւօտու.
Ուրախարար նըւագօք առաւօտեալ հաւուց պարուն.
Հեշտ է արեւ ի սըփռելն ի բոյս գալար փափուկ դրախտիս
Ի տունկս ի միրգս և ի ծաղկունըս փայլ ի փայլ ցօղով լըցեալս.
Ցետ կակուղ ջուրց անձրեւաց երկիր պարարտ է քաղցրաշունչ.
Քաղցըր գալուստ է խաղաղ և շնորհաշուք երեկորոյ,
Եւ անդ գիշեր լըռասէր՝ հըռչակելի թըռչնով իւրով,
Եւ լուսնիւըն գեղեցկաւ և գոհարօքն երկնաւորօք
Որ կազմեալ զիւրան յօրինեն զաստեղախուռն յուղարկաւորս։
Բայց ոչ շունչ առաւօտին մինչդեռ ծագեալ ելանիցէ
Ուրախարար նըւագօք առաւօտեալ հաւուց պարուն,
Ոչ արեւ ի սըփռելն ի փափկութեան դարաստանիս,
Ոչ գալարիք, ոչ պըտուղք և ոչ ծաղիկքըն ցօղափայլք,
Ոչ բուրումն յետ անձրեւաց, ոչ շնորհաշուք հանդարտ երեկ,
Ոչ գիշեր լըռասէր հըռչակաւոր իւրով թըռչնովն,
Ոչ հեծելիք ի լուսնակի կամ ի դողդոջ փայլս աստեղաց,
Զունին ամենեւին ինչ քաղցրութիւն... առանց քո։
  « Բայց աղէ առ ի՞նչ աստեղքըդ փայլակեն զգիշերն ի գլուխ.
Ո՞ւմ իցէ շըքեղ տեսիլդ՝ ուր կափոյց քուն զաչս ամենայն։ »
  Նահապետս հասարակաց դարձայց անդրէն պատասխանի.
« Դուստր Աստուծոյ և մարդոյն, ամենագեղդ իմ կատարեալ,
Ցերեկորեայ յայդ լընուն աստեղք զընթացս իւրեանց զերկրաւ,
Ի ծագաց մինչեւ ի ծագըս մըտանեն և ելանեն՝
Բաշխել ըզլոյսն ի պատրաստի ազանց որ չեւ են ծընեալ դեռ.
Զի մի՛ խոր կալցի խաւար զհին տէրութիւնն ի գիշերոյ,
Եւ շիջուսցէ կենազրաւ ըզհամագոյս և ըզբնութիւն։
Զափաւոր և մեղմախառըն բոցքըդ ոչ լոյս տան եւեթ,
Այլ, յամօք ի բազմազօր շողիւնս տածեն, ջեռուցանեն,
Անուշեն, սնուցանեն. կամ զարփայինն ազդեցութեան
Արկանեն մասն յամենայն ի զարմազան էից բնութիւնս՝
Որ աճեն յերեսս երկրի, և պատրաստեն առ ընդունել
Ըզբուն իսկ կատարումն յարեգականն ի բարկ շողից։
Արդ ոչ ընդ վայր փայլեն դոքա՝ թէ և չտեսեալք ի խոր գիշեր։
Մի՛ ասեր ընդ միտըս քո, զի թէ բնաւ չէր մարդ ի միջի,
Պակասէր երկնի նկատող և օրհնութիւնք Աստուածութեան։
Բիւրք բիւրուց հոգեղինաց շըրջին ՚ի աշխարհս աներեւոյթք
Ցարթմընի մեր և ի քուն, անլըռելի օրհներգութեամբք
Գովեն զգործս իւր ի զընին կացեալ ըզցայգ և ըզցերեկ։



Digitized by Google

Զիցէ՞ մեր յանտառս յաճախ կամ ձայնատու բլրոցն յեմակս
Երկնաւոր լըսեալ բարբառ ըզգիշերոյն հասարակաւ,
Որ երգեն զմեծն Արարիչ մէն մի միայն կամ փոխ առ փոխ:
Բազում անգամ գունդ առ գունդ հըսկող զուարթունք կամ ցայգապահք՝
Ի նուագերգող աղեբախս երկնահանդէս կըտընդոցաց
Խառնեն ի մի յարմարութիւն հրեշտակերամ զերգացըն ձայնս՝
Որ զցայգն ի պաշտ հատանեն, կամ ամբառնան ըզմիտս յերկինս: »
Զայս խօսեալ, և ձեռն ի ձեռըն մըտանեն մէն միայնուկ
Ցերջանիկ տաղաւարն իւրեանց, որ էր ընտրեալ տեղի
Ի վեհէ տընկագործէն՝ յորմէ հեռէ ստեղծագործեաց
Զամենայն ինչ յօրինեալ ի զուարճութեան մարդոյն ի պէտս:
Կամար նորին Թուախիտ յարկածածուկ հովանաւոր
Էր հիւսկէն մանուածոյ ի սարդենեաց և մըրտենեաց,
Եւ որ ևս անուշահիւղ՝ ի խընկենեաց Թանձըր կողերց.
Աստի անտի ականթ և Թուփք անուշահոտք և սոսախիտք
Պարիսպ ամբարձեալք գալարագեղ կանաչազարդ.
Ծաղկին հոյլ վայելչավառ, երփն երփն հիրիկ, վարդ և յասմիկ,
Ծիլ ծիլ ի վեր փըԹԹինազարդ՝ պէսպէս համուկ նըկարակերտ.
Առ ոտս յակինԹ՝ մանիշակ՝ քըրքում՝ ի հոխ նարօտաներկ
Կըկէին զերկիր գունեղ քան զմեծագին քարանց գըրուագ:
Ա՛յլ ինչ արարած, չորքոտանի՝ հաւ՝ բզիզ՝ զեռուն,
Զիշխէր մուտ անդր ունել՝ առ ի մարդոյն մեծարանաց:
Ոչ ուրեք, և ոչ ի կեղծս առասպելեաց պաճուճելոց
Ցառաւել նուիրական և զերծ խորան ինչ հովանուտ
Նընջեցին Պան և Սիլուան կամ օԹեցան պայք և Հարսունք:
Ի սըրսկապան ծաղկապատ ծաղկապըսակ՝ ի բոյր բուսոց
Հարսնացեալն Եւա պըճնէր նախ զանկողինն ամուսնական,
Եւ երկնաւոր պարերգակք զառագաստի նուագեցին երգս:
Այն օր Հրեշտակն հարսանեաց տարեալ առ հայր մեր ած զԵւա
Ի մերկիկ գեղեցկութեան անդ զարդարեալ և ցանկալի
Քան զՊանդորա զոր օժտեցին դիք պարգևօք ամենաշնորհ, —
Աւա՜ղ, յոյժ նըմանակիր նըմին՝ ողորմ պատահարաւն, —
Երբ ի ձեռն Հերմեայ տարեալ առ Ցապետի պանդոյր որդին՝
Վարանեաց զազգըս մարդկան ի լար աչացըն գեղեցկաց,
Առ ի զԴիւայ վրէժ հանել՝ յորմէ խորեաց զտիրականն հուր:
Հասեալ այսպէս յիւրեանց ի տաղաւարն հովանաւոր
Երկոցուն ի միասին, և անդանօր զտեղի առեալ՝
Դարձան կացին 'դ բացօԹեայ երկնիւք՝ պագին Էին երկիր,
Արարչին երկնից, օդոյ, երկրի, արփւոյն յոր հայէին,
Լուսաճեմ լուսնին զընտի և աստեղեայ վեհ կամարաց:
« Դու հաստեցեր և զգիշեր, Արարչապետդ ամենակալ,
Դու և զտիւ՝ զոր ի գլուխ հանաք ի սպաս սակեալ գործոցս,
Երանիք յընԹերակայ միմեանց նըպաստ, ի սէր միմեանց՝
Որ պըսակ երջանկութեանս է առ ի քէն հրամայելոյ:
Դու և զայս՝ մեծ յոյժ ըստ մեզ՝ ըզգըրգարանս յօրինեցեր,
Ուր պակասեն լիութեանն հաղորդք, ընդ վայր Թափեալ յումպէտս:
Բայց դու մեզ խոստացար սերունդ ի մէնջ զարմ և զաւակ,
Որ զերկիր լընուցու, և զանըսպառ քո բարութիւնդ

Digitized by Google

Ընդ մեզ փառաւորէ և ի զարթնուլս և ի խնդրել,
Որպէս և արդ ի ժամուս, զհանգիստ քնոյ՝ զքոյին պարգեւաց: »
Միաբան զայս ասացեալ՝ չարկին օրէնս ինչ այլ ի գործ,
Բայց երկիր եւեթ պագին՝ Տեառն ի պաշտօն հաճոյագոյն:
Զձեռանէ միմեանց առեալ՝ մըտին յալուց հովանոցին,
Եւ անաշխատք ի թօթափել զոր մեքս կրեմք ծանր այլակերպս,
Առ իրեարըս կողմնեցան: Կարծեմ թէ ոչ դարձաւ Ադամ
Ի գեղեցիկ ամուսնոյն, և ոչ Եւա ինչ զըլացաւ
Զխորհըրդակիր կրօնից օրէնս հարսնականի սիրոյն սըրբոյ,
Որ զինչ և բանք պատճառելեացըն բարբեացեն զըսրբութենէ,
Ըզատեղւոյն, զանմեղ կենաց, պիղծ բաբելով զըրբեալն էին,
Զոր կիսոց և հրամայէ, զոր և տայ թոյլ ամենեցուն:
Արարիչըն մեր հրաման տայ մեզ աճել և բազմանալ.
Ո՞վ այն խափան, բայց մարդատեացն՝ ոսոխ մարդոյն և Աստուծոյ:
Ուրա՛խ լեր, Սէր հարսնազեղ, խորհըրդական օրէնք և կարգ,
Սեան աղբիւր սերընդոցըս մարդկայնոյ, ստացուած յատուկ
Ի դրախտին՝ ուր ամենայն հասարակաց էին բարիք:
Քեւ յանական վարար մոլուցք հալածեցան ի մարդկանէ
Տարագիր վըտարանդեալք ի պահարացն անասուն ջոկս:
Քեւ հիմնեալ ի մտերմութիւն սուրբ և արդար՝ սիրոյն կապանք,
Եւ հօր, որդւոյ և եղբօր աղապատանք գորովագութ
Ի լոյս և ի ծանօթս եկին անդէն նախ զառաջինն:
Քա՛ւ յինէն ընդ մեզս երբեք զըրել ըզքեզ կամ ընդ ամօթ,
Կամ ընդ միտ ածել թէ չես ինչ վայելուչ վայրի սըրբում,
Աղբերակնըդ մըշտաբուղխ ընտանեաւն անուշութեանց,
Որ մահիճքըդ յո պարկեշտ քարոզեցաւ և անարատ
Առ այժմուս և ի հնումն, յոր եկին սուրբք և հայրապետք:
Աստ Սէր զոսկեղէնսն արկանէ զնետըս իւր ի կիր,
Աստ ըզջահն անշէջ վառեալ և սաւառնի ծիրանաթեւ,
Աստ տիրէ և զուարճանայ, չէք ի ժըմիտ վարձկան բոզից՝
Յոր չէք սէր, ոչ խընդութիւն, ոչ փարելի լինել իւիք:
Ի հասեւխած չէք վայելսն, ոչ յարքունեացըն սիրուհիս,
Ոչ ի խառըն կաքաւս ոչ ի խենէշ խաբեայ դիմակս,
Ոչ ի մէնջ գիշերի պար, ոչ ի ցայգերգըս տըռփոտի
Զոր նուագէ անըրւաղ առ տարփածուն իւր գեղապանծ,
Զոր լաւ եւս էր՝ ընդ վայր թէ հարկանէր քամահաբար:
Արդ սոքա երկոքին ի սոխակաց երգս օրօրեալ՝
Քունէին միմեանց ի գիրկս, յորոց մարմինսըն մերկանդամս
Ծաղկալից զըմբեթն հոսէր վարդս որոյ զտոյժ նորոգէր այգ:
Ննջեցէք, ամոլք օրհնեալ, ո՛վ յամենայն ժամ երանեակք,
Թէ չխընդրէք երջանկագոյն կեանս և գիտէք չգիտել ինչ այլ:
Գիշեր զընթացն հասարակեալ էր կոնաձեւ մըթին ստուերաւն
Ի կոհակըն բարձրածայր՝ լայն կամարին որ ընդ լուսնով:
Քերովբէք ի փղոսկրէիցն ելեալ դըրանց յօրինի ժամն՝
Ի հակառ մարտի կարգեալ՝ վառեալ կային ի ցայգապահս:

Digitized by Google

## Բ

# ՑԱՅԳ

## ԱՐՏԱԴՐԱԽՏԻԿ ՆԱՀԱՊԵՏՔ

### Ի ՀԱՑԱՍՏԱՆ

ԴՐԱԽՏԻՆ յիշատակք և դիպուածք պարձեալ մեր ուշը գրաւեն, բայց այգերնիս ի ցայգ փոխուի. փոխուի մեր եղանակն ալ, և կարճատեւ երանութեան վիճակիս կու յաջորդէ թշուառութիւն անվերջ.

Ոչ եւս մարդ ընդ Աստուծոյ կամ հրեշտակի կենցաղակից՝
Ընդ հիւրս իւր, որ ընտանիք և մարդասէրք էին սովոր
Գալ բազմել ընդ իւր հանդոյն ընդ մըտերիմ բարեկամի,
Եւ լինել վայրի հաշոյն իւրում հաղորդ սեղանակից,
Անպարտաւ շնորհելով անդէն ներմին խօսել անմեղա։
Հարկ է ինձ այսուհետեւ փոխել ի ձայն ողբերգական
Ի մարդկային կողմանէ՝ նախատակած խէթ եւ կասկած,
Հեստանք ուխտանենգ և խռովութիւն վըստարանջող։
Իսկ յերկնից ի կողմանէն՝ սաստ առ անզեղեալս խորթացելոյ՝
Օտարութիւն, գաժանութիւն, ցասումն արդար և պատուհաս,
Եւ դատակնիք՝ որ զաղետից խուռըն խուժան եմոյծ յաշխարհ,
ԸզՄեղս և զչարաչուք ըստուեր նորա մըթին՝ ըզՄահ,
Եւ զաղցաւոր տառապանս՝ ըզկարապետսըն ժանտ մահուն։

Մեր նախածնողաց երջանկութեան վերայ վաւեր և անվաւեր քիչ յիշատակք, իսկ դժբաղդութեանն վերայ կան շատ աւելի յորոց իբրեւ ազգային զնախ յիշեալ Եպիփանու զբոյցն ի մէջ առնումք. «Ցերրորդում » ժամու չորեքշաբաթին երրորդի, եկեալ առանց իրիք պատճառի սատա- » նայ... և գտեալ զԵւա յեզր դրախտին և յարտաքին բոլորին, և սկսաւ » պատերազմել... Եւ շրջէր Եւա փառաւորելով զԱստուած յեօթներորդ » եզր պարունակին աստուածատունկ ազգի ազգի ծառոցն գեղեցկատեսիլ » քաղցրաճաշակ և բարեհամ, այլ և եօթնագոյն վայելուչ շարամանեալ » առ տեսութիւն հայեցողացն... Եւ գտեալ զնա թշնամին միայնակ՝ » խօսի ընդ նմա միայն բերանով օձին անիծելոյ... Իբրեւ լուաւ Նախա- » մայրն զնենգաւոր և զմահացու բանս, որ ծածկեալ էր աստուածային

» անուամբն՝ լինիցիք իբրեւ զԱստուած ճանաչել զբարի և զչար, աստուա- » ծութեան փառաց ցանկանալով առ ժամայն՝ որպէս ի մտաց անկեալ » եղեւ այլ յայնչափ խնդութենէն հատեալ եղեւ սիրտն զհետ անհաս » խորհրդոյն. ուստի և ամենայն բնութիւն արարածոց գիտացեալ թէ հա- » ւանեցաւ առնել զկամս խաբողին, (վասն զի դեռ եւս միաւորէր Արա- » րիչն ընդ արարածս, զի չեւ էր տակաւին անիծեալ առ ի Նմանէ). և » ամենեքեան առհասարակ հեծեծելով երկնեցին՝ հառաչս ի վեր առ Արա- » րիչն առաքելով... Լուսինն որ լի էր լրմամբ ի լոյս... ունայնացեալ » եղեւ առ ժամայն ի քաղցրահայեաց լուսոյն և նսեմացաւ, սակայն զբո- » լորակն ամբողջ պահելով, և այն էր փուլ առաջին...[33] »։

Երանազուրկ նախածնողաց առաջին զգալի փոփոխութիւնն ըստ բազ- մաց կարծեաց է զրկումն յարտաքին լուսափայլութենէ մը որ իւրեանց ան- մեղութեան զգեստն էր. յայս միտս ասէ մեր շնորհալի հոգեհրգուն վասն նոցա

Ցորում ցընծայր զուարճացեալ անտխրական խընդութեամբ,
Քանզի զԱստուած տեսանէր միշտ խոնարհեալ ի դրախտին,
Ցորմէ՝ զլուսոյն ճառագայթ տըպաւորէր ի յինքեան։
... Ի տխեղ պատմուճանին առաջնոյ
Որով պճնեալ զարդարէիր ի փառըս մարդն առաջին

Դարձեալ հնազոյն երգիչն. «Լոյսն ի հօրէ լուսոյ ծագեալ Լուսափայլ զարդարեաց զԱդամ ի դրախտին եղեալ անմահ տնկոյն երկրագործ։

... իսկ պատրանօք բանսարկուին ի դրախտէն արտաքս անկեալ
Ի յաւէժ կենդանութենէն, մահառիթ պտղով մեռեալն
Մերկացաւ ըղփառս անըստուեր լուսոյն։

Փոխանակ փառապանծ լուսոյ՝ ամօթոյ սեւութիւն կու պատէ զմեղու- ցեալ նախածնողս. փոխանակ երանական զգացմանց խիղճ և երկիւղ տագ- նապեն զյանցաւոր սիրտսն. արտաքին կերպարանաց ծածկոյթ առնուն կարելով զտերեւս թզենւոյ, (որ և ցուցանէ զբարեխառնութիւն կլիմայի երկրին յայնժամ, ուր հիմայ չի գտուիր այս ծառս) իսկ ներքնոյն ոչ ինչ գտանեն պաշտպանութիւն, մինչեւ ինքնին Տէրն, ըստ սովորութեան իւ- րում, որպէս իմանան մեկնիչք, երեկոյեան հովուն ատեն կու գայ ի դրախտն. յանցաւորքն սոսկալով ի հեզաձայն զգնալոյ նորա փախչին «և թաքեան Ադամ և կինն իւր յերեսաց Տեառն Աստուծոյ ի մէջ ծառոց » դրախտին։ Եւ կոչեաց Տէր զԱդամ, և ասէ ցնա, ո՞ւր ես։ Եւ ասէ լուայ

» զձայն քո ի դրախտի աստ՝ և երկեայ. քանզի մերկ էի և թաքեայ: Եւ
» ասէ ցնա. ո՞ պատմեաց քեզ թէ մերկ ես. բայց եթէ ի ծառոյն յորմէ
» պատուիրեցի քեզ՝ անտի եւեթ չուտել, կերա՞ր արդեօք ի նմանէ: Եւ
» ասէ Ադամ. կինս զոր ետուր ընդ իս՝ սա ետ ինձ ի ծառոյ անտի և կե-
» րայ: Եւ ասէ Տէր Աստուած ցկինն. զի՞նչ գործեցեր զայդ. և ասէ կինն.
» օձն խաբեաց զիս, և կերայ: Եւ ասէ Տէր Աստուած ցօձն. փոխանակ
» զի արարեր դու զայն, անիծեալ լիջիր դու յամենայն անասնոց և յա-
» մենայն գազանաց երկրի. ի վերայ լանջաց և որովայնի քո գնասցես,
» և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց. և եդից թշնամութիւն ի
» մէջ քո և ի մէջ կնոջդ, և ի մէջ զաւակի քո և ի մէջ զաւակի նորա.
» նա սպասեսցէ քում գլխոյ, և դու սպասեսցես նորա գարշապարի: Եւ
» ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիւնս քո և զհե-
» ծութիւնս քո. տրտմութեամբ ծնցես որդիս, և առ այր քո դարձ քո, և
» նա տիրեսցէ քեզ: Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայնի կնոջդ
» քոյ և կերար ի ծառոյ անտի, յորմէ պատուիրեցի քեզ անտի միայն
» չուտել, և կերար ի նմանէ, անիծեալ լիցի երկիր ի գործս քո. տրտմու-
» թեամբ կերիցես զնա զամենայն աւուրս կենաց քոց. փուշ և տատասկ
» բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի. քրտամբք երեսաց քոց
» կերիցես զհաց քո, մինչեւ դարձցիս յերկիր ուստի առար. զի հող էիր
» և ի հող դարձցիս: Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս. զի
» նա է մայր ամենայն կենդանեաց: Եւ արար Տէր Աստուած Ադամայ և
» կնոջ նորա հանդերձս մաշկեղէնս, և զգեցոյց զնոսա. և ասէ Տէր Աս-
» տուած. ահա Ադամ եղեւ իբրեւ զմի ի մէնջ գիտել զբարի և զչար:
» Եւ արդ գուցէ ձգիցէ զձեռն և առնուցու ի ծառոյն կենաց, ուտիցէ և
» կեցցէ յաւիտեան: Եւ եհան արձակեաց զնա Տէր Աստուած ի դրախտէ
» անտի փափկութեան՝ գործել զերկիր ուստի առաւ. և եհան զԱդամ և
» բնակեցոյց յանդիման դրախտին փափկութեան. և հրամայեաց քերովբէից
» բոցեղէն սրոյ շուրջանակաւ պահել զճանապարհս ծառոյն կենաց»:
(Ծննդ. Գ. 8–24):

Այս ծանրակշիռ պատմութիւն որ բոլոր մարդկային կենաց դատապարտութեան և փրկագործութեան վիճակն յայտնէ, համաշխարհական մտածութեանց նիւթ թողլով, միայն մեր պատմութեան վերաբերեալքը յուշ ածեմք: — Յետ յանդիմանութեան և վճռոյն Աստուծոյ որ այս սրտասարսուռ խօսքով կու լմննայ «հող էիր և ի հող դարձցիս», Ադամ կ'անուանէ իւր կողակիցը կեանս. բայց այս երկու գիրուածին մէջ հաւա-

նորէն միջոց մը անցաւ, զի չէր իսկ կարելի որ այնպիսի սոսկալի դատապարտութեանն արհաւիրքը մէկէն մոռնալով կամ անփութալով Ադամ իւր չորեաց պատճառ սիրելին ստածէր. և զարմանք չերեւայ ոմանց եթէ յետ մեղաց և դատապարտութեան՝ մէկէն ի մէկ դրախտէն դուրս չեմք հաներ մեր Նախահայրը, վասն զի Աստուծոյ իսկ դիտումը կու նկատեմք ոչ այնքան զանոնք ի դրախտէն մերժելն, որքան յաշխատութիւն և ի մահ դատապարտելն. զի և զայս ի սկզբանէ սպառնացեր էր և ոչ ի դրախտէն վռնտուիլն. ապա թէ ոչ ի նմին իսկ վայրկենի մեղացն պէտք էր վռնտուէին. իսկ Աստուած հաւանօրէն յետ բազում ժամուց երեկոյեան այցելութեան սովորական ժամը ընտրեց նաեւ դատաստանին: Յայսմ միջոցի Ադամ որ մարդ նշանակէ յեբրայական[34] որպէս և ի թուրք լեզու, կամ ըստ ոմանց հողեղէն կամ կարմիր հող (ադամա)՝ անուանէ զկողակիցն Հեւա կամ Եւա, ըստ մեզ կեանս, որ եբրայեցէն նշանակէ կեանք. և հոս մեզ պէտք է դիտեմք որ մեր լեզուին մէջ համաձայն են կին և կեանք բառք, և երկրորդն անեզակի է, առաջինոյն ալ յոգնականն՝ անսովոր ձեւով:

Յետ այս տիրական և իմաստասիրական գործոյ Ադամայ, որ իր երկրորդ մարգարէութիւն կրնայ կոչուիլ, Աստուած իբրեւ գթած և խնամող Հայր՝ կու պատրաստէ մեր Նախածնողաց հաստատուն զգեստ մը մաշկեղէն, յապաւէն մերկութեան և օդոց վնասու: Եւ դարձեալ կ'երեւի միջոց մը ինչուան յետ իբր ծաղրաբանութիւն մը Աստուծոյ ըսելուն «Ահա Ադամ » եղեւ իբրեւ զմի ի մէնջ» և զանոնք արձըկելուն արտաքս ի դրախտէն. և հոս ալ յայտնի կ'երեւայ վերը ըսածնիս թէ դրախտէն դուրս հանելն չէր Աստուծոյ գլխաւոր նպատակը, այլ զի չուտեն կենաց ծառոյն պտղէն՝ որով և չապրին յաւիտեան, այլ ըստ դատապարտութեան մեռնին ի ժամանակին:

Մինչչեւ արտասահմանելոց հետքը բռնելու և նոր բնակութիւնը ըրնտրելու, յետին աչք մը տանք մենք ալ դրախտին, թէ ի՞նչ եղաւ իր ծառերոյն. — Աստուծոյ կարգեալ զգուշութեան քերովբէն կամ քերովբէք և բոցեղէն սուրն կ'իմացընեն որ չաւրուեցաւ շուտով[35], այլ և բնական մեծ արգելք մը չկար ներս մտնելու, ոչ երկրի բարձրանալով և ոչ տակն ու վրայ ըլլալով, բայց թէ ինչուան ջրհեղեղ անաղարտ և անմուտ մնաց, յայտնի չէ բայց հաւանական է թէ այնչափ երկար ժամանակի մէջ երկրաբանական փոփոխութեամբք այլայլեցաւ. յառաջ քան զջրոց ներգործութիւն հրաբուղխից սաստկութիւնն կրեց[36]. թերեւս զանգկաց աւանդած կլի-

մայր փոփոխութիւնն ալ կամաց կամաց պարարտ և ջրաւէտ անկաբերութիւնը խանգարեց, վերջապէս կենաց ծառն ալ (որպէսի և ըլլայ, բայց միշտ սովորական պտղատու ծառ մը) իր զօրութիւնը կամ բուսական կեանքը կորոյս կամ կորաւ. և զի բուն ասոր մօտենալն էր արգիլեալն, այնուհետեւ դրախտն ալ իր շրջակայ երկրին նմանելով կրնար մարդկանց հաւասար բնակութիւն ըլլալ։ Կու լսեմք հոս շատ մը արեւելեան աւանդութիւններ[37] և բանասիրաց վէճեր բնութենէ այն երկու զարմանալի ծառոց և անոնց վախճանին, և այն բարեպաշտ կարծիքը թէ կենաց ծառոյն փայտէն կամ անոր ճիւղէն կազմեցաւ Փրկչին խաչն որ ջրհեղեղի տեղափոխութեամբ ի Պաղեստին կամ ի Լիբանան տարուեր էր ի նահապետաց Եբրայեցւոց. և զայս կարծիս երգէ մեր սրբազան շարականն ալ.

« Արեւելք ի դրախտին ընծայեցին զփայտ խաչին,
» Եւ եկեալ կատարիւր ի տեղւոջ կառափման,
» Բարձրանայր ի դիտին տարրեղէն փայտակերպն՝
» Սուրբ քաղաքին պահապան անձանց մերոց։

Դարձեալ միւսն.

» Ո՛վ պահապան որ ծագեցար յԵդեմայ
» Նշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն »։

Թողլով ծանր և վսեմ վկայութիւններ, յիշենք կամ աւարտեսք ռամկական և ախորժական աւանդութիւն Սիմանց լերանց դրախտասահման բնակչացն Հայոց, որք դեռ ի բարձրատափս բիւրաղբեր լերանցն կու ճանչնան զյատակ դրախտին։ Ըստ արտասահմանութեան նախածնողաց կ'ըսեն[38], Աստուած պահապան մը դրեր էր դրախտին որ արգելու զմարդիկ ի ներս մտնելէ. ուր անմեղ կենդանիք ազատ կենային, և ծովակներ մէջ պայծառ կարապներ կու լուղային։ Բայց դիպուածով օր մը պահապանին հեռու գտուած ատեն որսորդ մը ելլալով բարձրաւանդակին վերայ կու մտնէ ի դրախտն. կու զարմանայ բնականապէս թէ տեղւոյն գեղեցկութեանը և թէ կենդանեաց վերայ և աւելի այն սպիտակ կարապներուն վերայ, որոնց վերայ կու հասցնէ իր աղեղան դիպաձիգ նետերը. և ուրիշներէն զատ պահապանին սիրական կարապն ալ կու զարնէ և որսերը առած կ'իջնայ իր խորանիստ հովիտը ուր կու բնակէր։ Քիչ ատենէն պահապանն կու հասնի կ'իմանայ եղածը, և կսկծալով մանաւանդ իր սիրական կարապին վերայ կու լայ կու պաղատի երկնից որ պարգեւեն իրեն կորուսեալ մտե-

Digitized by Google

րիմը։ Իր առաջին հաւատարմութեան համար Աստուած կու լսէ աղաչանացն, և մինչդեռ որսորդն ուրախութեամբ և պարծանօք որսերը իր ընտանեաց դիմացը կու դնէր, սիրելի կարապն կենդանացեալ կու թռչի գտնալու յիւր ծովակը. բայց պարձեալ մահացու նետ մը կու հասնի և օդուն մէջ կու միրտուրէ զնա։ Այս բանիս Աստուած ալ բարկանալով կու ցամքեցընէ զծովաղբիւրն, քառառաջ գետերը կու դադրին գետինը կու չորնայ, բոյսերն կու նուաղին, սով կ'ըլլայ. շատ մարդ և անասուն կու մեռնին, վայրենի որսորդն ալ անոնց հետ. Աստուած զդրախտն իր բնակչօքն կու փոխադրէ անմարդաբնակ տեղ մը. բայց մնացեալ մարդկան աղաչանաց ալ լսելով՝ դրախտին հին լերան վերայ ուր որ այն սրբազան կարապին արիւնէն կաթիլ մը ինկեր էր աղբիւր մը կու բղխէ, և նորէն զերկիրը կու դալարացրնէ. ասկէ կու ձեւանան Պինկեօլի լճակներն և այդ անունը կ'առնուն. և ոչ միայն այդ լճակք այլ և պարձեալ չորս գետեր կու բղխեն անկէց և երկրիս չորս կողմը կու դիմեն, թէ և յետոյ քիչ մը կու փոխուի ընթացքնին և այս գետերս են Երասխ ընդ հիւսիս, Դուզլա չայ յարեւելս, Լեչիկ ընդ հարաւ, Դերջանայ ջուրն ընդ արեւմուտս։

Դտանեմք հիմայ մեր ի դրախտէն արտաքսեալ նախածնողաց երկրորդ ապանջական տեղը տեսնելու յաշխարհի մերում, որպէս և բազմաց ընդունելի է հոն ըլլալն[39]։ Սուրբ Գիրք յայտնապէս կ'ըսեն թէ Աստուած բնակեցոյց զանոնք յանդիման դրախտին. և զի արգելք դրած էր հոն մտնելու, յայտ է որ դրախտէն հեռու չէր իրենց առաջին բնակութեան տեղը. և ոչ միայն մերձաւորութիւնը այլ և կողմը կու նշանակուի ըստ ոմանց Թարգմանութեան, յարեւելս Եդեմայ ըլլալ. որ է ըստ իս ի գետահովտին Երասխայ, թերեւս ի հարաւակողմն դաշտին Բասենու։ Որք զդրախտը աւելի ընդարձակ կամ աւելի դէպ յարեւելս կու համարին Ադամայ բնակութեան տեղն ալ Մարաց կամ Ատրպատականի կողմը կու դրեն[40]. թերեւս աւելի պիտի հաստատուէին յայս կարծիս՝ եթէ գիտնային որ մերձ յԱտրպատական ի մեծն Աղբակ գաւառի Հաղամակերտ քաղաքն կայր, իշխանանիստ Վասպուրականի նախարարաց։ Նախայիշեալն Եպիփան օրուան մը ճանապարհաւ հեռու կ'դնէ զբնակութեան տեղին յԵդեմայ, և նոյն կու համարի ընդ Նայիդայ կամ Նոդայ ուր բնակեցաւ և Կայէն յետ սպանութեան եղբօրն, յանդիման Եդեմայ, և հաւանական է երկուքին բնակութիւնն ալ նոյն ըլլալ։ Իսկ այս Նայիդս[41] ոմանք ըստ Եբրայական նշանակութեան թափառիկ կամ երերուն Կայենի համար կ'իմանան, որպէս թէ երերական կենօք բնակեցաւ յանդիման Եդեմայ, բայց հաստատակաց

Digitized by Google

կարծիք է թէ յատուկ անուն է տեղւոյն, որ թերեւս նոյն պատճառաւ տառապեալ և աստանդական կենաց նախահարցն՝ կամ Նայէնի, այնպէս բուեցաւ. և այնպէս թարգմանեցաւ ի Մովսէսէ յեբրայականն. որ ըստ մեզ կրնայ ըսուիլ Երերիճ, որով անուամբ զանազան տեղիք կան ի Գեղաքունի, ի Սոթ և ի Վայոց ձոր Սիւնեաց, և մօտագոյն եւս Երերուեքն ի Շիրակ գաւառակից Բասենոյ: Քիչ մ'աւելի կամ պակաս մօտ՝ սակայն այս սահմաններէն հեռու չէր Ադամայ տունն, և ոչ մինչեւ ի Սէյլան կղզին բացաձգեալ, որպէս ասեն արեւելեայք և մահմետականք, և ի մերոցս իսկ ոմանք[42] ուր և ի միջավայր կղզւոյն ամբառնայ քարալեառն, յորոյ գագաթան ցուցանեն ոտից կնիք մը, զոր ասեն Ադամայ ըլլալ՝ երբ ի դրախտէն կամ յերկնից անկաւ հոն. և ոտից կնքոյ մեծութիւնն 70 կանգնաչափ, այնքան մեծ հսկայ սեպելով զԱդամ թէ և երկու ոտնաչափէն աւելի մեծ չըսեր ականատես մը[43]. այս առասպելի սկիզբը ուստից գալն յայտ չէ, բայց բաւական հին է, և մինչեւ հիմայ Ադամայ Սար կ'անուանի տեղին, El Pico d'Adam ըստ Բորդոգալաց:

Ադամայ հասակին, գեղեցկութեան, գիտութեան, մարգարէութեանց, լեզուին, գրուածոց, գիտից և այլն վրայ եղած աւանդութիւնները կամ առասպելները՝ կը թողումք մեզմէ հեռու. ճշմարիտ և հաւանական եղածները յիշեմք. որոց առաջինն է Ադամայ ապաշխարութիւնն իր յանցանաց վերայ, և զղջական կեանք մը անցընելն, որ թէ Ս. Գրոց և թէ Ս. Հարց վկայութեամբք և եկեղեցւոյ հաւանութեամբ ընդունելի է, մանաւանդ յարեւելեան եկեղեցւոյ և ի մեզ, որք Ս. Նախահարց պարագլուխ կարգեն և տօնեն զԱդամ: Այս ապաշխարութեան ոգւով զգուանօք, կ'աւանդեն գրեթէ ամենեքեան, որ Ադամ չէր մօտենար առ Եւա, մինչեւ Աստուծոյ հրամանաւ կամ իր կամօք յանձն առաւ մահկանացուաց հայր ըլլալ: Այս հրաժարման և կուսական միջոցը ոմանք 5 օր միայն կու դնեն, ոմանք շատ տարիներ, ինչպէս 15 կամ 30 կամ 70 և մինչեւ 100[44]. հաւանական է դրախտէն ելլալուն և Կայէնի ծննդեան միջոց ժամանակ մը դնելն. և այդկէ ետեւ կամ Կայէնի ծնունդէն կու սկսի պատմական ժամանակն և ամենայն ժամանակագրութիւնք. անկէ առաջ թէ դրախտին մէջ և թէ անկէ դուրս եղած ժամանակ, թէ օր թէ տարի յայտնի չէ. Ադամայ 930 տարուան կեանքն ալ այդկէ կու սկսի համրուիլ[45]:

Ուրեմն ի սկիզբն կամ յառաջնում ամի ընդհանուր պատմութեան և ժամանակագրութեան՝ եղաւ առաջին ծնունդ նախահարցն, Կայէն որ նշանակէ յեբրայեցին Ստացուած. և այսպէս անուանեց Ադամ ըսելով «Ստացայ

Digitized by Google

» մարդ Աստուծով» և երանի թէ Աստուծով ալ պահեալ ըլլար նախածին մարդն այն. որ մարդկութեան դուռը բանալով անոր ամենայն դառն և անարգ կրից սկզբնաւորն ալ եղաւ. թէ և զղջացեալ Ադամ, այլ ընդ անիծիւք էր, և ապաշխարեալ բնութեամբ ծնաւ իր անդրանիկը։ Շատք կ'աւանդեն թէ իրեն կին եղած քոյրն ալ իրեն արգանդակից էր և կոչէր ըստ զանազանից Կալմա, Կալմանա կամ Քողբաւաւն կամ Կլիմա, Լեբուդա, կամ Ազուրա կամ Ազրուն, Ասուզա կամ Աւաւ Կայինուհի. այսպէս և վասն Աբէլի և ուրիշ զաւակաց կ'ըսեն ջուխտակ ծնած[46]. սակայն մեզի հաւանելի չերևար, այլ նախ և միայն ծնած Կային, և յետոյ այլք։ Անոր և Աբելայ ծննդեան միջոց տարի մը կ'իմանան մեկնիչք հասարակօրէն. բայց որովհետև Ս. Գիրք Աբէլի ազգաբանութիւն չեն ըներ, յայտ չէ ծննդեան ժամանակն. զոր աւանդողք 30 տարի յետ Կայէնի համարին[47]. և իրեն ալ ծննդակից քոյր և կինը անուանեն Աբէլուհի, կամ Եմա, Եղմուզպա, Ազեառվրա, Դելբորա կամ Լեպորա կամ Լեբովրա կամ Լեաուրա, Ովևն կամ Ավիևա, Դեկլա կամ Եդոկլա և այլն։

Հարկն և Աստուծոյ հրամանն իսկ կամ վճիռն ստիպեր էր զԱդամ երկրագործութեամբ իր կենաց ապրուստն ճարելու. երկրագործութեան անբաժան ընկեր է անասնադարմանութիւնն, զոր նոյնպէս հօգայր Ադամ քանի որ ուրիշ օգնական չունէր. մեր աւանդասիրաց մէկն յայսմ ալ Աստուծոյ խնամքը ցուցանէ. «Եւ բերեալ (հրեշտակի) եզն՝ հնազանդեցոյց » նմա, նովաւ վարել և վաստակել, գործել զերկիր, և ի պտղոյ նորա » ուտել և լիանալ. և հրամայեաց ի պտղոյ անտի բաժին հանել Աստու» ծոյ»։ — Ասոնք էին Ադամայ սովրեցուցած արուեստքն առ որդիս իւր, որոց անդրանկանն՝ Կայէնի՝ երկրագործութիւն յանձնեցաւ, Աբէլի՝ հովուութիւն։ 30 տարուան էին, ըստ Եպիփանու, երբ աշխատիլ սկսան ի դաշտի և յարօտս. իսկ ըստ այլում 20 տարուան էր Աբէլ առաջին հովիւն և անմեղ ու ցանկալի հովուութեան նախատիպն, երբ հօտը սարաւ արածելու։ Երկուքին ալ ազդած էր հայրն մարդկութեան երախտապարտ զգացմունք և պաշտօն առ տուիչն ամենայն բարեաց. և որպէս առաջին յանցաւոր, այնպէս ալ առաջին քաւարար կամ քահանայ եղած էր, պատարագաւ պաշտելու զԱստուած։ Ըստ այսմ և որդիքն յանդիման դրախտին իրենց վաստակոց արդասիքէն մասն կամ ողջակէզ հանէին Աստուծոյ. բայց իւրաքանչիւր ըստ սրտի իւրում, Կայէն ակամայ և ագահօրէն, Աբէլ առատապէս և կամովի. վասն այնորիկ Աբէլ հաճոյ և սիրելի էր Աստուծոյ և ծնողացն, Կայէն ոչ նոյնպէս։ Ասոր նախանձն նորա և եղ-

Digitized by Google

բայրասպանութիւն որում ուրիշ և աւելի զգալական պատճառ մը կ'աւանդէ Եպիփան և այլք. այսինքն զնախանձ Կայէնի ընդ քոյրահարսն Աբելի ընդ Աբելուհին Ելմուզպա, զոր փոխանակ Ծննդակցին իւրոյ կ'ուզէր առնուլ յեղբօրէն, և Ադամ ոչ թողոյր: Եւ վասն այսորիկ, ասեն, ուզեցին զոհ մ'ալ մատուցանել և յԱստուծոյ նշանով մը իմանալ իր կամքը: Այս պատարագն է զոր Ս. Գիրք այլ յիշեն, միանգամայն և զնիւթ պատարագի և զընտրութիւն Աբելի յանդրանկաց և ի պարարտաց հօտին, զհաճիլն Աստուծոյ ընդ պատարագ նորա և զչհաճիլն ընդ պատարագ Կայէնի. բայց զնշան հաճութեանն կամ տհաճութեան ոչ յիշեն. որ ըստ աւանդեղաց էր հողմն և հուր: Կայէնի զոհն կամ նուէր էր հասկ ցորենոյ, այլ վատթ, և փուչ. իսկ Աբելին՝ ըստ Եպիփանու ընտիր «գառն մի տարեւոր » արու սպիտակ որպէս զձիւն նորաբեր, ամենեւին ոչ ունելով արատ » ինչ... յեղջերացն մինչեւ ցոտս և ցծայրս կճղակացն». կամ ըստ այլոյ վարդապետի մերոյ գառն մի՝ որ «հազար և մէկ պուտ ունէր», զոր վաղուց պատրաստել էր Աստուծոյ նուէր բայց սպասէր որ եղբօր հունձքն հասնին և միասին մատուցանեն: Մատուցարան կամ սեղանն էր ըստ Եպիփանու մօտ ի դրախտն երեք ասպարիզօք, «տեղի լալոյ և աղօթե- » լոյ առ Աստուած... Եւ էր անդ բնաբար վէմ հաստատեալ իբր քառա- » ռաջ... բարձրագոյն իբրեւ երեք կանգնաւ»: Շատ հաւանելի է այդպէս բարձրացեալ քարի մը վերայ պատարգեալ նախահարցն, վասն զի ամենէն հին սեղանքն, յաւուրց Աբրահամու, այդպիսիք են առ ամենայն ազգս: Կայէնի նուէրքն սեւ ամպով և մրրկոց ցրուեցան ըստ աւանդութեան, Աբելին պայծառ կրակով մը ընդունելի եղաւ և լոյսն իջաւ Աբելի վերայ[48]: «Եւ տրտմեցաւ Կայէն յոյժ. և խոնարհեցան անկան երեսք իւր: Եւ ասէ » Տէր Աստուած ցկայէն. Ընդէ՞ր տրտմեցար կամ ընդէ՞ր խոնարհեցան » անկան երեսք քո. ո՞չ ապաքէն եթէ ուղիղ մատուցանես և ուղիղ ոչ » բաժանես մեղար: Լուռ լեր, առ քեզ լիցի դարձ նորա, և դու տիրես- » ցես նմա»: (Ծն. Դ. 67): Ցեալին խօսքով կ'իմացընէ Աստուած որ Կայէն իբրեւ անդրանիկ ունէր իրաւունք մը եղբօրը վերայ, և աստի այլ գուշակուի որ ոչ տարւով մի՝ այլ տարեօք մեծ էր քան զնա: Բայց և աստուածային յանդիմանութիւնն և մխիթարութիւնն անգամ չազդեց ոխակալ սրտին. որ առելութիւն և վրէժ մտածէր եղբօրը և անտի բերաւ ի խորհուրդ սպանութեան՝ առաջին և սրտառուչ սպանութեան յանդիման անմահունակն Եդեմայ, արժանի քան զամէն առիթ ողբերգութեան, որպէս և զբազումս յորդորեաց նկարել զնոյն, յորս վեհագոյն կեաներ Գերմա-

նացի։ Ս. Գիրք համառօտիւ կու նշանակեն այս առաջին մարդասպանութեան դիպուածը[49]. «Եւ ասէ Կայէն, ցՀաբել եղբայր իւր «Եկ երթիցուք ի դաշտ։ » Եւ եղեւ իբրեւ չոգան ի դաշտ անդր, յարեաւ Կայէն ի վերայ Աբելի » եղբօր իւրոյ և սպան զնա»։ (Ծնն. Դ. 8)։

Աբելի կենաց կամ սպանման տարին ալ յայտնի չէ, իսկ կարծիքն են թէ էր 20 կամ 30 կամ 34 կամ 40 կամ 129 տարուան։ Իսկ սպանման տեղն կոչեցաւ Բեկրան երկրի, ըստ պատմչի միոյ[50] մերոյ անշուշտ Աստուծոյ առ Կայէն ըսածէն հետեցընելով, թէ «Գոչումն արեան եղբօր » քո բողոքէ առ իս յերկրէ և արդ անիծեալ լիջիր դու ի վերայ երկրի, » որ եբաց զբերան իւր ընդունել զարիւն եղբօր քո ի ձեռաց քոց»։ Այս առաջին անպարտ արեան համար կ'աւանդէ վարդապետ մ'ալ, թէ և յետ թաղելոյն ի ծնողացն չէր պաղրէր ի բղխելէն, այլ հողէն դուրս կ'ելլար մինչուան որ Ադամ ալ մեռաւ և ի հող մտաւ, ապա Աբելի մարմինն ալ հանդարտեցաւ իր հօրը քով։

Այս առաջին և պժգալի սպանութեան, որուն թատր եղաւ մեր աշխարհը, Աստուած եղաւ դատաւոր և վրէժխնդիր. և անզեղջ ու լիրբ սպանողը անիծեց, տառապանօք աշխատիլ գործել զերկիր, և չգտնալ անկէ ապրելու բաւական զօրութիւն, վասն այնորիկ երերեալ և տատանեալ կեանք մը անցընել տեղէ տեղ։ Իմացաւ Կայէն պատժիցն սաստկութիւնը, և յուսահատ և զզուելի կենաց դառնութիւնը. վասն այնորիկ լաւագոյն համարէր զմահ, փոխանակ մահու եղբօրն, և սպանուիլ փոխարէն սպանմանն. սակայն Աստուած սպանչին խիղճն իրեն կենդանի դահիճ թողուց, գոնէ շատ երկայն ատեն, ի սոսկումն տեսողաց և ապագայից. և սպառնացաւ ալ եօթնպատիկ պատուհաս անոր՝ որ զԿայէն սպաննէ. նշան մ'ալ դրաւ վրան զոր տեսնելով չսպաննեն զնա։ — Այս նշանն շատք կարծեն սեւութիւն մը երեսաց, կամ ճակտին վերայ սեւ պիսակ մը կամ բոր մը. և ոմանք ռամկաբար՝ կոտոշ մը, որով անասնոց նմանութիւն մ'ալ կ'ընծայեն. և ոչ միայն կոտոշ՝ այլ և կ'ըսեն ոմանք (ի մերոցս) ձայնաւոր կոտոշ որ միշտ գոչէր «Կայէն եղբայրասպան» այսպէս և ուր անցնէր «սար ու քար » ձայնէր և ասէր Կայէն եղբայրասպան[51] »։

Յետ անիծիցն Կայէն բնակեցաւ ի Նայիդ (Երերօնք) որ էր ըստ Մեթոդիոսի՝ «ի դաշտին ուր սպանաւ Աբէլ»։ Եւ յետ այնորիկ ըստ Ս. Գրոց ծնաւ իր որդին Ենովք, որ նշանակէ յերրայեցին Նուիրեալ. և այս անուամբ քաղաք մ'ալ շինեց. որ է առաջին քաղաք շինեալ ի վերայ երկրի. որոյ տեղն ոմանք հեռու աշխարհներ կու բնտռեն ուր որ զԵդեմ

*ալ կու տանին. իսկ ոմանք Հեճիովքի կոչեալ ժողովրդեան երկրին մէջ, որ էր ի Հ. Մ. Ծայր Պոնտոսի ընդ մէջ Ճորոխի և Փասիսի գետաբերանոց. այլ տեղն պէտք էր ըլլալ ի Նայիրի յարեւելս Եդեմայ, և ոչ յարեւմուտս*[52]*։ Տեղէն աւելի նշանելի է չէնքն, քաղաք կոչմամբ, որ ցուցանէ բաւանդակ ընդարձակ և ամուր շինուած մը. զոր կ'երեւայ թէ շինեց Կայէն երբ բաւական շատցեր էին Ադամայ որդիքն և թոռունք և զինքն ատողք, որոց թշնամութենէ վախնալով գուցէ այդ պատսպարանը կանգնեց։ Կայէնի կ'ընծայուի (Յովսեպոսէ) գիւտ կամ հնարք չափուց և կշռոց, սահման բաժնելու, և աղեղն որսորդութեան, թերեւս և գործի պատերազմի. որուն այլեւայլ զէնքերն ալ նոյնպէս Կայէնի կամ որդւոց Կայէնի կ'ընծայեն։ Եւ զնոյն ինքն Կայէն հասարակաց աւանդութիւնն իւրահնար զինուն զոհ եղած կու ճանչնայ, սպանեալ ի Ղամեքայ ի թոռնորդւոյ թոռան իւրոյ, այսինքն իր վեցերորդ ազգի սերունդէն. որուն համար կ'ըսեն Ս. Գիրք յետ աւարտելոյ զազգաբանութիւն Կայենի, թէ Ղամէք երկու կին ունէր Ադդա և Սելլա որոց ըսաւ օր մը. «Լուարուք ձայնի իմում կանայք Ղամեքայ և » ունկն դիք բանից իմոց. զի այր սպանի ի վէրս ինձ և երիտասարդ ի » հարուածս ինձ. զի եթէ եօթն անգամ վրէժք խնդրեսցին ի Կայենէ, » ապա և ի Ղամեքայ եօթանասնեկին եօթն*[53] *»։ Ասոր վերայ կ'աւելցընէ աւանդութիւնն, թէ Կայէն անտառոց մորթ հագած անտառաց մէջ թափառէր. օր մը Ղամէք ալ որսի ելած՝ անտառուն կարծեց զնա (մանաւանդ որ աւանդութիւնն կոտոշաւոր համարի զԿայէն) և նետահար սպանեց. յետոյ իմացաւ որ իր թշուառ նախահաւն էր և ցաւելով պատմեց իր կանանցը. որք և աղօթիւք հաշտեցուցին զԱստուած և Ղամեքայ վերայ պատիժ չեկաւ։ — Կայենի մահուան*[54] *տարւոյն վերայ ալ զանազան կարծիք և խնդիր եղած է. շատք* 860 *տարի ապրած կ'ըսեն. իսկ ոմն ի մերոց*[55] *ասէ. «Զկայէնի ամքն հաւաստեաւ գտի ի պատմագրի իմն, որ* 870 *ամաց » սպանաւ, ասէ»։ Այսչափ երկար կենաց տուեն Կայէնի միշտ յերերքս ի Նայիդ միայն հաւատալի չէ, բայց թէ և հեռացեալ՝ ոչ աւելի քան զհայաստան։ Սեւանայ ծովուն արեւելեան հիւսիսային ծայրը, Ուտիոյ սահմանակցութեան գլուխը կ'ըսուի Կայենոյ ձոր կամ աշխարհ, ուր և Կայէն բերդն անուանի յաւուրս Բագրատունեաց հարստութեան. եղբայրասպանին անուամբ և յիշատակաւ՝ թէ ուրիշ պատճառաւ այսպէս կոչուած, չէ յայտ։*

*Դառնանք հիմայ առ կրկնակի սգաւոր նախահարս մեր, որոց ցաւք և տրտմութիւն սաստկացուն սպանմամբ արդարոյն Աբելի. և ըստ ոմանց* 100 *տարի սգով և հրաժարմամբ ապրեցան, և յետոյ հրամանաւ Աստու-*

Digitized by Google

ծայ ծնան զՍէթ 230 տարի յետ ծննդեան Կայէնի, վասն այնորիկ և այդպէս անուանեաց զնա Ադամ որ թարգմանի Տուրք կամ Մխիթար. «Զի » յարոյց ինձ Աստուած զաւակ այլ փոխանակ Հաբելի զոր սպան Կայէն»։ Մեծ եղաւ նախահօրն խնդութիւնը ի վերայ Սեթայ, զի ոչ միայն փոխանակ սիրելւոյն և արդարոյն ընծայեցաւ, այլ և նման նմա եղաւ վարուք, և կերպարանօք նման Հօրն աստուածաստեղծ նախամարդոյն. վասն զի ասէ Գիրքն «Ծնաւ ըստ կերպարանաց իւրոց և ըստ պատկերի իւրում, և » անուանեաց զանուն նորա Սէթ» (Ծննդ. Դ. 25). Սէթ եղաւ բնիկ ժառանգ և յաջորդ Ադամայ, և Աստուծոյ գիտումն և օրհնութիւնը դարձուց իւր և իւր ցեղին վերայ։ Թէ յառաջ քան զնա զատ ի Կայենէ և յԱբելայ ուրիշ որդիք ալ ունէի՞ն նախաստեղծքն՝ Ս. Գիրք չեն ըսեր, նոյնպէս թէ Աբէլ զաւակ թողուց. առաջինին շատ հաւանական՝ երկրորդն ոչ. նոյնպէս յայտ չէ թէ Կայէն յառաջ քան զԵնովք կամ յետոյ ունէ՞ր ուրիշ զաւակներ. մեր աւանդապատում վարդապետաց մէկն կ'ըսէ թէ Սեթայ ծնած ժամանակ՝ Կայենի ցեղէն 380 կին կար, 24 մարդ։

Յետ Սեթայ՝ Ադամ «Ծնաւ ուստերս և դստերս», և ապրեցաւ 700 տարի ալ. այս որդւոց մէջ մէկն կ'անուանէր[56], ըստ աւանդութեան ոմանց Մամիկոս և քոյրն Գալեմա կամ Խեշմանա, եթէ չեն շփոթեր ընդ քեռ Կայէնի[57]։ Կաւ յիշուին ի մերոցս և երեք դստերք Ադամայ, Կամա, Զամբուրա, Ամովկա։ — Բոլոր կեանքն Ադամայ 930 տարի տեւեց ի Կայէնի ծննդենէն սկսեալ. և հաւանօրէն չհեռացաւ իր առաջին բնակութենէ Եդեմայ դիմացէն, լեռնակողմ մը, որուն արեւելքն էր Կայէնի բնակութիւնն, և չորս դին իր միւս որդւոց և Սեթայ բնակարանքն։ Ասոր անդրանիկն Ենովս (որ նշանակէ Մարդ ծնեալ յամի 335) նմանաբարոյ հօրն՝ սիրելի և հաճոյ եղաւ Ադամայ և Աստուծոյ. և «նա յուսացաւ կոչել զանուն » Տեառն Աստուծոյ», ըստ Գրոց՝ որ հաւանօրէն նշանակէ թէ Ենովս նախ սկսաւ աստուածային պաշտաման մէջ ծէս և հանդէս մոցընել[58] և համարձակ հռչակել Կայենեան ամբարիշտ ցեղին առջեւ. և իբրեւ քահանայապետ մը եղաւ, և իր որդւոց թողուց այս պատիւը. որով անոնք ըսուեցան Որդիք Աստուծոյ, իսկ Կայենեանք Որդիք մարդկան. և այս խտրութեան ականատես էր նախահայրն, որ և մինչեւ իր թոռանը թոռը Մաղաղայէլը տեսաւ ըստ Եօթանասնից թարգմանութեան Ս. Գրոց, իսկ ըստ Հրէից՝ մինչեւ ութերորդ ազգը, այսինքն տեսաւ զՂամէք ալ զհայրն Նոյի։ Մեր նախամօր Եւայի վերայ բան մը չեն գրուցեր Ս. Գիրք, բայց միայն կանանց առաջին պաշտօնը յիշեն, որ է մայրութիւն. հասարակաց կարծիք

Digitized by Google

*է թէ մեռաւ յառաջ քան զԱդամ. ըստ Եպիփանու 3 ժամ միայն յառաջ քան զայրն, որ և լալով կնոջ մահուանն վերայ՝ աւանդեց հոգին, երկուքն ալ առանց հիւանդութեան։ Յառաջ քան զիրենք անշուշտ իրենց զաւակաց և թոռանց շատի մահը տեսեր էին, յետ Աբելին, և հաւանօրէն նաև զԿայէնի. բայց Ս. Գիրք, որ զԱբելի սպանումն պատմէ, նաև նոյն իսկ Ադամայ աստուածաստեղծ և անմահական մարդուն համար ասէ այն բառը՝ որ զամէն սիրտ խոցէ, Մեռաւ։ — Անվրէպ սահման արդարութեան Աստուծոյ։*

*Գերեզման նախահօրն հաւանօրէն իր արտաշխարութեան վայրէն հեռու չէր, յանդիման Եդեմայ, ուր և Եպիփանեան[59] աւանդութիւն կու դնէ աղօթից սեղանոյն քով թաղած, Աբելի աջ կողմը, զԵւա ալ յաջմէ Ադամայ. ուրիշ հնաւանդ մ'ալ, Ալքանուզ կոչէ զԼեառն որոյ քարայրին մէջ կու թաղուէին առաջին նահապետքն, և տեղին սրբազան կու համարէր. Նոյ յառաջ քան զմտնելն ի տապան, կ'առնէ, հանեց զմարմին Ադամայ և Եւայի և լալով վերջին ողջոյն տալով հանդիպակաց դրախտին՝ դրաւ ի տապանին. յետոյ աւանդեց Սեմայ կամ Մելքիսեդեկի որ տարաւ և ի Գողգոթա թաղեց, ի տեղին ուր կանգնեցաւ խաչն Քրիստոսի. այս կարծիք էր շատ Ս. Հարց և հին Քրիստոնէից, որք մատուռ մ'ալ շինեցին Ադամայ կարծեալ թաղման տեղւոյն վերայ. և ինչպէս նախ յիշեցինք՝ յիշատակին այլ կատարեն արեւելեայք. արեւմտեան տօնացուցայց ոմանց մէջ ալ գրուած է յիշատակն Ադամայ ի 24 ապրիլի կամ 24 դեկտ։ — Մահմետականք ինչուան ի Մէքքէ կու ձգեն Ադամայ Գերեզմանը, ուրիշներն ի Սերանտիպ կամ Ջերանտիպ Սէյլանոյ[60]։ — Ալքանուզայ քարածերպ գերեզմանաց մէջ թաղեցան ըստ Եպիփանայ՝ յետ նախածնողացն Աբելուհի կուսահարսն որ իր մաքուր փեսային և ծնողաց գերեզմանացը սպասաւորէր, իբրև առաջին սգաւոր կուսան և անապատ սրբացեալ, նախօրինակ եկեղեցւոյ ինքն ալ 930 տարի ապրեցաւ ըստ աւանդութեանն, և թաղեցաւ ընդ մէջ Ադամայ և Աբելի. ապա և Սէթ և ամենայն գլխաւոր նահապետքն մինչև ի Ղամէք, 20 ոգիք։*

---

# Գ

# ՈՐԴԻՔ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՒ ՈՐԴԻՔ ՄԱՐԴԿԱՆ

*Բոլոր պատմութեան հիմն կամ նպատակն է բարոյականն գործոց մարդկան, բարոյականն ալ հիմնեալ է ի զանազանութեան բարուց՝ կամ գործոց նոցա. որ եթէ չըլլար՝ պատմութիւնն ալ հաւաձեւ դիպուածոց շարունակութիւն կու լինէր: Բարուց և գործոց զանազանութիւնն ալ երկու գլխաւոր և էական կերպարանաց վերայ է, որ են բարին և չարն: — Մարդն բարի ստեղծաւ և էր յառաջին վիճակին. յանցանօքն չարացաւ, զղջմամբ ի բարութիւն վերադարձաւ, առանց ի սպառ ազատելու ի չարութեան վտանգէն. իր ծնունդքն ալ այս բարուց խառնութիւնը յայտնապէս ցուցին, և զնոյն շարունակէ մարդկութիւն բովանդակ: Ցաւուց Կայենի և Աբելի եղաւ այս զանազանութիւնս, այս մեծ և ցաւալի հերձուած մարդկութեան չարաց և բարեաց, որ միայն մարդկային սեռին սպառելովը պիտի վերջանայ. և միշտ պիտի ըսուին և ըլլան մարդիկ ոմանք չարք և ոմանք բարիք, թէ և ամէն պատաստան չըլլայ ճշմարիտ, այլ և հակառակ ալ պատուին: Այս զանազանութիւնը նախահայրն մարդկութեան նախ Աբելի և Կայենի, և ապա ասոր և Սեթայ զաւակացը մէջ տեսաւ և իր մահուընէն ետեւ այլ աւելի զատուեցան երկու խումբքն կամ ցեղք, և աշխարհիս ամենէն հին հերձուածն կամ բաժինքն ձեւացուցին. Սեթայ ցեղն ըսուեցան Որդիք Աստուծոյ, աստուածապաշտութեան և հայրենի աւանդութեան հետեւելնուն համար, Կայէնի ցեղն Որդիք մարդկան, Աստուծոյ պաշտօնը կամաց կամաց թողլով և բնութեանն և մտաց ուժի միայն հետեւելով. — առաջինն կրօնական պաշտամունք և ծէս, պարզութիւն, միաբանակեաց օրէնք, և սգաւոր կեանք մը ընտրելով. երկրորդն՝ կենաց դիւրութեան ջանալով արուեստից և զբօսանաց հնարք ընտրեցին, և նախագտակք եղան այս երկու կենաց հայթայթմանց՝ առանց որոց հիմայ քաղաքակրթութիւնն չի կրնար կենալ: Ինչպէս կենաց սկիզբն այսպէս և անոր վայելչութեան և դիւրութեան պէտքն հնարեցան յաշխարհի մերում և սփռեցան յօտար աշխարհս: Նախաջրհեղեղեան աշխարհ ըստ Եօթանասնից և հաւանագոյն հաշուի 2242 տարի տեւեց. այսչափ երկար ժամանակ*

ի հարկէ մարդիկ բազմացեր և Հայաստանէն դուրս ալ ելեր էին, աւելի դէպ յարևմուտս և մանաւանդ ընդ հարաւ ձգուեցան՝ Հայոց բարձրաւանդակին իջած գետերուն հետ։ Այս միջոց ժամանակի մարդկան մեծ մասն մի, գոնէ կէսն՝ Հայաստան էր, և անկէ ետեւ ալ այս աշխարհս միշտ բազմաբնակ եղաւ. և Ս. Գրոց յիշեալ դէպքն անոր պատշաճին։ — Սեթ և իւր նմանաբարոյ պայազատքն չհեռացան իրենց նախահօր բնակած տեղէն և Եդեմայ սահմանէն։ Թէ ասոնց և թէ Կայենեանց վերայ աւանդողք ոչ սակաւ զրոյց ունին, յորոց զյարմարագոյնս ընդ Ս. Գրոց միայն կրնամք յիշել։

Յետ մահուան Նախահօրն՝ Սեթ որ 700 տարուան էր՝ ժողովեց իր հաւատարիմ ազգատոհմն ադամաբնակ լեռնակողմն և բոլորովին զատուեցաւ ի Կայենեանց[61]։ Կ՚աւանդեն Սեթայ համար թէ շատ փափագանօք ընդունեցաւ ի պահապանէ դրախտին ճիւղ մը ի կենաց ծառոյն. և թերեւս այն ճիւղէն համարին այլք «զգաւազանն Սեթայ», որ նշանագործ գաւազանաց առաջինն է, և ի հայերէն ախտարաց գիրս այլ յիշուի։

Սեթայ կինն որ անշուշտ և իր քոյրն էր, կոչեն Ազովրա կամ Ազրա.
Իսկ իւր բարեպաշտ որդւոյն Ենովսայ կինն՝ Նուենա, կամ Նուան.
Ենովսայ որդւոյն Կայնանայ՝ Մալեդայ, կամ Մաղաղեղա.
Կայնանայ որդւոյ Մաղաղիէլի՝ Դինա, կամ Դենար.
Մաղաղիէլի որդւոյ Յարեդի՝ Բառաղ, Բարաք
Յարեդի որդւոյ Ենովքայ՝ Ադերլան, կամ Ադներ. Յադներ
Ենովքայ որդւոյ Մաթուսաղայի՝ Ադենա, կամ Եդնա.
Մաթուսաղայի որդւոյ Ղամեքայ՝ Բեդնա կամ Բեթնա. Բեդնա
Նոյի՝ որդւոյ նորա՝ Նեմիա կամ Նոյեմզարա։

Ասոնց մէջ նշանաւորք ի Ս. Գիրս են Մաթուսաղա երկարակեցութեամբ քան զամենայն մարդ յիշատակեալ, վասն զի 969 տարի ապրեցաւ. և իւր հայրն Ենովք, որ յետ 365 տարի ապրելոյ աստուածահաճոյ կենօք փոխեցաւ յԱստուծոյ ի լաւագոյն վիճակ, և ըստ հարց աւանդութեանն ի դրախտն. և ըստ հասարակաց՝ մինչեւ ցարդ անմահ մնայ ընդ Եղիայի մարգարէի, ընդ որում մերձ ի կատարած աշխարհիս պիտի գայ յերկիր վկայութիւն տալու աստուածամոռաց մարդկան և ի սոցանէ նահատակուելու։ Ըստ աւանդապատմից Ենովք լսելով ի նախահարցն թէ Ադամ վասն ուտելոյ զարգելեալ պտուղն մերժեցաւ ի դրախտէն՝ ուխտ ըրաւ ամենեւին պտուղ չուտելու, և թէեւ պարտէզ մը տնկած զարմանէր և թողոյր որ ուզողն առնու ի պտղոցն, բայց ինքն ընաւ չէր ուտեր, վասն այսորիկ արժանի եղաւ

Digitized by Google

գրախտին կենսապահ ծառոյն վայելման։ Այս զարմանալի նահապետիս կ'ընծայեն գիրք մը մարգարէութեանց, որ անվաւեր Ս. Գրոց կարգն անցած է, և կու գտուի հին թարգմանութեամբք. և զի Յուդա առաքեալն իսկ հատուած մը կու բերէ ի մարգարէութենէ Ենովքայ (14. 15) յորում կ'իմացընէ զահաւոր գալուստն Աստուծոյ ի դատաստան, անտարակոյս է Ենովքայ գրութիւնն, բայց շատ տարակուսական և անընդունելի հիմկու գիրքն յանուն Ենովքայ[62]։ — Իսկ գրոյ գիտն ոչ միայն հին է ցժամանակ Ենովքայ, այլ ոմանք և Ենովսայ կ'ընծայեն թոռին Ադամայ, և կ'ասեն թէ մարգարէանալով որ աշխարհս վասն բազմանալոյ մեղաց մարդկան՝ պիտի աւերի առ ժամանակ մի ի սպանումն մեղաւորացն, նախահարց աւանդութիւնները և գիտերը ուզեց յիշատակ թողուլ սակաւ ապրողաց յաւերածէն. և գրեց երկու բրգանց կամ արձանաց վերայ, որոց մէկն քարէ կամ պղնձէ էր, միւսն յաղիւսոյ կամ կաւոյ. որպէս զի եթէ ջրով ջնջուելու ըլլայ աշխարհ՝ անեղծ մնայ քարն կամ պղինձն. իսկ եթէ կրակով աւերուն ամրանալով մնայ, մինչդեռ պղինձն հալի և քարն ի կիր դառնալով փշրի[63]։ Ոմանք համարին թէ աստեղական գնտութիւններ էր գրածն Ենովսայ, վասն զի և զինքն սեպեն առաջին ճանչցող մոլորակաց, և նշանագրաց գտող քան հասարակ տառից գրութեան. առոնց գտիչ կու համարի զԵնովք ոմն ի մերոց վարդապետ[64], և ասէ. «Ենովք արար նշանագիրս կարճառօտս և բազմատառս. և այնու եթող զկեանս վարուց առաջնոցն և զմարգարէութիւն իւր, զոր գտեալ Արփաքսադ յետ ջրոյն»։

Ենովս և Ենովք պարագլուխ եղան Որդւոցն Աստուծոյ և աւելի զատեցին իրենց սերունդը յորդւոց մարդկան. իրենց մասնաւոր հետեւողաց խումբ մը քաշուեցան ի լեռները իբրեւ միանձնակեցք աստուածախնդք և կուսակրօնք, և թերեւս աւելի ասոր համար Որդիք Աստուծոյ ըսուեցան. իսկ վարը մնացողք ալ որ ի Կայինեանց կու նեղուէին՝ սկսան իրենց բնակարանները ամրացընել. որով միւսոց հակառակութիւնը աւելի գրգռեցին, և պատերազմք սկսան (ըստ աւանդողաց)։ Առանձնացելոց լեռն կոչեն Անեմոն, որոյ անուամբ ծանօթ է լեռան, ի լիբանան. բայց հնագոյն աւանդութիւն որ Ենովքայ ասացեալ գիրքն է, Երմոն և Երմոնիմ կոչէ զլեառն. այս անունս քիչ այլայլութեամբ՝ կու յիշեցընէ զերիեմենոյ զանդկին, որով նշանակէր զՀայաստան, և զառաջին բնակութիւն մարդկան։ — Բայց շատ երկայն տարիներ չիքշեց, ըստ աւանդութեան՝ այս ճգնազգեցից մենակեցութիւնը. զոնէ ոմանք ձանձրանալով վար իջան լեռներէն, և առջի բերան իրենց ցածաբնակ եղբայրներէն ալ ընդունելի չեղան. որոնց մէջ

*քիչ շատ Թուլութիւն մտեր էր, մտերմանալով ընդ Որդւոց մարդկան, որոնք պատերազմական զէնքով չի կրցածնին յաղթողեցան շռայլութեան կակուղ զինուք ներգործել։*

*Արուեստից գիւտն և բարգաւաճանքն իրենց ցեղին սեփական եղած էր, ինչպէս վերը յիշեցինք. և յետ Կայէնի քաղաքաշինութեանց և սահմանաչափութեանց, իր վեցերորդ սերունդն և սպանիչն Ղամէք աղեղնաւորն, որ և իբրև ձիաւոր կու յիշուի, բազմարուեստ տուն մը ունէր. իր առաջին կնոջ՝ Ադդայի՝ որդւոց անդրանիկն Յովբէլ եղաւ «հայր այնոցիկ » որ բնակեալ են ի վրանս խաշնարածաց», (ըստ Ս. Գրոց. Ծն. Դ. 21) անշուշտ վրանը հնարեց շուաբակ խաշնարածաց՝ որք ի պարարտ բարձրատափս նախաջրհեղեղեան Հայաստանի կ'արածէին, որ և յետ ջրհեղեղի մինչև ցայսօր արևմտեան Ասիոյ ամենէն նշանաւոր արօտից մէկն ճանաչի. — երկրորդ որդին Յովբալ «է հայր որ եցոյց զիրգս և զքնարս». կատարեալ երաժիշտ ձայնական և գործիական, հեղինակ այն գերագոյն և կէս աննիւթ արուեստին, որ քան զամենայն արուեստ ազդողագոյն է սրտի, սակայն սկիզբն, որպէս երբեւի, անբարի անձնէ և անբարի վախճանաւ, վասն զի որդւոց մարդկան Թուլակենցաղ վարուց քաղցրացուցիչ էր, վասն այսօրիկ ի սրբոց հարց և ի մեկնչաց ընդ չարահնար գիւտս կարգեցաւ. և ամենուն յայտնի են անոր բարի և չար ազդեցութիւնն ալ։ Ղամէքայ երկրորդ կնկան Սելլայի որդին Թովբէլ «էր ճարտարապետ դար» բին՝ պղնձոյ և երկաթոյ». — Գուգարաց հանքերն էին այս առաջին դարբնին պղինձ և երկաթ հայթայթողք եթէ Երասխայ հովտին հիմայ անծանօթ բոյք. ո՞ գիտէ. բայց Ս. Գրոց վկայութիւնն անտարակոյս կ'ընէ այս պիտանի արուեստին հնութիւնն և գիւտն ի հնագոյն մասին երկրի։ «Եւ քոյր Թովբելայ Նոյեմա». որուն արուեստագիտութիւնը չյիշեր Ս. Գիրք. բայց հասարակաց աւանդութիւն մ'է թէ սա գտաւ ոստայնանկութիւնը կամ առուեղէն զգեստ շինել, և հնարեց զարդու զգեստներ. ոչ միայն ինքն այլ և մայրն Սելլա Թելադրութեամբ Ղամէքայ կու համարին հնարիչք ամենայն կանացի պչրանաց, մազի հիւսուածոց, ծամակալաց, սնգուրի և ծարուրի։ Այս զարդուց և պչրանաց հայթհայթանքն աւելի զօրաւոր զէնք եղան յաղթելու զՍեթեանս քան Կայէնի և Ղամէքայ սպանութեան գործիքն. որոց բաւական դէմ դրին որդիքն Աստուծոյ, թէ և ըստ աւանդութեան մարմնով տկարք և պզտիկ[65] էին քան զորդիս Մարդկան. զեղծումն բարուց մտաւ և յորդիս Աստուծոյ, և ջանացին երկու ցեղքն հակառակ իրերաց մրցիլ երկրաւոր յաջողութեամբք. և այն առենէն*

Digitized by Google

սկսան այնպիսի գործքեր որ յետոյ քաջութիւն և դիւցազնութիւնք ըսուեցան, կրթել և պատուել զոյժ և զճարտարութիւն մարմնոյ, և զյաջողս մեծ անուանել: Պատկառիլ և վախնալ ի նոցանէ, որք ոչ միայն զօրութեամբ մարմնոյ այլ և չարութեամբ և բռնութեամբ իշխէին ի վերայ տկարագունից. ասոնց համար ասէ Ս. Գիրքն թէ «Սկայք էին ի վերայ երկրի յաւուրսն յայնոսիկ:

Այս սկայից մէջ յորդիս մարդկան անուանի ասի յաւանդողաց Սամիրոս ոմն զօր և թագաւոր դրին, այսինքն առաջնորդ կամ բռնաւոր որ իր հակառակորդն ունեցաւ ի Սեթեանս զԱղովրոս ոմն, որ թագաւորեց ի 1053 կամ 1062 թուին մարդկութեան, և 9 յաջորդ ունեցաւ մինչեւ ի ջրհեղեղ, Քաղդէացիք կամ Ասորեստանեայք զասոնք իրենց նախաջրհեղեղեան թագաւորներն անուանեն. և ըստ բազմաց կարծեաց նոյն իսկ 10 նահապետք են յԱդամայ ցՆոյ. սակայն հաւանագոյն է թէ թէպէտ և Քսիսութրոս տասներորդ թագաւորն և Նոյ տասներորդ նահապետն համարին մի և նոյն անձն, այլքն զատ անձինք և բռնաւորք էին, կամ ի վերայ բոլոր երկրի և կամ ի վերայ Սեթեանց որք Հայաստանէն դէպ ի հարաւ յԱսորեստան տարածեալ էին: Հնագոյն պատմիչն Քաղդէացւոց Բերոսոս կամ Պիւռոս այսպէս կ'անուանէ 710 թագաւորսն և իւրեանց թագաւորութեան ժամանակը՝ շարի վերածելով, և մէկ շար 3600 տարի հաշուելով որով բոլոր թագաւորութեան միջոցը կ'ըլլայ 432000 տարի:

| | | |
|---|---|---|
| Աղովրոս | շար. | 10 |
| Աղապարոս կամ Եղփարոս | » | 3 |
| Աղմեղոն կամ Ալմիոն | » | 13 |
| Ամմենոն, Ամանոն | » | 12 |
| Ամեգաղարոս, Ամակարոս | » | 18 |
| Դաւոնոս, Դինոս հովիւ | » | 10 |
| Եդովանքոս, Եւտուրինքոս | » | 18 |
| Ամենփսինոս, Մամիսխոս | » | 10 |
| Ոտիարտէս, Օտիարտոս | » | 8 |
| Քսիսութրոս | » | 18 |
| | | 120 |

Արդ այս 432000 անրաւ տարիներն ուրիշ բան չեն, բայց միայն օրեր[66], որոնց գումարն կ'ընէ 1200 տարի 360 օրեայ, և 1183 ½ արե-

Digitized by Google

գակնային հաստրակ տարի. զոր գումարելով ընդ 1058 տարեաց որք ի սկզբանէ մինչեւ ի սկիզբն Թագաւորութեան նոցա՝ կ'ըլլան 2242 տարի. և ահա այս է ջրհեղեղին տարին ու Եգիպտացիք ալ կ'աւանդէին, թէ յառաջ քան զՄենէս հին Թագաւոր իւրեանց Թագաւորէին 7/6 դիք և 9 դիւցազունք, որոց հազարաւոր տարիներ կ'ընծայեն, այլ օրուան վերածելով անոնք ալ գումարին ի 1183 տարի։ — Պիւռոսի պատմութիւնք Սուրբ Գրոց հետ ոչ սակաւ համաձայնութիւն[67] ունին, անոր համար կրնանք հաւանական սեպել այս նախաջրհեղեղեան Թագաւորաց հարստութիւնն և ժամանակ. բայց յազգային յիշատակաց հեռու ըլլալով՝ թողումք ի քննութենէ. նոյնպէս և անոնց քաղաքները, որպէս Ամենամատեանն (Բանդավիվլոն ըստ Յունաց) վասն զի հոն համարէր նախաջրհեղեղեան դիւանատունն, Սիպարացւոց քաղաքն ուր գրեանքն գտան յետ ջրհեղեղին, Լանքար, ուստից յետին երեք Թագաւորքն էին, վասն զի եթէ ստոյգ ալ ըլլան ասոնք՝ ի Միջագետաց և Բաբելացւոց կողմն խնդրելի են։ Ոչ միայն ի հարաւակողմն Հայոց, այլ և յարեւմուտս աւանդին նախաջրհեղեղեան քաղաք որպէս Ապամէա, Լոկոսն[68], Կիւտոս (այսինքն Քիբոտոս ըստ Յունաց որ նշանակէ զտեղի տապանին շինութեան) յորոց գոնեա հաւաստի կարծիքն շինութեամբ ծածկուած ըլլալուն Հայաստան աշխարհին. և բնակութիւն՝ թէ ոչ Քաղդէացի Թագաւորաց՝ գոնեա Ս. Գրոց նահապետաց, և ոմանց ի հսկայիցն, և ծնելոցն ի խառնրդոյ երկուց ցեղիցն Սեթեանց և Կայենեանց։ վասն զի ըստ Ս. Գրոց, «Իբրեւ սկսան մարդիկն բազմանալ ի վերայ երկրի,
» և դստերք ծնան նոցա տեսեալ որդւոցն Աստուծոյ զդստերս մարդկան
» զի գեղեցիկ էին, առին իւրեանց կանայս յամենեցունց զոր ընտրեցին...
» և ծնան իւրեանց որդիս. և նոքա էին սկայքն որ յաւիտենից արք ա-
» նուանիք։ Եւ իբրեւ ետես Տէր Աստուած եթէ բազմացան չարիք մարդ-
» կան ի վերայ երկրի, և ամենայն ոք խորհէր ի սրտի իւրում խնամով
» չարիս զամենայն աւուրս, և զղջացաւ Աստուած զի արար զմարդն ի
» վերայ երկրի. և մտախորհ եղեւ ի սրտի իւրում և ասէ Տէր Աստուած.
» Ջնջեցից զամենայն մարմին զոր արարի յերեսաց երկրէ, ի մարդոյ
» մինչեւ ցանասուն, և ի սողնոց մինչեւ ի թռչունս երկնից. զի բարկա-
» ցայ զի արարի զնոսա։ (Ծն. Զ. 1. 2. 4=7) Մի մնասցէ ոգի իմ ի
» մարդկանդ յայդմիկ յաւիտեան, վասն լինելոյ դոցա մարմին։ Եւ եղիցին
» աւուրք դոցա ամք հարիւր և քսան»։

Որդւոց Աստուծոյ խնամութիւնն ընդ որդւոց մարդկան ջրհեղեղէն առաջ և անոր պատճառ նշանաւոր դէպք մ'է, և պէսպէս կարծեաց և աւան-

Digitized by Google

դուլթեանց առիթ եղած․ սկսեալ ի հեղինակէն գրոց Ենովքայ մինչեւ ի Մուր անգղիացի բանաստեղծն եղած են կարծողք կամ ուզած են կարծել թէ այդ խնամութիւնն ընդ դստերաց մարդկան ընող որդիքն Աստուծոյ՝ ոչ Սէթեանք այլ հրեշտակք էին, զորս Զուարթունս կոչէ գիրքն Ենովքայ․ փոխանակ ըսելու թէ Սէթեանք վասն առաջին մաքուր կենացն զուարթունք և հրեշտակք կոչէին ։ Արդ այս որպիսի և է խնամութիւնն և անկէ առաջ եկած հսկայից ծնունդն և անոնցմէ չարիքն տարածեալ էր և ի վերայ երկրի Հայաստան աշխարհիս․ և որպէս մարմնով վիթխարիք էին հսկայքն, թէ և ոչ ըստ կարծեաց ոմանց քսանապատիկ կամ եռապատիկ մեծք քան զայժմեան մարդիկ, նոյնպէս և զօրաւորք ի կիրս, ի բռնութիւն, ի կռիւս, ի ցանկութեան, յորկորստութեան և յամենայն հնարագիտութեան փափկութեանց, հրապուրանաց և պչրանաց․ և որքան մեծ չարիք նոցա այնքան և երագ և ահաւոր վրէժն յԱստուծոյ․ որոյ սահմանած 120 տարին ոչ այնքան մարդկան կենաց սահման համարուի որքան միջոց ժամանակի խնչուան ի պատուհասն․ ըսել է թէ յ'2122 ամի մարդկութեան յայտնապէս սպառնացաւ Աստուած զջրհեղեղն․ մինչդեռ արդարն Նոյ, տասներորդ յԱդամայ, զոր քաղդէացիք համարին Քսիսաւթրոս կամ զսա ընդ Նոյի շփոթեն, 480 տարուան էր, և յետ 20 ամի ծնաւ զերիս որդիսն Սեմ, Քամ, Յաբեթ․ յորոց ըստ բազմաց կարծեաց Սեմ վասն նահապետութեան ընտրեալ ազգին (Հրէից) նախադասի, բայց Յաբեթ է անդրանիկն[69], և հաւանական է թէ (քանի մը տարի առաջ ծնած էր քան զՍեմ որ 98 տարուան էր ջրհեղեղի ատեն)․ իսկ Քամ երրորդ կամ կրսերագոյն է ։ Նոյ մօտ ց'500 տարի ըստ աւանդողաց՝ կուսութիւն պահած էր․ կնոջ անունն որպէս յառաջ յիշեցաք էր Նոյեմի կամ Նոյեմզարա․ և ըստ այլոց Նորիա, Փիրրա, Էսաւթ, ի Սեթայ ցեղէն կուսութեամբ ապրած․ իսկ անուանք նուոցն, Սեմայ կինն Դիկլիկլիբաղա կամ Ժեդեկան, կամ Պանդորա, Սալիտ, Նահալաթ Մահնուկ, — Քամայն՝ Ռաքսիա, Նոյելա, Նաքլատ, Զեդքաթ — Նապու․ — Յաբեթայն[70] Նոյեկլա, Աոիգիսահ, Արաթքա․ ըստ մերոց վարդապետաց՝ Զանազան, Զարմենազան, Արեգազան կոչէին, ի ցեղէն Սեթայ, աղջկունք կոյաք։

---

Digitized by Google

## Դ

# ՋՐՀԵՂԵՂ-ՏԱՊԱՆՆ-ՆՈՅ

ԵՐԿՐԱԳՈՒՆՏՍ յորմէ հետէ արձըկեցաւ յարարչէն յանհուն տարածութեան եթերաց, անդադար փոփոխութեան կամ յեղանակելու մէջ է. թէ ուրիշ եթերական մարմնոց ազդեցութիւնք և թէ իւր սեփական տարերքն՝ զինքն բաղադրեն և լուծանեն, շինեն և քակեն. Թէպէտ այս փոփոխութիւնքս իբրև ոչինչ մի են բաղդատութեամբ մեզի անծանօթ իրաց որ բոլոր հատատութեան մէջ կ'ըլլան, բայց մեզի որ բնակիմք յերկրի և ակար զօրութիւն մը ունիմք ճանչնալու և դիտելու զեղեալս ի նմա, մեծամեծ երևոյթներ են անոնք, զոր քիչ անգամ մէկէն կու ճանչնամք և շատ հեղ պէտք ունիմք երկայն տարիներու և դարերու իսկ քննութեանց։ Ամենէն զգալի և զարմանալի փոփոխութիւն կ'երևի մեզի ջրոյն և ցամաքին իրարու ազդեցութիւնն կամ կռիւը, իրարու բաժին գրաւելն, որ և ընդարձակ նշաններ թողուն ի վերայ երկրի. այս նշանաց, և ս առաւել յեղափոխութեանց՝ մեծագոյն ի յիշատակս և ի զարմանս մարդկան է համաշխարհական ՋՐՀԵՂԵՂՆ։

Բանախոյզք կու հարցընեն թէ յիրաւի՛ համաշխարհակա՞ն էր Ջրհեղեղն Նոյեան, թէ մասնական, որպէս եգիպտական և յունական Ջրհեղեղքն. — Թէ և մեր նպատակէն դուրս են այսպիսի քննութիւնք, սակայն մէկ երկու բան ըսել հարկաւոր ճանաչեմք. և նախ համաշխարհական ըսելով կ'իմանամք գրեթէ ամենայն հին ազգաց մէջ աւանդութիւն, ի Հայոց մինչև յԱմերիկա և ի կղզիս Ովկիանու, որք կ'ընդունին թէ ի հնագոյն ժամանակս մեծ ողողումն ջրոց եղեր է ի վերայ ամենայն երկրի. երկրորդ, Ս. Գրոց և հնագոյն պատմչաց աւանդութիւնք ալ ընդհանուր երկրի ողողումն կու նշանակեն. երրորդ երկրաբանական զանազան նշանք ալ ընդհանրութիւն մը ցուցընեն. չորրորդ թէ և մասնական եղած ըլլար նոյական ջրհեղեղն, երկրիս այն մասին մէջն էր Հայաստան, մեր աշխարհն ալ ողողուած է ի ջուրց որ զհին մարդկան սերունդն և զբնակութիւնս ջնջեցին, և այս է մեր պատմութեան համար կարևոր գիտելիքն. որ և այնքան ընդունելի է օտարաց և օտարամտաց անգամ, մինչև ոմն զՋրհեղեղն չընդունելով ջրհե-

զեղ՝ զեռ կարծէ որ իբր այլաբանօրէն իմն նշանակէ Սկիւթացւոց արշաւանք մը ի Հայաստան։

Ջրհեղեղն տիեզերական կանոնաւոր օրինաց արգասիք մը չէր, այլ արտականոն յեղափոխութիւն մը երկրի տարածային կամօք, առ ի ջնջել յերեսաց նորա զամենայն մարդիկ և զյիշատակս նոցա. յորոց միայն տուն մը կամ ազգատոհմ մը միայն պիտի ապրէր՝ նորէն զերկիր մարդաբնակ ընելու համար. և էր այս տանս տէրն Նոյ տասներորդ յԱդամայ, Քսիսութրոս Քաղդէացւոց, ըստ յունական աւանդութեան, որ ի հարկէ ի բնականէն փոխուած է. Նոյ, իւր կինն, երեք արու զաւակքն և անոնց կանայքն միայն զերծան ի Ջրհեղեղէն, ըստ Ս. Գրոց հաւաստի պատմութեան, աշխարհածանօթ տապանաւն՝ որ էր մեծատարած[71] նաւ մը եռայարկ, յորում ապաստանեցան ցամաքային կենդանիք և թռչունք։ Դիպուածէն 100 կամ 120 տարի առաջ հռչակեցաւ Ջրողող պատուհասն, որ ոմանց, իբրեւ զրոյց և սնոտի կարծիք սեպուէր, ոմանց հաւաստի զուշակութիւն և սակաւք կամ ոչ ոք անկէց օգուտ քաղեց։ Թէ և ընդհանուր բնակեալ երկրի վերայ տարածած էր Ջրհեղեղին հոսքաւն այլ ի հարկէ աւելի հոն ուր կ'ենթադրուէր և բնավայր մարդկութեան. և անշուշտ այս միջոցն էր մեր Հայոց աշխարհն և հաւանօրէն հոն ալ էր բնակութիւն Նոյի և տեղի շինութեան Տապանին, զոր ոմանք ինչուան ի Փռիւգիա կու սանին և Քաղդէացիք ի կողմանս Բաբելոնի[72]։ Եթէ հեռու ալ էր բնակութիւնն զոնէ, ըստ աւանդութեան, եկաւ հոն Ադամայ և Եւայի ոսկորները հետն առնուլ ի տապանն։ — Ըստ եօթանասնից ժամանակագրութեան յամի աշխարհի մարդկութեան 2242, և հաւանօրէն նոր տումարի ապրիլի վերջն[73] մտաւ Նոյ ի տապանն իր ընտանեօք որոց հետ կ'աւանդեն ոմանք ի մերոցս թէ էր նաեւ ճարտարապետ տապանին Մնաւախս[74] իր ընտանեօք, նաեւ Նոյի աղջիկն, և ուրիշ մերձաւոր անձինք, որք հաւատացին քարոզութեան Նոյի։ Յետ եօթն աւուրց ի 6 մայիսի, սկսաւ ջրոց ողողումն թէ երկնատեղաց անձրեւօք և թէ անդնդաբուխ աղաղանօք, որք 40 օր անդադար բղխելով լցին զձորս և զդաշտս և բարձրացան քան զլերինս 15 կանգուն[75] ջնջելով զամենայն ցամաքաբնակ կենդանիս, և առաւել զմարդիկ, և զանուանեալ հսկայս յաւիտենից. ամենայն հասակ և կերպարան և կեանք միօրինակ թուլատարր ալեաց յորդութեամբ և ծփանօքն ծաւալեցան երկրի և երկնից մէջ բռնազ աշխարհական բնութեան վերայ. մարդկութիւն քան զայս մեծ կամ նման հարուած չէր և չէ ընդունած երբեք 150 օր պատժեալ և լլկեալ մնաց երկիր ջրեղէն ծանր ծածկութին տակ. յորոց վերայ տապանն տատանեալ երթայր և գայր կրելով զալազայ յոյս

նորա զսերմն մարդկութեան ։ Յետ 5 ամսոց յ'3 հոկտ. հողմն (հարաւաշունչ) սկսաւ ջրերը ծեծել և ցածցրնել. և յետ 10 աւուրց (13 հոկտ.) ջուրք բաւական քաշուած ըլլալով տապանն նստաւ Հայոց աշխարհիս բարձր լերանց մէկուն վերայ, որք դեռ ջրով պատած էին, և զի տապանն 30 կանգուն էր բարձրութեամբ յայտ է թէ քանի մը կանգուն միայն տապանն մխեալ էր ի ջուր. բայց մինչուան որ լերանց գլուխք ի ջրէն դուրս ելան դեռ երեք ամիս ալ անցաւ. ասել է որ ջրերն խիստ կամաց կ'իջնային, կամ տապանակիր լեռն անհամեմատ բարձր էր քան զայլս, զորոյ գլուխն չէին կարող տեսնել որք ի տապանին, այլ ի 15 յունուարի տեսան մերձագոյն բարձր բարձր երկրի կատարներն, իբրեւ խեղդած կործեալ երկրի կենդանութեան նշան։ Եւ յետ 40 աւուրց (24 փետր.) բացաւ Նոյ զպատուհան տապանին, և երկրիս վերայ ողողման մեծամեծ նշանները տեսնալով ուզեց իմանալ թէ ո՞ր աստիճանի ցամքած է. և արձակեց ագռաւ[76] մը, որ երթալով գալով վերջապէս իր ոտից պաղար մը գտաւ. բայց Նոյ չպահովելով աղաւնի մ'ալ արձակեց՝ որ ամենեւին իր մաքուր բնութեան յարմար տեղ մը չի գտնելով՝ մէկէն առ տապանն դարձաւ և Նոյ ձեռքը երկընցուց և ներս առաւ։ Եւ այն օրէն ի վեր ագռաւն և աղաւնին խորհրդական բաներ եղան մանաւանդ քրիստոնէական եկեղեցւոյ մէջ։ Յետ 7 աւուր (3 մարտ) դարձեալ արձակեց զաղաւնին որ բաւական պտըտելու տեղ գտաւ բայց ոչ գիշերօթի, և դարձաւ իրիկուն իր խնամողին ընծայիկ մի բերելով զշիւղ ձիթենւոյ, որ եղաւ այնուհետեւ նշանակ հաշտութեան. իսկ երբ երրորդ անգամ արձակեցաւ հեզաթեւիկ, երկիր թռչնոց համար բաւականապէս ցամքեր և տաքցեր էր. աղաւնին իր ընկերին սպասեց և ալ չդարձաւ ի տապանն, իմացուեցաւ որ բաւական ցամքեր և պատրաստեր է երկիր ի նորէն հիւրընկալութիւն մարդկան։ Յառաջնում աւուր տարեգլխին և գարնանամտին (21 մարտ) քակեց բացաւ Նոյ զձեղուն տապանին, և դեռ երկու ամսի չափ մէջը մնալով կը դիտէր օրէ օր երկրիս ցամաքիլը և բաւական կենօք զարդարիլը. մինչեւ արեւն զօրացաւ, գարունը տիրեց, և ի 16 մայիսի իր ընտանեօքն ելաւ երկրորդ անգամ կոխելու զերկիր, զերկիր նորագեալ։

Եթէ նախկին նահապետաց երկիրն ի Հայս ըլլալուն վերայ կար տարակոյս առ ոմանս, վասն իջման տապանին կամ Նոյի ի Հայս՝ ոչ նոյնպէս[77]. վասն զի Ս. Գիրք և հնագոյն պատմիչք արեւելեայց (Բերոսոս—Աբիւդենոս) յայտնապէս ասեն թէ Նոյ նաւեց և իջաւ ի լերինս Հայոց, միայն լերանց անուան և գլխոյ վերայ է վէճ և տարակոյս. վասն զի զոր

Եբրայական բնագիրն կոչէ Այրարատայ լերինս, Ասորւոց և քաղդէից Թարգմանութիւնն Կորդուաց լերինք ասեն. և ի Ս. Հարց, որպէս և ի մերոցս, ոմանք յայս կարծիս են և ոմանք յայն. կէսք Արարատ անուամբ զաշխարհն Հայոց կ'իմանան կամ զմասն մի և կէսք բուն լերանց անունը կամ մասնաւոր լեռ մը յորոց վերայ նստաւ տապանն, և յայս կարծիս են այժմ մեր ազգին հետ գրեթէ ամենայն մերձակայ արեւելեան ժողովուրդք և շատք յեւրոպական գիտնոց, որք հայկական լերանց արարատեան պարն, և ի մասնաւորի զբարձրագագաթ Մասիս ցուցանեն և պատուեն իբրեւ հանգիստ տապանին և Նոյի, և Պարսք Նոյայ լեառն իսկ անուանեն զայն[78]. և իբրեւ այնպիսի սրբազան տեղի պատուեն ի հին ժամանակաց հետէ։ Սակայն մեր հարաւային դրացի ժողովուրդք քրիստոնեայք և հեթանոսք, որպէս և շատք ի Ս. Հարց նախնեաց[79] Կորդուաց լերանց կ'ընծայեն տապանին ապնջականութեան պատիւն, և շատք զանոնք ալ Արարատեան լերանց անուամբ իմանան. և որովհետեւ Կորդուաց լերինք առաւել քան զայրարատեանս բազմակոհակ և բազմակողմ են, և վասն այսորիկ ի Թուրքաց Պարմաղ տաղ կոչին ոմանք Ճիւտի լերանց վերայ սեպեն իջած զտապանն, որ Թերեւս էր ըստ Հայոց կոչեցեալն Սարարադ[80]. որ ըստ Խորոնեցւոյ է կոչեցեալն Ասորւոց Սողոփի յարեւմտակողմն Կորդուաց և Տիգրիսի մօտ, և որոյ ստորոտը աւանդեն շինեալ զԹըմնին կամ Թէմանին քաղաք որ նշանակէ Ութից կամ Ութանից տեղի բնակութեան, իջելոցն ի տապանէն և որոյ քրիստոնէական յիշատակք Թերեւս հնագոյն են քան զԱկոռւոյ մասեաց։ Ս. Եպիփան Լուպար կամ Լուբար կոչէ զտապանակիր լեառն Արարատայ զոր և ասէ ի մէջ Հայոց և Կորդուաց։ Իսկ հին հեթանոս պատմիչ մը ոչ զԱրարատ և ոչ զԿորդուս յիշէ, այլ ի վերայ քան զՄինեաս գաւառ կամ աշխարհ զՊարիս կամ Բարիս լեառն Հայոց, այլ ոմն Ոկիլա կոչէ. ոմն՝ Կերոնն և ոմն Կուադրատ իբր քառակուսի Թերեւս բրգաձեւ. և շատք առանց յատուկ անուան միայն լերինք Հայոց[81]։

Ըստ նախնեաց ոմանց տապանն յարեւելից կողմանէ սահեալ եկաւ ի լեառն հանգստեանն ի Հայս որպէս և Խորոնեցի մեր յիշէ յաշխարհագրութեանն[82]. նոյն դարձեալ և վասն Ասորւոց ասէ աւանդել թէ ի նուազել ջուրցն և ի հասանել տապանին ի գլուխ Սարարադայ (Սողոփի) սղոցաձուկն մէջ անցնելով արգիլեց և հոն դադրեցուց զտապանն։ Աւելի անհեթեթ զրուցեն Սընճարայ հեթանոս բնակիչք թէ տապանն անցնելու ատեն զարնուեր է ի Մնճար լեառն և ծակոտեր, իսկ օձն հնարագէտ՝ խոստացեր է առ Նոյ խցել զծակն եթէ խոստանայ կերակրել զինքն արեամբ.

Digitized by Google

*և ի հաւանել Նոյի, կլորելով խոբեր մեծր և ծածկեր է զծակն. բայց Նոյ հրամանաւ Աստուծոյ սպաններ զնա և այրեր և զմոխիրն ցնդեր, ուստի գոյանան մրջմունք և զեռունք, զորս պաշտեն հեթանոսքդ ցուրտ տառապելարանք: — Մեր ազգային զրուցաց մէջ ալ յիշուի տապանին հանգիպելն առ Գորդուց լեռան յեզր դաշտին Մշոյ և աղաչել զնա առեալ*

*Գորդուց, առ գէս.*

*և Նորա պատասխանեալ առ տապանն թէ*

*Գնա՛ ի Մասիս*
*Զի բարձր է քան զէս:*

*Անտարակոյս է որ առ հին նախնիս մեր շատ և շատ աւանդութիւնք է զրոյցք կային այսպիսիք, զոր քրիստոնէութիւնն լռեցուց. յորոց մի է անշուշտ և վրաց պատմութեան մէջ յիշեալն այլաբանօրէն վասն ջրհեղեղին, թէ ընդ մէջ Բաղլէացւոց Թրուջան աստուծոյն և Արամազդայ (որ է Արամազդ ըստ Հայոց) պատերազմ և թշնամութիւն կար. և Արամազդ յաղթող գտանելով ջրախեղդ րրաւ զԹրուջան:*

*Այսչափ կարծեաց և զրուցուածոց միաբանութիւնն այս է նախ՝ թէ տապանն և Նոյ իջան Հայոց երկիրը բարձր լերան մը վերայ. և երկրորդ որ այս լեռն կամ հիմակու հռչակեալ Այրարատայ պարուն մէջ էր և կամ ի կողմուացն[83]:*

*Այս երկուքէն մէկն անտարակոյս ընելու համար պէտք էր Այրարատ անուան միտքն և սահմանն լաւ ճանչնալ. որ շատ դժար է, և անուան ստուգաբանութիւնն ալ շատ կերպ մեկնութեամբ և պատճառօք դեռ անընդոյզ կու մնայ. և մեր հնախօս պատմչին (Խորենացւոյ) աւանդութիւնն այլ թէ Արայի մահուանէն կամ ընկած դաշտէն առուած է Այրարատ կամ Արարադ անունն՝ հաւանական չերեւիր մեզ, թէ և չեմք այլ գիտել ի՞նչ մտօք ստուգաբանէր զայն պատմիչն, Արայի — արատ իմանալով, իբր թէ Արայի վիրաւորելու, փտտելու տեղն, թէ արարիկ Ըէս բառէն իբր վաճառումն Արայի. (դժար էր Հայոց այս անունը ընդունիլը): Աւելի նուազ ընդունելի են եբրայական ստուգաբանութիւնն Աճեծք—սասանման, և կամ լաւ ևս ձեռաց ձերինք, շատ տարակուսական Հուր—արատ[84] անուանն ընթերցումն ի բեւեռագրեալ արձանս, աստուածային հուր՝ իբր նշանակելով հրաբուխ. և հաճոյագոյն է մեզ Արեւոց երկիր թարգմանութիւնն, ըստ արիական լեզուաց կամ Բարձր երկիր ըստ սեմական լեզուաց[85]: Հրէական ընա-*

Digitized by Google

գիրն այս անունը ի գործ ածէ, որ է ասել Մովսէս, 1600 տարի յառաջ քան զՔրիստոս, և իբր 3 կամ 400 տարի յետ Արայի. Թուի մեզ թէ և Արայի կենդանութեան ատենն ալ կայր այս անունս, և այսպէս անուանէր Հայաստան, գէթ ի հարաւարևմնակ ազանց, մանաւորապէս ի հեղինակաց աստուածաշունչ գրոց, յորս Հայաստան կամ Արմենիա ամենեւին չի յիշուիր, այլ Արարատ՝ զնոյն իմանալով:

Բայց և սահման Արարատ անուան և լերանցն անորոշ և ընդարձակ է. ըստ ազգային ստոյգ աշխարհագրութեան և պատմութեանց բնիկն Այրարատ՝ գաւառ մ'է ամփոփ, կամ դաշտ մը սահմանաւոր Երասխայ հիւսիսագոյն օժանդակներովը ոռոգեալ և Արայի լերան ոլորտը. յորմէ և զանունն առնուլն հաւանագոյն է մեզի[86]. անոր պէս՝ աւելի կամ պակաս ընդարձակ 20 գաւառք ալ անոր չորսդին մէկտեղ մէկ նահանգ կամ աշխարհ մը ձեւացուցած՝ Այրարատ կոչուէին, որ Հայոց Թագաւորին սեփական կալուածն էր, և իբր կենդրոն Թագաւորութեանն այս գաւառներուն մէկն է Մասեացոտն, յորում է Մասիս մը որ է բարձրագոյն գագաթն Այրարատեան լերանց, և ոչ սակաւ հեռի ի բնիկ Այրարատ գաւառէ, վասն զի մէկն Երասխայ մէկ կողմն է միւսն մէկ այլ կողմը. և սակայն երկուքն ալ Այրարատ կ'ըսուէին. և այս ոչ այնքան յԱյրարատ նահանգին մէջ ըլլալնուն համար, որքան Այրարատայ տէրութեան մէջ, այսինքն Հայոց Թագաւորութեան սահմանին կամ երկրին. տէրութիւնն և անունն հաւանօրէն ըստ մտաց կամ հեղինակաց Ս. Գրոց ընդարձակէր մինչև ի սահմանածայրս տէրութեանն որով որ և է լեառն Հայոց կրնար ըսուիլ լեառն Այրարատայ (երկրի) և ահա այսպէս կ'անուանէ Եսայի մարգարէն այլ Սիմ լեռները Աղձնեաց յոր փախան որդիք Սենեքերիմայ ապաւինելով ի Հայս: Այլ ուրեմն Կորդուաց լերինքն ալ կրնային ըսուիլ լերինք Արարատայ՝ եթէ Արարատեան Թագաւորութեան տակն ըլլային, որպէս և էին իսկ շատ անգամ, բայց ոչ միշտ. և վասն այնորիկ ընդ 15 աշխարհս Հայոց Մեծաց համարին և Կորճայք, յորում են գաւառք և լերինք Կորդուաց:

Քաղդէացիք և Ասորիք անլեռն անբարձր երկրի մէջ բնակած, բնական էր որ իրենց սահմանակից ամէնէն մօտ և բարձր լեռը համարէին տապանահանգիստ, և զարմանք չէ որ Ս. Գրոց երկիւղած թարգմանիչք ալ Կորդուաց լերինք անուանեն փոխանակ Արարատայ վասն զի փոխադարձօրէն, ինչպէս որ Արարատայ անունը անսահման և ընդարձակ առնուած է, Կորդուաց անունն և սահմանն այլ անյայտ և ընդարձակ է, և

ինչուան յարեւմտեան Մեծ Հայոց սահմանածայրն ալ կարգուած գաւառ կու յիշուի, (ընդ մէջ Երզնկայ և Դերջանայ). եթէ կովկասայինք իրաւապարծութիւն մը ունէին իրենց Էլպրուզը վասն բարձրութեանն (որով առաւելու քան զՄասիս[87]) տապանակիր սեպելու, այսպէս կրնային մեր Հարաւային դրացիք ալ այնպիսի մը բնտռել Կորճայից լերանց մէջ, որոնք դեռ չափեալ չեն և ինչուան 15000 բարձր կատարք կարծուին, թէ ոչ և աւելի եւս։ Ուրեմն անաչառապէս խօսելով դրական և աներկբայ փաստ մը չունիմք զՄասիս համարելու բուն տապանակիր լեառն, և ոչ բաւական հաստատութիւն մը կրնան ընծայել տեղական աւանդութիւնք կամ ստուգաբանութիւնք, ինչպէս են այն հասարակօրէն ծաւալեալ զրոյցքն և անուանք Նախիջեւանի և Արկուռոյ. առջինովն իմանալով այն տեղն ուր Նոյ նախ իջաւ ի տապանէն և բնակութիւն հաստատեց, և այսպիսի տեղ մը կար ի Հայս, ըստ վկայութեան Յովսեպոսի պատմչի, զոր և յունական բառով ապովադերիոն կ'անուանէ և կու թարգմանի ստուգապէս Յետ ջրոց. և ազգային աւանդութիւն հիմայ կու ճանաչէ զայն ի Նախիջեւան[88] քաղաք հին, ուր և հին աղխատակիրս կիսաւեր շինուածք մը Նոյի գերեզման անուանէ. որ է թուրք աթաբէկաց ժամանակի շինուած կամ գերեզման. քաղաքն ալ Յովսեպոսի յիշած տեղն չի կրնար ըլլալ. վասն զի, նախ անմիջապէս Մասեաց լերանց մօտ չէ. և երկրորդ որ քաղաքին բուն անունն ըստ հնագոյն հեղինակաց մերոց ոչ է Նախ–իջեւան, այլ Նախճաւան, իբր Աւան Նախճոյ։ Նոյնպէս երկրորդ անունն ալ Արկուռի, իբր թէ Նոյի ուռ այգինքն որթ տնկած տեղը՝ բռնազբօսեալ և անհիմն է. վասն զի տեղւոյն բուն անունն է Ակոռի, յորմէ թերեւս հիմկու այլազգական լերան անունն ալ Աղըր տաղը։ Աւելի ստուգաբանական մերձաւորութիւն ունի ուրիշ անուն մը, զոր ազգային աւանդութիւնն մոռացեր է, և է Գինոյ բլուրն և Գինեգոյն գեան որ յԱկոռւոյ կ'ելլայ, և յիշուի յառաջ քան զԱկոռի։ Քանի որ այս գեղս շէն էր (յառաջ քան զկործանումն ի 1840) իրմէ վեր լերան վերայ տափ մը կու ցուցուէր իբրեւ տեղի այգեաց Նոյի, և դեռ այգի մշակուէր հոն ի յիշատակ գինեհնար նահապետին. ինչպէս որ Ս. Յակոբայ վանքն ալ քիչ մ'աւելի վեր ուրիշ յիշատակ մը կու պահէր տապանին, այսինքն Ս. Յակոբայ Մծբնայ հայրապետին ի Դ դարու ուղեւորութիւնն դէպի լեռն վեր առ ի գիւտ Նոյեան տապանին։ Սակայն այդ երկուքն և այլ ասոնց նմանիքն ոչ աւելի քան զաւանդութիւն և զզրոյցս ստուգութիւն ունին. և այդպիսի զրոյցք կրնան զատուիլ կամ տրուիլ ուրիշ բարձր լերանց այլ, ասոնց մէկուն վերայ ստուգուելու. և թերեւս ինչպ՚ս

Digitized by Google

դրախտին տեղն աւերած և փոխուած է և չի կրնար նշան մը գտուիլ,
բաց ի չորից գետոց աղբիւրներէն, այսպէս տապանին լեռն ալ փոխեալ և
աննշան եղած ըլլայ երկրաշարժ զօրութեամբք։ Մասիս՝ որ աւելի քան
զամենայն լերինս հաւանականութիւն ունի՝ դեռ նոր (1840) սաստու-
թեամբ մը՝ փլաւ մասամբ, և հնագոյն փլածոյ և պատառման անխառ
նշան ունի կողին վերայ մղոնաչափ հերձուածը, որ և կարծէր յիշեալ ի
Խորենացւոյն. (Ա. Լ.) սակայն մեր պատմահօր յիշեալն ուրիշ լեռ մ'է
մօտագոյն ի Նախիջեւան Մեծ կոչեցեալ, որպէս Թուի վասն մեծութեանն
և բարձրութեանն, որ և հնագոյն բազմաշրջիկ աշխարհագրաց վկայութեամբ
ահագին երկրաշարժէ մը փլած էր, այսպէս մասամբ ընկած, և Երաս-
խայ ընթացքը փոխած դէպ ի հարաւ, որուն նշանը հիմայ սառուցեն եր-
կրագնին գիտունք. այս լեռն որ Արանայ լերանց մէկն է և Գափուճաղ
կ'ըսուի հիմայ, արդեօք պատմութեան առաջին և անյիշատակ դարերուն
մէջ քան զՄասիս վեհագոյն և հսկայակերպ չէ՞ր ամբառնար, մինչեւ մեծ
կոչուիլ ի լերինս. և եթէ առաջին անփուլ հասակուն մնացեալ ըլլար ցայս-
օր, արդեօք բոլոր Մասեաց ջրհեղեղեան աւանդութիւններն իր վերայ
պիտի չգտնէ՞ինք աւելի հաստատութեամբ մը վասն Նախիջեւանի մերձաւո-
րութեան։ Նա եթէ բարձրն Մասիս յառաջ իսկ քան զմեր քրիստոնէական
աւանդութիւնս ի հեթանոս նախնեաց մերոց դիւցազնական առասպելապաշ-
տութեամբք և պանծանօք պսակեալ էր, որպէս յայտ առնեն դէպք Արտա-
ւազդայ ի սկիզբն Բ դարու, այդ վկայէ միայն թէ Մեծ լերին փլածն
հնագոյն է քան զառասպելս և զպատիւ Մասեաց, որ կրնայ ժառանգած
ըլլալ զայն ի Մեծէն, որպէս կրնար և յետ այսօրիկ ուրիշ լեռ մը ժառան-
գել ի Մասեաց, եթէ 1840ին փոխան քիչ մը փլածին՝ քանի մը հազար
ոտք վար իջնէր գագաթն և քան զՍիփան, զՃլուտի և զՃեսափուր լերինս
ցածագոյն երեւար, և քանի մը երկայն դար անցնելով մոռցուէր իր հին-
կու եղական և աննման բարձրութիւնն. անշուշտ այն ժամանակին բարձրա-
գոյն լեռն՝ պիտի ցուցուէր իբրու տապանակիր։ Զարմանանք եթէ և յայժմու
վիճակին Կորդուաց լեռներն այս պարծանքը կ'ուզեն յափշտակել, մինչդեռ
անոնց բարձրութեան չափը չեմք գիտել. և ինչուան որ այս չի ստուգուի՝
պէտք չէ Մասեաց վերայ յամառիլ ըստ բարձրութեան յարմարութեանն.
իսկ ըստ այլ պատճառաց, որպէս և նախ ըսինք, Կորդուաց լերինք ալ
հաւասար աւանդութիւններ և փաստեր ունին. և մեզի իսկ (որ զանոնք
այլ հաւաստապէս կու ճանչնամք ի Հայաստան), ատոնք յարմարագոյն
կ'երեւան թէ ոչ տապանին՝ գոնէ Նոյայ բնակութեանն քան թէ Մասիքն։

Digitized by Google

Եւ նախ Ցօլաեպոռ, որ Նախիջեւանի առաջին դրոյցն աւանդած է, տապանին լեռը և մնացորդքը կու յիշէ Աղխաբեն նահանգին մէջ որ Կորդուաց հարաւակողմն է։ Հոն յիշուի Թմանիմ քաղաքն ուրից յառաջ քան զշինութիւն Ակոռւոյ եկեղեցւոյն և Ս. Յակոբայ վանացն. նոյնպէս և քրիստոնէից եկեղեցին, և Քիպրոս այսինքն տապանին վանքն, ի Ն դարու. ուր և ի սկիզբն Է դարու առեն եկաւ Հերակլ կայսր, և քիչ մը վերջը Իճատ—պեն—ղանէմ առաջին զօրավար Արաբաց եկաւ պատուելոյ զմնացորդս տապանին, զոր և Լէօմէր ամիրապետ ժողովել տուաւ և շինել մզկիթ մի ի Գզիրէ. և յամին 766 եկեղեցի տապանին շանթահար այրեցաւ։ Տապանի լերին դիմացը, որ մօտ ի Գզիրէ վկայի, կայր Նահրեվան գիւղն այսպէս անուանեալ յիշատակաւ Նոյեանց, որ մեր Նախիջեւանի կու համեմատի, և մինչեւ հիմայ ընդ մէջ Գզիրայ և Զախուի կայ Նահրեփան գիւղ քաղդէարնակ։ Ինչուան անցեալ դարուն վերջերը անգղիացի ճանապարհորդ[89] մը տեսաւ ի Թմանիմ տապանին մզկիթը, զոր կանթեղավառութեամբ պատուէին մահմետականք ուրբաթ օրեր. և այս դարուս սկիզբը տեղացի Քուրդ պէկից մէկն պատմեց Ռիչ ուղեւորի թէ ինքնին ելեր է լերան գագաթն և տեսեր տապանին մնացորդներէն հին փայտեր ատենաչափ երկայն գամերով։

Որչափ այլ անստոյգ ըլլան դրոյցքս ցուցանեն աւելի քան զՄասիս պահել զյիշատակ և զկարծիս տապանին[90]։ Այլ հաւանագոյն փաստ է մեզ Նոյեանց բնակութիւնն յայս կողմանս, վկայութեամբ մերոց իսկ պատմըչաց, որպէս քիչ մը վերջը տեսնանք։ Իսկ Արարատ անուան համար ալ փաստ մի ընծայէ վրաց պատմութիւնն, որ սահմանածայր Թորգոմայ ի հարաւոյ կողմանէ դնէ զՕՐէԹ լեառն յերկրին Քրդաց հանդէպ Մարաց, որով մարթ է իմանալ զմերս Զարասպ անջրպետ Կորճայից և Պարսկահայոց, զորս և Ցոյնք պարսիկ անուամբ կոչէին Քուարրաս, իբր Քուհ — ի — առէր (լերինք հրոյ)։

Սակայն մի կարծեր (ուշիմ ընթերցող) թէ մեր ազնիւ և բարձր Մասեաց շնորհքն և ազգային համարմունքն կ'ուզեմ նուազեցընել և ջնջել Քիւրտիստանու անծանօթ լեռ մը քան զաշխարհածանօթ Այրարատին գագաթն ի վեր մղելով։ Մասիս և հայրենի պատմական սրբազնութիւն մը ստացեալ է, զոր այսուհետեւ ժամանակն չէ կարող ջնջել և այնքան հին է իր պարծն՝ որքան իր գագաթն ընդ մէջ Կոլկասեան և Տաւրոսեան պարուց լերանց. և չեմք գիտեր թէ Ջրհեղեղեան յիշատակքն ևթէ Հայկազանց դիւցական կարծիքն հնագոյն են իր յիշատակարանաց մէջ. հին պատմչաց և Հարց առանց անուան միայն Հայոց լեռ ըսելովն այս խնդիրս անստոյգ մնայ. Թէ

Digitized by Google

և մեր հնագոյն Հարց և պատմչաց կարծիքն այլ Մասեաց մօտ չէ, ոչ Լուսաւորիչ, որ պատմէր ազգին զգէպս Ջրհեղեղին, ոչ Ագաթանգեղ որ յիշէ զՄասիս, և ոչ իսկ ոսկի դարուն գրիչք Խորենացի և Եղիշէ, և թէ և յետինս վկայէ յԱյրարատեան լերինս Հայոց լինել, բայց և այնպէս չասեն Մասիս. իսկ Բուզանդ ի պատմութեան Ս. Յակոբայ Մծբ. Սարարադ կոչելով զլեռն՝ նոյնպէս ի Կորդուս դնէ. Հին պատմիչ[91] վարուց Սրբոյն ի յիշել զխնդիր փայտից տապանին՝ ծանուցանէ զի տարակոյս կայր վասն լերինն և ոմանք զԿորդուացն ասէին, ոմանք զՄասեաց, բայց յիշէ զի կայր ի նմա աղբիւր և եկեղեցի յանուն Ս. Յակոբայ[92], և մինչև ցայսօր ժամանակի ասելով՝ ցուցանէ զի հնուց շինեալ էր. նորագոյն պատմիչք համարձակ զՍարարադն կամ զլեառն ելից Սրբոյն՝ Մասիս կոչեն։ — Ս. Յակոբայ վանաց և Ակոռայ եկեղեցւոյն շինութիւնն յԱնաստասայ կաթողիկոսէ՝ 1200 տարուան հնութիւն ունի, և որովհետև հիւրանոց ալ շինեց հոն, յայտ է որ անկէ առաջ այլ ոչ թէ միայն յաշխարհի մերում հռչակեալ էր, այլ ի յոյժ հեռաւոր աշխարհս, յորոց և յուխտ գային[93], և աւանդէին թէ զեռ տապանին կամ մեծ մասն մի կայր ի լերինն. մանաւանդ ի ԺԹ դարու յառաջ աշխարհակալութեան Թաթարաց առաջին ճանապարհորդք արևմտեայք սկսան համբաւել զայս յԵւրոպա և շարժել ի հետաքննութիւն զթափառասէրս[94]. յորոց նշանաւոր ճանաչի Ստրիւս Հոլանտացի որ յամին 1670 պատմէ ելեալ յԱյրարատեան լեառնն եօթնօրեայ ճանապարհաւ (5 փարսախ ելլալով յաւուր), և հոն գտանէ ճգնաւոր մի Հռոմայեցի Դոմինիկոս Ալեքսանդր, որ 25 տարիէ վեր բնակէր ի քարայրի, և մօտ էր ի տապանն և ամբողջ գտեր զայն, որոյ փայտէն խաչ մ'ալ տուաւ հրաշապատում ճանապարհորդին։ Յաջորդ դարուն սկիզբը (1702) անուանի բուսաբան ճանապարհորդ Դուռնըֆոր ելաւ ի Մասիս, բայց ոչ մինչ ի գագաթն, վասն որոյ և տապանէն տեղեկութիւն չի տար, այլ մեծ տառապածին եզերքը ճամբայ մը գտաւ՝ ուսկից սեպէ իջած զՆոյ և զընտանիսն։ Քանի մը տարի վերջ (1720) Մեծն Պետրոս Ռուսաց ինքնակալ մարդիկ ղրկեց՝ որ ելան, փնտռեցին և բան չի գտան ի տապանէն, որպէս և ոչ յետին ելլողք յայսմ դարուս. երեւելին Բառոդ և որք յետ նորա երկրաբանք, որ պէսպէս քննութիւն ըրին և չափեցին զլեռն. այլ տապանին հետք մ'ալ չի գտան, որ թէ մնացեալ ըլլար՝ բազմադարեան և կէս մղոնաչափ բարձր սառանց տակ ծածկեալ պիտի ըլլար։

Ոչ այնքան այս նշանք և աւանդութիւնք և երեւոյթք առ հաւատացողս, որքան սքանչելի և կեդրոնական դիրքն Արարատեան Մասեաց և քիչ ընդհատ



Digitized by Google

միւս բարձր Լերանց Հայոց՝ յորս կարծիք տապանին, հիմկու հմտագոյն աշխարհագիտաց[95] միտքն և զարմանքն գրաւեն, և աստուածային խնամոց ընտրութեան յարմարագոյն մարդասփիւռ կէտ ճանաչեն զայն՝ քան զբարձրաբերձ լերինս Հնդկաց և Դիպեթաց։ — Արարատեան Մասիք Հայոց Մեծաց կենդրոնն է, և իր զանգուածովը բոլոր հին աշխարհին կեդրոն ծանրութեան ծանուցեալ. Արարատեան աշխարհն ալ բազմապատիկ տեսութեամբք կայ ի կեդրոնի բնական և քաղաքական երկրիս. — Հին աշխարհի երկարագոյն գծին որ ի Պէհրինկայ մինչ ի գլուխ Բարեյուսոյ՝ միջավայր է Արարատ. — Ատլանդականէն Խաղաղական ովկիանոսին ծովուց միջոցն է Արարատ. — Իսլանտիոյ որ ի Հ. Մ. ծայր Եւրոպիոյ և Հնդկաց հարաւագոյն ծայրին միջավայրն է Արարատ. — Ափրիկիոյ Սենեկալի սահմանէն սկսեալ անապատաց որ յԱրաբիոյ կ՚անցնին յԱսիա և մինչեւ ի Փէքին ձգուին՝ միջատեղն է Արարատ. — Ճիպրալթարէն մինչեւ ի Պայքալ տարածեալ ճահճաց միջատեղն գտուի Արարատ, իբրեւ ովասիս մեծի ծովու ցամաքելոյ և ցամաքաց լճացելոց. — Կովկասեան և Հնդկագեռման ցեղից, Մողոլեան և Եթովպական ցեղից միջասահմանն է Արարատ. և բարձրութեամբ երկրին առաւելեալ քան զմերձաւոր շրջակայ աշխարհս, յորս իջուցանէ տասնիւ չափ չափաւոր մեծութեամբ գետեր, կլիմայիւն ընդ ազնուագոյն աշխարհաց դասակից (թէ և հիմայ քան զնոսա ցրտագոյն), մարդկային քաջահնար միտք իսկ չեն կարող լաւագոյն տեղ մը ցուցանել յերկրագնտիս ի սփիւռ և ի ծաւալումն մարդկութեան յետ ջրհեղեղին։

Այսպիսի բարեդէպ տեղւոյ մը գագաթ իջուց Նախախնամութիւնն երկրորդ մարդկութեան նահապետը իր պատսպարան նաւովը և ընտանեօք. և այնպիսի բարձր կէտէ բարձրագոյն և հրաշախառն տեսութեամբ ցոյց տուաւ երկրիս շուրջ ոլորտը՝ ուր իր սերունդքը բազմանալով պիտի ծաւալէին, ինչպէս այն բոլորածիր և մի լոտ միոջէ հեռաձիգ ծիրքն ալեաց որ լայնաբաց հեռանային ի լեռնէն յիջանել և ի նստել տապանին հոն։ —

Առաջին գործ երկրորդն և հմտագոյն Ադամայ յելանելն ի փրկաւէտ տապանէն՝ եղաւ դաւանութիւն և պաշտօն անզուգական Երախտեաց Արարչին որ առ ինքն և առ տուն իւր, որոյ հրամանաւ մտաւ և ելաւ ի միակ ճշմարիտ ոլորտապատ նաւէն. և հազիւ կոխելով այն նոր ցամքած բարձր նաւահանգիստը[96], սեղան մը կանգնեց Աստուծոյ, և իր խնամօք տարի մը սնած սուրբ չորքոտանի և թեւաւոր կենդանիներէն ողջակէզ պատարագ հանեց, իր ընտանեօքը սեղանին չորս բոլորը առած ընդ շնորհակալեաց՝ մաղթելով ի Տեառնէ գթութիւն ի վերայ ապագայ զարմին և խնայել յայնպիսի ա-

հազին բարկութենէն, եթէ դարձեալ երբեք յանցաւոր գտուի սխալոտ մարդկութիւնն ։ Պատմութեանց և մանաւանդ Ս. Գրոց մէջ քանի մը սիրալի պատարագք կամ զոհք յիշուին որպէս Աբելին, Աբրահամուն, Ահարոնի և Սողոմոնի, և այլն, բայց Նոյայ պատարագն ամենէն վսեմագոյն և բազմազէմ և աննման կ'երեւայ մեզ. սեղանն 15–6000′, բարձր լեռան մը տարատափ որ երկրիս համաշխարհական վտանգին ազատութեան առաջին նշան եղաւ. զոհն ամենայն ցամաքային կենդանեաց ազնուագոյն տեսակներէն ընտրուած, քահանայն 600 տարուան ծերունի մը որ միակ վկայ է 2000 տարուան մարդկութեան յիշատակաց, զոր ջնջեցին անդնդոց և երկնից հեղեղքն. այն հին աշխարհին և նորասկիզբն աշխարհի մէջ իբրեւ կենդանի ներկայ մը կեցած, աւելի քան զանծանօթ ապագայն որոյ սկիզբն պիտի ըլլայ, կու մտածէ զանցեալն որոյ կատարածն եղաւ. և անոր վրայ 600 անգամ արեւուն շրջանը դիտող աչքերն կու ծածկին արտասուօք երբ Արարատեան լեռանց չորս դին տարածուած հովիտներն և դաշտերն կու դիտէ, որ երբեմն հսկայից շինութեամբ և բնակարանօք լցեալ, հիմայ անոնց յղփացեալ մարմնոց նշխարօքն, տեղ տեղ դիզուած անշարժ ոսկերոտեաւն միայն կու յայտնին, թէ այդ անհուն անշունչ անապատ երկիրն երբեմն մարդկան և կենդանեաց անդրանիկն կրելով ոգեւորել էր. — կանգնեալ ընդ մէջ աշխարհի մեռելոյ և նորածին աշխարհի, մէկուն քաւութիւն՝ մէկայլին բարգաւաճումն կու խնդրէ իր ջերմեռանդագին ընծաներքն. որոց յօժար ունկնդիր Բարձրեալն՝ երկիցս և երիցս խոստմամբ, օրհնութեամբ և պատուիրօք հրամայէ նոցա աճումն և բարգաւաճումն, սերիլ, լնուլ զերկիր աւելի քան զառաջինն, և իշխել ամենայն անդեան բնութեանց. չունենալով այնուհետեւ կասկած և երկիւղ նորէն համաշխարհական ջրհեղեղի մը, և յառհաւատչեայ խոստման իւրոյ և յուսոյ մարդկան, քաջալերելով ասէ Աստուած.
«Զաղեղն իմ եդից յամպս, և եղիցի ի նշանակ յաւիտենական ուխտին
»ընդ իս և ընդ ամենայն երկիր։ Եւ եղիցի ի գումարել ինձ զամպս ի
»վերայ երկրի, երեւեսցի աղեղն իմ յամպս, և յիշեցից զուխտ իմ . . .
»և ոչ եւս եղիցի ջրհեղեղ ի սատակել զամենայն մարմին »։ Անձրեւն միշտ իբրեւ տկար յիշատակ մի կ'ընծայէ ջրհեղեղի. ծիրանի գօտին այլ նորոգէ անոր վախէն փրկութիւնն և Աստուծոյ խոստումն. անոնցմէ հաստատ և հզօր նշան դաշանց Աստուծոյ և մարդկան՝ ուխտից արձան՝ լեառնն արարատեան ընդ մէջ երկնից և երկրի կոթողեալ՝ կայ և մնայ ի վկայութիւն անցեալ և ներկայ աշխարհաց, և ի յիշատակ մեծագոյն անցից մարդկութեան և երկրի[97] ։

Այս ուխտից լերան վրայ մեծ նորութիւն կամ փոփոխութիւն մ'ալ հաստատեցաւ մարդկան բարոյական և բնական կենաց. հրամայեց բնութեան հաստիչն որ անբան կենդանիք ոչ միայն ծառայ ըլլան մարդկան՝ այլ և սնունդ. որպէս անոնք զիրար ուտէին, մարդ ալ կարենայ ուտել զմիս անասնոց։ Այս դիպուածն միայն իբրև մեր հայրենեաց երկրին վըրայ հանդիպեցաւ յիշեմք, իսկ խորհրդածելն այս ծանր. նիւթոյն վրայ թողումք ընդհանուր մարդկային տնտեսութեանը քննող իմաստասիրաց։



# Ե

# ՆՈՅԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ

## ՄԻՆՉԵՒ Ի ԲԱԺԱՆՈՒՄՆ ՍԵՐՆԴՈՑՆ

Ոչ միայն Այրարատեան երկրին ուր իջաւ Նոյ տապանաւն, և ոչ Պաղեստին միայն ուսկից հռչակեցան հնագոյն աւանդութիւնք, այլ մինչեւ արեւելից ծայրքն Չինք, և արեւմտից ծայրքն Մեքսիկացիք Ամերիկոյ կ'աւանդեն շատ կամ նուազ աղաւաղ ջրհեղեղին և Նոյի յիշատակը, որպէս անուամբ կոչելով այս զարմանալի անձը. բայց աւելի Այրարատայ չորս դին շրջանակեալ աշխարհաց մէջ կու յաճախեն զրոյցքն. մերձաւոր ազգք և աշխարհք, ինչպէս Հայք Ասորիք, Քաղդէացիք, Պարսք, Կովկասեանք. Ս. Գրոց հիմնական պատմութենէն շատ չեն հեռանար. իսկ Յոյնք որ երկրիս շատ մեծամեծ դիպուածներ իրենց փոքրիկ աշխարհին մէջ կամ ի սահմանսն փոխադրեն ճարտար գրչաւ և հաճոյալուր առասպելօք, ոչ մէկ՝ այլ քանի մը ջրհեղեղ պատմեն, և գլխաւոր երկուք Ովկիգեան և Դեւկալիոնեան. այս վերջինս հնագոյնն և հռչակագոյն է և համարի Նոյեան կամ արարատեան ջրհեղեղին անդրայիշատակն։ Երբ քրիստոնէութեան առաջին ճառագայթքն զարնուեցան հեթանոսութեան վրայ, առասպելահրաշ Յոյնք և հետեւողք յերկու կրօնից ալ խառնուրդ ընելով, ըստ ախորժակաց իւրեանց Ս. Գրոց յիշատակները առին կէս քրիստոնեայ և կէս հեթանոս մտօք, և Սիբիլլայից տաղք հրատարակեցին, յորս ընթեռնումք հրամայեալ Նոյի նաւել

> « Ի ... Փռիւգիոյ լեառն ամբառնայ ի սահմանս
> Բարձրադիտակ խրոխտագանձ, կոչեալ անուն Արարատ
> Ուստ՝ անարքին Մարսիաս աղբերանց զաւաջին»։

և դարձեալ.

> « Ով Փռիւգիա, ի բարձրակոյս ալեաց դու նախ ամբարձցես գլուխ
> » Ըղվերածնեալ մարդկութեան զարմ սնանելով՝ մեծ գրեսցիս դայեակ[98]»։

Անշուշտ Գնոստիկեան հեղինակք տաղիցս Փռիւգացիք էին և Փռիւ-

Digitized by Google

գիա փոխադրեցին զՆոյ. և հին Հայոց և Փռիւգացոց յարակցութիւնն այլ օգնական էր կարծեացն, որ այնքան զօրացաւ մինչեւ դրամք Ապամէոյ քաղաքին Փռիգիոյ՝ քրիստոնէութեան առաջին (Բ?) դարուն դրոշմեալք, ներկայացունեն զտապանն հանդերձ երկու հաւուք և ձիթենեայ շիւղիւն, և տապանէն ելլող անձամբք. որ են ըստ հեթանոս մտաց Դեւկալիոն և Փիրրա։ Այսչափ օտարք մտնելով Ս. Գրոց պատմութեան տակաւին հին և ստոյգ աւանդութիւն մը չեն ընծայեր Նոյի և իր ընտանեաց վրայօք, այլ դարձեալ հեռանան յառաջիկս. որով միայն ի Ս. Գիրս գտանի ստոյգ այլ սակաւ յիշատակ Նոյեանց յետ ջրհեղեղին և անստուգից մէջ հաւանագոյն՝ Այրարատայ մերձագոյն աշխարհաց աւանդութիւնք։

Սուրբ գիրք ամենեւին չեն յիշեր Նոյայ բնակութեան, ճամբորդութեան, որդէծնութեան և մահուան տեղն. այլ միայն զի 350 տարի այլ ապրեցաւ յետ ջրհեղեղին և մեռաւ 950 տարուան. և մէկ կամ երկու դէպք ալ այսինքն հողագործութիւնն, այգի տնկելն, և անոր արդիւնքով գինովնալն և գինովութեան արգասիքն, ծիծաղելի ըլլալն ի Քամայ, և անոր ցեղը անիծանելն, օրհնելով զՍեմ և զՅաբեթ ընդ նմա։ Այսչափ է Ս. Գրոց յիշատակն այս մեծ նահապետին երկրորդ կենաց վրայ։

Ջրոց կամաց կամաց ցածնալ և ցամքելն և Նոյի ալ նոյնպէս շարժելն ի բանալ զպատուհան և զձեղուն տապանին և յելանելն անտի, տան պուշակել, որ մէկէն չ՚իջաւ ի լեռնէն, այլ առ ժամանակ մը բնակեցաւ անոր վերայ անքոյթ տեղ մը. և ամենայն աւանդիչք[99] միաբանին թէ առաջ ժամանակ մը լերանց վրայ բնակեցաւ Նոյ։ Ի մերայոց ոմն 50 տարի առէ բնակեալ յԱկոռի. եթէ այնպէս էր՝ Նոյի Նախ–իջեւանն ալ հոն մօտ բնառելու էր. և ուր ալ որ ըլլայ տապանակիր լեռն՝ իր ստորոտը պիտի ըլլար այս Նախիջեւանն կամ Նահրեվան կամ Թմանինն։ — Ըստ Աննեան Բերոսի՝ Նոյ լեռնէն իջաւ ի մօտակայ հովիտ մը[100], որ դեռ ջրախեղդ մարդկան դիակամբք ծածկեալ էր, վասն որոյ և անուանեց զայն Միրի–ատամ, այսինքն աղէթափ մարդկան տեղի. և հոն քարերու վերայ արձանագրեց եղած դիպուածքն։ Իսկ բուն Բերոսն քաղդէացի և հետեւող հին պատմիչքն ասեն երբ Քսիսութր (Նոյ) նաւէն ելաւ՝ յետ պատարագին անյայտ եղաւ, աստուածներն զինքն առին կամ փոխադրեցին ուրիշ տեղ. իսկ անոր ընտանեացը իմացուցին որ նաւուն իջած տեղն է Հայաստան, և պատուիրեցին որ երթան յՍիպպ կամ Սիպարացւոց քաղաքն և հոն ջրհեղեղէն առաջ թողած գրքերն հանեն։ Պատուէրն առասպել ալ ըլլայ քաղաքն իրական է. բայց ո՞ւր արդեօք։ — Մեր հնախօսն համարի զՍպերն Բարձր

Հայոց, որ հնագոյն ժամանակ աւելի նշանաւոր տեղ էր քան յետոյ. իսկ յարտաքնոց ոմանք համարին զկարիաթ Սեֆեր որ թարգմանի Քաղաք Նամակաց ի սահմանս Պաղեստինոյ և յիշի ի Սուրբ Գիրս, և ոմանք ըստ Քաղդէացւոց ի սահմանս Բաբելոնի, ընդ մէջ Նինուէի և Բաբելոն քաղաքի, յեզերս Եփրատայ. և մեզ այլ այս եաքի գրութիւնս քան զառաջինսն հաւանագոյն երեւայ, բայց աւելի եւս հաւանագոյնն՝ աւելի այլ դէպ ի հիւսիս կարծեմք, և տեղը յետոյ յիշենք (61)։ Նոյն քաղաքն էր Ամենամատեան անուանեալն, Պանտաբիբլոն ըստ յունականին, յորմէ էին ոմանք ի նախարդաց Քսիսութրեայ, ըստ Քաղդէացւոց։ Այսպէս սոքա իրենց հայրենեաց մէջ կու գնեն թէ՛ Նոյի (Քսիսութր.) ջրհեղեղէն առաջ բնակութիւնն, և թէ իրեն ընտանեաց անկէ վերջի բնակութիւնն[101]. իսկ տապանէն ելլալն ի Հայս կու խոստովանին, որով մակաբերել տան թէ բնակութիւնն այլ հոն եղած պէտի ըլլայ։ Իսկ Հրէից աւանդաբանք[102] ինչուան ի Դամասկոս կու տանին Նոյայ բնակութիւնն, ուր ընդ Սեմայ և ընդ Մելքիսեդեկի ասեն մնացեալ։ Հրէից դէմ գրող հին հեղինակ մ'ալ, Մոլոն, (Եւսեբ. Պատրաստ. Աւետ. Թ. ԺԹ.) կ'ասէ, թէ ջրհեղեղէն ազատողն Հայաստանէն ելաւ առջի երկիրը. բայց ան տեղէն ալ հալածուելով գնաց Ասորւոց անապատ լեռնակողմը։ Ասորիք ի Միջագետս և Արաբք յԱրաբիա (յԱրա—Նուհ) համարին զգերեզման նորա։ -- Աւելի զարմանալի է Նոր Բերոսեան գրոյցն որ զՆոյ յԻտալիա կու տանի և հոն աշխարհաշէն կ'ընծայէ. ջրհեղեղէն ետեւ, կ'ասէ, Նոյեանք միշտ երկուորեակ ծնանելով, շուտով բազմացաւ մարդկութիւնն և Հայաստանէն դուրս ելաւ. Նոյ ալ յԻտալիա գնաց Յաբեթ որդւովն, բայց մինչդեռ ի Հայաստան էր սովրեցուց և աւանդեց սրբազան գիտութիւններ և մանաւանդ աստեղաբաշխական և տոմարական բաներ և նշանագրելով թողուց սրբազան պաշտօնէից՝ որք Սակա անուանեցան, այսինքն քահանայք զոհագործ, և իրենք միայն կրնային կարդալ և իրենց յաջորդացն աւանդել այն գրուածքը։ Հասարակ ժողովրդեան ալ սովրեցուց երկրագործութիւն և այգեգործութիւն. բայց դեռ գինւոյն զօրութեան փորձ չըլլալով ինքն իր արուեստէն խաբուեցաւ, որպէս և Ս. Գիրք պատմեն. բայց Անիոս յաւելու պատմել վասն Քամայ զոր արտաքինքն ասեն ինչ որ ըրաւ Սատուռնոս իր հօրն Ուրանոսի, կամ Արամազդ Սատուռնոսի։ Իսկ Հայք վասն երախտեաց Նոյի կոչեցին և պատուեցին զնա իբրեւ աստուածային զօրութիւն և սերմն աշխարհի, (երկինք և արեգակն) Ողիպամա և Արսա, և այս անուամբք քաղաքներ շինեցին և նուիրեցին նմա[103]. թէ և այժմու Հայքս ոչ այսպիսի քաղաք ճանաչեմք և ոչ այսպիսի բառեր։ Թէ

Digitized by Google

Հայք և թէ Իտալացիք, ըստ Բերոսի կամ Անիոսի, նկարէին զՆոյ իբր վարիչ արեգական և լուսնի և ուղղիչ պտտութեանց։ Նոյնպէս Նոյայ կնոջն ալ որ կոչէր Դիւթէա (Դիւթ?) կամ Տիտէա[104] և յետ մահուան Արետիա (երկիր) և Երտա (հուր) աստուածական պատիւ ընծայեցին։ — Մինչդեռ ի Հայս էր Նոյ՝ ծնաւ շատ զաւակներ, յորոց Արագա[105] զաւակն՝ (յորմէ կոչեցաւ Երասխ գետ) ծնաւ զՍկիտա, որոյ անուամբ Հայաստան կոչեցաւ Սկիտիա կամ Սկիւթիա. և Սկիտա ծնաւ զՆապոս և զՊրուտոս կամ Բրուտոն։ Նոյայ որդւոց մէկն այլ կոչէր Հերմինոն, անշուշտ ասկէց այլ Արմենիա կոչումն բխելու է։ Իսկ ուրիշ հնախոյզ պատմիչ մ'ալ[106] զԱրաշա ինքն անուանէ մայր Բրիտանի, յորմէ Բրիտանացիք. այս աւանդութեանս կերպով մը զուգաձայնի Հայոցն Մանիտան զոր քիչ մը վերը պիտի յիշեմք։

Նոյ յետ 260 տարւոյ ջրհեղեղին եկաւ յԵտրուրիա Իտալիոյ, յետ հաստատելոյ զանազան գաղթականս յԱսիա. Հայաստանէն ելլալու ատեն հոն թողուց Նոյ զԱրաշա և զՍկիտա, և իր տեղ քահանայապետ դրաւ զՍապաթէոս–Սակա։ Ո՞վ էր Սապաթ. – ի Ս. Գիրս յիշի Սաբաթա (Ծննդ. ԺԱ. 7) որդի Քուշայ։ Դիոդ. Սիկիլիացի (Դ. Ե) յիշէ հնագոյն Բագաս մի՝ որդի Արամազդայ և Պրոսերպինայ, որ կոչէր և Սաբաս կամ Սաբազ, և նախ զեզինս լծեց յարօրադրութիւն սերմնացանութեան, վասն այսորիկ և եղջերաւոր նկարի։ Յիշէ զսա Անիոս, բայց որդի Սաբայ որդւոյ Քամայ անուանելով։ Կորճայից և Պարսկահայոց և Քաղդէաստանի մէջ ծանօթ է Ջաւ կամ Ջապոս և Ջապաթոս գետք, և շատ հաւանական է որ խօսս հին ատեն յայն կողմանս բնակած է նահապետ ոմն համանուն, թէ և ոչ Անիոսեանն, որոյ համար ասէ՝ թէ յ'300 ամի ջրհեղեղին, յետ Հայոց սահմանակից զանազան աշխարհաց մէջ յածելու՝ Գոնաոսէն անցնելով եկաւ յԻտալիա առ Նոյ, և թագաւոր կարգեցաւ Օտարածնաց կամ Գաղթականաց. որոց վրայ իրեն յաջորդ դրաւ զորդի իւր Սաբոս, յորմէ Սաբանացիք, և Սաբատ քաղաք Տոսկանայ, որ յիշի և ի Ստրաբոնէ։ Սաբատէոս մեռաւ յամի 341 ջրհեղեղին, և իր տեղ դրաւ Նոյ զորդին զԿրանոս. որում յաջորդեց յետ մահուան Նոյի՝ Ուրանոս. ահա որ եկան գաղթականք ի Հայոց և ընդունելութիւն գտան։ Այս Սաբատէոս ասի հեղինակ հռչակեալ Ենկուպեան տախտակացն[107], կամ անոնց նախագաղափարաց՝ զորս գրեր էր ի Կրոմլէխ (Ագուիլլարիա) դաստակերտ քաղաք իւր։ Ասոնց նման գտուեցան ուրիշ տախտակներ ալ ի Վիթերպոյ՝ որք Արարատեան կ'ըսուէին, ըստ Անիոսի։ Ցանուն Հայոց կամ Սակաց, զի այսպէս անուա-

նէին Հայք յայնժամ, եկեղոց ընդ Նոյի և Սարաաայ, Սակք կամ Սակնի կոչեցաւ ազգ մի Տուկանաց. յարակից Սաքինաց, և յանուն նոցա բերան Պարսս գետոյ Սակա կոչեցաւ:

Այս աւանդութեանց մէջ ո՞րքան հաւանական կամ ընդունելի բան ըլլալն դժար է ստուգել. միայն յիշեմք որ Նոյի այնքան հեռու տեղ երթալն մեզ բոլորովին անընդունելի է. և երկրորդ որ Սակայ վրայ աւանդութիւնն քննութեան արժան է. այսինքն այսպիսի անուամբ հնագոյն ազգի մը ըլլալն, և անկէ սերիլն Սկիւթաց: Ս. Եպիփան և այլք կու պնդեն թէ պատմական ժամանակաց սկիզբն Սակ ազգ մը կայր անուանի և աշխարհածանօթ, որ Եգիպտացւոց հետ կը վիճէր հնութեան կամ առաջնութեան վրայօք և երբ Եգիպտացիք իրենց երկիրը նախադասէին վասն ջերմ և բարեխառն կլիմային իւրեանց յարմարագոյն բնակութեան մարդկան, Սկիւթացիք ասէին թէ իրենցն ալ այնպէս էր յառաջ և յետոյ փոխուեցաւ կլիման. ինչպէս որ հին Պարսից աւանդութեան մէջ այլ կայր այս: Պարզապէս ասելով՝ Ջրհեղեղէն ինչուան Բաբելոնի միջոց, մարդկութիւն կամ ժողովուրդ Սակ և Սկիւթ անուանէր ըստ մտաց Եպիփանու և հետեւողացն, և կրօնք իսկ նոցա Սկիւթութիւն: Ստուգագոյն պատմիչք այլ հաւանին հնութեան Սակաց, թէ և ոչ այդքան հեռու տանին զայն, այլ և ոչ կարեն ասել անանց ծագումը կամ նախահայրը: Ազգին հին ծագման նման հին է և Սակեան տօնը կամ բարեկենդանը, որ յամենայն Ասիա և ինչուան ի Յունաստան կատարուէր այսու անուամբ. թէ ոմանք տօնին ծագումը Քրիստոսէ 6 կամ 7 դար առաջ միայն կու դնեն:

Այս խառն հնութիւնները թողլով, ՚աւելի խորագոյնին բայց պարզագոյնին եկանք, մեր ազգային յիշատակարանաց և հաւատարմագոյն պատմչաց մէջ բնտռելով զՆոյ ի Հայաստան. որուն և իր որդւոց հոն բնակութեան և գործոց յիշատակները գրի անցած էր, ըստ նախնեաց աւանդից, և երգովք եւ ռամկաբանօք ալ յեղյեղէին մեր հին հարքն. բայց արդէն քրիստոնէութեան առաջին դարերուն մէջ ալ կորսուած էր այս մատեանս. միայն քանի մը աւանդութիւն մնացեր էր[108] զոր և յիշէին ի մէջ իմաստասիրաց Յունաց՝ վարժակիցք նոցին Հայք յԱթէնս կամ յԱղեքսանդրիա. և գլխաւոր ի նոսա Ոլոմպիոդոր՝ յունանուն բայց հայազգի, որ թէ այս գրոց և թէ երգոց մնացորդ յիշատակներուն համաձայնութեանն վկայ եղած էր իր հայրենեաց մէջ կու հաստատէր ըստ Բերոսեայ աւանդութեանն թէ Քսիսութրոս—Նոյ տապանէն իջած էր ի Հայս. և որպէս կարգ

Digitized by Google

լանիցն ցուցանէ՝ ի կործայս և ոչ ի Մասիս. վասնզի յետ քիչ կամ շատ ժամանակ կենալու ի Նախիջեւանի անդ ուր բնակեցան յելանելն ի տապանէն, Սիմ որդի Նոյի, որ է Սեմ Ս. Գրոց, ելաւ մօտակայ երկիրը դիտելու, կամ յարմարագոյն բնակութիւն մը բնտռելով, կամ ջրհեղեղէ առաջ ծանօթ տեղի մը յիշատակ և կամ թերևս ջրհեղեղին թողած նշանները, և իր ելած տեղէն դէպ յարևմուտս հիւսիսոյ գնաց, անշուշտ գետոյ մը ընթացք բռնելով և լեռներէ ու կրճերէ անցնելով, մինչեւ հասաւ երկայնաձիգ լեռնապարու մը, որուն ստորոտը չափաւոր կամ պզտի դաշտ մը կար և մէջէն գետեր կ'անցնէին։ Երկու (լուսնական) ամսոյ չափ ժամանակ հոն բնակեցաւ, և այլ լերանց պարուն իր անունը տուաւ. այս առաջին անգամ է ի պատմութեան յիշուած տեղւոյ՝ անուանադրութիւն. և ինքն նորէն դարձաւ դէպ յարեւելս հարաւոյ՝ իր ելած տեղը։ Սիմ լեռները մինչև հիմայ նոյն անուամբ ծանօթ են ի Հայոց, Արածանւոյ և Տիգրիսի ջրոց անջրպետ ընդ մէջ Տուրուբերանի և Աղձնեաց. այս յետին նահանգն հնագոյն ժամանակ Հայկազանց չէր, անոր համար այս դիպաց հին պատմիչ կամ երգիչն Ասորեստանի մօտ առէ Սիմայ գնացած երկիրը, որ առաջին նահանգին նախապատիւ զաւառն եղաւ իշխանութեան Հայոց. և զանունն ալ առաւ ի նոյն ի Սիմայ կրսեր որդւոց մէկէն. զոր պատմիչս անուանէ Տարբան, յորմէ կոչեցաւ տեղին Տարաւն կամ Տարօն, մինչեւ ցայսօր[109]։ Պէտք չէ այս Սիմայ որդւոյն անունը բնտռել ի Ս. Գիրս, ուր միայն անոր հինգ որդւոց անուանք կան, և անտարակոյս է թէ ուրիշ շատ որդիք ալ ունեցեր է, մանաւանդ եթէ ստոյգ է Տարբանայ համար գրուցածն Ոլոմպիոդորի, թէ 30 մանչ զաւակօք և 15 աղջկօք և անոնց արամբքն, հաւանօրէն և մանչերուն կանամբք բաժնուեցաւ հօրմէն, և անոր գտած դաշտը եկաւ բնակելու, ուր, ինչպէս կ'երեւայ, առաջ ալ իր հետ եկած էր տղայութեանը ատեն. կամ լսեր էր հօրմէն և երիցագոյն եղբայրներէն, և իր անուամբն անուանեց զդաշտն, որ թէ՛ հնութեամբ թէ բնութեամբ, և թէ կրօնից և ուսմանց և քաղջագործութեանց հանդիսիւք անուանի եղաւ Հայոց պատմութեան մէջ։ Դաշտին մէջէն անցնող գետերն են Մեղ կամ Մեղրի և Արածանին յոր նա թափի, որոց ափունքը ծածկեցան շինութեամբք և մշակութեամբ. և եթէ ստոյգ է պատմութիւնս՝ անոր հարիւրաւոր շինից անուանց մէկ մասն, որ ինչուան հիմայ կու լսուի, Տարբանայ որդւոց և թոռանց անուանքն է. իսկ իւր բնակութեան տեղն ալ, ուսկից նախ սկսան որդիքն իրմէ զատուիլ՝ կոչեց և կոչի մինչեւ ցայժմ Ցրօնք, իբր տեղի ցրուելու, և է Մեղ գետոյն աջակողմն, և դաշ-

Digitized by Google

տին արեւելեան հիւսակողմն. իսկ Տարբանայ կամ Տարուանայ տանն դաշտին արեւմտեան հիւսիսակողմն Արածանւոյ եզերքն համարի, որ է ըսել դաշտին վերջին սահմանները, ուր Տաղօնք անուն աւերակ կար մեծ շէնքի նաեւ ի սկիզբն դարուս, որ զՏարօնոյ անուն բերէ, եթէ չըլլայ Աստղօնից[110] բերդն։ Բայց այս տունս որ Սիմայ որդւոյն անուանէն առնուած է, և ոչ միայն դաշտին և գաւառին այլ և բոլոր նահանգին կամ Հայոց 15 աշխարհաց մէկուն արուեցաւ, ստուգութեան կարօտ է. վասն զի նահանգն կոչի Տուրուբերան[111], և հարկ է որ այս իրեք անուանքն ալ Տարբան, Տարօն, Տուրուբերան համաձայն կամ լծորդ ըլլան։

Տարբանայ բնակութիւնն և ցրօնքն անշուշտ յառաջ է քան զընդհանուր կամ զԹարբելոնեան ցրօնս ազգաց. և իր որդւոց մէկ մասն մնացեալ է հոս և հնազանդեալ Հայկայ, յետ քաջաբար պարձի նորա և ժառանգելոյ զաշխարհս. և այսու յիշատակաւ Տարբանեան և Սեմեան բնակութիւնն Տարօն՝ կոչեցաւ «Առաջին տուն Հայոց»[112]. և առաջնագոյն տան գիւտին պատճառ պիտի ըլլայ մեզի, այսինքն՝ Սեմեան և Նոյեան առաջին բնակութեանն, որ ըստ նշանակելոյ պատմութեանս էր յարեւելեան հարաւային կողման Տարօնոյ, ուրեմն յաշխարհին կորճայից և ի գաւառս կորդուաց, ուր զհանգիստ տապանին կամ զէջս Նոյայ տեսանք աւանդեալ ի նախնեաց բազմաց։ Եւ հարկ է որ հիմայ հոս ի սկզբանէ պատմութեան մինչեւ ցայժմ ծածկեալ և դժուարացեալ վայրենի լերանց մէջ բնտռեմք զբնավայր Նոյի և որդւոցն, և ոչ ի կողմանս բնիկ Այրարատայ կամ ի Նախիջեւան. վասն զի նախ, եթէ անոր եկած ըլլար Սեմ՝ ի Տարօն գալու համար պէտք էր ընդ արեւմուտս հարաւոյ իջնալ և ոչ թէ ընդ արեւմ. հիւսիսոյ. և երկրորդ ի Մասեաց ստնէն մինչեւ ի Տարօն չեկած՝ ուրիշ յարմարագոյն դաշտեր կու գտնէր բնակութեան, ինչպէս Կոգայովիտ, Բագրեւանդ, Հարք և այլն, իսկ հոս Տարօն իբրեւ առաջին զուրան տեղի գտեալ կը ցուցուի. և Հայկ (որ եկաւ և նախ բնակեցաւ յառաջին տունն Սիմայ) և իր որդիք միշտ ի յարեւելից հարաւոյ դէպ յարեւմուտս հիւսիսոյ խաղային ինչուան ի Գուգարս։

Արդ, Սիմայ և Տարբանայ բռնած ճամբան անշուշտ է Տարօնոյ դաշտին Աղձնեաց արեւելագոյն ծայրի ձորերուն միջոցը, Թուխայ կամ Բաղիշոյ ճամբան, ուսկից միշտ լերանց մէջ կորդուաց գետոյն և կամ Պօհկանայ եզերքը բռնելով կորճայից խարբը կ՚ըլլայ. եթէ Նոյայ բնակած տեղն չէր Թմանիմ կամ Թմնիսն (որ է հաւանօրէն Տմորիք ըստ Հայոց), անկէ շատ հեռու չէր, դէպ ի հիւսիս արեւելից. այսինքն Մոկաց, Ծուլամերկոյ և

Digitized by Google

Աղձնեաց հարաւագոյն արեւելեան գաւառաց միջոց։ Արփաքսադայ՝ Սիմայ անդրանկան բնակութիւնն անոր մօտ ճանչցուած է ի հասարակաց. Հարկաւ հոն կամ անոր մօտ էր Սիմայ բնակութիւնն, կամ Տունն Զրուանայ, ինչպէս որ հին պատմիչ մի Հայոցս (Սեբէոս) նշանակէ յաւելն վասն Հայկայ թէ չուեալ ի Բաբելոնէ եկաւ բնակեցաւ «յերկիրն Արարատայ ի տանն որ »ի Լեռնայինն, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ, հօրն և եղբարցն »հանդերձ. և աստ եւս զնա Հայկն կալեալ ժառանգութեան Կադմեայ »թոռին իւրում»։ Կադմեայ տան գիրքն ալ յուրիշ յիշատակաց ստուգի որ էր ի հարաւակողմանս Կորճայից, և ոչ ի Տարօն. ապա հոն էր և տունն Սեմայ և Նոյի. զոր և աւելի ստուգէ ուրիշ հին պատմիչ մ'այլ նոյն գիտուածն յիշելով, թէ Բել զինելով ի վերայ Հայկայ «հասանէ յերկիրն »Արարատայ ի Տունն որ էր եղօր հայրենի, զոր շինեալն էր ի Լեռն»աին, և կազմեալ փախստական գնաց»։ Խորենացի (Ա. ժ) վկայէ թէ սպառնալի աւանդութիւնները անգիր կու լուէին զեռ իր ժամանակը կամ իրմէ առջի պատմչաց ասէն[113], և թէ Մարիբասայ պատմածն այլ համաձայն է անոնց որ ասէ վասն Հայկայ «գնայ յերկիրն Արարատայ.. բնակէ ի »Լեռնոտ դաշտավայրի» կամ «ի Լեռնոտին միում դաշտավայրի». ուր գտնելով առաջագոյն բնակեալ մարդիկ, շէնք շինէ և թողու ի կալուած։ Այս ամենայն պատմչաց աւանդութեանցն հետեւի՝ նախ որ Կադմեայ տունն, Հայկայ առաջին բնակութիւնն յերկրին Արարատայ, Զրուանայ կամ Սեմայ առաջին տունն, և իր հօր տունն՝ մի և նոյն տեղն են, և հասարակաց հայրենի ճանաչին. և երկրորդ՝ այս տեղս Լեռնոտ կամ Լեռնոտն տեղ մ'է, և թերեւս յատուկ անուամբ ալ այնպէս կոչի, և երրորդ՝ հաւանօրէն հնագոյն Արարատայ բնավայրն հոս է[114]. որ նախ ամենայն մարդկութեան խանձարուրք կամ հայրենիք եղաւ, և յետոյ Հայոց սեփական նախարարն, Հայկայ գալստեամբն և շինութեամբ. և վայել էր որ իբրեւ զՀարք և զՀայոց Զօր ժառանգէր մեր դիւցազին անունն յառաջ քան զնոսա. և եթէ ցարդ չէ գիտուած այս բանս, սակայն բոլորովին աննշան այլ չէ մնացած. բազմերախտ Խորենացւոյն մանաւոր գրուածի մը մէջ կու կարդամք ՀԱՅԱՍՏԱՆ գաւառի անուն ընդ որ անցին Ս. Հռիփսիմեանք ի Տմորեաց (որ են Կորդուք) երթալով ի Բժնունիս և յԱնձեւացիս Վասպուրականի. և թէ Հայաստան գաւառի մէջ կամ մօտ էր Մշկունեաց լեառ, որ թերեւս ըլլայ հիմկու Մեկքանա լեառն յարեւմուտս Ճուլամերկայ. վերը յիշած Թմանիք (ուլթից) քաղաքն, անոր մօտ Սողոփիլ (հիմայ Սելլիկէ), ուր Աւորիք աւանդէին զնիոս տապանին, անոր մօտ Ծիւառի լերինքն,

զոր հիմայ անգացիք ճանչնան տապանակիր լեառն, Նախիջեւան գեղն, ամէնքն ալ այս կողմերս են. ուր հարկ էր բնտռել և Ս. Եպիփանու յանուանէ յիշեալ տապանին լեռը Լուպար, և ահա մինչեւ ցայսօր ծանօթ է ԼՈՒԱՐ գեօղն Հայոց ի ՍԳԱՐՆԵՐՏ վիճակի, որ է ի հիւսիսոյ Սողոփեայ և Հար. յարեւմտից Մոկաց, և Թերեւս պահէ ցարդ վերայիշողրեալ Սերաբացւոց քաղաքին անունն, ուր ըստ Փաւզդէացւոց գնաց Նոյ տապանէն իջնալէն ետեւ։ — Արդ, եթէ հաւանագոյն անգ մը կրնայ գտուիլ Նոյի տապանին և առաջին բնակութեանն՝ ըստ մեզ այս տեղս է, ընդ մէջ Մոկաց, Խիզանայ, Սղերդու, Ճէզիրէի, Ամատիոյ և Ճուլամերկոյ։ Եթէ կ'ուզես յիշենք և զՆորտըզ վիճակ ընդ մէջ սորա (Ճուլամերկոյ) և Մոկաց, ուր ծանօթ է հիմայ Հայկեան կամ Հեքեան աւանն, որ Հայկայ աւանին և Հայաստան գաւառի անունները յիշեցունէ։ Իսկ Նորտըզ քրդաբնակ և Հայախառն գաւառակ, ի միջին նախնեաց մերոց յիշատակեալ Նօտըզ անուամբ, արդեօք չի՞ նշանակեր ՆՈՅԱԹԵՐԴ, որովհետեւ Տըզ՝ հիմայ բերդ ըսել է ի քուրդ և պարսիկ լեզու։

Արդ հոս, հիմայ երկրիս ծանօթագոյն բաժնին անծանօթագոյն մնացեալ մասանց մէկուն մէջ կ'երեւին ինձ ջրհեղեղեան լեռինքն Արարատայ, նախ իջեւանն Նոյի և տուն բնակութեանն, զոր Սեմ շինեց և հաստատեց, ուսկից ելաւ ինքն ալ իր Տարբան որդին ալ ի Տարօն երթալու. ուր դարձաւ Հայկն և Հայաստանեան կոչեց, զոր Թողուց կադմեայ՝ յերթալն ի Հարք. զոր գրաւեց Բել առ ժամանակ մի, և դարձեալ Թափեց Հայկն, և հաստատեց ի ժառանգութիւն կադմոսի, որոյ անուամբ այնուհետեւ Տուն կադմեայ կոչելով՝ հին անուանք մոռացան[115]։

Եթէ հոս էր Նոյայ բնակութիւնն, և ոչ ի Նախճաւան, իր գերեզմանն ալ հոն բնտռելու չէ՞. և թէ բոլորովին մեզ անյայտ է Նոյայ մահուան տեղն և դէպք, բայց նոյնպէս ալ անընդունելի է Նախիջեւան գերեզմանին աւանդութիւնն, ինչպէս Մարանդայ տուգարանութիւնն ալ, որպէս թէ Նոյայ կնոջն գերեզմանն հոն ըլլայ, և վասն այն անուանի Մայր—անդ. միայն հաւանական երեւի թէ Նոյ իր բնակած սահմաններէն շատ չհեռացաւ և ոչ հեռու տեղ մեռաւ։ Իսկ իր երկրորդ կենաց 350 տարեաց մէջ ի՞նչ ըրաւ, կամ ի՞նչ յիշատակ և աւանդութիւն կայ յազգէս հաւանական կամ ընդունելի եղած։ — Միայն երկու որդւոց ծնած ըլլալն կու յիշեն ոմանք ի պատմչաց և յաւանդողաց. որոց մէկն մանչ էր և Մանիտոն կամ Մանետոն, (եւս և Յոնետոն) անուն, ծնեալ յ'200 ամի ջրհեղեղին որ է յ'800 ամի կենաց Նոյի. միւսն աղջիկ Աստղիկ անուն[116]։ Առաջնոյն

Digitized by Google

համար ասի, թէ Հայրն իր նախաջրհեղեղեան որդւոց հաւասար սեպեց, և ի բաժանելն զերկիր անոր մասն տուաւ յարեւմտակողմն երկրի յայնկոյս ծովուն, և ըստ Վարդանայ պատմչի Եւրոպիոյ արեւմտագոյն[117] մասին ժառանգ եղաւ, որ է Անգղիա. և ըստ այսմ Սան կղզին յանուն նորա կոչուած է, ինչպէս որ ուրիշներն ալ Նոյի յետ ջրհեղեղեան թոռանց մէկուն, Բրուտոնի կ'ընծայեն Բրիտանիոյ անունն[118]: Այս դիպուածիս մէջ՝ մեզի Նոյի յետ ջրհեղեղին զաւակ ունենալն ալ տարակուսական կ'երեւայ, զի Ս. Գիրք նշան մը չեն տար գոնէ ի բաժանման ազգաց. Թէ և անկարելի և բոլորովին անհաւան չըլլայ, այնպիսի ատեն մը, որ մարդկութեան աճման մեծ հարկ և պատուէր կայր: Բայց թէ Նոյեմզարա այլ բաւական էր ի ծննդաբերութիւն, այն ատենի մարդկան կազմուածը և բարեխառնութիւնը քննելու է. և Աբրահամու և Սառայի փորձն ունենալով յետ 100 տարւոյ, կրնանք ընդունիլ Նոյի և Նոյեմզարայ ծնող ըլլալն ալ: — Մանիտոնի[119] համար կ'աւանդեն, թէ Աստուծոյ սիրելի եղաւ և իմաստութեան շնորհք առաւ. և թէ նա գտաւ կամ յայտնեց մոլորակաց և կենդանակերպից թիւն և կարգն. և միով բանիւ ըստ Մեթոդեայ՝ ինքն գտաւ կամ վարդապետեց զաստեղաբաշխութիւն, զթիւս և զբժշկութիւն. և ըստ ոմանց զխորութիւնս աստեղաց՝ այսինքն աստղահմայութիւն և հաւահըմայութիւն. և համբաւ իմաստութեանն հռչակէր ի բաժանել և ի ցրուել ազգաց. մինչեւ Ներբովթ եկաւ իրմէ իմաստութիւն սովրելու և իր խրատովն թագաւորեց ի Բաբելոն: Եւ յետ 3 կամ 9 տարւոյ իբրեւ ի շնորհակալութիւն երախտեաց իմաստուն խրատատուին, Ցաբեթի որդւոցմէ ճարտար և հմուտ արուեստաւոր մը գտնելով՝ իրեն գործաւորներովն հանդերձ եկաւ և քաղաք մը շինեց Մանիտոնի, և անոր անուամբն կոչեց[120], և հետը դաշինք դնելով դարձաւ իր երկիրը և հոն շինեց զԲաբելոն և զայն հին քաղաքները զոր յիշեն Ս. Գիրք (Ծննդ. Ժ. 10): Քանանացւոց հետ հակառակելու ատեն Բել թուղթ ընդունեցաւ ի Մանետոնէ որ գուշակէր թէ «Թագաւորութիւն Ցաբեթի խորտակէ զթագաւորութիւն Քանանու»: Հօրմէն (ի Նոյէ) բաժնելու ատեն, ասեն, խնդրեց և ընկալաւ յոսկերաց Ադամայ զծնգաց լստունսն և տարաւ ուր և գնաց:

Իսկ Մանիտոնի քեռ Աստղկան էութիւնն այնքան հաւանելի և ստոյգ համարեալ երեւի նախնեաց մերոց, մինչեւ խոհական և հմուտ օրէնսգիր հեղինակ մի, Մխիթար Գոշ յԺԲ դարու ի գիրս դատաստանացն ի խօսելն պժառանգութեանց իբրեւ վկայութիւն բերէ թէ «Նահապետն Նոյ՝ » ընդ որդիսն և դստերն եւ մասն վիճակի, զկողմն հարաւոյ, ըստ

»որում և կանայք Թագաւորեն կողմանցն»[121]: Այս հարաւային կողմն իմանան այլք զԱրաբիա, զխնկաբեր մասն նորա, կամ զերկիրն ուստի եկն Սաբա Թագուհի առ Սողոմոն, լինելով յաջորդ Աստղկան: Բայց յառաջ քան զհեռանալն մինչև հոն՝ պէտք էր ի հայրենի երկրին ի Հայս յիշատակ մը թողուլ: Մեր հեթանոս նախնեաց կրօնից մէջ յետ Անահտայ առաջին դիցուհի ճանաչի Աստղիկ, և թարգմանի փոխանակ Յունաց Ափրոդիտէ և Լատինաց Վենուս կամ Վեներէ հեշտաբեր չաստուածուհոյն. սակայն երևի թէ գէթ առ հնագոյն նախահարս մեր Աստղկայ համբաւն մաքուր էր, և իբրև խնամակալ և կուսաշնորհ՝ որով և սրբազան օրիորդ մը պատուէր[122]: Այս ինչ անտարակոյս է, որ եթէ Նոյի դուստր այլ չէր՝ սակայն եղած է ի Հայս հնագոյն ժամանակ Աստղիկ ոմն կամ գեղով կամ վարուք կամ ճարտարութեամբ զարմանալի. որ ապա ի պաշտօն առնուած է որպէս աստուած: Մեր երկրին հնագոյն դիւցարանն ի Տարօնէ. ուր որ տեսանք զՍիմ և զՏարբան եկեալ ջրհեղեղէն քիչ վերջը. հոն և Աստղկան գաղարն ճանաչի, ոչ հեռի յաթոռոյ Անահտայ աշխարհամօրէն Հայոց. որ ի գլուխ Տիրինկատար լերին. Մուշ քաղաքէն ժամու հեռի ընդ արևելս է Ասղնբերդ կամ Աստղնբերդ աւերակ, և միւս կողմէն հեռագոյն Տաղօնք, որ եթէ չէ Տարօն, Աստղօնք կոչեցեալ բերդի մը մնացորդ է. ատոնց մէկն է ըստ աւանդութեան Աստղկան բնակարանն: Այս Աստղկան համար կու պատմէր Բիւզանդեանն Սիբիլլա[123], արդարախօսն քան զշատս ի սիբիլլայց և հնապատմաց, ըստ Խորենացւոյն, վասն որոյ և սիրելի նորա, թէ ի բաժանել զերկիր երեք որդւոցն Քսիսութրեայ Նոյի, զորս կոչէ Զրուան, Տիտան, Յապետ, առաջինն իբրև անդրանիկ ջանայր ձեռներէց ըլլալ և միւս եղբարքին վրայ իշխանութիւն բանեցընել, անոր համար մէջերնին պատերազմ և կռիւ կ'ըլլար. մանաւանդ որ Զրուան կ'ուզէր իր որդւոց թողուլ պայազատութեամբ նախիշխանութիւնը, իբրև անդրանիկ սերընդեան. և այս շփոթութեանց մէջ Տիտան յաջողելով Զրուանայ երկրին մէկ մասը յափշտակեց, որով աւելի զօրացաւ կռիւն: Յայնժամ Աստղիկ քոյր նոցա մէջ մտաւ և համոզեց հաւանեցուց եղբարքը որ Զրուան տիրէ նախապատուաբար, բայց ոչ յաջորդութեամբ զաւակացն. և առ ապահովութիւն պահանջեցին եղբարքն որ անոր արու զաւակները սպանուին. և Տիտանայ ցեղէն կարիճ մարդիկներ դէտ դրին Զրուանայ կանանց. և նորածին զաւկըներէն մէկ երկուք մը սպաննեցին, բայց Աստղիկ հօս ալ հնարք գտնելով Զրուանայ կանանց և Տիտանայ միջնորդ եղաւ և հաւանեցուց զասոնք՝ որ տղայքը փոխանակ սպաննելու զրկեն դէպ յարևմուտս

լերան մը վերայ հզին, որ և այս պատճառաւ Գիւցընկէց անուանեցաւ։ Աստուածիլեաքով Յոյնք այսպիսի գիւղուած մը իրենց աստուածաբանութեանց յարմարցուցին, զԶրուանն ի Սատուռնոս, զԱստղիկ ի Ռէա, և զԴիւցընկէց լեառն յՈլիմպոս, յաթոռն Արամազդայ։

Ուրիշ յիշատակ չկայ Մանիտոնի և Աստղկան վրայ առ մերայինս, բայց ի միոյ աւանդուածոյ թէ այդ եղբայրն և քոյր կուսակրօնք մնացին և թերեւս և պարուք յօդս ժուռ գային, գեղեցիկ վարձ իրենց անարատ կենցաղավարութեանն։ Այսպիսի աւանդութենէ օժանդակեալ մեր նոր քերթողահայրն Բագրատունի իւր Հայկ վիպացն մէջ կարևոր դրուագներ ընծայէ Մանիտոնի և Աստղկան։

Նոյի ծննդոց աւանդութիւնը չաւարտած յիշեմք որ ոմանք, սկսեալ ի Բերոսէ Քաղդէացւոյ, համարին թէ իր դստերաց մէկն հետն էր ի տապանին, յելլալն իր հետ աներևոյթ եղաւ կամ փոխեցաւ առ աստուածս. այս դուստրը ոմանք նոյն իսկ Յաբեթայ կինը համարին՝ Սամբէթ, կոչեցեալ, և առաջին ի Սիբիլլայս. և զանունն ալ ոմանք մեկնեն նշանակել քոյր Սեմայ և Յաբեթի. և նոյն համարին զսա ընդ Եգիպտացւոց կամ ընդ Պարսկային կամ քաղդէացի Սիբիլլային. և կերպով մի նոյնանայ ընդ Աստղկան։ Սամբեթայ կ'ընծայուի Ջրհեղեղի վրայ գրուածն որ ի Սիբիլլեան մատեանս։ Յայտնի է որ անհիմն աւանդութիւնք են ասոնք, բայց հնախօսք միայն հաւանին թէ Սամբեթ հնագոյն է ի Սիբիլլայս, և ըստ ոմանց շատ դարերով նախ քան զՄովսէս։

Յետ ծննդաբանութեան Նոյի կարևոր աւանդութիւն է իր կեանքն և բաժանումն երկրի առ որդիսն։ Եբրայեցիք յիշեն գրով ալ 6 կամ 7 գլուխ բան պատուիրանի նման աստուածաբանեալ օրինաց ի Նոյէ աւանդեալ առ որդիսն. բայց հնագոյն պատմիչք մեր և Ս. Հարք՝ ամենեքին ոչ յիշեն զայսպիսի բանս, վասն որոյ և չընդունին։ Բայց և շատք ի Հարց հաւանին և ասեն թէ Նոյ բազում ինչ աւանդեց և պատուիրեց որդւոցը, և մասնաւորապէս խաղաղութեամբ կենալ և չի զրկել զիրար, թերևս իր ատեն իսկ տեսնելով անոնց հակառակութիւնը վասն տիրապետութեան ի վերայ երկրի կամ ընտիր մասանց նորին. և՝ ասոր համար խնդրեն բաժնեց նոցա զերկիր, կամ սահմանեց իրենց երթալու կողմերը, իր մահուընէ 20 կամ 16 տարի առաջ. և երդմամբ պահանջեց իրենցմէ այս բանիս։ Այս բանս այնքան սովոր համարէին նախնիք, մինչև ոմն ի Ս. Հարց[124] ընդ հերետիկոսս դասէ զչհաւատողսն։ Յերից որդւոց Նոյի ծագեալ ազգաց բարքը նկատելով՝ հետեւցուցած են աստուածաբանք

*թէ Նոյ յանձնեց Սեմայ մասնաւորապէս սրբազան կամ քահանայական պաշտամունք և գրքերը. Քամայ յանձնեց ծառայական աշխատութիւն և երկրագործութիւն, իսկ Յաբեթի՝ զինուորութիւն և պաշտպան կալ իրաւանց արիութեամբ ընդդէմ բռնութեանց[125]: Իսկ ըստ ժառանգութեան կամ աշխարհակալութեան՝ Սեմայ բաժին ընկաւ արեւելք կամ մեծ մասն Ասիոյ. Քամայ՝ հարաւ կամ Ափրիկէ. Յաբեթի՝ հիւսիս և արեւմուտք, կամ արեւմտեան հիւսիս, Ասիա և Եւրոպա. ինչպէս որ պիտի տեսնեմք իրենց որդւոց և թոռանց ազգաբաժնէն՝ ստուգեալ ըստ Ս. Գրոց: Բայց և յառաջ քան զմեծ և զաշխարհահռչակ բաժանումն և սփռիլն ազգաց և լեզուաց, ի Բաբելոնէ, մասնական բաժանմունք և սփիւռք եղած պիտի ըլլան յետ մահուանն Նոյի, և թերեւս յառաջ իսկ քան զայն. և նոյն իսկ երեքին ցեղապետքն Սեմ, Քամ, Յաբեթ, որք հաւանօրէն հօրերնուն մահուան ներկայ գտնեցան, ապէ առաջ ալ զանազան կողմեր գնացեր և տուն հաստատեր էին, ինչպէս Սեմն ի Սիմ և ի Ջարուանդ որ ի Պարսկահայս, և ի կողմանս Բակտրիոյ, ըստ աւանդութեան հին պատմչաց մերոց. և ճանապարհագիրք ոմանք Եւրոպէացիք[126] ժէ. դարու. աւանդեն Սեմայ շինել զվիմագործ աղբիւրն Գարապաղ գեղջ ի Հին Նախիջեւանու, որոյ ջուրք քարացուցիչ զօրութիւն ունին, և նոյն ինքն Սեմայ աղօթիւք կամ զօրութեամբ ասեն բղխեալ: — Հօր Սեմայ վրայ խօսքերնիս վերջացնելով յիշենք մեր գլխաւոր պատմչաց մէկուն[127] աւանդածն, թէ արտաքինքն (թուի թէ Քաղդէացիք) Քսերքսէս կոչէին զնա, ինչպէս ուրիշներն այլ՝ Զրուան: — Աւանդութիւն տեղացեաց՝ զՔանաքեռ գեօղ Երեւանայ, Քամայ քրոջ յիշատակաւ ճանաչէ. որ թէ ոչ այնքան հին, այլ դարձեալ Քամայ զարմէն կրնայ շինուած կամ բնակեալ սեպուիլ, ի Քանանացւոց սերնդոց որք փախան ի Հայս յաւուրս Յեսուայ: Նոյնպէս կ՚ըսուի, և թերեւս աւելի հաւանօրէն, թէ և Քուշ՝ անդրանիկն Քամայ՝ յառաջ քան զերթալն յԱփրիկէ, հօր Եթովպացւոց հայր եղաւ, բնակելով նախ յափունս Երասխայ, յԱռանն Սիսակեան, որ է Եթովպացւոց երկիրն ըստ Ս. Գրոց, զորով պատի Գեհոն — Երասխ: Յիշեմք այս գետոյս անուան զանազան պատճառաց կամ յարմարութեանց մէջ և Ռաքսիս անուան նմանութիւնն, որպէս կոչէր յոմանց կինն Քամայ: — Իսկ Յաբեթայ համար մասնաւոր բնակարան կամ շինութիւն մը չեն աւանդեր ի Հայս. թէ և ասոր բնակութիւնն և ժառանգութիւն ստուգագոյն է քան զեղբարցն կալուածս:*



Digitized by Google

# Զ

# ԲԱԺԱՆՈՒՄՆ ԱԶԳԱՑ ԵՒ ԼԵԶՈՒԱՑ

## ՀԱՅԱՍՏԱՆ ՎԻՃԱԿ ՅԱՐԵԹԵԱՆՑ ՄԻՆՉԵՒ Ի ԹՈՐԳՈՄ

ԱԶԳԱՑ *պատմութեան ամենէն հետաքննելի և քննադրգիռ խնդիրն՝ է իրենց ծագման և ցեղապետին գիւտն, և հնութեամբն ի հարկէ ամենէն մութ և երկբայական խնդիրն այլ է. բայց քանի որ յիշատակարանաց մնացորդք կամ նշաններ գտուին, հնախոյզք և մարդապատումք ոչ երբեք պիտի դադրին այդ քննութենէն և ի նորանոր կարծեաց, որք եթէ անդ տեղ քիչ մը լոյս ծագեն, մթութիւնն ալ աւելցընեն ուրիշ մասանց վրայ այդ ընդարձակ ասպարիզին մէջ։ Լեզուաքննութիւնն որ հիմայ իմաստասիրաց գլխաւոր մտադրութեանց մէկն է, և պատմական ու արուեստական յիշատակարանաց պակսութիւնը լրացընէ, ազգաց ծագման և յարակցութեան յայտարար ծանուցիչ է, արժանայէս. սակայն այդ լեզուաց գիտութիւնն կամ քննութիւնն ալ այնքան բազմակնճիռ և դիւրախաբ է՝ որ աւելի շատ տարակոյսներ և վիճմունք հաներ է այս խնդրոյս մէջ, քան իրական ապացոյց։ Եւ հարկ է խոստովանիլ որ, ի վերայ ամենայն ջանից և հետաքննութեանց հնագրաց երկու դարէ ի վեր, դեռ սակաւածանօթ և զգուշահաւատ է ազգաց ծագման և առաջին բնակութեանց և գաղթականաց խնդիրն. և ալ աւելի տարակուսական և անընդունելի կ'ըլլար՝ եթէ չունենայինք ամենահին Սուրբ Գրոց մէջ գլուխ մը բանի համառօտ, այլ կարևոր և բաւական լուսացայտ ժամանակաց և երկրի մթութեան վրայ. զոր ամէն հին պատմիչ առաջնորդ կ'առնու, այլ ըստ չափու հմտութեան և հաստատութեան մտաց մերձենայ կամ հեռանայ ի ճշմարտութենէ։ Մեկնըչաց և պատմչաց ամենարժեայ գանձ մ'է Ծննդոց Ժ գլուխն, միանգամայն և զանազանութեան կարծեաց արձակարան մի, յոր հարկ է հիմայ մեզի այլ մտնել, ոչ միայն մեր ազգին ցեղապետն և սկիզբն գտնելու համար, այլ և առ ի տեսանել ուրիշ շատ ազգաց ծագումն և սփիւռն այլ յայն երկրէն՝ որ մեր նահապետին և մեզի սեփական եղաւ. զգուշանալով*

Digitized by Google

*ըստ կարի այսպիսի խնդրոյ մէջ զանազանելու ինչ որ սատոյգ համարիմք ի հաւանականէն և ի կարծիականէն։*

*Այս կարեւոր խնդիրս իր անհրաժեշտ խնդիրներովը գլխաւորապէս կու գիտէ քննել, թէ արդեօք ամենայն ազգք յերից որդւո՞ց Նոյի սերած են. ո՞րք յազգաց աւելի կամ պակաս տեղածինք կրնան ըսուիլ, և ո՞րք գաղթականք. ո՞ր յորմէ ծագեր է. ի՞նչպէս կրնան զանազան ազգք և լեզուք քանի մը գլխաւոր ցեղի կամ տոհմի վերածիլ. այս ցեղապետքս ուսկի՞ց ելեր են իրենց զանազան տոհմերուն երկիրը երթալու. ե՞րբ ելեր են իրենց առաջին երկրէն կամ բնավայրէն. միանգամա՞յն թէ այլեւայլ ատեն եղած է ազգաց և ցեղապետաց չուելն և բաժանիլն. և այլ այսպիսի խնդիրներ, որոց շատն մեր նպատակէն հեռացընեն զմեզ, եթէ ուզեմք քննել. այլ մենք բաւական սեպեսք Ս. Գրոց պատմութեան կարգին հետեւելով նկատել զտեղի, զժամանակ և զհնագոյն ցեղապետս ազգաց բաժանելոց և զաշխարհս նոցա։*

*Նոյեան ընտանեաց նախկին բնակարանը տեսանք հաստատ վկայութեամբ Ս. Գրոց որ էր յԱրարատեան երկրին, ի ստորոտս լերանց Կորդուաց, ուսկից հաւանօրէն շատ չհեռացաւ մեծ նահապետն, և ոչ իւր նախաջրհեղեղեան որդիքն իւր կենդանութեան ատեն. անտարակոյս է որ անկից ցրուեցան առաջին տոհմք և գաղթականք ազգաց. բայց ե՞րբ և ո՞ր տարի եղաւ առաջին ցրուիլն ազգաց՝ Ս. Գիրք յայտնապէս չեն ըսեր, այլ գլխաւոր բաժանման ժամանակը նշանակեն, Սեմայ թոռան թոռնորդւոյն Փաղեկայ ծննդեամբ. «Եբերայ ծնան երկու որդիք. անուն միոյն » Փաղէկ, զի յաւուրս նորա բաժանեցաւ երկիր»։ Այս ժամանակը գըտնելու համար ուրիշ բան պէտք չէ ընել, բայց եթէ գումարել ի Սեմայ մինչեւ յԵբեր նահապետաց տարիքն յառաջ քան զորդէծնութիւնն, որպէս և ընեն ամենայն ժամանակագիրք, և սակայն ամենեւին աննման և անմօտ գումար մը կու հանեն, հետեւելով այլեւայլ թարգմանութեանց և օրինակաց Ս. Գրոց, յորս շատ տարբերութիւն կան. մինչեւ հնգապատիկ զանազանիլ միջոցին ի ջրհեղեղէն ցՓաղէկ. որ ըստ այժմու Եբրայերէն բնագրին* 100 *տարի միայն է, իսկ ըստ Եօթանասնից որ զկայնան նահապետ ալ ընդունին թոռն Սեմայ,* 525 *կամ* 531 *տարի է. և ըստ այսմ ազգաց և լեզուաց բաժանումն ոմանք միայն* 120 *կամ* 135 *տարի յետ ջրհեղեղին կու դնեն, իսկ այլք ինչուան* 660 *տարի։ Կարճ միջոց դնողք՝ որ ի ժամանակս կենաց Նոյի համարին զմեծ բաժանումն մարդկան և երկրի, ի հարկէ կը դժուարին այնքան բազմացընելու զմարդիկ՝ մինչեւ եօթանասնի չափ ազգ*

և երկիր բաժանուին, ի վերայ այսր ամենայնի ոմանք նաեւ 120 տարուան միջոց 700,000էն աւելի ծնունդ գումարեն և 60 գունդ կամ տոհմ կրնան բաժնել, իւրաքանչիւր 12000 ոգւով։ Բայց որչափ ալ հաշուի՝ հաւանական չերեւար այդչափ կարճ միջոցի մէջ դնել մարդկան մեծ բաժանումն և Բաբելոնի խառնակութիւնն, և ազգաց սփռիլն յաշխարհս՝ զորս նշանակէ Մովսէս (Ծննդ ժ). Թէ և այս այլ խոստովանելու է որ պէտք չէ ենթադրել թէ մեծ մարգարէին յիշեալ ազգերն ալ միանգամայն մէկ տարւոյ կամ մօտ տարիներու մէջ բաժնուած և ցրուած ըլլան. այլ ընդունելի է թէ քիչ կամ շատ տարի առաջ և ետեւ ցրուած են։ Մենք Եօթանասնից հաշուին հետեւելով մարդկան մեծ ցրուիլն և լեզուաց բաժանումն ջրհեղեղէն 5–6դար յետոյ կը դնեմք. բայց կ՚ընդունիմք որ և յառաջ քան զայն գաղթականներ ելած էին ի Նոյեան սահմանաց և հեռու երկիրներ ալ գնացած, թէպէտեւ հաստատութեամբ չեմք կրնար ցուցընել։ Եթէ ստոյգ են Սեմայ և Տարրանայ աւանդութիւնքն՝ հետեւի որ Նոյի կենդանութեան ատեն ուրիշ թոռներն ալ ցրուեցան կամ ընդարձակեցին բնակութիւննին իր բնակած տեղւոյն շրջանակները և ալ հեռու։ Իսկ յետ իւր մահուան առաջին մեծ բաժանում մը եղած է երկրի, որպէս յառաջ յիշեցինք, և հաւանական է որ այն ատեն երեք ցեղապետքն մարդկութեան Յաբեթ, Սեմ և Քամ, իրենց որդիքը և թոռունքը ղրկեցին կամ տարին երկրիս իրենց ընկած կողմին զանազան աշխարհները. միշտ անդրանիկներն յառաջադէմ կամ հեռագնաց ըլլալով, այնպէս որ յաջորդաբար կրսեր եղբարք կամ որդիք առաջնոց տեղը բռնեցին. և այս կարգը դիտելու բան է, որ մեր առանձին պատմութեան մէջ ալ յետոյ պիտի տեսնուի Հայկայ սերնդոց ժամանակ։ Այս կամ ասկէ ետեւ եղած բաժանումն է Փաղեկայ ծննդեան ատեն յիշածն ի Ս. Գրոց, որ է ըստ մեզ յետ իբր 525–530 ամի ջրհեղեղին, և իբր 2620 տարի Ն. – Քրիստոս. յորում մարդիկ այնքան բազմացեալ և լցեալ էին արարատեան երկիրը և անոր մերձակայ և դիւրաբնակ արեւելեան, արեւմտեան և հիւսիսային սահմանները, որ ուզեցին բազմութեամբ երթալ դէպ ի հարաւակողման ընդարձակ դաշտերը ծաւալիլ, և իջան ի Սենաար կամ Բաբելոնի դաշտագետինը։ Մեր պատմիչաց մէկն (Վարդան) ասէ Փաղէկի ատեն բաժանման համար. «անհաւան
» լեալ վիճակացն տուեալցն ի Նոյէ՝ վիճէին. մինչեւ դարձեալ բաժանեցին
» ըստ բազմին և ըստ սակաւուն աճման ազգի մարդկան։ Եւ ապա միա-
» բանեալք ընդ միմեանս սիրով՝ խորհեցան գնալ ընդ արեւելս»։

Ս. Գիրք եւս յառաջ քան զԲաբելոնեան խառնակութիւնն պատմել,

Digitized by Google

դասեն զբաժանումն կամ զցեղապետութիւն ազգաց ըստ երից որդւոց Նոյի. յորմէ իմանամք թէ անոնցմէ շատն արդէն ցրուեալ և սփռեալ էին հեռաւոր աշխարհներ, և ոմանք ի մնացորդացն յԱյրարատ էին գնացողք ի Սենաար. թէ սոքա և թէ առաջինք միանգամայն այդ երից մեծ նահապետաց և իրենց որդւոց և թոռանց և թոռնորդեաց տոհմաթուօք 72 համրուին. և այս է ռամկօրէն 72 ազգ և լեզու ըսելն երկրիս բնակչաց։ Այս թուին առանձին համարոյն մէջ ալ զանազանութիւն գտուի ըստ օրինակաց Ս. Գրոց. այլ մեծագոյն մասն գրոց և մեկնչաց միաբանին թուելու 15 ազգ կամ տոհմ Յաբեթի, 25 Սեմայ, 32 Քամայ. ըստ ոմանց ցեղապետներն ալ մեկտեղ համրելով, այսինքն զՅաբեթ, զՍեմ և զՔամ, և ըստ այլոց անոնցմէ զատ. ըսել է որ որդւոց թուոյն մէջ զանազանութիւն կայ ըստ օրինակաց և գրոց, և գլխաւորապէս Յաբեթի որդւոց, որ ընդհանրապէս 7 կու համարուի, Գոմեր, Մագովգ, Մադայ, Յաւան, Թոբել, Մոսոք, Թիրաս. բայց ոմանք յաւելուն և զՔետիմ և զԵլիսա. այս վերջինս մեր թարգմանութեան մէջ այլ կայ, իսկ առաջինն մեր պատմչաց մէջ. որք երեւի թէ Յաւանայ որդւոց հետ շփոթեն. վասն զի Յաւանայ չորս որդիք յիշին՝ Ելիսա, Թարսիս, Քետիմ կամ Կիտացիք, և Դոդանիմ։ Այս յաբեթական ցեղս մեր պատմութեան կարեւոր գիտելիք է, վասն որոյ պէտք է քիչ մը վերջը նորէն դառնամք ի քննութիւն։ Իսկ Սեմայ ցեղն երկրորդաբար հարկաւոր է. ասոր ազգապետքն են Սեմայ 5 որդիքն Ելամ, Ասուր, Արփաքսադ, Լուդ, Արամ. Արամայ 4 որդիքն, Արփաքսադայ թոռան կամ թոռնորդոյն երկու որդիքն, և անոնցմէ կրսերոյն 13 որդիքն, որք Սեմաւ հանդերձ կ'ըլլան 25։ Ասոնց վրայ այլ յետոյ տեսութեան դառնամք։ — Իսկ Քամայ ցեղն որ հեռագոյն և օտարագոյն է ի մէնջ, բազմաթիւ եւս է քան զեղբարցն՝ գէթ ի ժամանակի բաժանմանն. և են տոհմապետքն 4 որդիքն Քամայ, Քուշ, յորմէ Եթովպացիք, Մեստրիմ՝ յորմէ Եգիպտացիք, Փուդ՝ յորմէ Լիբիացիք կամ մասն մի Եգիպտացւոց, և Քանան՝ յորմէ Քանանացիք. 6 որդիք Քուշայ, Սաբա, Եւիլա, Սաբաթա, Հռեգմա, որք ի կողմանս Արաբիոյ և Պարսից ծոցոյ բնակեցան, Սաբակաթա և Նեբրովթ. որք յիշելի են յետոյ ի պատմութեան մերում. 2 որդիք Հռեգմայ՝ Սաբա և Դեդան կամ Յուդադան, որք յերջանիկն Արաբիա ասին բնակեալ. — 7 որդիք Մեսարեմայ և թոռն մի կամ ծագումն միոյ յորդւոցն, որք բոլոր Եթովպիոյ, Եգիպտոսի, Կարմիր ծովու եզերքն բնակեցան. միայն երկու յետինքն ի նոցանէ Քասղոն և Կափթոր մեզ քննելիք են. — և 11 որդիք Քանանու. որք Քամաւ

*հանդերձ կ'ըլլան* 32. *և այսպէս ազգք երից ցեղապետութեանց միանգամայն* 72։

*Յաբեթի ցեղէն միայն երկու տոհմապետի ծնունդք յիշուին, և երկուքն ալ որդիք են նորա. Քամայ ցեղէն հինգ տոհմապետի ծնունդք յիշուին մինչեւ չորրորդ պորտ ի Քամայ. Սեմայ ցեղէն երեք տոհմապետի ծնունդք յիշուին յորոց մին իջնայ մինչեւ ի վեցերորդ կամ եօթներորդ ազգ ի Սեմայ։ Այսու վկայի պատճառ սակաւութեան Յաբեթայ ցեղին տոհմապետաց, և Քամայ բազմութեանն. այսինքն Մովսէս լռեր և չէ յիշեր Յաբեթայ և Սեմայ որդւոց այն սերունդքը որ շատ հեռու էին ի սահմանաց Պաղեստինոյ, այլ երկուքին ալ միայն երկու որդւոց ազգերն յիշեր է, որք մերձաւորագոյն և ծանօթագոյն էին կամ պիտի ըլլային Հրէից. իսկ Քամայ ցեղէն աւելի շատ յիշեր է, վասն զի մերձագոյնք և սահմանակիցք էին Հրէաստանի. այսու պատճառաւ Սեմայ ցեղէն ինչուան եօթներորդ ազգը իջեր է, յորդիս Յեկտանայ որդւոյ Եբերայ, վասն զի յԱրաբիա բնակէին նման Քուշայ որդւոց, և ազգականութեամբ խնամի էին Հրէից, յԱրփաքսադայ տոհմէն և յԵբերայ շառաւիղեալ երկուքն ալ։ — Առտի հետեւի որ ազգաց բաժանման ցուցակն երկրիս չափաւոր մասին ցուցակն է, և ամէն տոհմապետաց մանր ազգաբանութիւնն յիշեալ չէ. և ոչ միայն երից ցեղապետաց ամէն թոռունքն յիշեալ չեն, այլ և ոչ յիշեալ թոռունքն միայն են անոնց թոռունք, և ոչ իսկ բովանդակ որդիքն. գրեթէ անտարակոյս է որ ոչ միայն Յաբէթ, Սեմ և Քամ միանգամայն* 16–17 *որդիէ աւելի, հարիւրաւոր որդիք ունէին, այլ և անոնցմէ շատն հաւասար յիշելոցն՝ յառաջ կամ յետոյ երկրիս զանազան մասանց մէջ տոհմապետ եղան իրենց եղբարց հետ կամ առանձինն։ Բայց աւելորդ է մեզ քննել և յիշել հնախօսից պատմութեանց կամ աւանդութեանց մէջ արտաքոյ Ս. Գրոց յիշեալ որդիքը երից նահապետաց, բայց եթէ մեր պատմութեանն կարեւոր ըլլայ*[128]։

*Դառնանք հիմայ երից ցեղապետութեանց ազգաբաժնին և ազգատոհմին, և անոնց բաժանման կեդրոնին։ — Ազգքն Քամայ Ափրիկեոյ հիւսիսային և արեւելեան եզերքէն ինչուան անոր խորագոյն և անծանօթ կողմերն կ'երթան, բայց Ափրիկոյ սահմանակից Ասիոյ երկիրն ալ տարածուած են ի սկզբան, այսինքն Արաբիոյ արեւմտակողմն ի Պաղեստին, ի կղզիս ինչ Միջերկրականի Ափրիկեոյ մերձաւորս. Մեստրիմայ երկու յետին որդիքը պիտի յիշէինք, Քասղոն և Կափթոր. առջինին համար ընթեռնուք ի Մովսէս «յորմէ ելին Փղշտացիք», որ վերջինին համար*

Digitized by Google

ընթեռնլի է. վասն զի ուրիշ շատ տեղ Ս. Գիրք (Բ Օրէնք, Բ. 23. — Երեմիա Խէ. 4. — Ամովս Թ. 7.) վասն Փղշտացւոց, որ նոյն են ընդ Այլազգեաց, ասէ թէ ելին ի Կափթորայ. իսկ Կափթոր որ ի միրում թարգմանութեան ի նշանակեալ տեղիդ Գամիրք թարգմանի, վասն այսորիկ և ի բազմաց ըստ ձայնին եւս Կապպադովկիա ճանաչի, յայլոց նախադասի լինել Կիւպրոս կղզի․ Եւ հաւանելի է թէ նախ ազգապետք Ցաբեթայ ի տանէն Գոմերայ բնակեցան և ի Կիւպրոս[129], որպէս Կիտացիք որդիք Ցաւանայ ի Հռոդոս, յետոյ Կափթոր որդի Մեսարեմայ նաւեց և տիրեց Կիւպրոսի, որպէս եղբայր իւր Պատրոսոն՝ Կրետէի. այն ատեն Կիւպրոսի հին բնակիչք «Գամիրք որ ելեալ էին ի Գամրաց» (ըստ Բ Օրինաց) անցան դիմացի յԱսիոյ արեւմտակողմեան հարաւային ափունքն ուր Քանանու Խեւ որդւոյն ազգը տիրէր, և հալածելով և ջարդելով զանոնք բնակեցան հոն. և որովհետեւ իրենք միայն էին օտար ազգ մը ի մէջ 11 ազգաց որդւոյն Քանանու՝ կոչեցան Այլազգիք կամ Փղշտացիք[130]. այս եզքի ա- նունէն ինչուան հիմայ Պաղեստին կոչի Հրէաստանն. վասն զի բուն այն երկիրը Սեմայ ցեղին բաժին էր և Քամեանք բռնութեամբ տիրեր էին, վասն որոյ Հրեայք առաջնորդութեամբ Մովսէսի և Յեսուայ եկան մտան հոն և իբր 1000 տարի բռնացեալ և յափշտակող ազգերը ջարդելով ջնջեցին. միայն զայլազգիս, զյորեթեան Փղշտացիները չի կրցան ջնջելու, այլ և շատ հեղ անոնց իշխանութեան տակ ընկան. և յայսմ եւս կատարուեցաւ նա- խագուշակութիւն Նոյի թէ «Ընդարձակեսցէ Աստուած Ցաբեթի, և բնա- » կեսցէ ի տան Սեմայ, և եղիցի Քանան ծառայ նորա[131] » (Ծն. Թ. 27)։ Թէրեւս աւելորդ էր զայս յիշել ի խնդիրս Հայոց պատմութեան, բայց երկու մեծ նշանաւոր և գիտելի բան կար, մէկ մը երից ցեղապետութեանց այլ այն օրհնեալ Պաղեստինու երկրին վերայ գումարիլն և վիճիլն, որ ըստ կրօնական տեսութեան այնքան վեհագոյն և աննման երկիր եղաւ, մէկ մ'այլ Ցաբեթայ ցեղին հարաւագոյն և գրեթէ անընական սահմանն ըլ- լալն։ — Քասղոնն կամ Քասղոնիեմ Կափթորայ ազգագաւառն ալ ոմանք (Տէլիլ) ընդհակառակն ինչուան ի Կողքիս տանին, որ մեզ և բազմաց չէ ընդու- նելի, այլ ըստ ոմանց է յարեւմտակողմանս Կարմիր ծովու, կամ ի Կիւրենեան երկիր Ափրիկոյ, կամ թէ շատ՝ Լիւկիա[132] հարաւագոյն եզր Փոքր Ասիոյ և բաժին Ցաբեթայ։ — Քամայ ցեղին հիւսիսագոյն երկիրն այլ բանաստեղծական եղաւ. Բաբելոն, զոր նուաճեց Նեբրովթ և շատ քաղաքներ շինեց անոր սահմանները, յԱսորեստան և ի Միջագետս, որք բնական բաժին էին Ասուրայ որդւոյ Սեմայ և քեռւոյ Նեբրովթայ, զոր և յետոյ պիտի

յիշեմք։ Հոս նշանակել միայն ուզեմք որ Սեմայ ցեղին այլ հիւսիսագոյն կալուածն Ասորեստանի, Միջագետաց և Կորդուաց գիծն է։ Նոյն ինքն Սեմ ըստ աւանդութեան մեր նախնեաց (Խոր. Ա. Զ) և արեւելեայց, բնակեցաւ ի Զարեւանդ գաւառի Պարսկահայոց, որ և իր անուամբն (Զրուան) կոչեցաւ. և է գրեթէ անմիջապէս հիւսիսոյ յարեւելից առաջին բնակութեան Նոյեանց և մօտագոյն քան զՏարօն, ուր նախ բնակեցաւ ընդ արեւմուտս հիւսիսոյ։ Այս այլ կու ստուգէ այն հին նահապետական բնավայրին տեղն, և երից ցեղապետաց արձակարանն։ Իսկ հարաւագոյնն գիծ Սեմեանց ինչուան Արարիոյ հարաւակողմն և Պարսից ծոցոյն եզերքն կ'երթայ, ուր որ Ելամ ազգապետեց. անոր բաժնէն ինչուան Տաւրոս և Կորդուաց լեռները՝ Եփրատայ և Տիգրիսի ցած և ընդարձակ հովտաց մէջ ծաւալեցաւ Ասուր բռնաբարեալ ի Քուշայ տոհմից. իսկ Արփաքսադ տոհմապետ Քաղդէացւոց և Հրէից՝ Նոյեան տան բնիկ սահմաններն ժառանգեր էր, իբրեւ ուղիղ կամ ընտրեալ պայազատ Սեմեան. — միւս եղբայրներէն Արամ՝ Միջագետաց վերին կողմն և յերկիրն Ասորւոց սփռեցաւ իր չորս որդւովքն, մինչեւ ի կողմանս Արաբիոյ և Պաղեստինեայ. հիւսիսագոյն սահման որդւոցն է ի Մասքայն կամ Մէշայ Մասիոս լերանց կողմերն, որ է Գարանեա տաղլար Տիարպէքիրու մօտ. իսկ Եմուղ կամ Հուլ որդին Արամայ ըստ Յովսեպոսի աւելի վեր դէպ հիւսիս բնակեցաւ ի Հայաստան[135]։ — Սեմայ հինգերորդ որդին Լուդ, ինչուան Փոքր Ասիոյ Լիւդիոյ կողմերը տարածեցաւ հաւանօրէն. և անշուշտ անոր սերունդքն են Սպիտակ—Ասրիք Լեւկոսիրիի անուանեալքն ի հին աշխարհագրաց Յունաց ի Փոքր Ասիա. Թէպէտ ոմանք Միծրեմայ Լուդիմ որդւոյն համարին զԼիւդիա, բայց հաւանագոյն է թէ նա զկողմանս Եթովպիոյ ժառանգեց։ Ի վերայ այսր ամենայնի կ'երեւայ թէ երից նահապետաց տոհմերէն ոմանք յարեւելից յարեւմուտս խաղալով, ըստ Ս. Գրոց յառաջեր են փոքր Ասիոյ հարաւակողմերը իբրեւ իրենց բաժնին վերջին սահմանածայր, Քամայ ընդ հիւսիս, Սեմայ ընդ արեւմուտս, Յաբեթայ ընդ հարաւ — արեւելս։

Քամայ և Սեմայ սահմանաբաժին գիծը ցոյց տայ Յաբեթայ բաժնին այլ հարաւային գծին, որուն արեւմտեանը ինչուան Ասիոյ և Եւրոպիոյ արեւմտագոյն եզերքը, և Միջերկրական և Ատլանդեան համատարած ծովուց մէջ անհետանան, հիւսիսայինն Եւրոպիոյ և Ասիոյ Սարմատական և Սկիւթական անապատաց մէջ կորսուին, իսկ արեւելեանն ալ նոյն Սկիւթիոյ և Թաթարաց ընդարձակ խոպաններուն մէջ ծածկին. ծանօթագոյն մնալով միայն հարաւամասնն, որ անմիջապէս Քամայ և Սեմայ բաժնին

Digitized by Google

Հպելով ցուցանէ մեզ նախ զՀայաստան արձակարան ազգաց երից ցեղապետութեանց, և ապա սեփականութիւն Յաբեթեանն. որոյ հարաւագոյն արեւելեանն ծանօթ և յիշեալ ազգաբաժինն է Մարաց աշխարհն կամ կալուածն Մադայի երրորդ որդւոյ ցեղապետին, որ հնագոյն ժամանակէ ի վեր դրակից և դիտակից եղած է Հայոց աշխարհին. Մարաց աշխարհէն անշուշտ անցած են սերունդք տոհմապետին յաշխարհս Պարսից և Պարթեւաց և վերին Հնդկաց, մինչ ստորին Հնդիկք կրնան ի Սեմեանց այլ սերիլ. — Մագովգ որդին ճանաչի տոհմապետ Կովկասեանց և Սկիւթացւոց յայնկոյս Կովկասու. ըստ ոմանց և Սարմատացւոց և Գոթաց և նաեւ Գաղատաց. բայց իր նախաբնակ երկիրն համարի Հայոց և Վրաց մէջ Գուգարաց նահանգն: Յիշելու է որ յազգաթուէին Գովգ առանձին չի գրուիր այլ Մագովգ միայն, բայց մարգարէք Գովգ և Մագովգ միարան յիշեն, և ըստ Եզեկիէլի Գովգ անուանի իշխանն և Մագովգ երկիր նորա. արեւելեայք Աճուճ Մաճուճ անուանեն զսոսա և համարին յայնկոյս Տէրպէնտի. — Թոբէլի — որդի Յաբեթայ — ազգն և գաւառն շատ կարծեօք զանազանի, մինչեւ յիբերիա և ի Սպանիա ձգելով, և յիտալիա. ըստ ոմանց է Պոնտոսի եզերքը Տիբարեան ժողովրդեան տեղն. ըստ մերոց պատմչաց Թոբել Թետալաց նախահայր է, որ է սկիւթական կամ թաթար ժողովուրդ մը, և Մովսէս կաղանկատուեցի Թոբելական ազգ և իշխան կոչէ զՀոնս կամ զազգակիցս նոցա. ըստ ոմանց եւս Վրաց մայրաքաղաք Տփղիս, Թպխլիսի, (հաւանօրէն ջերմաջրոց համար) ի Թոբելայ անուանեալ է. գուցէ այն կողմերը նախ բնակելն անհաւան չէ, եթէ Մագովգ բնակեցաւ ի Գուգարս, և միւս եղբայր նոցա Մոսոք նախ ի Մեսխս կամ ի Սամցխէ և ի Մոսքիկեան լեռնակողմանս. և ապա ի սահմանս Մոսկովաց, որք նշանակին յանուն Ռոս—Մոսոքեան իշխանին զոր Եզեկիէլ մարգարէ յիշէ ըստ վերոգրելոցդ. (ԼԲ. 26) իսկ ոմանք յարեւելից յարեւմուտս դարձուցեալ զՄոսոք համարին հայր Լիւրիկեցոց, թերեւս լաւ եւս՝ Միւսացոց. վասն զի և միւս եղբայր որպէս Թիրաս տոհմապետ ճանաչի Թրակացւոց որք յարեւելեան հարաւային ծայր Եւրոպիոյ. որոց մերձաւոր Մակեդոնացիք սերունդք ասին Քետիմայ միւս եղբօրն. բայց լաւ եւս որդւոյ եղբօր նորա Յաւանայ, որոյ ազգք Կիտացի կոչի ի Ս. Գիրս մեր, և ազգահայրն անշուշտ Կիտ անուանելի. ըստ ոմանց ի սմանէ են և Լատինք և Կիւպրացիք. իսկ ի Դոդանայ միւս որդւոյ Յաւանայ՝ ըստ ոմանց Հոռդացիք ըստ այլոց Դոդոն Յունաց, կամ Դարդանենք[134]. — Թարսիս եղբայր նոցա հաւանօրէն հայր է Տարսոնացւոց Կիւլիկիոյ, և ըստ ոմանց Տեռենացւոց և Ետրուրաց իսկ. միւս երէց եղբայր նոցա Եղիսա՝ հայր

Հելլենաց կամ Ելլիադացւոց Յունաստանի, ըստ մերոց ոմանց՝ և Սիկիլիացւոց. և ինքն Յաւան կամ Յօն, որպէս և միջին որդի Յաբեթի՝ հայր Յոնիացւոց Փոքր Ասիոյ և Յունաց որք անցան ի կղզիս։ Յորդւոց Յաւանայ «մեկնեցան կղզիք ազգաց յերկրի իւրեանց», ըստ Ս. Գրոց. (Ծն. Ժ. 5)։ — Յետ ամենեցուն Թողուցինք զյառաջադրելին ամենեցուն և զնախակարգեալ ի Ս. Գրոց զԳամեր անդրանիկ Յաբեթի անդրանկան Նոյի, որոյ նախավայր բնակութեան պէտք էր ըլլալ ընդդիմակողմն բնակութեան Արփաքսադայ ընդ հիւսիս որպէս և Քամայ յանդուգն պայազատն անոր հարաւային ընդդիմակողմն գրաւեց. արդ Արփաքսադայ կամ Կորդուաց հիւսիսակողմն է Մոկաց երկիրն մինչև ի վանայ Ծով. և յերկրի անդ Մոկաց ծանօթ է մինչև ցայժմ Գամեր գիւղ. որ թէ և չըլլայ յանուն ազգապետին Գամերայ յաբեթեան, անտարակոյս է անոր նախ ի Հայս բնակելն և ի միջնաշխարհին Հայոց, և կամաց կամաց ընդ արևմուտս հիւսիսոյ երթալն. Դարանաղեաց և Բաբերդու կողմերն ալ կան Գամիր անուն տեղիք[135] և վտակք. յորոց անշուշտ անցաւ նա ի Փոքր Ասիա, և յերկար բնակութեամբն Գամիրք անուանեցաւ և միջնաշխարհ նորին որ յարտաքնոց Կապպադովկիա կոչի։ Ի Գամերայ են և Փռիւգացիք, որք և յերրորդաէ ազգակիցք համարէին Հայոց. դարձեալ ի Գամերայ ճանաչին և Գաղատք, ոչ ասիացիքն միայն, այլ և Եւրոպէացիք Կելտք և Կիմբրացիք, կամ Կիւբրիք, որք մինչև ցայժմ ճանաչին յՈւէյլզ կղզի Անգղիոյ. ընդ Սևաւ ծով նաւելով թէ եզերքը ոլորելով հասաւ Գամեր մինչև ի սիրտ Եւրոպիոյ, աւելորդ է մեզի քննել։ Իւր ճամբան բռնեց բնաբար և իր անդրանիկն Ասքանազ, որ նախ իր հօրը տունը բռնեց ի միջին Հայս. վասն որոյ ոչ միայն Քրիստոսէ վեց դար առաջ մարգարէն Երեմիա ընդ Արարատեան գնդին և Մինեայ յիշէ զԱսքանազեան թագաւորութիւնս, այլ և անկէ 1000 տարի վերջը ընդ աւագագահ բարձս Հայոց դասէր Ասքանազեան[136] տոհմին պայազատն, և պատմիչք մեր իբրև համանիշն, Հայաստանեայց տան զայս անուն. և ըստ վկայութեան Յովհ. կաթողիկոսի «Նախ Ասքանազ» իսկ էր յիւր անուն սահմանեալ զմերազնեայս». յետոյ հօրը հետևելով Պոնտոսի կողմերը գնաց և հաւանօրէն այն խեռ ծովուն ձգեց իր անունը, զոր Յոյնք ծռելով և ըստ կամի ստուգաբանելով Եւքսինոս և Աքսինոս կոչեցին իբրև հիւրընկալ և անհիւրընկալ. զինքն այլ ոմանք Փռիւգացոց[137] նախահայր համարին, ըսել է որ հոն ալ հօրը տեղը բռնած ըլլալով. և թոռունք՝ հայր Գերմանացւոց և Սարմատացւոց, և բնակչաց յեզերս Ազախու. Սաքսոնացիք այլ հին երգոց մէջ իրենց առաջին թագաւորն

Digitized by Google

անուանեն Ասկանեիոս[138]: Սակայն ինչպէս Գոմերայ անունն մնաց Գամրաց վրայ, Ասքանազայ այլ բնադաւառ ուսպելու է անոր արեւմտակողմը և հիւսիսակողմը: — Ռիփաթ եղբայր Ասքանազայ ըստ ոմանց (Փրեկուլփ) հայր է Պափլագոնացւոց, որ են մերձակիցք Փռիւգաց և Գամրաց, և յետոյ հայր Սաւրոմատաց, և Ռիփեանց, և Փռանկաց անգամ կ'անուանի. զոր թողլով ի քննութիւն տեղացեաց, հաւանական սեպեմք որ ինքն ալ զհետ հօրն և երիցու եղբօրն երթալով առ ժամանակ մի ի Հայս բնակած պիտի ըլլայ, թէ և բնաւ չյիշուիր անունը ի Հայս, բայց եթէ պահանջող մը ըլլայ՝ առմք իբեն Նպատ անունը որ Նիփատ անուանի յօտարաց, եթէ ընդունի Ռ—Ն առուից հին լծորդութիւնը[139]: — Հուսկ յետոյ գայ Թորգոմա կրսեր որդի Գոմերայ, Թոգարմա կոչեցեալ ըստ Հրէից և այլոց ազգաց, զոր Յովսեպոս և այլք ոմանք ասեն հայր Փռիւգաց և Կապադովկացւոց, Հրեայք և Քաղդեայք՝ հայր Գերմանացւոց, և ոմանք Թուրքաց, իսկ բազմագոյնք Հայոց. Եզեկիէլ մարգարէ յիշէ «զտունն Թորգոմայ ի » ծագաց հիւսիսոյ» զոյգ ընդ Գոմերայ և որ շուրջ են զնովաւ. իսկ մեր հեղինակաց և հին պատմչաց մէջ Տուն Թորգոմայ կամ Արամայ և Հայաստան ըսելն անզանազան է, և աւելի քան զԱսքանազ ստէպ յիշատակեալ. յայտ ուրեմն է զի Թորգոմ յետ նորա և յետ Գոմերայ բնակեցաւ ի Հայս ընդերկար. և թերեւս յետոյ գնաց ընդ հարցն կամ յարեւմուտս ի Փոքր Հայս, և կամ յարեւելս յայնկոյս Կազբից ծովու, և հայր եղեւ Թիւրքմենաց. վասն զի իբենք ալ զյաբեթեանն Թորգոմ ճանաչեն նախահայր իւրեանց, և անունն իսկ այնպէս լսել տայ. և իբր հին աւանդութեամբ զՀայս անուանեն Հօրեղբօրորդիս իւրեանց: Իսկ Աֆղանք, զորս ոմանք յԱղուանից կարծեցին ծագեալ, համառօտելով զազգաբանութիւնն ասեն, Յաբեթի երեք որդիք էին, Արմէն, Աֆղան և Կարղուէլ. յառաջնոյն զՀայս, յերկրորդէն զինքեանս, յերրորդէն զՎիրս ցուցանելով[140]: Հաւանական նաեւ ի պատմութեանց մերոց և Վրաց վկայեալ է որ Թորգոմ այլ յետ ընդ երկար բնակութեան ի Հայս, թողուց զայն անդրանկանն իւրում Հայկայ ժառանգութիւնն, և մէկայլ եօթն որդւոցն ժառանգեցուց զԿովկաս և զարեւելս մինչեւ ի Կազբից ծով և ի սահմանս որդւոց Մադայի, այսինքն Մարաց: — Այս բաներս թողումք քննել յետոյ, վասն զի հոս վերջանայ Ս. Գրոց ազգաթիւն և բաժանումն աշխարհաց:

Ս. Գիրք յետ թուելոյ առանձինն երեք ցեղապետաց ազգահամարն այլ՝ ասէ իւրաքանչիւրոյ համար թէ սոքա են սերունդք նոցա զանազանեալք կամ բաժանեալք յազգս, յաշխարհս, ի տոհմս և ի լեզուս. և

դարձեալ յետ ամենեցուն միանգամայն վկայէ թէ «ի ասցանէ սփռեցան » կղզիք ազգաց ի վերայ երկրի յետ ջրհեղեղին». որպէս թէ ցրելով զկարծիս և զտարակոյս նոցա՝ որք համարին թէ հեռաւոր կղզեաց և ովկիանական կողմանց բնակիչքն նախաջրհեղեղեան մարդկան սերունդք ըլլան։ Լեզուօք զանազանութիւնն յայտնապէս ցուցանէ զի յետ Բաբելոնեան չուոյն և խառնակութեանն եղաւ գլխաւոր բաժանումն ազգաց. սակայն որպէս յառաջ ըսինք հաւանական է որ անոնցմէ զատ անյիշատակ տոհմապետք այլ ելեր և հեռացեր էին ընդ արեւելս և ընդ հիւսիս, յորոց Սեմայ և Յաբեթի։ Բայց մեծագոյն կամ գլխաւոր մասն պայազատաց երից նահապետացն դեռ մէկմեկէ քիչ հեռի սփռած բնակէին անոնց նախկին բնակարանին և Թերեւս յետին քնարանին ալ մօտ, Հայաստանու լերանց երկու կողմը, և որպէս Թուի Պարսկահայոց և Ատրպատականի կողմերն ալ, մինչեւ նախաջրհեղեղեան տունն ալ անհետացաւ մահուամբ, յորոց միայն Սեմայ կենաց Թիւն յիշի 502 տարի ձգեալ յետ ջրհեղեղին. իսկ ի ծննդոց նոցա երկարագոյն կեանք յիշի Արփաքսադայ որդւոյ Նոյի 535 տարի։ Այս տոհմապետս Սեմայ և հաւանօրէն Նոյեան բնատեղին ժառանգեր էր, վասն զի Սեմայ ուղիղ նուիրական պայազատն ճանաչի ի Ս. Գրոց, և հայր Քաղդէացւոց, որոց բնաշխարհն հիմայ վկայի և ի գիտնոց լինել ի սահմանս անդ Կորճայից, ուր և արտաքին հեղինակք (Յոյնք) գտնեն գաւառ մի Առապաքիդիս անուն, զոր այժմեան քննիչք[141] մերձաձայն գտանեն անուան Արփաքսադայ, որպէս և Քաստիմայ՝ որ է ըստ Եբրայեցւոց անուն Քաղդէացւոց. Արփաքսադայ կենաց յետին տարիներն և իր Թոռան Թոռին առաջին տարիներն՝ հանդիպեցաւ մարդկութեան նշանագոյն դիպուածոց մէկն, և Թերեւս առաջինն յետ ջրհեղեղին, այսինքն անոնց մեծ բազմութեամբ ելլալն յիշեալ նախաբնակութենէ և խաղալն դէպ յարեւմուտս և ի հարաւ՝ ընդարձակ սահմաններ բնտռելու և բնակելու. մինչ դեռ եւս ըստ Ս. Գրոց վկայութեան, «էր ամենայն երկիր լեզու մի և բարբառ մի ամենեցուն»։ Ի՞նչ էր պատճառ չուոյ այս համաշխարհական գաղթականին և ուսկի՞ց ո՛ւր դիմած և դիտած, չըսեր Ս. Գիրք. բայց միայն զի «Եւ եղեւ ի խաղալն նոցա » յարեւելից՝ գտին դաշտ մի յերկրին Սենաար, և բնակեցան անդ»։ Բնակած տեղերնին յայտնի ըլլալով ի սահմանս Բաբելոնի, ելած կողմերնին ալ՝ ոմանք անոր արեւելքէն կու բնտռեն, Ս. Գրոց ըսածին յարմարագոյն սեպելով. սակայն մեք յառաջագոյն ալ տեսանք՝ որ արեւելք ի Գիրս Մովսիսի ի սկզբան պատմութեանց իմացուի ամենայն Եփրատայ արեւելակողմն, նկատմամբ Պաղեստինեայ, որով Կորճայից երկրին նշա-

Digitized by Google

*նակութիւնն ամենեւին չի փասիր. մանաւանդ թէ բազմութեան ազգաց գնացած և բնակած կողմերը գիտելու ըլլանք՝ ամենայն հարկաւ պէտք է ըսել վասն մեծ գաղթականներն խաղալ յարեւելից յարեւմուտս։ Վասն զի ազգաց հաստատուն եւ տեղը բաժանման գիծը գիտելով և անոնց զանազան ընտրած կողմերը քննելով, կու տեսնեմք յայտնապէս որ յիշեալ 72 ազգաց երեք քառորդէն աւելին այն տեղւոյն արեւմուտքը գացեր են, և միայն սակաւաթիւ տոհմք ընդ հարաւ կամ ընդ հիւսիս. և ասով միանգամ եւս հաստատի Հայաստանի ազգաց նախավայր և արձակարան ըլլալն. և բնական հաւաքարան և կենդրոն, յորմէ շառաւիղեցան ամենայն նահապետք ազգաց և հին ժողովուրդք, որք յետոյ և այլուր բաժանեցան յազգս և լեզուս բազմապատիկս, և գլխաւորապէս ի Բաբելոն, որ է ամենայնիւ հակառակն Հայաստանի, արտակենդրոն, բաժանարան և խառնակարան։ — Հայաստանէն ի Բաբելոն գալու համար շիտակ դէպ ի հարաւ իջնալու է. բայց Կորդուաց ահեղ լեռներն ի հարկէ այդ ուղղութիւնը չէին թողուր այնպիսի բազմախումբ կարաւանի մը, որ ընդարձակութեան և դիւրութեան կարօտէր. և հաւանօրէն նախ արեւելեան Տիգրիսի առաջքը բռնած ապա բուն գլխաւոր ընթացքին եզերքը առած իջան ի Սենաար. և ըստ այսմ եւս ի դէպ գայ անոնց յարեւելից խաղալուն յարեւմուտս. և անտի դարձեալ դառնալն և ընդ հարաւ — արեւելք։*

*Սենաարայ դաշտին մէջ մարդկան բնակութիւնն, որ հաւանօրէն երկայն տարիներ տեւեց, և հոն առաջին մեծագործ շինութիւնն, Բաբելոնի քաղաքն և աշտարակն, և անոր կործանումն աստուածային զօրութեամբ, և պատուհաս մեծամիտ ձեռնարկութեան մարդկանն՝ լեզուաց խառնակմամբ, ընդհանուր պատմութեան յառաջաբանութեան մէջ ծանրակշիռ նիւթ մ'են իմաստասէր քննութեան, սակայն մասնաւոր ազգային պատմութեան չեն վերաբերիր։ Շատ ըլլայ մեզի միանգամ եւս ընթեռնուլն զյետին տուն այնր պատմութեան Ս. Գրոց, որով աւարտէ հրաշագոյնն վիպագրաց մեծն Մովսէս զհամառօտութիւն ընդհանուր պատմութեան սկզբան մարդկան և ազանց, և անցնի ի մասնաւոր պատմութիւն Փաղեկայ տոհմին։ «Անդ » խառնակեաց տէր Աստուած զլեզուս ամենայն երկրի, և անտի ցրուեաց » զնոսա Տէր Աստուած ընդ երեսս ամենայն երկրի»։*

*Այսպէս ուրեմն ազգաց պատմութիւն, որ է ըսել սկիզբն քաղաքական կենաց նոցա սկսի խառնակութեամբ, անհամաձայնութեամբ, բաժանմամբք, կռուօք և պատերազմօք, իրենց առաջին իջեւանին մէջ (Բաբելոն) յետ ելլալու ի նահապետական երկրէն Արարատայ, որ մարդկութեան կրկին երջանկա-*

Digitized by Google

գոյն ժամանակաց ասպնջական եղած էր, այն զոր բանաստեղծք ոսկեղէն և արծաթեղէն դարուց անուամբք նշանակեցին, և որովք եդեմական և Նոյեան դարերն պէտք է իմանալ. այս երկրորդ դարն Նոյեան, իրաւամբք կրնայ ըսուիլ արծաթի և դեռ երջանիկ, վասն զի ընդհանրապէս խաղաղութիւն և համաձայնութիւն տիրած երևայ, տանուտիրական իշխանութեամբ նահապետական պայազատաց, որուն վկայութիւնն այլ կարեմք համարիլ Ս. Գրոց ըսելն, թէ էր ամենայն երկիր լեզու մի և բարբառ մի ամենեցուն, ցորչափ ի կենդրոնի անդ բնակութեան նահապետացն կէին, որ յետ բաժանմանն սեփականեցաւ Թորգոմայ և Հայոց։

# Է

# ԾԱԳՈՒՄՆ ՀԱՅ ԱԶԳԻ ԵՒ ԼԵԶՈՒԻ

ՆԱԽԸՆԹԱՑ *գլխուն մէջ յառաջ բերինք ի հարեւանցի Ս. Գրոց ընծայած ազգաբանական պատկերը, և տեսանք որ յանուանէ նշանակեալ չէ հոն մեր Հայ ազգն. այլ ազգաբաժնին գիծը դիտելով իմացանք որ Հայոց աշխարհս վիճակ եղած պիտի ըլլայ Յաբեթի ցեղին, և հաւանօրէն Գամերեանն Թորգոմայ, որովհետեւ այս տոհմապետին երկու երէց եղբարց և հօր կամ նախահօր այլ սահմաններն անմիջապէս դէպ ի Հայաստանի արեւմուտք կ'իյնկնայ, իսկ յարեւելս՝ և ի հիւսիս՝ Յաբեթի միւս որդւոց բաժինն է։ Դարձեալ Ս. Գրոց ուրիշ հեղինակաց (Երեմիա և Եզեկիէլ մարգարէից) վկայութիւնքն ալ երեւցընեն որ Հայաստան վիճակ և բաժին եղած է Թորգոմայ և Աշքանազայ։ Այս վկայութիւնն կէս յայտնաբան և կէս լռելեայն գրեթէ ուրիշ հաւաստեաց կարօտ չէր ընել մեր ազգին ծա-գումն ստուգելու, եթէ զսուրբ Գրոց վկայութիւնն ալ մենք չկարօտէինք հաստատելու երկբայողաց արտաքին վկայութեամբք. և ունիմք այսմ բա-ւական վկայութիւն. նախ մեր ազգին և մեր դրացի Վրաց վկայութիւնն, որք ի Թորգոմայ ճանաչին և ազգաբանեն իրենց ազգին սերումը. եր-կրորդ հին արեւելեան պատմչաց վկայութիւնն, որք են Մար Իբաս և Աբիւդենոս, կամ Քաղդէացիք և Ասորիք՝ համաձայնք Ս. Գրոց. երրորդ հին Հարց հաւանութիւնն, որպիսիք են Եւսեբիոս, Թէոդորետոս, Իսիդոր Սեւիլիացի, և այլն. չորրորդ բազմաց արժմեան քննչաց այլ ընդու-նելն զայս։ — Բայց միւս կողմէն այլ քննելու և լուսայայտելու իրա-ւունք և հարկ կայ, նախ Սուրբ Գրոց վկայութիւնն բացարձակ չըլլա-լուն համար, որ Թորգոմէն զատ ուրիշ տոհմապետաց վրայ այլ կարծիք ձգելն չի վերցըներ, որով և ոմանց ի Հարց և մեկնչաց այն օտար տոհ-մապետաց սեփականելն զՀայս. երկրորդ՝ ոմանց ալ բոլորովին տարբեր ծագումն դնելն Հայոց ազգին. երրորդ՝ լեզուաբանական քննութեանց այլեւայլ ակզբունք կամ ազգակցութիւն ցուցանելն. չորրորդ մեր իսկ պատմչաց զանազան աշխարհ և ազգ կամ տոհմեր յիշելն ի նոյն ի բնիկ Հայոց աշխարհիս, որոց չէ անդէպ և զանազան աղբիւր ունենալն։*

Ազգին աղբիւրներն կամ տոհմապետներն ստուգելու համար ալ հարկ է նախ անոր հայրենիքը լաւ ճանչնալ, այսինքն աշխարհին սահման, որով շատ տարակոյսք պարզին։ Արդ մեր աշխարհն, Թերեւս քան զբազում աշխարհս աւելի՝ զանազան չափով տարածուած կամ ամփոփուած է զանազան ժամանակ, զանազան մասեր ունեցեր է որ երբեմն առանձին աշխարհք և կառավարութիւն եղած են, որք տարբեր ծագումն կամ ժողովուրդ ալ ունեցած կրնան ըլլալ. միջին կամ սովորական չափն առնլով բուն հայրենիք ազգիս պէտք է սեպենք զՄեծ–Հայս, բաժանեալ ի 15 առանձին աշխարհս կամ ի 20, խաղտեօք և փոքր Հայովք։ Այս աշխարհներէն յիրաւի մեծագոյն մասն զուտ աշխարհագրական և շինուածական կամ տեղացոյց անուններ կ'ընծայէ, որոնց ծագումն և ստուգաբանութիւնն անծանօթ է, սակայն ոմանք այլ որոշ տոհմական կամ ազգանիշ անուանք են հաւասար գրեաթէ Հայ անուան՝ որով բոլոր Հայաստանի, այսինքն 15 աշխարհաց ժողովուրդն կ'իմացուի. այսպիսի անուն և աշխարհք են Տայք[142], Գուգարք. (Մեսխք), Մոկք, Կորճայք կամ Կորդուք, Թերեւս և Ուտիք և Խաղտիք այլ ըլլան ասոնց կարգէն, որք անձի մը այսինքն նահապետի մը անունէն կոչուած կ'երեւան քան շինուածոյ մը։ — Դարձեալ մերային Ե դարու հեղինակաց վկայութեամբ իսկ գիտեմք որ Հայաստանի կամ Հայոց մէջ զանազան բարբառներ կային, Թէ և ոչ բոլորովին օտար, այլ գէԹ եզերական համարեալ, և են ըստ նախնեաց յիշատակելոյ Կորճայն, Խութայինն, Դ. Հայեցի, Սպերացի, Տայեցի, Սիւնին և Արցախայինն. այս եօթն երկուքն Թերեւս մէկ սեպուի. և բոլորն ալ Մեծ Հայոց եզերական աշխարհներ են բաց ի Սիւնեաց, և շրջապատեն զմիջնաշխարհ. շրջանակին երկու մնացեալ բաց կողմէն, ի հիւսիսոյ, Գուգարք են, և անտարակոյս է որ անոնց բարբառն այլ մէջերկրայ չէր, այլ Վրախառն. մէկ մ'այլ ի հարաւոյ արեւելից, Փայտակարան ընդարձակ և Պարսկահայք աշխարհքն. և յետնոյս անունն իսկ յայտ առնէ՝ որ բնակիչքն զուտ Հայ չէին. իսկ Փայտակարանն արդ Կազբք ալ կոչուելով, յայտնէ անհայ ազգ մը. յորոց և յԲ դարու յետ Քրիստոսի այրաքաջն Սմբատ շատ գերի բերաւ բնակեցուց յԱյկի ի կողմանս Կորճայից, զասոնք համարիմք՝ կոչէ Կորիւն՝ Մարաց կողմանք և զլեզունին խեցբեկագոյն և խուժրագոյն, այնքան օտար ի սեփական հայոյն որ դժուարամատոյցք էին, այսինքն, վասն դժար հասկացուելուն դժուարահաղորդք։ Նոյնպէս սեպելու է և զՈւտի, վասն զի Թէ և ընդ եզերականս չի դասիր, այլ մինչեւ ցարդ մնացեալ է ուտէացի լեզու, շատ տարբեր ի բնիկ հայկականէս, և է անշուշտ Գարգա-

Digitized by Google

բացուց խեցբեկագոյն լեզուն, որ Ուտի աշխարհին մէջն էր, և նոյն ինքն Աղուանից լեզուն է[143]։ Եւ ահա տասն եզերական լեզուք կամ հայկական բարբառք լսին ի Հայաստան ի Ե դարու, և զուտ ազգային երկիր և լեզու միան աշխարհքն Այրարատ, Տուրուբերան, Վասպուրական, (բայց ասոր ալ արեւելեան մասն երկրայական է). իսկ բարձր Հայոց և Սիւնեաց այլ յԱյրարատ նայող կողմերն. աւելի պարզագոյն ըսելով, բնավայր Հայոց ազգի և լեզուի երեւին հովիտն Երասխայ, հովիտն Արածանւոյ և պարատային վանայ. և ի պատմութեանց այլ գիտեմք որ այս հովիտներուս և այս մէջերկրեայցս մէջ նախ սկսած է սերունդն Հայկայ ազգահօր մերոյ, նոյնպէս և իր հօրն Թորգոմայ համար այլ՝ թէ բնակեցաւ ի նոյն հովտին Երասխայ ի միջոցս Արարատ աշխարհի։ Դարձեալ հին պատմութիւն մեր վկայէ թէ, Հայկն ի տարածանելն զիշխանութիւն և զբնակութիւն իւր յերկրին Այրարատայ (որ էր հին անուն աշխարհիս) ի տեղիս տեղիս զատ նախաբնակ մարդիկ, որոց ծագումն անյայտ մնայ։ Դարձեալ և մինչեւ Արշակունեաց տէրութեան վերջի ժամանակներ մնացեալ Հայոց 400 իշխանական և տոհմային բարձքն, և 600 մեծ ու փոքր գաւառքն (որոց մեծ կիսոյն անունն դեռ մնացեալ է) յայտ առնեն հին և զանազան և անյայտ ծագմունք։ Եւ յայս ամենայն յիշատակութեանց և նշանաց երեւի, որ Հայաստանի ամենայն ժողովուրդն և տոհմքն ի Հայկայ ծագեալ չեն, և ոչ իսկ ի Թորգոմայ՝ ընդունելով առ այժմ առանց երկբայելոյ, թէ Թորգոմ էր հայր Հայկին։

Տեսնանք արդէն հիմայ թէ ո՞յք են կամ կարծին կամ կարծեցան տոհմապետք և նախահարք ժողովրդոց Հայաստանի, որ յետոյ միով անուամբ Հայք ըսուեցան, ընդ իշխանութեամբ Հայկայ և որդւոց նորա։ — Եւ նախ յիշեմք (թողլով զգաղթականս և զեկս յետ ձեւացման Հայ ազգի և տէրութեան), զի որպէս Հայաստան ցուցաւ բնավայր Նոյեան տան և կենդրոն նահապետաց, հարկ էր որ ոչ միայն ի Յաբեթայ այլ և յեղբարցն տոհմք և սերունդք մնային ի նմա։ Յիշատակեցաք ի վեր անդր (էջ 70) վասն Քամայ ցեղին սերնդեան աւանդութիւնն, զոր և առանց կարելու հաստատապէս ցուցանել, համարիմք թէ ի միջնակողմանս հովտին Երասխայ և ի կողմանս Սիւնեաց՝ թողած ըլլայ գաւառներ յառաջ իսկ քան զեբերական և զբաբելական բաժանմունս։ Յետ բազում ժամանակաց, ի Քամայ ցեղայնութենէ գաղթականք եկան ի Հայս, Քանանացիք ոմանք հալածեալք ի Յեսուայ, իբր 1600 տարի նախ քան զՔրիստոս, և 900 կամ 1000 տարի յետ խառնակութեան լեզուաց, և խառնեալ ընդ Հայս Գնթունեաց



Digitized by Google

*ազգն կազմեցին։ — Ցուլհ. կաթող. պատմիչ մեր յիշէ իր ժամանակը ի Հայս զԳուրգասեանցիս, որք թէ արդարեւ սերունդք էին Գաբաւոնացւոց՝ ընդ Քանանիդայ նախահօր Գնթունեաց կրնան եկած սեպուհ ի Հայս, և Խեւացոց ազգէն, որք էին ի համանուն սրբոյ Քանանու. բայց երեւին մեզ նշանակել զգնչուաս կամ զծինկեանս ի Հայս, որոց ծագումն անստոյգ կամ հետաքննելի։ Ուրիշ պատմիչ մ'այլ (Կաղկանկ.) յիշէ իշխան մի Մաղխազեանցի ի կողմանս Աղուանից յէ դարու. այս անուամբ կրկին ժողովուրդ ճանաչի, մին ի Մաղխանայ սրբոյ Աբրահամու, զոր ջնջեցին Հրեայք ի ձեռն փենեհեսի, միւսին հայր կարծի որդի մի Քուշայ Քամեան. եթէ այս երկուքին մէկէն է յիշեալ իշխանդ՝ հաւանօրէն երկրորդէն կ'ըլլայ։*

*Սեմայ ցեղէն բազմաթիւ քան զՔամեան ծնեալք և բնակք յիշատակին ի Հայս. նախ Տորքանն ի Տարօն, որպէս թուի յառաջ քան զՆեբեր բնակեալ հօն։ — Արփաքսադ նախահայր Քաղդէացւոց և Հրէից, որոյ պայազատք բնակեցան ի Կորճայս և ի հարաւակեց գաւառս նորին. որք ի սկզբանէ սեփական էին Սեմայ և յետոյ նուաճեցան ի Հայկայ և ի զարմից նորա. բայց դարձեալ շատ ժամանակ զատուցեալ ի Հայոց կամ ինքնագլուխ եղան կամ հարաւային ախեղերակալ պետութեանց մարզ. մինչեւ ցայժմ բնակիչք երկրին են անկայք, Քուրդք և Քաղդեայք։ Բուն սերունդն Արփաքսադայ ասոր քիչ մը ընդ հարաւ խաղաց մինչեւ ի սահմանս Բաբելոնի. իսկ իր թոռնաթոռնին Եբերայ ազգն որ եղաւ Հրէից ազգ, ինչուան Աբրահամու տունն մնաց հօն, և անկից վերջ ալ, վասն զի Աբրահամ միայն ելաւ յերկրէն Քաղդէացւոց իր հօրը հետ. իսկ մնացեալքն անշուշտ կամաց կամաց կամ գաղթեցան ընդ հարաւ, կամ ընդ Հայոց խառնեցան, և Կորճայից ժողովրդեան գլխաւոր տարրը մէկն եղան։ Ցեբրայեցւոց թէեւ տոհմապետ մի չի յիշուիր ի Հայս, բայց իր ազգէն զանազան ատեն գաղթականք եկան հօն. և նախ Աբրահամեանն հին տոհմն Հայոց՝ թուի ի մեծէ նահապետէն Հրէից, բայց ի Քետուրածին որդւոցն եթէ յիսահակեան՝ չէ յայտ. իւր հաւատարիմ գործակալին Եղիազարայ որդւոյն համար այլ աւանդութիւն կայ առ մերքս՝ բնակեալ ի կողմանս Մասեաց յԱյրարատ. որ եթէ ստոյգ լինի՝ արամացի գաղթականութեան հայր մի սեպուհելու է։ Իսկ անտարակոյս գաղթականք Հրէից, ի զանազան ժամանակս են գերութիւնք նոցա, նախ իրենց թագաւորութեան վերջանալու ատեններն Ասորեստանեայց Թագլաթփաղասար և Սաղմանասար թագաւորաց ձեռօք, որք ի սփռելն ի կողմանս Մարաց զգերեալսն, և մասն մի ի Հայոց սահմանս թողին, ըստ ոմանց ի Կորճայս, ըստ այլոց ի կողմանս Կուրայ. երկրորդ առ Նաբուգոդոնոսորիւ, որոյ*

նիզակակից գոլով Թագաւորն Հայկազանց, պատուով բերաւ ի Հայս արքունի զարմէն իշխան մը և ուրիշ մարդիկ, ուր անուանեցան Բագրատունիք ի Հայս և ի Վիրս, և ի միջին դարս թագաւորութեան պատիւ այլ ստացան այս երկու աշխարհաց մէջ այլ: — Դարձեալ յառման Երուսաղեմի, զօրավարք Տիգրանայ Արշակունւոյ Հիւրկանոս քահանայապետին հետ գունդ մը գերեաց բերին ի Հայս: — Եւ յ'Բ դարու Քրիստոսի յաւուրս Արտաշիսի Բ. ի Պարթեւաց եկին Մանուեայ գերելոյ Հրէի մը սերունդք և Ամատունի տոհմը կազմեցին ի Հայս: — Սեմայ ուրիշ որդիք այլ սերունդ թողած են ի Հայս, յԱսուրայ ցեղէն համարին Սենեքերիմեանք, որդիք զոռոզ թագաւորին Սենեքերիմայ և անոնց հետ եկողքն, յորոց կազմեցան ի Հայս մեծապատիւ և իշխանական տոհմք Արծրունեաց, Աղձնեաց և Սասունեք, Խութեցիք և Գնունիք: Բայց թէ սոնք և թէ Եբրայեցիք գաղթականք համարելիք են ի Հայս, և ոչ ազգին ծագման կամ աղբերաց պատճառք. թէ և քիչ շատ լեզուին և սովորութեանց վրայ ազդեցութիւն բրած ըլլան: Նոյնպէս Սեմայ Ելամ որդւոյն շառաւիղքն այլ որ ի Պարսից, երբեք երբեք ի Պարթեւաց կամ Սասանեանց ժամանակ եկեալ և խառնեալ ընդ Հայս՝ գաղթական կամ հաստուած համարին: Իսկ ի Ղուդայ միւս որդւոյ Սեմայ ոմանք ասեն բնակեալ Հայոց սահմանակից Միջագետաց մասն Քորար գետոյն քով, բայց այս երկրայական է, եւս առաւել նոր հեղինակի մը (Տիպուա) կարծիք, որ զԼուդ ասէ բնակեալ ի կողմանս Կոտայից Արարատայ, որպէս և զԵլամ ի կողմանս Խլաթայ, զԱսուր՝ Վասպուրականի, զԱրփաքսադ՝ Որմեոյ, զԱրամ՝ ի փոքր Հայս: — զԱրամ յանկակից Արմէն անուան ազգիս, Հրեայք և ոմանք ի քննչաց (Բիրխէր—Վիվ. Ս. Մարթէն—Ալիաս—Գոնրէր). համարին Հայոց ազգահայր. որպէս և զՄոսոք կամ զՄէս կրսեր որդին ալ Հայոց արեւմտեան հարաւային սահմանաց բնակիչ ի Մասիոս լերինս. Իսկ իւր եղբայրն Եմուղ, որ և Հուլ կամ Խուլ, ըստ Յովսեպոսի կոչէր Ուլրոս, և էր հայր Հայոց. Թերեւս Հայկայ և Կարդոսի աղաւաղ յիշատակօք այսպէս կարծեց Եբրայեցի հեղինակն. յորմէ առնլով ոմն ի նորոց՝ (Պոշար) զանունն Ուլուս ընթեռնու և համարի հայր Ուտեացւոց, այլ ոմն (Կալմեթ) Գողթնեաց կամ Կորքաունեան գաւառի, և միւս ոմն (Ընդ. պատմ. Անգղ.) զսա խնքն համարի Սկիւթա, որ զիարդ և է, բոլորովին անհիմն պէտք չէ համարել Հայոց աշխարհին մասն մը մէջ բնակիլն տոհմապետիս, գէթ առ ժամանակ մի: - Իսկ զԳաթեր եղբայր նորա Թերեւս ասէ ոմն (Ֆլորիսի) հայր բնակչաց Կենդրիտայ որ ընդ մէջ Հայոց և Կորդուաց: — Դարձեալ Եբերայ Յեկտան որդւոյն ազգածին որդիքն զոր ի հարաւային Արաբիա համանիմք, սփռեալ ի

Մէշայ մինչեւ ի Սաֆար, ոմանք (Կալմեթ) համարին Մասեւոց կամ ի Մասիսաւ մինչեւ ի Սպեր. և զանուն գաւառիս (որ յիրաւի շատ հին և մեծ առհմապետ մը ունեցել է) ընծայեն (Պոշար, Կալմեթ. B. de Vence. Պաուքալ) Ուփիրայ որդւոյ Յեկտանայ. այսպէս և զեղբարս նորա Յարաք Եզել, Աբիմիէլ, Սաբա, Եւիլա, համարին ի զանազան կողմանս Հայոց. և զյետինն անշուշտ յԵւիլաթն փոխեն, որ է Խաղտիք: — Յայսքան Սեմեան առհմապետաց անշուշտ ոմանք ստուգապէս բնակեալ են յաշխարհիս Հայոց և մեր ազգահարց կարգն կրնան անցնիլ. բայց մեզ ստուգելն և ճշդելն ոչ է դիւրին, որպէս օտարաց ոմանց (Վոլնէյ, — Վիլիեն Ս. Մարգէն), որք առաւել քան Յաբեթի՝ Սեմական զինակ և բաժին համարին զՀայս. լաւ եւս առնէ խղճաւոր քննադատ նորագոյն Սեմ–արիական կամ Արի–սեմական ժողովուրդ անուանել զՀայս, բայց թաթարաց ազգակից կամ արտածագումն առնլով մերձենայ թերեւս յարեւելեան ազգաց կարծիս, որք ըզթուրքս և զՀայս միոյ հօր Թորգոմայ որդւոյ սերունս համարին:

Գալով առ Յաբեթ, յայտնի և հաւանական եւս է, որպէս և յիշեցաք ի վերոյ (էջ 72) զի յառաջ քան զԹորգոմ՝ երիցագոյն եղբարք նորա և հօրեղբարք բնակեցան ի Հայս, և թէ և հեռացան անտի՝ այլ թողին զպայազատս և սերունս, զորս նուաճեցին Թորգոմ և Հայկն: Առաջին և գլուխ սոցա արժան է համարիլ զինքն Յաբեթ նահապետ, որոյ անուամբ հռչակեալ յատուկ ազգ և երկիր չկայ ծանօթապէս. և եթէ ոմանք կ'ուզեն զՅոպպէ Պաղեստինոյ առնել ձեռակերտ նորա, զուգէ լաւ եւս առնէին զ'Յիոպ քաղաք Մատիենաց ( [illegible] ) մերձաւոր Կորդեաց (ընտանեացն Նոյեանց), զոր յիշէ հնագոյն պատմչաց Յունաց, Եկատէս, համարեալ ոստան Յաբեթի կամ իջեւան, որպէս Սեմայն զՍիմ: Բայց ո՞յք են այս յիշեցեալ Մատեանքն կամ Մատիենացիք, զոր ոչ միայն պատմիչք այլ՝ այլ և Երոդոտ և Ստրաբոն, և այլք յիշեն, և զսահման նոցա ցուցանեն ընդարձակ յոյժ, և զի Եկատէս որ զքաղաք մի նոցա մերձ Կորդեաց դնէ, զՄեսիա կոչէ ժողովուրդ Կորդեաց և մերձակից Մատենից. Երոդոտ ի միջին Հայս և ի կողմանս Վանայ թուի ցուցանել. Ստրաբոն յիշէ զմեղրածոր ծառս Մատենից, զոր մարթ է համարել զգազպէն Տարօնոյ և զսահմանակից գաւառաց. այլք զԱռան համարին Մատիեն, կամ զմէջս Երասխայ և Արարատականի, և զառ ինքեան. որոյ սահմանակից Մարք յայտնապէս իսկ համարեալ են որդիք Մադայի որդւոյ Յաբեթի: Հաւանելի ուրեմն է զի առ յետ Գամերայ կամ ընդ նմին իսկ Հայաստանի միջակողմն և հարաւակողմն բնակեր էր, նախ քան թէ գրուն Մարս: Եթէ և չընդունի ոք զայս կարծիս, հարկ

Digitized by Google

*է ընդունիլ որ ուրիշ նահապետ մի կամ ազգ մի տիրած պիտի ըլլայ յեր-կրի մերում, զատ ի Հայոց և ի Մարաց, որոյ անուն հռչակեալ ըլլայ առ Հելլէնս 5–6 դար նախ քան զՔրիստոս. իսկ ի Հայս այժմ ոչ յիշի այդ անունն, բայց թերևս Մոզոզանք երկրայական անուն կորճայից գաւառի։ Ընդունիմք ևս մեք զի Մարք որ Մեդք կոչին ի Յունաց, տիրէին երբեմն և Հայոց, մանաւանդ կողմանց Վանայ, և ոչ հեռի ժամանակաւ յԵկատեայ, սակայն այլազգ գրեն զանուն Մարաց և զՄատիենաց հեղինակքդ հելլէնք. և տեղի ազգին անտարակոյս է ի Հայս ըլլալն։ Արդեօք վերոյիշեալ Մա-զիանացի իշխանն ալ ի Թագաւոր ազգէս էր թէ յայլոցն, չեմք կարող հաստատել, բայց աւելի կարծեմք ի Սեմեանց։ — Բուն Մարաց կամ Մեդաց-ւոց խառնուրդ և գաղթականութիւն ալ ընդ Հայս եղած է զանազան ժա-մանակ, որոց գլխաւորն է Ա. Տիգրանայ և Աժդահակայ ատեն, երբ բազ-մաթիւ գերութիւն մը եկաւ ի Հայս և բնակեցաւ Երասխայ արեւելեան ձախ կողմը, Նախիջեւանայ սահմաները, որոց շէնքն Մարաց իրաւունք ըսուեցան, և Մուրացան մեծապատիւ տոհմն ձեւացաւ, որ հազար տարի յետոյ ալ յիշուի։ Տրպատունեաց տոհմն ալ թուի յԱտրպատականէ Մարաց եկեալ, թերևս ի հնագոյն ժամանակէ։*

*Յաբեթի միւս որդւոցն ալ ի Հայաստանէ անցնիլն և ոմանց քիչ շատ հոն կամ ի սահմանսն բնակելն անտարակոյս է. որպէս և նախ յիշեցինք Մագոգայ շատ հաւանօրէն Թուգարայ հայր եղած է նախ, յետոյ Սկիւթաց։ Այս մեծ և հին ազգն որ անուանի եղած է իր արշաւանօքն յարեւմտեան Ասիա, ամենէն աւելի ի Հայս թողած է յիշատակ բնակութեամբն ի Շակաշէն գաւառ Ուտիոյ, մեծահռչակ արշաւանօքն ի միջոցի* 630 *կամ* 680 *ամաց յառաջ քան զՔրիստոս, բայց ըստ ոմանց անկից իբր* 1000 *կամ աւելի տարի առաջ ալ մեծ յարձակմունք ըրած են ի Հայս, և վանեալ ի Հայոց և Վրաց։ Սկիւթաց հետ խառնալու է ուրիշ հիւսիսային կովկասեան ազգեր ալ, որ շատ անգամ արշաւեցին ի Հայս, և երբեմն գաղթականներ թո-ղին։ Այսպիսի ազգք են Խազիրք, որ թէ ի հնագոյն ժամանակս յիշուին ընդ Սկիւթաց, և նաեւ յետ Քրիստոսի ց'Ը դար. Հոնք, որոց բազմադէմ և բազմապատիկ արշաւանքն ծանօթ է յընդհանուր պատմութեան, երբեմն գերեցին ի Հայոց և երբեմն գերի վարեալ ինչուան* 60,000 *բազմութեամբ ի կողմանս Դունայ բնակեցան հրամանաւ քաջին Տրդատայ. Բուլղարք, ազգ անուանի մինչեւ ցայժմ, որ նախ ի պատմութեան ազգիս մերոյ յի-շին, և հատուած մի ի նոցանէ յԲ. դարու նախ քան զՔրիստոս բնակելով ի Վանանդ իւր առաջնորդին անունն (Վղունդ) թողուց ի նմա. Ալանք*[144],

որ յԱ և յԲ դարու յետ Քրիստոսի հատուած և գերի եկեալ խառնեցան ընդ Հայս, և կազմեցին Առաւեղեան և Արաւազեան տոհմն և գաւառն. Բասիլք, յորոց հատուած եկաւ ի Հայս յառաջին կէս Գ դարու Քրիստոսի։ — Ալանց հետ յիշեմք և մէկ երկու հեռաւոր տոհմեր որոց ծագումն իսկ անյայտ է. և են Ճենք, յորոց երկու հատուած յիշուի ի մեր և ի Վրաց պատմութեան, մի Որդ կամ Օռպել յորմէ Ուռպելեանց տոհմն մեծապատիւ յայտ ի Վիրս, որ Քրիստոսէ Դ—Ե դար առաջ եկած է ի մեր կողմանս. և Մամկոնն կամ Մամ և Կոն յորոց Մամիկոնեան քաջամարտիկ և առաքինի տոհմն ի Տարօն՝ յաւուրս մեծին Տրդատայ եկեալ։ — Երկրորդ Հրէդիկք Արիականք, որոց լեզուին և կրօնից հետ սերտ յարաբերութիւն ունին մերքս ալ, ժամանակ կամ սկիզբն յարաբերութեանցն անյայտ, այլ շատ հին պէտք է ըլլալ և շատ յառաջ քան զԱրշակունեաց թագաւորութիւնն, յորոյ սկզբանն եկին Դեմետր և Գիսանէս անուանեալ քուրմք հատուածու, և բնակեցան ի Տարօն, և աւելի քան զ400 տարի խրեանց հայրենի սովորութիւնները և կրօնը պաշտեցին խառնելով ընդ հայկականաց։

Ցաբեթի միւս որդին Մոսոք հայր է Մեսխաց, որոց երկիր է այժմեան Ախալցիխէ գաւառն և նահանգն Սա—Մցխէ կոչեցեալ ի Վրաց, որ նշանակէ երկիր Մեսխաց կամ Մոսոքաց. Ցոյնք ալ յայս անուն Մոսքիքեան լերինս անուանեցին՝ Հայոց և Պոնտոսի անջրպետ լեռները։ Այս ազգս քիչ կամ հին ժամանակ միայն առանձին իշխանութիւն ունեցեր է, այլ ի հասարակի բաժանեալ էր ընդ իշխանութեամբ Կողքեաց, Վրաց և Հայոց. և թերեւս ի Մոսոքայ ծագած են Տայք, որ Հայաստանի արեւմտեան հիւսիսային անկիւնը ամուր գաւառներ և խորափոր հովիտներ գրաւեցին Ճորոխի և Կրի վտակաց եզերք։ Դարձեալ և Կղարջք զոր Ցոյնք Քորաքս կոչեցին, ընդ մէջ Տայոց և Գուգարաց, Մոսոքայ սերունդ թուին ինձ. որպէս և ոմանք ի տոհմից և յազգաց Կողքեաց և Պոնտոսի։

Թոբէլ որդի Ցաբեթի ի Հայս կամ ի սահմանս Ցաբեթի որպէս ի նախընթաց գլխի նշանակեցաք, զՏփխեաց և աւելի զՏիբարեանց տոհմն ընդ մէջ Հայոց և Պոնտոսի, թողած համարի։ — Ի Թիրակիայ որդւոյ Նահապետիս մերոյ չիք այլ յիշատակ բայց զոր Սոփարոնն ասէ, թէ ի Թրակացւոց հատուած մի է ի Հայս, սահմանակից Մարաց Սարապար կոչեցեալ, որպէս թէ Գլխահատ, բարբարիկ և կարին ժողովուրդ, որ երբեմն օգնական եղեալ Գարգարացւոց (Ուտիոյ) և վանեցին զԱմազոնս, զայն Ամազոնս որ կովկասայ ստորոտքը բնակէին Կասպից ծովուն եզերքը։ —

Digitized by Google

Իսկ Յաւանայ հեռագնաց և ժրագոյն որդւոյ Յաբեթի աշխարհագրական կամ ազգագրական յիշատակ չկայ ի մեզ, բայց առասպելախառն աւանդութիւն նորին որդւոյ, Յունաց, որք յաստատակութեան Արգոնաւորդաց ասեն զԱրմեն ումն Թեսաղացի[145] յԱրմենիոն քաղաքէ եկեալ ընդ Յասոնի ի Հայս և ի Մարս, և թողեալ յընկերացն յԵկեղեաց, ի Սպեր, ի Կալաքեան և յԱդիաբեն որք ի կողմանս Կորճայից և Քաղդէացւոց. և յիւր անուն անուանեալ աշխարհս մեր Արմենիա։ Եւ փաստս տան լայն զգեստուց Թեսաղացւոց Արմենի կոչել, և Պենէոս գետոյ երկրին՝ Երասխ։ Սակայն նոյն իսկ փաստքն առաւել ցուցընեն զԹեսաղացւոց ծագումն ի Հայոց, միջնորդութեամբ Պեղասգեանց և Գամրաց և Փռիւգաց, քան Հայոց ի Թեսաղաց։

Դարձեալ ասեն վասն Գորդեայ որդւոյ Տրիպտողեմեայ հեղինակին երկրագործութեան՝ եկեալ ի Կորդուս և հաստատեալ բնակութիւն, ուր յետոյ, յաւելուն[146], Պարսք բնակեցուցին զԵրետրեանս, այսինքն զգերութիւն Յունաց զոր հանին յԵրետրիոյ քաղաքէ Եւրիու կղզւոյ, 490 ամաւ նախ քան զՔրիստոս, թէ և Երոդոտ Շօշայ մօտ ի Կիս կամ Կոս գաւառի ասէ բնակեցուցեալ զնոսա։ Արգոնաւորդաց դէպքն, եթէ սոսկ համարուի, Քրիստոսէ ԺԳ դար առաջ է. Տրիպտողեմեայն ի հարկէ հնագոյն եւս։

Ասոնց նման ուրիշ գաղթականներ ալ կրնան յիշուիլ եկեալք ի Հայս զանազան ժամանակ, բայց Հայոց ծագման կամ սկզբանց պատճառք չեն կրնար ասել, որպէս և ոչ շատք ի յիշելոցս, բայց եթէ տարերս ինչ յաւելեալ ի նոյն որպէս և ի կրօնս և ի լեզու Հայոց. իսկ երից նահապետաց որդիքն և թոռունք հաւասար Թորգոմայ և Հայկայ Հայաստանեայց ժողովրդեանս ազգահարք սեպուելու են. և զսոսա ոչ այնքան սերնդեամբ՝ որքան իշխողութեամբ ազգապետս մեր և աշխարհիս մերոյ, որպէս և պատմութիւն իսկ վկայէ թէ Հայկն ի նուաճելն զաշխարհս զատւ ի զանազան կողմանս նախաբնակ մարդիկ և հնազանդեցուց իրեն։ Բաբելոնէն եկած ատենն իր ընտանիքն 300 ոգի կ'ըսուին, որոնց հետ կային ընդոծինք և յարեալք կամ միաբանք և հաւանութեամբ հնազանդեալք քաջին. բայց որքան այլ ըլլան, հազիւ քանի մը հազար ոգի կրնանք համարել. մինչև իր դարձն յԱրարատ ջրհեղեղէն ի վայր 600 կամ 650 տարի անցեր էր, և հարկաւ Հայաստանի շատ կողմերը բնակուած էին, մանաւանդ ի Թորգոմեանց և յԱսքանազեանց, հարաւակողմն ի Սեմեանց, արևմտակողմն յորդւոց Յաբեթի, հիւսիսակողմն յայլ որդւոց նորա. որոց ամենուն վրայ Հայկազանց ձեռքն տարածեցաւ մօտ կամ հեռու ժամանակաւ. բայց տոհմիւ և ազգաւ յայտնապէս զանազանեալք էին և մնացին եւս այսպէս ի պատ-

Digitized by Google

*ճառս տանուտէրական պայազատութեան նախնեաց և երկրագրական ձեւակերպութեան աշխարհիս մերոյ կամ բնական գրեց և բաժանմանց, մինչեւ 2 և 3 հազար տարի յետոյ այլ յիշուիլ ամենահին տոհմից և պայազատութեանց, որպէս Ազգանազեանքն, Հայկազեանք, Գուգարք, Գամբեանք, Արրահամեանք, հւն. անշուշտ այլ աւելի պիտի զանազանէին եթէ հայկական լեզուն առհասարակ չծաւալէր, և եզերական բարբառներ ունենալով այլ, բոլոր մէկ ազգ և մէկ երկիր չի դարձընէր։ — Բայց պէտք է այս լեզուի օրէնքն ալ քննել, և աւելի ստուգել մեր ազգին ծագումը, և յարաբերութիւնը կամ տարբերութիւնը յայլոց։*

*Ինչպէս ազգիս այսպէս և լեզուիս հեղինակ ճանաչեմք զՀայկն. առակայն ինչպէս որ տեսանք Հայաստանի ժողովրդոց զանազան ազգահարք կամ տոհմապետք եղած են, արդեօք ի հնումն ընդ տոհմիցն զանազանեալք էին և լեզուօք։ — Մինչեւ ցԲաբելոնեան խառնակութիւնն՝ յայտ է՝ ի սուրբ Գրոց վկայութենէ թէ ամենայն մարդկան մի լեզու և մի բարբառ էր. թէ ոչ նոյնպէս յայտնի՝ գոնէ շատ հաւանական այլ է որ Բաբելոնէն յառաջ այլ, մասն մի մարդկան սփռեալ էր ի զանազան կողմանս Նոյեան բնատանն, և աւելի յԱրարատեան երկրին. արդ խառնակութիւնն լեզուաց եղաւ ի Բաբելոն, որպէս որոշակի ասէ Ս. Գիրքն, «անդ խառնակեաց Տէր Ա-*
*» տուած զլեզուս ամենայն երկրի, և անտի ցրուեաց զնոսա Տէր ընդ ամե-*
*» նայն երեսս երկրի», այսինքն զմիաբանեալ տոհմն և տոհմապետս ի չուելն յարեւելից ի Սենաար. ուրեմն նախաբաբելեան լեզուն յայնժամ անխառն մնաց Սենաարէն դուրս եղած տոհմից մէջ, որոնց ծանօթագոյնքն են Արարատեան կամ Նոյեան երկրին բնակիչքն, և ըստ այսմ կրնամք ստոյգ համարիլ մեր ազգային աւանդութիւնն կամ պարծանքն թէ առաջին լեզուն ի Հայաստան խօսուէր և պահէր (ընդ երկար)։ — Բայց ո՞ր և ի՞նչ լեզու էր այն։ Հօս պէտք է ազգային աւանդութիւնն կամ պարծասիրութիւնն զտել. եթէ չէր այն մեր հայկական լեզուն՝ ապա ի զուր է պարծանքն, վասն զի օտարաց քով կրնայ բնտռուիլ և թերեւս գտուիլ. իսկ եթէ հայկականն ասուի՝ ի՞նչպէս կարելի է այս բանս՝ մինչ մեր պատմութեան հիմն է Հայկայ ի Բաբելոնէ գալն կամ դառնալն յերկիրն Արարատայ, և հարկ էր որ ընդ այլոցն իւր նախնի լեզուն այլ խառնեալ ըլլար հոն ի Բաբելոն, և նորով լեզուաւ գայր յԱրարատ. և եթէ պահեց և աւանդեց այդ բաբելածին լեզուն ի սերունդս իւր և նաեւ տարածեց Հայաստանի մէջ իրմէ առաջ բնակչաց, ապա հայերէնն չէ նախկին նոյեան լեզուն։ Իսկ եթէ ինքն և իրեններն սակաւաթիւ ըլլալով նորէն ստացան Այրարատայ նախ-*

Digitized by Google

կին բնակչաց լեզուն, յորմէ նաեւ ի խառնակութեան անդ խիստ շատ հեռացած չէին տոհմապետք (որք և լեզուապետք եղան), գեռ կրնայ Հայոց լեզուն առաջնութեան կամ հնութեան վրայ վիճել, և այս եաքի կարծիքն աւելի հաւանական կ՚ըլլար, եթէ համարէր, ըստ մեր պատմութեան, Հայկն միայն իր ընտանեօք եկեալ ի Հայս. բայց վրաց պատմութիւնք զԹորգոմ եւս համարի եկեալ ի Բաբելոնէ, յետ խառնակութեանն, բազմութեամբ որդւոց, յորս գլխաւոր Հայկն, և Թոռանց և Թոռնորդեաց, «և չբաւէր երկիրն բազմութեան ախի նորա», վասն որոյ և ցրուեց զորդիսն ի Պոնտոսէ ցկապըք, ի Կովկասայ ցԿորճայս, և վկայէ եւս թէ ամենեքին ութ տոհմ բաժանեալ խօսէին զմի լեզու՝ զՀայերէնն, որով և յետոյ առէ վասն Վրաց թէ վարէին մինչեւ ի ժամանակս Նաբուգոդոնոսորայ, և յայն ժամանակս խառնեալ ձեւացաւ վրաց լեզուն։ Արդ եթէ ամենայն տանն Թորգոմայ մի լեզու էր, և բազմութիւն տոհմից նորա խօսէր զայն, և եկեալ էին նոքա ի Բաբելոնէ, հաւանական է որ լեզունին այլ պահեցին, և Արարատայ առաջին բնակչաց լեզուն խափանեցաւ կամ խառնեցաւ իրենց հետ։ — Այս այլ ստոյգ է, որ Հայկայ լեզուն թէ բաբելածին ըլլար և թէ արարատեան կամ Նոյեան, ինչուան ի մեզ 4400 տարուան մէջոց շատ փոփոխութիւն կրած պիտի ըլլար, ժամանակաւ և խառնութեամբ գաղթականաց լեզուներու. որով չէ մարթ մեր այժմու և մեր նախահօր այն ժամու լեզուն նման համարիլ, եւս առաւել մեր կամ որ և է լեզու՝ ընդ նոյեան լեզուի։ Վասն այնորիկ թէ և ընդունիմք հաստատապէս զնոյայ բնակութիւնն ի Հայս, որպէս և զնախաջրհեղեղեան նահապետաց, սակայն չեմք կարող իմաստասիրապէս հետեւցընել թէ յիրաւի իր նախաշէն բնակութիւնն յայնժամ այլ Նախիջեւան անուանէր՝ այս հայերէն բառերով, (մանաւանդ որ ցուցինք թէ Նոյ այդ հիմակուան Նախիջեւանէն հեռու էր). կամ իր բնակած գաւառն Ազ—Նոյ—ան, (որ ստուգաբանի Ոտն—Անոյ, տեղւոյն բնական անունն Ակին ըլլալով). այսպէս որ և է հին շինից անուանք որ հայերէն ստուգաբանութիւն ունին, և Հայկէն առաջ են, կամ երկբայելիք են, կամ հայերէն թարգմանութիւնք, որպէս և ի Ս. Գիրս, Հայաստանի՝ այսինքն Եդեմայ և Նոյեան երկրին և ուրիշ աշխարհաց շատ անուանքն այլ եբրայերէն թարգմանութիւնք են բնիկ լեզուաց։ Նոյնպէս և բնական իրաց կամ կենդանեաց անուանքն որ բնութեան՝ առարկայից գաղափարն հաւատարմապէս ընծայեն ձայնիւ՝ բնութեան թարգմանութիւն սեպուելու են, ըստ իւրաքանչիւր զգացման և լսելեաց, որով ամենայն ազգք և լեզուք այլ ունին այսպիսի անուանակոչութիւններ, և սակայն այդոր համար չեն ըսուեր

Digitized by Google

առաջին ազգ և լեզու[147]։ Ի վերայ այսր ամենայնի պէտք չէ զլանալ կամ խլանալ որ արդարեւ մեր հարուստ լեզուին մէջ այսպիսի յարմարութիւնք իրաց և ձայնից շատ և առատ են, և թերեւս ուրիշ որ և է լեզուէ վար չեն մնար, վասն այնորիկ և արժանիք մտադրութեան։

Արդ եթէ զհայերէն կամ զՀայկայ լեզուն բաբելածին համարիմք, զո՞ր լեզու պէտք է Նոյեան համարիլ. (վասն զի կարգ բանիս հարկաւորէ համառօտիւ քննել). — բնօրէն միտքերնիս դառնայ հօն՝ ուր զառն Նոյայ նկատեցինք. և զի զայն սեփականագոյն տեսանք Արփաքսադայ կամ Սեմայ քան Յաբեթի, հին կարծիք Ս. Հարց կրնայ աւելի փաստ առնուլ, որք զեբրայական կամ զքաղդէական լեզուն առաջին համարին. յայս կարծիս էին, սկսեալ ի Ս. Լուսաւորչէ և Հարք մեր, և ոմանք արաբացւոյն աւելին զառաջնութիւն. և երեքեանն ևս մի աղբերէ զան, և սեմական կ'ըսուին։ Եւ եթէ ի խառնակութեան լեզուաց, Արարատեան կողմանց բնակչաց լեզուն անխառն մնաց, ևս առաւել ընիկ Նոյեայ տանն։ — Սակայն յիշելի է, զի և Հայկն ի Բաբելոնէ նախ յայս Նոյեան սահմանն եկաւ, բնակեցաւ և թողուց զայն Կադմոսի. և զի ի նմին ժամանակի Եբերայ որդին Յեկտան գնացեր էր ի Բաբելոն և անտի յԱրաբիա. և յետ քանի մի հարիւր ամաց՝ Թարա պայազատն Փաղեկայ, Եբերայ, Արփաքսադայ և Սեմայ՝ իւր Աբրահամ որդւոյն հետ ելաւ անտի կամ յերկրէն Քաղդէացւոց, և իր լեզուն այլ այլայլեցաւ. իսկ այն Նոյեան երկրին լեզուն ի՞նչ եղաւ. հաւանօրէն խառնուեցաւ ընդ հայկականին և ընդ քաղդէացւոյն. վասն զի այս երկու լեզուները խօսող ազգաց մէջն էր, այսինքն Հայոց և Քաղդէից։ — Նոյնպէս և Արարատեան երկրին արեւմտեան հիւսիսային կողմի, այսինքն արեւմտեան Հայաստանի բնակչաց նախնական լեզուն՝ այլայլեալ միացաւ կամ ընդ հայկականին և կամ այլ տոհմական լեզուաց, որք ընդ Հայկայ ելան ի Բաբելոնէ, և ընդ արեւմուտս խաղացին ի փոքր Ասիա։

Հիմայ այս ծանր, բազմակնճիռ և անվերջանալի խնդրոյն վրայ, և Հայոց լեզուին ծագման կամ հնութեան վրայ, թէ հարցանես զիմ կարծիս, այս է. Ընդունիմ զի առաջին՝ Ադամեան և Նոյեան լեզուն խօսուեցաւ ի Հայս. երկրորդ, զի այն լեզուն լսուէր յամենայն երկրի մինչեւ ի խառնակութիւն Բաբելեան. և երրորդ, ի խառնակութեան անդ՝ անխառն մնաց ի Հայաստան, որպէս և յայլ մերձակայ աշխարհս, ուր և սփռեալ էին մարդիկ. բայց չորրորդ, զի մեծ մասն մարդկութեան տոհմապետօք ի Բաբելոն գնաց և հօն նոր լեզուներ ստացաւ, նախնի լեզուն առ սակաւս մնալով չէր կրնար տիրել ի վերայ նորոցն, այլ ինքն նուաճեցաւ, այլայ-

Digitized by Google

լեցաւ, և անկարելի է գտանել զայն. բայց հինգերորդ, ամենայն նորածին լեզուք այլ բոլորովին տարբերք չէին, որպէս յետոյ եղան, այլ և մերձագոյնք նախնոյ լեզուին, վասն որոյ ուր հանդիպեցան այնոր՝ դիւրաւ միացան. որով, վեցերորդ, և հայերէն լեզուն, թէ և բաբելածին, այլ ի կենդրոն անդր Նոյեան երկրին խօսուելով՝ աւելի քան զշատս ի լեզուաց՝ ստացաւ նախնական կերպարանքը, և ըստ այսմ թէ ոչ առաջին լեզու, այլ ընդ առաջինս աւելի և ոչ ումեք երկրորդ. սակայն, եօթներորդ, որպէս և այլքն, փոփոխութիւն կրեալ և խառնեալ ընդ նորագունից. որով ոչ աւելի քան զայլ հին լեզուս նախնական կերպարանը պահած. այլ, ութերորդ, հաւանօրէն շատ հին և սեփական բառեր պահած, որ նմա միայն յատուկք են և կրնան առաջնոյ լեզուին ժառանգութիւն ասիլ։ Մեր ազգին հնութիւնն բաւական ապացոյց է լեզուին հնութեան, այլ և այսով կրնամք բաւականանալ, առանց իսկ այժմու լեզուիս անդրանկութիւնն ալ անհրաժեշտ պահանջելու։ Աւելի իմաստասիրական, հետաքննելի և թերևս դիւրագոյն խնդիր է՝ քննելն կամ յառաջ բերել զկարծիս գիտնոց և լեզուաբանից թէ զհայերէն լեզու ուստի՞ ծագեալ և որո՞ւ ցեղակից ասեն, որով ազգիս ծագումն կամ խնամութիւնն ալ հաւաստի ըստ նոցա։

Ա. Մեր հայկական լեզուին սեփականութիւնն առաջին անգամ յիշատակեալ է ի պատմութեան Միրուն իբր 2000 ամօք նախ քան զՔրիստոս, ի գործս Արամայ, որ նուաճելով զԳամիրս կամ զԿապպադովկիա՝ (Կապպուտակէ) պատուիրեց բնակչացն հայերէն սովրիլ և խօսիլ. այս դիպուածս, (ստոյգ համարելով), Բաբելոնեան խառնակութենէ 500 տարի ետք է, և յայտ առնէ զի այս ատենուան փոքր Հայոց բնակիչք տարացեղ առհմապետի մը ժողովուրդ և տարալեզու էին, որ թերևս Հայկայ պէս ի Բաբելոնէ խաղացեալ եկեալ էր հօն, ըստ անուանակոչութեան աշխարհին՝ (որ պահի ի մեզ), յայտնապէս Գամերայ սերունդք էին, որպէս և Արամ իւր հայկազամբքն, ըստ ոմանց՝ ի Մոսոքայ են սերեալք։ Բայց ըստ նախայիշեալ բանից Ս. Գրոց որ զԱյլազգիս կամ զՓղշտացիս ասեն ելեալ ի Գամրաց, և պարձեալ ըստ պատմութեան մերոյ որ զհակառակորդն Արամայ և զբռնակալ վայրացն, կոչէ Տիտանեան և Քաղեան, նշանակի քուշացի սերունդ կամ խառնուրդ մը ի Գամիրս. իսկ Յունաց հեղինակք (Երոդոտ, Ստրաբոն) Ասորիս կամ Սպիտակ – Ասորիս անուանեն զբնակիչս Կապպադովկիոյ, և ոմանք արդի գիտնոց ալ ընդունին զսեմական ծագումն կամ խառնուրդ Կապպադովկաց. բայց ընդ մէջ նոցա և Արամայ ժամանակին՝ 1500 տարի կայ։ Զիարդ և իցէ, թուի մեզ թէ մեր աշխարհակալ

Digitized by Google

նախարարին ժամանակ, Հայոց և Գամրաց լեզուք տարբեր՝ այլ ոչ շատ հեռի էին յիրարմէ. անուանք ամսոց նոցա, գաւառաց և քաղաքաց, Հայկական անուանց ձայնակից են, բայց այս բանս Թերևս յետ Արամայ նուաճմանն եղաւ։

Բ. Հնագոյն բանաւորական ցոյց ազգակցութեան Հայոց եղած է ընդ Փռիւգացւոց[148]. Եւդոքսոս ի նկարագրի բանակին Քսերքսեայ, զՀայս և զՓռիւգս ընդ միով վարչաւ կամ զօրավարաւ[149] կարգէ, և զերկոսին ևս նոյնակերպ սպառազինեալ, և Թերևս այսոր համար այլ մի վարիչ ունէին, քան Թէ վասն մերձաւորութեանն, զի ընդ մէջ երկուցն կային Կապադովկացիք. դարձեալ ուրիշ տեղ (Է. 73) յայտնապէս ասէ Թէ Հայք ի Փռիւգաց ծագեալ են, և ըստ տարազու նոցա զգենուն[150]. զնոյն յիշելով և Եւդոքսոս, յաւելու Թէ Հայոց և Փռիւգաց լեզուք նմանք են միմեանց. ուրիշ հեղինակ մ'այլ աւելի ևս ասէ Թէ, համանիշ են անուանք երկուց ազգացդ[151]։ Քսենոփոն, Դիոդոր Սիկիլիացի, Վիտրուվիոս վկայեն վասն Հայոց և Փռիւգաց նմանակերպ գետնափոր և վիմափոր բնակարանս շինել. — Մնացորդքն Փռիւգաց շինածոց (որ յայժմ բաղդաւորագոյն գտանին քան զՀայս), ցուցանեն ճարտարապետութիւն մի օտար ի յունականէն և ի հռոմէականէն[152]. — Փռիւգացի և Հայկական զատկաց նոյնութիւն, որ ի մետաղս և ի քանդակս երևի՝ աշխարհածանօԹ է. — Իսկ Փռիւգացի սակաւ արձանագրութեանց լեզուն և յատուկ անուանք, ցուցանեն յունականէն հեռաւորութիւն։ Իսկ վասն ծագմանն Փռիւգաց, Հելլենք ասեն ի Թրակաց սերեալ. և ոմն (Կոնոն առ Փոտայ) յԵւրոպիոյ՝ ի կողմանց Մակեդոնիոյ ասէ գաղԹական եկեալ, յետ Տրոյիոյ պատերազմին. բայց զի Հոմերոս յիշէ զնոսա ի պատերազմին՝ այլ ոմն (ՔսանԹոս) 90 ամաւ յառաջ քան զայն մարտ՝ ասէ եկեալ. զոր ոչ վասն բոլոր ազգին իմանալու է, այլ զպարձ հին գաղԹականին որ ի Փռիւգիոյ անցեր էր յԵւրոպ. զի Փռիւգք ճանաչին հասարակաց հնագոյն կամ մի ի հնագոյն ազգաց Փոքր Ասիոյ, որոյ բոլոր միջոցն ծաւալեալ էին ի հնումն գրեԹէ քիչ հեռու անոր եզերքներէն, իսկ արևելքէն սահմանակից Հայոց էին, ի սոցանէ իսկ ծագեալ ըլլալով, և ոչ Թէ Հայք ի Փռիւգաց[153], որպէս և հաւանին հմուտ բանգէտք, և զԵւդոքսի խօսքն հակառակ իմանալու է ասեն։ Ըստ Հոմերի Փռիւգք և Տրովացիք գրեԹէ համացեղք էին, լեզունին նոյն՝ այլ տարբեր բարբառով մը զանազանէր, Յունաց ալ մերձաւոր ըլլալնին վկայի ի Հոմերոսէ և յայլոց, որով կրնան Թրակացւոց մերձաւորիլն բռնել իբր ծագեալք ի Թրակէ. Մանաւանդ եԹէ Թիրաս հայրն Թորգոմայ լիցէ. այլ աւելի մերձաւոր Հայոց ցուցանէ Յովսեպոս, որ զԹորգամ

ինքն առնէ Հայր փռիւգաց. իսկ այլք (Անգղ. Ընդհ. Պատմ.), զԱսքանազ առնեն Հայր փռիւգաց, որ և Հայաստանի տանուտէր էր նախ քան զԹորգոմ զեղբայր իւր։ Այս ազգին անունն այսպէս գրեալ Փռիւգ, Բրուգ, Բրիգ, Բրեւկ, Վրիկ, Բեբրուկ, Վրեկոնք, հնագոյն թուի Վրիկ կամ Պռիկ, որ ի բարբառ Մէոնեանց՝ ազգակցաց փռիւգաց, նշանակէր ազատ այր. (Frey, Free գերմանաց). և անշուշտ Թորգոմայ տնէն ոմն էր, կամ իրմէ հին և կամ կրսեր. Թերևս որդի մի Ասքանազայ, վասն զի գլխաւոր գաւառ մի փռիւգաց անուանէր Ասկանիա. յորմէ փոռկիւս կամ «փոռկիս և » դիւցազներուն Ասկանիոս ածեն զքաջազէնս» յօգնութիւն Տրովադայոց, ըստ Հոմերի. որ յիշէ (Գ. 185) նա և զՄիւգդոն զօրավար նոցա, և իբր հոմանուն երբեմն կոչին Միւգդոնացիք — փռիւգացիք. Թերևս ընդ փռիւգս և Ասկանեանս ճանաչէր Հոմեր և զՀայս։ Իսկ մեք ի փռիւգիա գտանեմք ոչ սակաւ անուանս տեղեաց հայանմանս, զոր օրինակ զաւառքն Ածան կամ Ազան, (որ և նշանակէ համաձայնապէս Ոզնի), Պարոյր, որ զի ի Տաւրոսեան լերանց շուրջ պարուրեալ էր այսպէս կոչեցաւ, քաղաքք Անան, Երիզա, Բրուզ կամ Բուրգ, Դենդում, Կարուրա, սահմանակից Կարիոյ, ուր ջերմուկք էին (Ստրբ. ԺԲ. Ը. 18), Սինեադ, Լուսիք կամ Լսիս (Լուսիաս), Հրոսնդակ կամ Հոխսնդակ գետ անջրպետ Միւգդոնաց և Դողիոնաց (կամ Դողք). և անուանք մարդկան Մանէս որ նահապետ կամ առաջին թագաւոր և դիւցազն համարի փռիւգաց, Ակմոն[154] որդի նորա, Ուրան—ոս որդի Ակմոնի, իսկ ըստ ոմանց, Ակմոն (Թերևս Մանէս) որդի է Գամերի. Միդաս, Աղրաստ (Երոդ. Ա. ԽԱ), Առեգաստ, Կորդ—իոս, Ադոխող, Ոտրեւս, (Կիւբելէ) դիցուհի, Սաբազ (Բաքոս), Մարսիաս սրնգահարն կամ Մարսուազ, Լիտուերսես գիք, դիւցազունք, Մէն—Կարուս գիք, որոյ մեհեան մերձ ի Կարուրա։ (Ստր. ԺԲ. Ը. 21)։ Հայրն Մարսուազայ, հնարողն թուոց և երկձայն նուագաց և եռաթել քնարաց, կոչի Հայանիս (Hyagnis) կամ Հայագնիս, յոր անուն փորձակրիմք ճանաչել զՀայկն և զորդին Մանաւազ։ — Հայոց և փռիւգաց ակզբնակցութեան հռչակագոյն փաստ մի եւս է ջրհեղեղեան պատմութիւնն, զոր աւանդեն մատեանք Սիբիլեայց ըստ փռիւգաց, իբր զի ջրհեղեղն պատահեցաւ Նանեակ կամ Աննակ կամ Ինակ (Նովքոս, Նոյ) թագաւորի ժամանակ, և իբրև մեռաւ նա 300ամեայ, եղաւ ջրհեղեղն, և նախ փռիւգիա դիմեաւ ի ջուրց, և տապանն նստաւ յԱրարատ լերին նորա, մերձ ի Կեղենէ քաղաք, որ յետոյ կոչեցաւ Ապամէա—Կիբոտոս՝ ի նշանակ տապանին, զի անունդ այդ նշանակէ Տուփ կամ Տապան։

Digitized by Google

Եւ արդ այս ամենայն յարմարութիւնք առաւել քան զհաւանական հաստատեն զհին և զշատ հին ազգակցութիւն Փռիւգաց և Հայոց, զորս դէպք և ժամանակ հեռացուցին, զի Կապպադովկացիք – Սպիտակ Ասորիք անուանեալք ի Յունաց՝ երկու ազգաց մէջ խարոց ընկան[155], իբր ոտնակոխ եղեալ ի սեմական և յաբեթեան հեռաւոր տոհմից, ակար և արհամարհ ազգ մի եղան, բայց թէ՛ լեզուաւ, թէ՛ սովորութեամբք այնպիսի նշաններ թողին, որովք հաւաստի մնաց թէ՛ Հայոց հետ խնամութիւնին և թէ Հայոց և Յունաց մէջ շաղկապ կամ միջանցք մը ըլլալնին։

Գ. Այս շաղկապը դիտելով կամ չդիտելով այլ, ոմանք (Ռընան) մեր լեզուն հին հելլենին[156] ազգակից ըսին, որ և Փռիւգացոց մերձակից ըլլալով, վերի դրութենէն չի տարբերիր. իսկ ոմանք (Պոտէ) պարզապէս յունական լեզուին յարակից սեպեցին, աւելի քերականական կազմութիւնը և մասն մի բառից նմանութիւնը դիտելով[157]. և յիրաւի մեր այժմու գրաբար լեզուին շարադրութեան և հելլէն հեղինակաց շարադրութեան մէջ՝ ամենամեծ է նմանութիւնն, այնպէս որ գրեթէ բառ առ բառ կրնամք զյոյնն փոխել ի հայ բան. սակայն պէտք է յիշել որ այս մեծ նմանութիւնը մեր քրիստոնեայ նախնի հեղինակաց թարգմանութեան ատենէն մնացած է, որք զսուրբ Գիրս և զՃառս և շատ ուրիշ գրքեր ի յունականէ թարգմանեցին, հայերէն գրերն անգամ յունականին կարգին և քանակին յարմարեցին, այսպէս և զքերականն փոքր ի շատէ. վասն այսորիկ չեմք կրնար ըսել թէ հին հայկական լեզուին շարադասութիւնն ալ նման էր այդ հելլենականին։ Ի վերայ այսր ամենայնի ոչ միայն յունական բառերու հաղորդութիւն գտնեմք ի լեզուի մերում, այլ և դիտելով ի Յաբեթայ հին ազգակցութիւնները, և մանաւանդ եթէ արդարեւ ըստ Վրաց՝ Թորգոմ որդի էր Յաւանայ, հօրն Յունաց, բաւական հաւանական կ'ըլլայ այս ազգակցութիւնն. և գրեթէ անտարակոյս այլ է աշխարհագրապէս, երբ ընդ մէջ Հայաստանի և Յոնիոյ, որ է բնավայրն Յունաց՝ ուրիշ անջրպետ չտեսնանք բաց ի վերոյիշեալ Փռիւգացւոց, որոց մէջ յետոյ մտան Կապպադովկացիք, որոց լեզուքն ալ արդէն յայտնի են կէս յոյն ըլլալ և կէս հայ։ Յունաց գաղթականներուն ալ որ ի Պոնտոս՝ սահմանակիցք էին Հայք։

Դ. Այս կողմանէս Յունաց և Հայոց շաղկապ և միջնորդ են Խաղտիք և պէսպէս փոքր ժողովուրդք Պոնտացիք, ընդ մէջ բերանոց Ճորոխի և Ալիւսայ, որոց շատերուն դրացի էին Փոքր Հայք, և անոնց մէջ անուանի էին բովագործ Խալիւբք կամ Ալիւբք, զորս յիշէ նախ Հոմերոս, և զԱլիզոնս նախնի երկիր նոցա, զոր ոմանք ի բանասիրաց համարին Ալազան գետ

Digitized by Google

օժանդակ նուր գետոյ, և ոմանք (Տիւպուա) զԽալիւբս եւս Կողբայ Այրարատայ. Խալիւբաց արեւելեան մասն կամ տոհմն անուանէր Արմենօխալիբ ի Հելլենաց, որ ըսել է Հայախալիւբք կամ Հայախաղտք ըստ մեզ. այս ժողովուրդս հնագոյն ատեն կ'երեւի թէ Տրապիզոնէն ինչուան ի Սպեր տարածուած էր, և Բաբերդու նահանգին վրայ թողած իր Խաղտիք անունը, ինչուան միջին դարերու ատեն մեր պատմութեան մէջ, զոր և Եւիլաթ կամ Խաւիլաթ Ս. Գրոց ճանչցանք ի նկարագրութեան Ադինայ: Եւ ինչուան հիմայ Տրապիզոնի և Կիւմիւշխանէի միջոց ժողովուրդ մը կայ, Խաղտ հին անուամբն, որ ճանապարհորդաց և բանասիրաց աչքէն վրիպած է, և հետաքննին մտադրութեան արժանի է. իր բնակած գիւղերուն անուանքն ալ[158] ճիշտ գաղափար մը կրնան տալ յունահայ լեզուի մը: Անշուշտ այս լեզուն կամ անկէ քիչ շատ փոխուածն էր նախնեաց յիշատակեալ եզերական Սպերացի բարբառն:

Ե. Խաղտեաց և Պոնտացւոց հանելով, լեզուաքննին յառաջադնացութիւնս դառնայ բնօրէն ի հիւսիս, ի Կովկասային ժողովուրդս. յորս նախապատիւ են Վիրք. այս ազգս իրեն հին խոստովանութեամբն, զոր ի վեր անդր յիշեցաք, ոչ միայն Հայկայ երկրորդ եղբօրմէն սերեալ է, այլ և անոր լեզուէն վարեալ շատ երկայն դարեր, գրեթէ ինչուան ի գերութիւն Հրէից որ զաղթեցան ի Վիրս. և ի ստոյգ պատմութեանց այլ գիտեմք որ Վիրք գրեթէ միշտ լծակիցք էին Հայոց, և հետեւողք կարգաց նոցա և կրօնից, թէ հեթանոսական և թէ քրիստոնէական հաւատոց մէջ. իրենց սուրբ և գիտնական գրոց մեծ մասն այլ ի Հայոց թարգմանեալ են: Իսկ լեզուին ձայներն կամ տառից յօլովութիւնն և շատ բառից նմանութիւնն աներկբայ ցուցանեն հին և մերձաւոր առընչութիւն մի, կամ սկզբնակցութիւն. վասն այսորիկ ոմանք ընդհանուր ցեղ մի լեզուաց անուանեն Կովկասեան, և առաջին ազգ զհայերէն դնելով, երկրորդ զՎրացին, և յետոյ ազգակից գրեթէ զամենայն հարաւահայեաց Կովկասայ ժողովրդոց լեզուս:

Զ. Ցայնկոյս անցնելով պահակին Ճորայ և գրանց Կովկասայ ընդ արեւելս հիւսիսի առաջին մեծ և հին ազգ հանդիպին Խազիրք, անուանիք արշաւանօքն ի պատմութեան, որոց սկիզբն ի Վրաց պատմութեան 1600 և աւելի ամօք յառաջ ասի քան զՔրիստոս, նոյն ընդ Սկիւթաց համարելով, իսկ ըստ ոմանց Սկիւթաց ծանօթագոյն արշաւանքը սեպելով 630 տարի միայն նախ քան զՔրիստոս. նոյնքան և աւելի տարի յետ Քրիստոսի յիշին յարձակմունք նոցա մինչեւ ի Հայս: Բայց թողլով թշնամութիւնը, գամք իրենց ընտանութեանը. այս ազգին ծագումն քաջայայտ չէ, այլ միջ-

*նորդ և շաղկապ կրնայ համարուիլ Թուրք և Ֆիննեան ցեղից, և ոմանք այսօր ոմանք այնոր ազգակցեն լեզուաց յարաբերութեամբ. իսկ արեւելեայք՝ ոմանք Թրքաց և այլք Կովկասայնոց. Էպն-Էլ-Աթիր Վրաց ազգակից համարի զԽազիրս, իսկ Շէմս-իւտ-Տին աշխարհագիր դամասկացի ոխալ է ասէ այդ, այլ Խազիրք՝ Հայ են*[159]*: Այս հին ազգակցութիւնը խոստովանի ինքնին Խազրաց Թագաւորն Յովսէփ ի Թղթին զոր յառաջին կէս Ժ դարու գրեց առ Խաստայի Հրեայ պաշտօնեայ Սպանիոյ Խալիֆային. ստոյգ է նամակն և եթէ ոչ՝*[160] *գեթ իբրեւ աւանդութիւն և կարծիք արժէք ունի մեր խնդրոյն մէջ. վասն զի ասի թէ հին ազգաբանութեան գրոց մէջ գտան Խազիրք՝ զի ինքեանք ի Յաբեթէ և ի Թորգոմայ սերեալ են. այս Թորգոմ* 10 *որդի ունէր, առաջին Ակիյոր որ է անշուշտ Հայկն, եօթներորդն Գոզար, յորմէ սերեցան Խազիրք: Այս ազգին Թորգոմայ մեզի ծանօթ որդւոց սահմանակից ըլլալուն փաստ ընծայէ և Կասպից ծովուն մէկ անունն այլ որ Խազրաց ծով կոչէր, որպէս և Կասպից յանուն Կասպայ միւս որդւոյ Թորգոմայ, զոր յիշէ Վրացն պատմիչ:*

*է. Աշխարհագրական գիրքը գիտելով կամ այսպիսի աւանդութեան և լեզուին քանի մը յատկութիւնները՝ Պալլաս լեզուաբանն զհայերէնն համարի միջադաս ընդ մէջ Կովկասեան և Թուրք լեզուաց: — Իսկ Նիպուր (Մարկոս) նորագոյն բանագէտ, զՀայս Սեմ-արիական կամ Արի-սեմական ազգ մը սեպելով, այդ երկու մեծ տոհմապետ ցեղից ալ հաւասար խառն նմանութիւն կամ յարակցութիւն տեսնելով,*

*ը. Թաթար տոհմին ազգակից կամ արտածագումն ասէ զՀայս*[161]*:*

*թ. Թուրք և Թաթար տոհմից և Պարսկականաց միջադաս աշխարհ և ազգ են Պարթեւք, ծանօթք Քրիստոսէ* 5–6 *դար առաջ այլուր անուամբ, այլ յետ Աղեքսանդրի հռչակեալք ի Պարսկաստան և ի Հայաստան ցամս* 700. *այս ազգն աւելի Սկիւթաց և Ֆինաց մերձաւորհմն է, յորոց և Թաթարք և Թուրքք, քան պարսկականքն, ընդ որում խառնեցաւ աշխարհակալութեամբն և ստացաւ զպահլաւիկ լեզուն: Այս սկիւթական լեզուաց աղբիւրը ըլլալով՝ ոմանք ուղղակի անուն յառաջաբերեն զհայ լեզուս, և*

*ժ. Համարին (Լեւի. Կալլգերեր) տոհմակից Ֆին և Սիպերացի լեզուի, որ Ալիոյ և Եւրոպիոյ հիւսիսագոյն ծայրերուն կու տանի զմեզ. բայց Խազրաց աւանդութեանն մերձենայ և այսու, զի զ յետին տասն որդւոց Թորգոմայ կոչեն Սավիր, որ է անշուշտ տանուտէր սառամանուտն Սիպերիոյ, թէ ոչ միայն Սպերոյ: — Ֆին ցեղին ազգ մը ճանաչի յԵւրոպէ անհահաղորդ մնացեալ ի շրջակայից*

Digitized by Google

ԺԱ. Պիսքայեան լեզուն զոր խօսին Գաղք Պիւրենեայց ընդ մէջ Գաղղիոյ և Սպանիոյ. այս լեզուին ազգակից կարծեց զհայերէնն նախ Լայպնից գերմանացի փիլիսոփայն, որ շատ տարիներ լեզուաց քննութիւն ըրած է, և յարգի լեզուաբանաց ոմանք (Կապպերէր) ալ ի նոյն կարծիս են, որ է ըսել նախընթաց դրութիւնն։

ԺԲ. Այս լեզուին պէս անհաղորդ լեզու մ'այլ կայ յԵւրոպ՝ Անգղիոյ Ուէյլզ նահանգին լեռնաբնակ և ծովափնեայ բնակչաց բերանը միայն պահուած, զոր իրենք կոչեն Ուէլշ, Կըմրի կամ Կումրիք, կոչի ևս Կիմրի կամ Կիմմերեան որ է Գոմերեան կամ Գամրացի ըստ նախնեաց բարբառոյ, և անշուշտ նախնի Գոմերական տոհմին հեռագոյն գաղթականք և մնացորդք են. զայս լեզու ալ մերձաւոր հայկականին ճանաչեց ոմն լեզուաբանին (Կլապպերէր)։

ԺԳ. Այս լեզուին ազգակից է կամ անդրանիկ հին լեզուն Կելտաց, որոյ բարբառք են Բրետոնն կամ Արմօրիկն, որ մինչև ցարդ Գաղղիոյ Բրետոն նահանգին մէջ լսուի, այն որ ի հնումն կոչէր Արմօրիկ և Ակուիտանիա. այս լեզուին մէջ այնքան հայերէն բառեր և մասնիկներ գտուին, որ ոչ միայն ի հնումն մերձաւոր և ազգակից երևցած է, այլ և յոմանց (Լը Պրիկան) յայտնապէս վկայի ծագեալ ի հայկականէն[162]։ Բառից զատագոյն նմանակցութիւնն կրնար կարծեցնել թէ Կելտք համեմատաբար նորագոյն ժամանակ մը գաղթած պիտի ըլլան ի Հայաստանէ կամ ի Հայախօս աշխարհէ մը, սակայն Եւրոպէացիք ճանաչեն զնոսա իբրեւ երկրին ամենահին ժողովրդներէն մէկն, թէ ոչ և առաջինն[163]. ուրեմն իրենց լեզուն զուտ պահելուն պատճառն ոչ ծագման նորութիւնն է, այլ երկրին դիրքն. ուր որ բաց և յստակ շրջափակ է՝ հոն խառնուեր են ընդ նոսա և լեզուն այլայլեալ, իսկ ուր լերինք ի թիկանց և ծովն յառաջոյ՝ զիրենք ապահով և քիչ հաղորդ պահեր են, լեզուն ալ աւելի անայլայլակ մնացեր է։

ԺԴ. Ցեղ Կելտաց կամ Գաղատաց, Եւրոպիոյ արևմտեան և միջին ժողովրդոց հնագոյն տոհմն և հայր այժմեան ազգաց և լեզուաց է Սաքսոնն, զոր ոմանք (Թուռնէր Ա. — Բէրրել) ստուգաբանեն Sakai-sons, Սակաց — որդիք, և բազումք են հաւանողք թէ ի Սակաց — Սկիւթաց են ծագեալ. իսկ թէ որպէս, առեն յետ արշաւանին Սակաց ի Հայս, ի Շակաշէն զատուել եկեալ գաղթական յԵւրոպէ. որ հաւանագոյն է քան զԼայպնիցայ յիշածն, զոր ի ժամանակագրութեան Հոլշտայնեայ ընթերցաք, թէ Մեծն Աղեքսանդր գտաւ ի Հայս կարիճ և ուժեղ ժողովուրդ մը զոր և օգնական առաւ



Digitized by Google

իրեն արշաւանացը ուր որ երթայր, և վասն քաջութեան նոցա անուանեաց քար (saxum ի լատին), յորմէ անուանեցան Սաքսոնք. որ եթէ ստոյգ ըլլար՝ Սասնեցոց համար ըսուած պիտի ըլլար, վասն զի այսօր յարմարի և մեր Արծրունեաց պատմչին յիշածն այլ՝ իր ցեղին իշխանին վրայ, զոր Աղեքսանդր գերելով ծառայեցուց ի պատերազմի։ — Ուրիշ աւանդաբան Եւրոպէացի պատմիչ մի (Will Malmsbury), հայր Սաքսոնաց համարի զՍեսքեֆ ոմն ի զարմից Յաբեթի (Սիսակ ?). այլք (Թուռնէր) նոյն ևս Յաբեթի որդի համարին զնա. և այլ ոմն (Վիլ. Ս. Մարդէն), անդրագոյն ևս տանի զգրոյցն և առէ զՍաքսոնս սերեալ ի Ստրեփիոսէ որդւոյ Նոյի, ծնելոյ ի տապանին ?։ Եւ ինքեանք Սաքսոնացիք հնաւանդ երգերէն առնելով, առեն իրենց առաջին թագաւորն Ասկանիոս կոչեցեալ, որ Ասքանազ անունը կը ճշգրտէ։ Իսկ Հայոց լեզուին ազգակցութիւնն որոշակի չեն յիշեր ոչ սոքա և ոչ լեզուաքննիկք, այլ յաճախութիւն հայաձայն բառից և սաքսոն լեզուի հնութիւնն ի գերմանական լեզուս՝ որք ցեղակից վկայեն հայոյն, զնոյն հաստատեն լռելեայն։

ժե. Գալով Գերմանացւոց՝ սաքսոնին նման ըլլալովը, հարկաւ նման այլ պիտի ըլլայ հայոյս. և արդէն ոչ միայն պարզ բառից՝ այլ և յատուկ անուանց նմանութիւնն թէ ձայնական թէ իմացական՝ նշանաւոր եղած է. (յորս գլխաւոր Արմէն – կամ Արմին – Հարման դիւցազին անունն). և աւանդութիւնք հին պատմչաց Գերմանացւոց, որք զՊաւարիացիս նախ քան զամենայն Եւրոպէացիս առեն եկեալ յայս աշխարհ՝ ի Հայաստանէ, առաջնորդութեամբ Պաւառայ ուրումն, նոյնպէս և զԱւստրիացիս ազգակիցս նոցին. և առեն ըստ հին ժամանակագրութեան գտելոյ ի Վէլք. Լազիոսէ, թէ «մեք Բոյարք (Պաւարք) և Աւստրալք ի Հայոց ունիմք զսերունդ և զբարբառ»։ Ուրիշ մատենագիր մ՚այլ առէ գտեալ յայլում հին մատենի թէ Բոյոգեր հսկայ Նոգիրմանաւ որդւով իւրով յետ ջրհեղեղին անցնելով ընդ Սկիւթիա և ընդ Հայաստան եկան յափունս Դանուբայ, և առ խառնրդովք Ինու գետոյ շինեցին Բոյոդուռն քաղաքը որ յետոյ կոչեցաւ Պասաւիա. և զԲոյոսման՝ առ Էլպայ և Մուլդաւայ, որ յետոյ կոչեցաւ Մարբուրգ և այժմ Բրակա։

ժզ. Գերմանական լեզուն ընդարձակ ատաղձ մը բանայ լեզուաբանական քննութեանց, իր հարստութեամբն և կազմութեամբ և ձայնիւքն իսկ մեծ նմանութիւն ցուցնելով ընդ ճոխագոյնին ասիական հին մշակեալ լեզուի, որ է սանսքրիտն Հնդկաց, վասն այնորիկ և ի գլխոց Հնդկա–Գերման բարբառութեամբ մեծ աղբիւր կամ ցեղապետութիւն մը լեզուաց ճանաչի, յոր

պատշաճին գրեաթէ ամենայն յաբեթական տոհմից լեզուք։ Ոմանք ի լեզուաբանից սանսկրիտ լեզուին հին յիշատակարաններն, հարստութիւնն, քերականական և գրաւորական կատարելութիւնն դիտելով և շատ օտար լեզուաց բառեր ի նմա գտնելով՝ թէ ոչ մայր ամենայն լեզուաց՝ գէթ ամենէն հին և պատկառելի քոյր. այլք քննելով անոր վերաբերութիւնները ընդ իրանեան լեզուաց և ընդ գերմանականին և կելտի, և տարբերութիւնն ի սեմականաց, ոչ մայր՝ այլ քոյր և հաւասարակից քոյն այդոց. և ի բաղդատելն ընդ նմա, մեր հայկական լեզուին բառից և կազմութեան շատ նմանութիւն գտնելով, ճանչցան ազգակցութիւն նոցա. և հիմայ ընդհանուր հնդկա—գերման ցեղին ազգակից սեպեն զհայերէնն շատք ի բանասիրաց (Գլաբրոթ — Նայման — Բեյերման)։ Ի սանսկրիտ լեզուի ոչ միայն պարզ բառք գտանին հասարակք երկու լեզուացս, այլ և մասնիկք և շաղկապք և հնագոյն յատուկ կամ մասնաւոր անուանք (ինչպէս Նաւասարդ — Նաւա — սարտաս, նոր տարի. Զարմայր — սարվայր, զօրաւոր). մասնաւոր կերպն ընթերցման բաղաձայնից, կամ ռ տառին սաէպ գործածութիւնն, ի սանսկրիտն և ի հայումս, նոյն իսկ իրենց դիւցազնական տաղից չափն 16ատնեայ, նշանակութեան արժանի են։ — Թէ ոչ ուղղակի սանսկրիտի՝ այլ անոր լծակից լեզուաց ընկեր համարուք զհայն՝ բազմաթիւ եւս են. Հնդկաց արեւմտեան աշխարհէ մինչեւ ի Հայաստան՝ համանունաբար Արիք կամ արեաց աշխարհք կոչին, բնավայր զԲակարիա համարելով։

ԺԷ. Ցայտմանէ Արիական տոհմն լեզուաց, որոց բարբառ մի է հայկականն, բստ ոչ սակաւ լեզուաբանից (Կոշ — Վինտիշման)։ Անգրթիլ առաջին հետամուտ և ծանուցող Զենդին լեզուի՝ թէ գիրս և թէ զլեզուն հայոց նման գտնէր զանդին, թէ և ոչ պակաս քան զվրացին. Ծոնս Ուիլիեմ այլ յայս կարծիս է հին պարսիկն ազգակից կամ յարանման գտնելով զհայկականս. գրեթէ զնոյն առնէ և որք Մարապարտացի լեզուաց լծակից առնեն զհայս (Այխոռն — Տիֆէնպախ), զի զանդիկն էր ավրող և նախրական լեզուայն կողմանց. իսկ Բոպ մերձաւոր առէ այլ ոչ համազգի անոնց։

ԺԸ. Ոմանք ալ (Լազրոզ — Վինդոն — Նայման — Պէտէ յիտտսեան) պարզ Մարաց լեզուին ազգակից առնեն զհայն, որ զարմեալ նոյն ցեղին վերաբերի, զի Փենիկեցի լեզուն համարուի լեզու Մարաց։ — Հնդկական լեզուն վիճակին նայելով, հայերէնը աւելի Բոզկէնի նման է[164] քան բուն զանդին, որ նշանակէ թէ զանդին գրուածքն (զենտ—աւեստայն) հնագոյն կերպարանք ունին քան զմեր լեզուին մնացեալ գրաւոր յիշատակարանքն[165]։

Ցաբեթական լեզուները թողլով, դառնանք ի Սեմականս, յորմէ բստ

հասարակաց կարծեաց հեռի է հայկականս, սակայն հնագոյն և նորագոյն ժամանակ ալ եղան բանասէրք որ այս լեզուաց մէջ ալ նմանակցութիւն գտան. որպէս վերոյիշեալն Նիպուր միջալաս իմն ընդ երկուսին ցեղակցութիւնս դնէր Սեմ արիական կամ Արի–սեմական կոչելով, և Թաթարաց մերձաւոր:

ԺԹ. Իսկ այս Թաթարներն այլ հնագոյն բաբելական ազգ մը, որոյ լեզուաւ համարին հնախօսք ոմանք գրեւեռաքանդակ գրուածս Ասորեստանի: — Հայաստանի աշխարհագրական դիրքը նայելով որ Ասորեստանի սահմանակից էր ի հարաւոյ, և հին ժամանակէ բազմաթիւ Ասորացի գաղթական ընդունող (ինչպէս Սենեքերիմեանք), բնական իմն էր գտնել այն կողմի բնակչաց լեզուին խառնուրդ մը ունել. և թերեւս զայս նշանակէ Կորճայ հայկական բարբառն:

Ի. Նախընթաց գլխոյն մէջ տեսանք յաբեթական և սեմական ժողովրդոց բաժանման գիծը, և երկուքին այլ բնակայրն ընդ մէջ Կորճայից և Ադիաբենայ, որ Քաղդէական ազգին սահմանեան Արփաքսադ իր պայազատօքն յերկար մնաց, և ուստի Աբրահամ լեզուաց խառնակութենէ 4–500 տարի ետքը ելաւ. և կրնար Քաղդէարէնն այլ հայկականին հետ խառնել այն կողմերը: Այս խառնուրդը աւելի իրական համարելով՝ եղան հայերէնը քաղդէարէնին ազգակից բողոք այլ (B. de Vence), կամ աւելի չափաւորելով մեր առջի բառերն համեմատ Նիխաքաղդէոյ անուանել զհայն (Պոշար):

ԻԱ. Քաղդէարէնէն յէբրայականն անցնելու համար գրեթէ անջրպետ չկայ. ամէնուն յայտ է մեր դեռ իսկ հիմայ յիշածն, Աբրահամու ելքն յերկրէն Քաղդէացւոց, որով և զնոյն լեզուն խօսելն, ուստի յայտնի այլ է որ յետոյ ուրեմն այլափոխեցաւ խառնելով ընդ լեզուաց Ասորւոց և Քանանացւոց և ձեւացաւ Հրէից լեզուն. զոր հին Հարք և բազում մեկնիչք առաջին լեզու մարդկան համարեցան. արդ Հայոց և Հրէից լեզուն ազգակից կամ առնչ բոլորք ալ գտնեցան, գիտութեամբ նշանաւոր հեղինակք (Կալմեթ — Վիգուրի):

Քաղդէից և Հրէից լեզուին քոյր է արամականն կամ ասորին. և հարկ էր ասոր հետ այլ առընչութիւն ունենալ Հայոց, որոց արեւմտեան հարաւային սահմանն խառն էր. Հայք յառաջնեցին յԱսորիս աշխարհակալութեամբ, և մինչև ցայժմ գաղթական բնակութիւն ունին. Ասորիք այլ Հայաստանի Աղձնեաց և Դ Հայոց նահանգաց մէջ շատ հնուց բնակեր և մնացեր են մինչև ցայժմ. և հասանօրէն իրենց սեփական էին այն կող-

Digitized by Google

մանքն, և ժառանգութիւն որդւոց Արամայ որդւոյ Սեմայ, և յետոյ Հայք Տաւրոս լեռներէն իջնելով գրաւեցին անոնց երկիրը, և լեզունին այլ խառնուեցաւ հօն. և թերևս անոր ծագեց Դ. Հայկեան բարբառն մեր։ Ասոր թերևս ոմանք (Գոնֆրէր — Աոիսս — Տէպարրֆ) զԱրամ՝ Սեմայ որդին՝ համարին հայր Հայոց անտարակուսաբար, մանաւանդ վասն մերձաւորութեան Արմենիա անուան։

ԽԲ. Ասորւոց և Հայոց լեզուին ազգակցութեան կարծիքը նախ Սարաբան (Ա. ԽԱ.) հին աշխարհագիրն հրատարակեց, որ մեծ նմանութիւն կը գտնէր Հայոց, Ասորւոց և Արաբացւոց լեզուաց, բարուց և կերպարանաց մէջ, և համացեղս կամ հոմասկիզբն կարծէր[166]։ Այս բազմահմուտ հեղինակին գրոյցն արժանի է կշռութեան, վասն զի Հայոց և Ասորւոց մերձաւոր էր ծննդեամբ և անձամբ շրջագայելով յաշխարհս նոցին, բայց ի վերայ այսր ամենայնի մեք չեմք կրնար մեկնել իր բուածր, բայց եթէ նշանակելով իր առենի վերաբերութիւնք ընդ մէջ կրկին ազգաց, որ Ասորւոց թագաւորութեան նուազելու առենն էր, և Հայոց տիրապետութեան ի վերայ Ասորւոց, սկսեալ ի Տիգրանայ մինչեւ ի Սանատրուկ, երր դար մը ժամանակի միջոց. որոյ համար առէ Եպիփան պատմիչ զատատակին բերելոյ յԵդեսիա, թէ վաճառականութիւնն և հարկահանութիւն Ասորւոց ձեռքն էր և ամենայն ինչ Ասորւոց լեզուաւ վճարէր. «Այսու պատճառաւ հայորէնն » ամենայն և մեծամեծ ատագանին ամենայն... ի տուր և յառ, ոն խսկ և » զօրքն ամենայն... ի խօսս և ի գիրս ասորի հարկէին, և անդէն ի նոյն » կրթեալ և ուսեալ եւս լինէին. որպէս և Իսրայէլ ի Բաբելոն մնացեալ » գիր սեփհականն, և ամենեքեան զԲաղդիացիոցն ուսեալ խօսէին, մնա- » լով ի հաւատ և ի յազգ երրայեցի. նմանապէս և Հայկազունքն մնացին » յազգ իւրեանց. և ասորական զատնի լեզուս ասորի »։

Գրեաթէ ամենայն յարեթական և սեմական լեզուաց ծնունդ կամ ծնող կամ համածին տեսանք զՀայն, ըստ կարծեաց զանազան գիտնոց և քննչաց. մնայ անցանել անդր քան զսահմանս Սեմայ և ի բաժին Քամայ, տեսցուք թէ հօն ալ նմանութիւն գտնե՞ն բանասէրքը։ Այս երկու բաժնից անջրպետն և երկոցուն լեզուաց (սեմականին և քամականին) միջնորդն է Փիւնիկէ և Քանաան. Հայոց լեզուին ասոնց ազգակից ըլլալ չեմք յիշեր, բայց իրարու հետ վերաբերութիւն ունենալնին, գէթ իբրեւ վաճառականք՝ ամենահին ժամանակ անտարակոյս է։ Դարձեալ աւանդեն պատմիչք մեր թէ Հայոց Գնթունեաց ցեղն ի Քանանացւոց սերեալ է, երբ պաղեստինեան եկաւ անոր փախստեամբ ի կատարածէն Յեսուայ, որ է աւելի ԺԶ դար նախ

Digitized by Google

քան զՔրիստոս, և յետ 2000 ամաց Մ. Խորոնեցի առէ տակաւին զբարս նախնեաց իւրեանց ունել նոցա։ Իսկ Եգիպտացւոց և Հայոց լեզուին ազգակցութեան կարծիքն հրատարակեց նախ (1680) բազմալեզուագէտն Անդրէաս Աքոլութ, և իրեն հետեւող ալ գտաւ (զՇուարց)։

ԻԳ. Երկու ազգաց ալ հնութեանն նայելով, և սահմանաց ոչ շատ հեռաւորութեան, զՓիւնիկէ կամ զՊաղեստին և զԱսորիս միջնորդ ունենալով, ուստից անշուշտ մեր վաճառական հարց կարաւանքն երթեւեկէին, կրնար հին առընչութիւն մ'ալ փնտռուիլ լեզուաց մէջ, թերեւս կրօնական կամ գիտաբանական քննութիւնք այլ այս բանիս աւելի փաստ կամ ոյժ մը տան։ Քանի մը եգիպտական սրբագիր ընթերցուածոց մէջ նշանակեալ բառերու հանդիպեցանք, յորս ոչ սակաւ հայանմանք կային նոյն իմաստիւք, որ յիրաւի դիտման արժանի երեւցան. (զոր օրինակ Մհուէ—Ջու. Մրր—Մրսար. Հոփփ—Աւձ. Ուէճուէճ-Որոճ. Գրաճգրաճ—Կրճել ատամանց. Մուլաճ—Բուէճ. Թութ—Թախ. Թառէ—Բնդիռն, և այլն)։

ԻԴ. Նոյնպէս և ի Ղփտի լեզու, որ է Նոր Եգիպտացին, ոչ սակաւ հայկական բառք գտանին. (զոր օրինակ ալոզ—ոլոզն. ալոյլ—խաղող. արխ—արա. ճող-ծաղ. սրի—սպի. վէրվէր—վառվառ. պինաճ—պնակ. պորկ—բարկութիւն. իերզ—տեսանել. եօրազ—երես. թաոխն—առոն. եաոիմ—յառիլ. եաոո—առու, գետ)։ Ղփտեաց և Հայոց լեզուին ազգակցութեան կարծիքը Լայպնից գիտաղաց յանձնէր քննել. զոր անտարակուսաբար ընդունեցաւ Երնէ։ Աքուլութի կարծիքն է թէ Հայոց լեզուն յառաջ քան զՄովսէս մարգարէ՝ էր Եգիպտացւոց հին լեզուն. բայց շատ բռնազբօսութեամբ կը նմանցընէ Եգիպտացի բառեր կամ անուններ՝ հայկականաց. ինչպէս Պետափրէս = փութափառք. Ասեղեկ քաղաք = Աստղաքաղաք. Ամենեմէս = Ամենամեծ. Սատուռնոս = Սատր, Սակր. Բաքոս(դիք) = Բահ (բրիչ). Լինոս (դիք) = լինել (բայ). Պան (դիք) = բան։

Յետ Եգիպտացւոց բնականապէս Եթովպացիք յառաջ գան, որոց անունն ամենահին ժամանակ յիշի ի Հայս իբրեւ սեւադէմ ժողովուրդ նշանակելով. նշանաւոր է և աւանդութիւնն՝ Տրովացւոց օժանդակաց մէջ Եթովպացւոց, Փռիւգացւոց և Հայոց զօրակցութիւնը առաջնորդութեամբ Մեմնոնի և Զարմայրայ։ Յետ քրիստոնէութեան նշանաւոր է Եթովպացւոց Հայոց հետ հաւատակցութիւնն, և երբեմն ի Հայոց ընդունիլն իրենց Եկեղեցւոյ գլուխն. նաեւ իրենց հին գրերուն նմանութիւնն ընդ հայկական տառից, ի վերայ այսր ամենայնի չեմք յիշեր որ ատոնց ազգին կամ լեզուին մէջ ալ լծակցութիւն մը գտնող եղած ըլլայ։

Բոլոր Ասիոյ, Եւրոպիոյ և Ափրիկոյ գլխաւոր ազգերուն հետ Հայոց ծագման վերաբերութիւնը գտնելէն ետեւ, ըստ զանազան հեղինակաց կարծեաց, կու մնայ Թերեւս Ամերիկա այլ անցնիլ. և կը գտուի լեզուաքննին հեղինակ մը (Հերվաս) որ զՄեքսիկացիս, հնութեամբ և յիշատակարանօք նշանաւորս ի ժողովուրդս Նորոյ աշխարհի, և զՊերուվիացիս, զաղթականս համարի ի Հայաստանէ եկեալ՝ յանյիշատակ ժամանակս, ընդ արեւմտեան Ասիա ճանապարհորդելով։

Ըստ այսքան յիշատակաց՝ ծագման ազգաց և լեզուաց Հայոց և ի Հայոց, եթէ միայն դիտէինք զօտար ազգաց ծագումն յաշխարհէս մերոյ, կրնայինք դեռ քանի մը ուրիշ ազգաց համար այլ բռուած աւանդութիւն կամ կարծիքն յիշել. ըստ որոց՝ (Վալլէնսէյ առ Հերվասայ) ի զանազան ժամանակս եկած են ի Հայաստանէ, Իռլանտացիք՝ առաջնորդութեամբ Փիւնիկայ կամ Ֆենիոյ—Ֆարսայ՝ որ Թագաւորէր ընդ մէջ Պոնտոսի և Կազբից ի Բուրձա կամ Պարսա, որով իմացեալ լինի Հայաստան. — Բրիտանացիք, հասուած Կիմմերեանց (Գամերեանք) և Կելտաց, որոց առաջին մի Ատրպատ (Attrepates) անուն ճանաչուէր ի ժամանակս Յ. Կեսարու, ընդ մէջ Բէնդայ և Բասնուայլայ. — Տոսկանացիք կամ Եդրուրացիք, հին և զարմանալի ազգ Իտալիոյ, զոր մօտերս Անգղիացի հեղինակ մի՝ (Էլլիս Ռոպերդ) ամբողջ գիրք մը գրելով կը ցուցնէ ծագեալ ի Հայոց. (The Armenian Origin of Etrurians). — Սաբինացիք և այլ ժողովուրդք ոմանք Իտալիոյ, ըստ աւանդութեանց Աննեան Բերոսի. — Գալիսացիք[167]. — Պաննոնիացիք, զորս անտարակուսաբար Հայոց սերունդ առէ Հոռնիոս. — Ռուսք և Մոսկովք, սերունդք Ռոսի Մեսոկքայ Եզեկիէլի, որոց առաջին բնակութիւն յափունս Երասխայ էր, ըստ ազգագրի ումն (Matthieu. La Turquie)։

Այս ամենայն գրութիւնքը՝ ազգակցութեան կամ ծագման Հայ լեզուին ընդունելի և բաւական չհամարելով՝ հայագէտ Եւրոպէացիք ոմանք (Վիլլոտ — Շրոտէր — Ամեղունի), և ոչ մի լեզուի ածանց կամ կցորդ ճանչցան զհայկականն, այլ անազգական, անհաղորդ, ինքնագլուխ, ի բաբելական խառնակութենէն զատուցեալ. որ է ըսել նախնական լեզուին այլայլութիւն, որպիսիք էին և ուրիշ գլխաւոր տոհմապետաց լեզուք։

Եւ արդ ո՞ր կամ ի՞նչ հաւաստութիւն և բովանդակութիւն այսքան կարծեաց և գրութեանց. ուստի՞ կամ յորմէ՞ ծագումն լեզուիս Հայոց որով և ազգիս։ — Եթէ արժան է գտանել առողջն, ահա կու տեսնեմք բաժանեալ յոյժ յոյժ զկարծիս գիտնոց և քննչաց, մինչեւ նոր իմն բարել համարել

զՀայաստան, և հարկ կու լինի և յակամայս անգամ ի վերայ բերել թէ ոչ ստուստ կամ անստուստ ծագեալ է Հայն, այլ և՛ այս և՛ այդ և ամենայն ի հայկականէն, ըստ որում կը վկայի առընչութիւն և լծակցութիւն գրեթէ ամենայն տոհմական լեզուաց երից մասանց աշխարհի, կամ երից նահապետութեանց Ջրհեղեղեան գերդաստանին։ Չկայ և ոչ մի աշխարհ կամ ազգ, ոչ Հնդկաստան, ոչ Բակտրիա, ոչ Պաղեստին և ոչ Բաբելոն անգամ, յոր այսքան հեղինակաց և դիտող այլակարծեաց և այլակրից դառնան ուշադրութիւն և յառին աչք, որպէս Հայաստան, յորմէ խոստավանին կամ զծագումն ազգաց զանազանից և հեռաւորաց, կամ զազգակցութիւն և զածանցումն լեզուի նոցա. և եթէ քերականական առեղծուածք և վերլուծութիւնք զսանսկրիտ կամ զայլ մեծ և հարուստ լեզու կու ճգնին ցուցանել՝ մայր և ծագող կամ զանձարան յոլովից այլոց, պատմական և աշխարհագրական աւանդութիւնք և զրոյցք՝ ի Հայաստան կը հաւաքեն զհաւանութիւն և զբերեւոյթ. և կենդանի յիշատակարան և փորձք իսկ իրացն անդ և անոր շուրջը կը ճշգրտեն՝ նոքին իսկ լեզուք տոհմականք։ Բաբելոն զսեմականս միայն ունի իր շուրջը և զարիականս ի միոյ կուսէ. Հնդկաստան՝ զարիականս աստի և զանծանօթ Սինէացին անտի և զկղզիս. իսկ Հայաստան որպէս բաժանման և սփռման տոհմից՝ այսպէս և լեզուաց կեդրոն երեքի շառաւեղարձակ. անընդմէջ ի հարաւոյ ունենալով սահմանակից զսեմականսն, զՔաղդէացին և զԱրամացին և զԱսորեստանեայն, յորոց հարաւագոյն եւս Արաբացին և Հեբրայեցին. և յելից հարաւոյ զարիականս, զՄարաց և զՊարսից հին լեզուս, որոց անդրագոյն Հնդիկն հարուստ, յարեւմտից հարաւոյ Ասորւոյն քով՝ Քամականք, Փիւնիկականն և Քանանացին, և անդրագոյն Եգիպտացին. իսկ յարեւմտակողմն բարբառք մերձաւորք Գամիրք և Փռիւգացի խառնեալք ընդ հինն Հելլէն՝ որ անդրագոյն փոխի ի Յոյն նոր, մինչեւ ի կղզիս Ելլադայ. ընդ հիւսիսի արեւմտից՝ Խաղտեաց և Կողքեաց բարբառք, և ընդ հիւսիսի՝ Մեսխաց, Վրաց և Կովկասայնոց. իսկ ընդ արեւելս հիւսիսի՝ Սկիւթական և Սարմատական լեզուք. և արեւմտից և հիւսիսոյ՝ այս երկու կողմերէն կու սփռին ամենայն տոհմական և այժմու բարգաւաճ լեզուք Եւրոպիոյ, Յոյն, Լատին, Կելտ, Կիմմերեան, Գերմանացի, և Սլաւեանն ցեղ բազմազան ազգօքն։ Զոնք ի բնութենէ իսկ, որ է ասել, ի դրից աշխարհիս մերոյ և ի շրջակայիցն ազգաց և լեզուաց ակներեւ կը վկայեն. իսկ աւանդութիւնքդ և կարծիք գիտնոց և բանասիրաց է ինչ՝ որ բնաւ չունին կամ չեն ցուցաներ հաստատութեան փաստեր, և է որ շատ կամ սակաւ հաւանելիք են և մեզ, թէ և

Digitized by Google

ոչ մեծապէս կարեւորք. բաւ է որ օտարք և ոչ համազգիք մեր են տուանգողքն. ոչ եւս Հայք ըստ ինքնակէր պանծանաց զօտարս իրենց երկրէն և լեզուէն կ՚ըսեն ելեալ, այլ օտարք ինքնին կը խոստովանին զինքեանս կամ զընկերան ծագեալ ի Հայոց կամ զէթ խնամիս սոցա։ Եւ եթէ այսու հանդերձ չարաչար անձնատեսութիւն համարեալ պարծել Հայոց ընդ երիցութիւն իւրեանց և ընդ կենդրոնականութիւնն, թերեւս ոչ փոքրագոյն փառութիւն և կարութիւն պիտի ըլլայ այսքան վկայութիւններ և աւանդութիւններ չտեսնելը, և զարմանալի կազմութիւնք և ճոխութիւնք սեփական լեզուին, որ պիտի յաղթեցնէ միշտ և պիտի տանջէ զկարծիս տարախոհից բանասիրաց ցորչափ կենայ Հայ լեզու ի գրի, և Հայ աշխարհս՝ յերկրի։

Իսկ մեք ի թողուլն հօս զխնդիր լեզուաց նշանակենք անուանց խուռն բազմութեան մէջ, որոնցմէ երեւնին չափ մերագոյն յիշատակեցինք, զմեջեսին մեծամեծս, և տիրողս և հարուստս, զպեղասգեանն յարեւմուտս, այսինքն զյոնիականին, զգերմանացին յարեւմուտս հիւսիսոյ, զսլաւեանն ընդ հիւսիսի, զսկիւթական կամ զթուրք ընդ արեւելս հիւսիսոյ, զհնդկապարսիկն կամ զարիական յարեւելս հարաւախառն, և զարաբացին ընդ հարաւ, և ի միջակի սոցա զհայկականս, որ թէ ոչ հօծութեամբ ծաւալած է այսօր ընդարձակ երկրի և ազգաց մէջ, բայց պահէ զարմանալի միութիւն և ամփոփութիւն իւր սեփական ազգին բերնին մէջ, և իր հետ սփռուած է երկրիս ամեն կողմը. և զարմանալի քան զայն՝ ունի ի ներքս յինքեան ընդարձակութիւն և ճոխութիւն, ուստի սակաւք քան զնա կը գիրազանցեն, իսկ շտեմարանութեամբ բառից զանազան ստացեալ լեզուաց, թերեւս ոչ սանսկրիտ և ոչ այլ ոք ի լեզուաց կը հաւասարի իրեն։

Յուշ առնել կարեւոր կը համարիմք և զայս, զի Հայաստան որպէս երբեմն կենդրոն և յետոյ չուարան, և յետոյ անցարան եղաւ ազգաց. վասն զի ցրուեալքն ի Բաբելոնէ ոչ դէպի հարաւ միայն կ՚երթային, այլ և դէպ հիւսիս, որպէս ինքն Հայկն, ապա անցան և ընդ Հայաստան աշխարհ մանաւանդ ընդ արեւմտեան Հայս, որ 500 տարի յետ գալստեան Հայկին դեռ չէր նուաճուած ի Հայկազանց, և ոչ գիտեմք ստուգիւ թէ յորմէ՞ տոհմից բնակեալ էր։ Եւ ոչ անցարան միայն եղաւ տոհմից և գնդից աշխարհս մեր, դիմելոց ընդ հիւսիս և ընդ արեւմուտս, այլ և ասպնջական տոհմից և գաղթից բազում անգամ յօժարութեամբ և երբեմն բռնութեամբ, որպէս և ի վերդ նշանակեցինք, և այս գրեաթէ մինչեւ ցկատարած միապետութեան ազգիս, այսինքն ցվերջ Արշակունեաց հարստութեան. ինչպէս և անկէ վերջ բանաբարեալ և բնակեալ ի հիւսիսայնոց, յարեւելեայց Սկիւթաց

Digitized by Google

և ի հարաւային Արարկաց. և ենք և խառնուրդք այնքան այլատոհմ և այլաձայն խմբից, (որոց սերունդք միանալով Հայոց նախարարութեանց հետ, ցեղեր հաստատեցին յաշխարհի մերում), ի հարկէ մեծապէս այլայլեցին կամ յեղանակեցին հին հայկական լեզուն. անոր համար աւելի քան ի սմա՝ ի հեռաւոր առնչակիցս իւր պէտք է գտնել նմանութիւններ հոմացեղ լեզուաց, զոր օրինակ սանսկրիտ լեզուի ընդ հելլէն և ընդ գերմանացի, որոց սեփական աշխարհք աւելի անխառն մնացին. և կամ ուրիշ խօսքով աւելի հեռաւոր ազգաց լեզուաց հետ կը գտնուի նմանութիւն ընդ հայկականիս, քան ընդ մերձաւորաց կամ միջադասից. վասն զի հեռաւորքը հնագոյն հատուածք կամ անցորդք են ի Հայաստանեայց, որոց լեզուն զատագոյն էր, և սակաւ նոր գաղթականութիւններէն կամ ազգերէն մղուելով և քշուելով զամ քան զզամ հեռացան, և կենդանագոյնս պահեցին զտիպս կամ զբառս ի Հայս խօսուած լեզուին. այսպէս ի սանսկրիտ՝ յարեւելս, կելտաց լեզուին մէջ՝ ի ծայր արեւմտից, և ի սակսոնն՝ ընդ հիւսիսի արեւմտից, որոշագոյն կ'երեւին հայկական նիշք և մերձաւորութիւնք յայժմուս. որպէս շատ հին ասեն ընդ անընդմէջ դրացիս մեր, ընդ Մարապարս՝ յարեւելից կուսէ, ընդ փռիւգացիս կամ Գամիրս՝ յարեւմտից, և ընդ Վրացիս՝ ի հիւսիսոյ, և ընդ Խաղտս կամ Պոնտացիս՝ յարեւմտից հիւսիսոյ:

---

# Ը

# ԱՆՈՒՆ ՄԵՐՈՑ ՀԱՅՐԵՆԵԱՑ

ՈՐՔԱՆ և ընդունայն համարուի ըստ ինքեան ձայն մը, բացատրելու համար իրի մը իսկութիւնը, այնքան և կարեւոր է անոր յիշատակը. մինչեւ աստ թէ առանց անոր կարելի չէ բան մը ճանաչել. և ոչ միայն մարդ կը պահանջէ զանուն, այլ թուի թէ և սիրան անզգամ կը խնդրէ զայն. առաջին գրեաթէ հարցումն իրարու հանդիպող անծանօթից՝ է խնդիր իրենց անուանց. առանց անոր միշտ թերի կը համարուի ծանօթութիւնն, իսկ զայն գիտելով կը համարինք ծածկել ծանօթութեան պակասութիւնքը։ Եւ ո՞ր սրտաբուխ բարբառ առաջին ծանօթից հանդիպելոց՝ թէ ոչ միմեանց անունը. կամ ի՞նչ աւելի ախորժելի յիշատակ հեռացելոյն, թէ ոչ իր անունն դրոշմեալ իր ձեռամբ։ Պատուականագոյն և սրբազնագոյն ժառանգութիւն են մեզի ազգաբանութիւն· հաւուց և նախնեաց մերոց, և աւելի զգուշութեամբ քան զադամանդ և զգոհար կը պահեմք յապահովի լոկ անոնց անուններն իսկ. և որոնք որ ունին պատմութիւն ազգային, դեռ զինքեանս սխալած չեն համարիր, եթէ ունենան միայն իրենց նախահարց իշխանաց անունները։ Ասորեստանեայց երկայն ինքնակալութեան երկոտասան դարերը կը պատկերացնեն իրենց թագաւորաց շարանուն գաւազանը, և մեր ազգին այն ժամանակի կեանքը և կացութիւնը՝ 30ի չափ լոկ անուանք Արարատայ տանուտերաց. զորս հասոյց մեզ բազմերախտն Խորենացի, և այն միայն ցամաք անուններով անընդհատ կը պահուի թել պատմութեանս, մանաւանդ թէ ազգութեանս ի սկզբանցն մինչեւ ցայժմ։ Եւ որովհետեւ նշանական ինչ են անունները, իղձ է հնասիրաց ճանաչել կոչման պատճառները, զոր սակայն չկարեն ստուգել յիշատակարանաց լռութեամբ. որքան եւս առաւել ցանկալի է գիտել զսկիզբն և զպատճառ պէսպէս անուանց՝ որովք կոչուեցան մեր հայրենիք ի զանազան ժամանակս կամ ի զանազան ազգաց։ Արդէն իսկ յառաջընթաց քննութիւն ծագման ազգիս և լեզուիս, ծանոյց մեզ զկարեւոր անուանսն, բայց զի կան ուրիշներ այլ, կարեւոր համարիմ դեռ չմխուած ի ճառս պատմութեան անցից աշխարհիս, քննել և կարգել անոր պէսպէս յորջորջումները, ըստ գրոց և ըստ լեզուաց ազգաց. կամ դասելով ըստ հնութեան ժամանակի կոչմանցն,

Digitized by Google

որովք և պատմական կերպարանք կամ յեղափոխութիւնք աշխարհին յան-գիման կը լինին։

Ա. Հնագոյն անուանք մեր Հայրենեաց կը գտնուին ի Հարկէ ի Հնա-գոյն և ի սրբազան մատեանս Եբրայեցւոց. յորս նախ առաջին կ՚ընծայի Եդեմ կամ ԱԴԻՆ և յարալուրն Հեդեն կամ Հեդենէ պարտիզական, ինչպէս ցուցուեցաւ յառաջնում պրակի։

Բ. Եւ երկրորդ ընդ նմին՝ Արևելից անուն, բառ կողման գրեցի, և առոր վրայ եւս հոն ճառեցինք, և յաւելունք աստ զի ոմն մեր հեղինակ միջնադարեան (Ոսկփ. ԺԴ), ընդ պարծանս կամ սեփական շնորհս ազգիս կը համարի թէ «Արևելեանք կոչին Հայք». և այլ ոմն (Ոսկփ. Ա) ի բան մարգարէին Դաւթի. (Սղմ. ՀԴ. 7.) «Զի ոչ յարևելից և ոչ յարևմտից, » և ոչ յանապատէ լերանց» և այլն. «Յարևելից Հայոց թագաւորքն են, » կ՚ըսէ, և յարևմտից Հռոմայն, և յանապատէ Բաբելոնին»։ Եւ Թագաւոր մեր Լևոն Գ «Արևելեան տուն» կը կոչէ զՄեծ Հայս ի պարգևագիր յիշատակարանի Սաղմոսամեկնչին՝ զոր կ՚առաքէ անդր։

Գ. Համեմատութեամբ աշխարհագրաց գրեց և նկատմամբ արևական ինքնակալ պետութեանց, մեր Հայրենիք կոչին և Հիւսիսական, մանաւանդ թէ մեր պատմահօր հետ «Հանուրց հիւսիսականաց մեծագոյն». այս մակ-դիրը թուի ինձ թէ և հազար տարի առաջ կը գործածէ մարգարէն Եզե-կիէլ ի գիծանելն զազգս յարուցեալս ի վերայ Երուսաղեմի, և Աստուծոյ արդար պատուհասանէն հարուածեալները, յետ յիշելոյ զԱսոր, զԵլամ, զՄոսոք և զԹոբել, և զԵդոմ, ամենէն վերջ կ՚ըսէ (ԼԲ. 30.). «Անդ » ամենայն իշխանք հիւսիսոյ, և ամենեքեան նոքա զօրավարք Ասորեստան-» ւոյն, իջեալք վիրաւորք հանդերձ ահիւն զօրութեամբ իւրեանց» և այլն։ Միայն Հայոց և Վաղղէացւոց համար կրնար այսպէս ըսել մարգարէն։

Դ. Իսկ Երեմիա մարգարէ որ գրեթէ նոյնպէս զնոյն հարուած կը սպառնայ և զբաժակ ցասման արբուցանել ազգացն, այլուստ ոգեւորել կարգը, ճշգրտագոյնս կը սահմանէ մեր աշխարհը բառ գրոցն, յետ Եղամայ և Պարսից (ԻԵ. 25.). «Եւ ամենայն թագաւորացն Հիւսիսոյ արևելից, մեր-» ձաւորաց և հեռաւորաց... և թագաւորն Սիսակ արբցէ յետ ամենեցուն»։ Սիսակը ոչ Սիւնիք այլ Վաղղէացիք կը ճանաչին յանուն գիր նոցա, և նախընթացին անշուշտ Հայք և Կովկասեանք։

Ե. Յայտնագոյն, խոհական և սրբազանեալ հին անուն մեր հայրենեաց ի բնագիրս սուրբ Գրոց է ԱՅՐԱՐԱՏ, որ և 4–5000 տարիէ հետէ ոչ միայն կը ճանաչի այլ և կը լսուի իսկ ի վերայ լերանցն և աշխարհն նահանգին

Digitized by Google

Երեւանայ, անուանս հնութեան և պատճառներուն և պէսպէս ստուգաբանութեանց վրայ ծանօթութիւն տուինք չորրորդ պրակին մէջ։ Մինչեւ ցԷ և Զ դար նախ քան զՔրիստոս, այս անուն սեփական կը պահուի ի Ս. Գիրս. Եսայի, Երեմիա և Տովբիթայ գրոց հեղինակը, երկիր ի լերինս և ի թագաւորութիւնս Արարատայ կը կոչեն մեր աշխարհը և ազգը. ոչ թէ հասարակ էր և յայնժամ այդ անունը մեր հայրենեաց վրայ, այլ վասն զի այնպէս էր ճանչցուած յերիցագոյն սրբազան գրչաց, և իբր վսեմական, քերդողական և նուիրական իրեն անուն։ Բայց նոյն անուամբ կ'անուանեն նաեւ հնագոյնք քաղդէացւոց պատմչաց, ինչպէս կը տեսնենք ի Մարիբաս (առ Խորենացւոյ). իսկ մերայինքս սեփականելով Արարատ անունը աշխարհիս մեծ և միջին նահանգի մը վրայ, նոյնպէս կը կոչեն ամենքին մինչեւ մեր յետին պատմիչը, Առաքել և Զաքարիա։ Նոյն անունը Հարարատ[168], կ'ըսուի թէ կը կարդացուի նաեւ ի բեւեռաքանդակ արձանս, որ մեզ երկբայելի է, մանաւանդ զի ոմանք կ'ընթեռնուն Հուրարտու, այլք Հուրասասս։ (Տե՛ս Ալիշ. Օրդ. Լոնտ.)։

Զ. Դարձեալ ի նոյն արձանս կ'ըսուի թէ կարդացուի և Աշենիա փոխանակ Հայաստանեայցս, որուն ընթերցուածը եթէ երկբայութեան տակ չըլլար, կ'ըսէինք թէ Յաւանայ՝ Յաբեթի որդւոյ անուամբ է, որ ըստ Վրաց հաւ է Թորգոմայ։

Է. Թէ մեր աշխարհը Նոյ նահապետի անուամբ ալ ստուգիւ կոչուած է վասն բնակութեան յետ ջրհեղեղի, ոչ գիտեմ, այլ կ'ըսեն ոմանք[169] այն պատճառաւ անուանել զայն Պարսից Արամ–Նոյէ, կամ Թուրքս Էմնոէ։

Ը. Յերից շառաւիղաց Նոյի՝ Յաբեթի վիճակելով աշխարհս Հայոց և իրեն ժառանգութեան ակիզբն ըլլալով, իրաւամբք կը կոչուի Յաբեթական Նահանգ ի բանաւէր Մագիստրոսէ մերմէ. որպէս և զցեղապետն այն սեփականելով պատմիչք մեր (Յովհ. կաթ. — Խորենացի) կոչեն Մերս Յաբեթ. իսկ յանուն Գամերի կամ Գամերայ, առաջնոյ պայազատի Յաբեթայ, և անոր Թիրաս որդւոյ անուամբ կոչել երկիրս Հայոց՝ թէ ոչ առանց հաւանութեան, այլ ոչ ուրեք կը գտնենք յիշեալ։

Թ. Առաջին բնիկ ժառանգ մեր հայրենեաց երկրին յորդւոց Յաբեթի ըլլալով Աշքանազն Գամերեան կամ Թիրասեան, իւր անուամբ ծանոյց զաշխարհն ի վաղ ժամանակաց[170], և ոչ հարեւանցի կամ քիչ մը ժամանակ այլ բովանդակ դարեր, առ մերս և առ օտարս. սրբազանն Երեմիաս նախ կը հնչեցնէ զանունս, հրաւիրանաւն ընդէմ Բաբելոնի «Պատուէր տուր յինէն » Այրարատեան թագաւորութեանց և Աշքանազեան գնդին», որով հարկ է

Digitized by Google

թէ ոչ զՄեծն՝ զՓոքր Հայս իմանալ, գուցէ և զՓռիւգացիս։ Երիցագոյնք ի պատմչաց մերոց և ի մատենագրաց (Կորիւն), անխտիր իբր սեփական և ընտանի ազգանուանն ազգ կը կոչեն զՀայս.

Ժ. Բայց առաւել յաճախագոյն յանուն Թորգոմայ հարազատին Աշքենազայ կը ճանաչի մեր ազգը, Տուն Թորգոմայ, որպէս կը յիշէ նոյն ինքն Եզեկիէլ յողբ.ն ի վերայ Տիւրոսի, զոր յոլովագոյնք ի մեկնչաց վասն Հայոցս իմանան և ոմանք ի վերայ Կապադովկեցւոց. և ինչպէս Աշքենազայ համար ըսուեցաւ, նոյնպէս և այս սահմապետի անուամբ ընտանեբար կը կոչեն հնագոյնք ի պատմչաց մերոց (Ագաթ. — Բուզանդ) մեր հայրենիքը՝ Թորգոմեայ ազգ, Թորգոմական աշխարհ և յայտ է ուրեմն թէ ի հնագոյն (կորուսեալ) յիշատակարանս այս անուններս իբր աշխարհածանօթք կը գործածուէին։

ԺԱ. Ի նախայիշեալ կոչման մարգարէին Երեմիայ, Եբրայեցի բնագիրն և Լատինն և նոր Թարգմանութիւնք կ'ըսեն. «Պատուէր տուք յինէն թագաւորութեանց Արարատայ, Մինեայ և Աշքենազայ». Նիկողայոս Դամասկացի հին պատմիչ, վասն տապանին կ'ըսէ նստեալ ի Պարիս լերին ի սահմանս Մինեայ, որում կ'իմանան բանաքնինք (Կալմէթ — Ս. Մարթէն) մասն մի աշխարհիս, զՓոքր Հայս, կամ ստուգաբանեն զՄանաւազեանն Հայկայ որդւոյն անուամբ, մեր ծանօթ պատմութեան մէջ, շատ չեն յիշատակուիր Մանաւազեանք ընդ բարգաւաճ տոհմս, այլ ոչ աննշանք կը համարուին և ի սակաւ յիշատակէն, զի ոչ ընդ յետնեալսն կը դասուին ի գահնամակին Ներսիսի. և յետ նուաղման տոհմին և անճետ ըլլալուն հակառակամարտութեամբ յետ Տրդատայ մահուան. և ի զօրաբաժնին 1000 հոգի կը գումարէ իրենց վաշտուն. և Թովմաս Արծրունի ընդարձակագոյն կը կարծեցնէ անոնց երկիրը Մանաւազեան նահանգ կոչելով, յորոց յամենայնէ անհաւան չթուիր շատ հին ատեն նշանագոյն և հարստագոյն ըլլալը Հայկաբուն տոհմից. բայց թէ արդարեւ միջակողմն Հայաստանեայց աշխարհիս տուր անուամբ կոչուեցաւ Մինիաս կամ Մեննի, որոշ չենք կրնար ըսել։

ԺԲ. Այս Մեննի կամ Մին անունը կը համարին ոմանք գլխաւոր տարր ԱՐՄԷՆԻԱ անուան, որով գրեթէ ամենայն աշխարհ արդ մեր Հայրենիքը կը ճանաչէ, օրինակագիր յոյն մատենագրաց օրերէն սկսեալ. և ինչպէս առ մեզ Հայ անունը՝ ստորաց մէջ զա հռչակագոյն և հնագոյն է. վասն որոյ և պատճառ կոչմանն քննեալ ի բազմաց և ոլորպէս մեկնաբանեալ և յօրջօրջեալ. շատք ի մեկնչաց յերբայականէն ստուգաբանելով, կ'ըսեն Հար-Մինի կամ Ար-Մինի այսինքն Լեառն Լուսնի, կամ Ար-Մինի,

Digitized by Google

Լեառն Բոլուց, կամ Ար–Միննի, լերինք Մինեայց վերոյիշեցելոց. բայց Ս. Գրոց եբրայական բնագրի մէջ չի գտնուիր այս անունը, այլ ի քաղդէական հին Թարգմանութեան, յորում Հուրմինէ կը կոչուի աշխարհս մեր. նոյն և յայլ Թարգմանութիւնս, որք փոխանակ Արարատայ իբրև համանիշ կը գործածեն այս անունը։ Եւ ոմանք յեբրայասիրացն (Ֆէյէրլինկ — Տէպորըֆ — Բիրխէր) ի սեմականն Արամայ կը պնդեն ծագեալ զանուն աշխարհիս. բայց այլք ի յաբեթական լեզուէ կը վիճին լինել արուամ անունը։ Ոմն (Բոմնել) ստուգաբանէ Ար–մնե–այս, Լեռն ի վայր մահկի (լուսնի). և այլ ոմն (Ֆապէր) զԹորգոմայ իսկ անուն սատի կը համարի կերպացեալ Թոկ–Արմա, չառալով ինչ իմաստ Թոկ մասնիկան, այլ Արմա և Թոկարմա նոյն համարելով, որպէս Գոմգ և Մագոմգ։ Ջհնութիւն անուանց Յոյնք, ինչպէս տեսանք ի նախընթաց պրակի, կը հանեն ի խումբ արգոնաւորդաց, Արմենոս անուամբ մէկէ մը կամելով կոչել մեր աշխարհը. և ոմանք ի բեւեռաքանդակ արձանս իսկ կ'ընթեռնուն Արմինա անունը։

Կը հաստատեն մեր պատմիչք յԱրամայ ի վեցերորդէ պայազատէն Հայկայ հռչակեալ անուանն՝ Հայաստան աշխարհի վրայ, զոր ընդարձակեց և հռչակեցոյց նա աշխարհակալութեամբք, և նուաճելով մաս մը Փոքր Ասիոյ՝ Յարեւմտականք տեղւոյն կամ Յաւանեանք, այսպէս այնուհետեւ կոչեցին զաշխարհն, և մեր ազգը Արմէն։ Բայց որովհետեւ Հայկայ որդին ալ Արմենակ կը կոչի, որ է Արամ անուն նուազականաւ հանդերձ, թուեցաւ ի մերոցս ոմանց իսկ՝ իրմով սկզբնաւորել կոչմանդ, որ և մեզ անհաւան չթուիր. վասն զի և ոչ նորա միայն՝ այլ և որդւոյ և թոռին անուանք Արամայիս և Հարմաս նմանաձայնք կը յառաջեն քան զԱրամի քաջ. և որպէս մի լոկ միջէ յանուն Աշքանազայ, Թորգոմայ և Հայկայ կոչեցաւ աշխարհս՝ պէտք էր որ իրմէ վերջ ալ յանուն անդրանիկանն կոչիլ՝ Արմենակայ. բայց գիպողագոյն է և ի քաջութենէն Արամայ բարգաւաճել և ծանօթանալ անուանն ընդ ամենայն աշխարհ։ Այլ թէ յԱրամայ և թէ յԱրամենակայ և թէ ի Սեմեանն Արամայ՝ նշանակ ձայնիւ թուի արութեան և քաջութեան ցոյց, զոր արդ ի յաբեթական լեզուաց մարթ է ածանցել։ — Թէպէտ և առ մեզ բնական անուն ազգիս չէ դա, այլ կը վարի իսկ երբեմն ի նախնեաց (Խոր. Բ.), և կը կոչի ազգս և աշխարհ, Արամեանք, Տունն Արամայ, Արամեան ազգ. Արամազնեայք, Արամեան նահանգ։ Պէսպէս յեղյեղմամբք և ծեքանօք կը կոչեն զմեզ Յոյնք և Հռոմք Արմենիոս և Արմենիի, Պարսք՝ Արմնիք բստ Խորոնեցւոյ, կամ Էրմին ارمين. Արաբք՝ Արման կամ Արմնոյ ارمال Թուրքք՝ Էրմէնի ارمني. Կովկասեանք՝ Էրմէկյէ կամ

Էրմէնէյ. Իտալացիք և Գաղղիացիք միջին դարուց՝ Էրմի՛նիա Erminia, Հերմինի Herminie. և նոր ազինք Եւրոպիոյ իւրաքանչիւր ըստ ցանկութեան իւր լեզուին և արտաձայնութեան: — Արդ հնագոյն յիշատակագիր Արմենիա անուան կը գտնուի առ պատմիչս Յունաց, Եկատէոս, Քսանթոս, Երոդոտ և այլք, թէ սոյզ չեն ընթերցուածք բեւեռաքանդակացն, այլ հնագոյն և սրբագոյն եւս յիշատակ կը համարին ոմանք գտնել և ի բնագիրս Ս. Գրոց ի մարգարէութեանն Ամովսայ (Դ. 3.), սպառնալեաց խօսքն առ Հրեայս թէ «անկանիջիք ի լերինն Ռեմմանայ». որ ի բնագրին և յայլ թարգմանութիւնս է Արմնե. և զՀայաստան կ՚իմանան անուամբս: Ռեմմանայ մերձաձայն կը գտնուի եգիպտական կոչումն ազգիս Ռեմենեն, որպէս կ՚ընթեռնուն յարձանս Սեսոստրի յԵգիպտոս:

ԺԳ. Անծանօթ կամ անսովոր առ օտարս և սեփական բնիկացս Հայ և ՀԱՅԱՍՏԱՆ անունը, նախապատիւ բնաւից և ցանկալի մեզ քան զամենայն կոչմունս որուն պատճառն է Հայկ ազգապետ մեր, առ որ ընդ հուպ պիտի դառնայ խօսքս և պիտի ցուցանէ որ անուամբ բնիկ կոչումն է Հա և ոչ ինչպէս հիմակ սովոր եմք երկար և նայ Յ տառիւ յօդել և հնչել: Եւ կարելի է կարծել թէ Թորգոմածին քաջ ազգապետս ունէր այլ անուն ծնելական, և յարութեանն սեփականեց զ՚Հա մականուն, յորմէ Հայկ և Հայկն կոչուեցաւ, և իրեն վիճակեալ աշխարհը Հայաստան, որպէս թէ հսկայից կամ արեաց ստան. և անկից թերեւս յարակոչութիւն Մեծն անուան, Մեծ Հայք, Հայոց Մեծաց, որ առ օտարս կը գործածուի ի խտրութիւն երկու մեծամեծ բաժնից աշխարհիս, զոր Մեծ և Փոքր Հայք կ՚անուանեն, այլ առ բնիկ նախնիս մեր ծանօթ չէ այսպիսի ինչ, այլ իբր պարծանաց և արութեան անուն կը գործածուի Մեծաց Հայոց կոչումն, որպէս Պարսիցն՝ Արեաց:

ԺԴ. Հին բառագրոց մէջ յիշուած կը գտնեմք և այլ կոչումն Հայոց, Գողնի կամ Գզնի, որ այլուստ ամենեւին անծանօթ է մեզ, և կը թողումք ի հետաքննութիւն բանախուզից:

ԺԵ. Կը թողումք հօս յիշել կամ կրկնել զվարկպարագի գրոյցս Աննեանն Բերոսոսի և պէսպէս իմէ յորջորջումներ Հայաստան աշխարհիս, միայն հաւատագոյն զՍկիւթիոյ կամ զՍակեան կոչումն կը համարիմք, վասն զի և յարդ Շակաշէն գաւառ Ուտիոյ վկայ է ոչ միայն հօն բնակելուն հնահար ազգիս, այլ և իրեն ընդհանուր ծաւալման և տարածելոյն ընդ Հայս ի Փոքր Ասիա: Եւ կարծեմ թէ Սկիւթական կրօն՝ առաջին ի հերձուածս, յիշեալ յԵպիփանեայ, մեր աշխարհը կ՚ակնարկէ. և կը

Digitized by Google

համարիմ թէ հնագոյն ազգք, ինչպէս Եգիպտացիք, շատ հին ժամանակ Սկիւթս կամ Սակս կը կոչէին զՀայս։

ԺԶ. Ի հնագոյն պարսիկ կամ զանդիկ գիրս, ինչպէս առաջին պրակներուն մէջ ըսինք Սէրիանոյ կը կոչուի մեր աշխարհը, կամ այս նախաբնակ երկիրը կը կարծուի ի բազմաց մերը նշանակել։

ԺԷ. Յոյնք արգոնաւորդաց առասպելը յառաջ մղելով ոչ միայն զԱրմենիոս Թեսաղացի ըսին (Ստրբ. ԺԱ. ԺԴ. 10) նախահայր ոմանց ի մերազնեայցս, այլ և ելուզակաց առաջնորդէն՝ կոչուած մեր աշխարհը Յասոնեա, թերեւս զՀայազուն կամ զՀայոց տուն անունը այսպէս լսեցին և յեղյեղեցին Յոյնք ծեքարանք։

ԺԸ. Վիրք մինչեւ ցայժմ Սոմխէթ կը կոչեն զՀայաստան և Սոմեխի զՀայս. Սոմխէթի անունն կը պահուի ցարդ Գուգարաց գաւառի մասի մը վրայ, որ անանջրպետ սահմանախառն էր Վրաց աշխարհին հետ. տակաւ և բոլոր աշխարհը նոյնպէս կոչեցին. իսկ անուան պատճառը այսպէս կարծեցին. ոմն կը թարգմանէ զանունս Հայոց արժանիս շնորհից կայծակունց. բայց հասարակաց հաւանելի է վասն հարաւակողմն բնակութեան ազգիս առ գրիւք Վրաց՝ այս անունը առած էին ի նոցանէ, ինչպէս և մերքս հիւսիսայինս կամ ծմակայինս կը կոչէին զՎիրս և զԿովկասեանս։

ԺԹ. Առ հինս Հելլենաց կը թուի ոչ զանազանել ի Փռիւգիոյ զՀայաստան և Փռիւգս կոչել զՀայս. ինչպէս որ տեսր համար վերը ըսինք ազգաց ծագման վրայ ճառելով, թուի թէ և Հոմեր տարբեր անուամբ չէր ճանաչէր զՀայս՝ գէթ զարեւմտեայս։ Զնոյն կը թուի նշանակել լսելեայն և Եւրիպիդէս. իրեն Բաքոսը կ'ըսէ, անցեալ ընդ Լիւդիա, Փռիւգիա, ընդ Պարսս, Բակտրիա, ընդ սառնապատ Մարս, և ընդ համօրէն Ասիա (փոքր), և Հայաստան չի լսուիր։

Ի. Աշխարհագիր ոմն (Պատրան) ԺԷ. դարու, կ'ըսէ, Նեստորական Ասորիք Զարպէքտիպէս? կը կոչէին զՀայաստան, իբր թէ Գայլոց Լերինս. թերեւս յանուն Զաւ կամ Զարզ գետոյ, որոց հովիտք սահմանակից են Ասորեստանեայց. այլ ոչ գիտեմ որքան է ստուգութիւն վկայութեանց։

ԻԱ. Արշակունեաց հարստութեան ատեն չէր անճահ կոչուիլ Հայաստանեայց նաեւ անոնց անուամբ, և առ մերոյն իսկ կը գտնեմք (Ագաթ.) կոչել զաշխարհս Արշակունեաց երկիր կամ Դուռն։

ԻԲ. Նոյնպէս և յանուն Պարթեւաց կը կոչեն երբեմն մեր աշխարհը օտարք, ինչպէս Ստրաբոն իսկ երբեմն, Ափրիկանոս, Կեդրենոս և այլք։ Բայց զատոնք աւելի տիրապետական կոչումն անուանելու է քան բնական։



Digitized by Google

## Թ

# ԹՈՐԳՈՄ – ՏՈՒՆ ԹՈՐԳՈՄԱՅ

Նախարարեան և Բաբելական ցեղապետաց միջնորդ, և աւելի քան զայլ ցեղապետս հայր ազգաց ճանչցուած՝ հսկայ նահապետ մը կու յիշեն սուրբ և արտաքին գիրք և կենդանի աւանդութիւնք շատ ազգաց, որ մեր առանձին պատմութեան մէջ այլ առաջին կամ սկզբնական տեղն ունի, և որոյ անուամբ կոչուէր մեր Հայրենի երկիրն և ազգ, նախ քան զՀայ կոչուիլն, և կոչուի եւս մնեմական գրուցուածոց մէջ, և նոյն նախաքրիստոնեան կամ առաջին դարուց ազգային պատմութիւնք գաւուին՝ Հաւանական է որ մեր աշխարհն և ազգ հիմկու անուննէն աւելի գրուած ըլլայ Տունն Թորգոմայ, կամ Ազգ տանն Թորգոմայ. որոյ հաւաստիք են մեր հնագոյն քրիստոնեայ հեղինակք. որոց յամենայնի պարագլուխն Ս. Գր. Լուսաւորիչ իր մէկ կոնդակին մէջ (թէ և յունարէնէ թարգմանած) կ'ըսէ իրեն համար «կացի յաթոռ եպիսկոպոսապետութեան տանն Թոր- » գոմայ և Ասքանազեան ազինս»: Իր ժամանակակից կենսագիրն և առաջին պատմիչն մեր Ագաթանգեղոս՝ գրեթէ միշտ Հայոց հետ Թորգոմայ անունն այլ յիշէ, և աւելի անով կու նշանակէ մեր աշխարհը. «Ընթերցեալ « զԹորգոմայ ազգին զՀայաստան աշխարհիս զաստուածապարգեւ աւետեաց » աւետարանին քարոզելոյ բանին կենաց». — «Այս իշխանք և բիւրաւորք » ի մէջ Հայաստան աշխարհի Տանն Թորգոմայ». — «Եղեւցին Հայոց Տանն » Թորգոմայ՝ շնորհք քարոզութեան աւետարանին». և այլն: Նոյն (Դ) դարուն յունահայ պատմիչ մ'այլ (Փաւս. Բուզ.) նոյնպէս կ'անուանէ. «Յիշեցուցիչք » պատմութեանց ազգացն Հայաստան աշխարհին Որդւոց Թորգոմայ». — « Սահմանաց երկրին Հայոց ամենայն բնակիչք Տանն Թորգոմայ, հայ լեզուն » առհասարակ». — և յատկապէս եւս «Երկիրն լեզուին Թորգոմական » աշխարհին»: Այսպէս և Ե ոսկեդէն դարու հեղինակք մեր, որոց յառաջադէմն Խորենացի[171], վասն Հայկայ պատմէ թէ իր ընտրած հաստատ բնակութեան տեղն անուանեց Հարք, այսինքն թէ «Հարք են աստ բնա- » կեալք ազգի տանն Թորգոմայ». որով յայտնէ մեր ազգապետն թէ ինքն զինքն ճանչնար որդի և նախարար ազգի տանն Թորգոմայ. իսկ ազգն իւր

Digitized by Google

երախանաց համար յետոյ անոր անուամբն վարեցաւ. զոր և վարեցին ամենայն վսեմագիր և հնաշնորհ հեղինակք մեր, որ ԺԲ դարով կու վերջանան. այսպէս Յովհ. կաթ. ի սկիզբն Ժ դարու. «Վաղարշակ Պարթեւ » Թագաւորէ Տանն Թորգոմայ»: Գր. Մագիստրոս ի ԺԱ դարու. իր թոռն Ներսէս Շնորհալի ի ԺԲ դարու երգէ զՀռիփսիմէ.

«Ծովային շուշան ծաղիկ բուսեալ ի տանէս Թորգոմի,
» Ոսկեզեալ արեամբ սրբոցըն Պետրոսի և Պօղոսի»:

Հայաստանի երեք կողմերու՝ հիւսիսոյ, արեւելից և արեւմտից շատ ազգերն, ինչուան ուր որ հին պատմութեան ծանօթութիւն հասնի, զիրենք խոստովանին սերունդք Թորգոմայ, բայց ոչ մի ոք այսպէս իբրեւ զմերայինս զՀայս՝ հազարամեայ վկայութեամբ գրոց հեղինակացն զնոյն սեփականէ և հաստատէ պատմութեամբն, վասն որոյ և հաւանագոյն քան զայլս նովին անուամբ հռչակի և ի Ս. Գրոց 1000 տարի յառաջ քան զիւր հայկաբան գրիչս. Քրիստոսէ առաջ Է դարուն մէջ աւելի ծանօթացան Հայք Հրէից, որոց ինչուան այն ատեն մեր աշխարհն սովորաբար Արարատայ անուամբ յիշուէր. յետ առման Երուսաղեմի Նաբուգոդոնոսորէ, նիզակակիցք սորա Հայք՝ աւելի եւս ճանաչուեցան. այն ատեն յետինն մեծ և աստուածարեալ մարգարէից Եզեկիէլ, մեր աշխարհին սահմանապարհսպ լեռներէն իջած գետոյ մը եզերք գերի բերուած նստելով «առ ափն Քոբար գետոյ», ընդ մէջ Ասորւոց և Հայոց, ճանչցաւ ասոնց վաճառականները՝ որք «ի » Տանէն Թորգոմայ» ձիովք և հեծելովք լնուին զհրապարակս վաճառուց Տիւրոսի (Եզեկ. ԻԷ. 14.) ճանչցաւ և անոր կորիճները՝ որք իր հայրենեաց գերութեան գործակից եղան թէ և ստիպմամբ քան կամաւ[172], վասն այնորիկ և բուն իր ազգին թշնամեաց դէմ ոչ իբրեւ Երեմիա հրաւիրէր զԱյրարատեան զունդն և զԱսքանազեան թագաւորութիւնս (Մեծ և Փոքր Հայք), այլ և անոր հետ ասոնց այլ սպառնայ՝ մեր հիմայ խնդրեալ անուամբ. «Ժողովեցից զքեզ և զամենայն զօրութիւնս քո... Գոմեր և ամե- » նեքին որ շուրջ են զնովաւ. և Տունն Թորգոմայ ի ծագաց հիւսիսոյ, և » ամենեքին որ շուրջ զնովաւ» (Եզեկ. ԼԸ. 6.)։ Մեր պատմութեան հմուտքն այս Թորգոմայ տունը՝ որ ի ծագս հիւսիսոյ, հիմայ գրեթէ ամէնքն իմանան զՀայս և զսահմանակիցս, «որ շուրջ զնովաւ», Կովկասեանս. ինչպէս և քաջահմուտք ի հին օտար Հարց՝ Եւսեբիոս Կեսարացի, Թէոդորետոս, Իսիդոր Սեւիլիացին. բայց ոմանք ի նախնեաց զանազան և հեռաւոր կարծիք ունեցան. Քաղդէացի թարգմանիչք Ս. Գրոց և Թալմուտք

*Հրէից՝ ինչուան զԳերմանացիս իմանան այդ հիւսիսային Թորգոմեանները. Արաբացւոց Թարգմանութիւնն աւելի ստուգիւ զՎրացիս. յԵրուսաղէմեան մեկնութիւնն՝ զԲարբարոսս, որով անուամբ ոմանք (Փրեկուլփ) իմանան զՓռիւգացիս, վասն զի ասոնց Հայր համարի Թորգոմ ի Յովսեպոսէ, Հերոնիմոսէ. իսկ յոմանց՝ (Պոշար) Կապադովկացւոց Հայր, որ և չեն հեռի ի ստուգութենէ: Իսկ այլք զՍկիւթացիս իմանան տուն Թորգոմայ և Թորգոմեանս[173], և զեո զանուն նորա լսեն ի Թիւրք կամ Թիւրքմէն և ի Թաթար ժողովուրդս. զայս այսպէս համարին և ոմանք ի վարդապետաց մերոց[174] և պատմչաց Թաթարաց իշխանութեան տակ, որպէս Մաղաքիա աբեղայ, որ զՍկիւթս գրէ ի Գովգայ և զԳովգ ի Թորգոմայ, համբերձ խառնրդով Հագարացի սերնդեան և յառաջ քան զնա անտարակուսաբար իմն Միխայէլ Ասորի, «Յայտ է թէ յազգէ Թորգոմայ են» (Թուրքք): Այս յայտութեան ապահովութիւնը քննելու կամ հաստնելու համար, նոյնպէս ուրիշ ազգաց այլ Թորգոմական ըսուելու պատճառն իմանալու, ևս առաւել մեր Հայոց բնիկ տուն Թորգոմայ ըլլալն հաստատելու համար՝ պէտք է արդ քննել տեսնել թէ ո՞վ է այդ ցեղապետն ազգաց Թորգոմ, որոյ անուամբ նշանակեն ժողովուրդք Ասիոյ, արեւմտեան ծայրերէն ինչուան գրեթէ Չինաց սահմանները, և ընդ հիւսիսի մինչեւ ի Սիպերիոյ սառնապատ անապատները:*

*Թորգոմայ վրայ մեծ խնդիր մը կայ. վասն զի Ս. Գիրք մեր զԹորգոմ որդի տանն Գոմերայ. ոմանք ի հարց և պատմչաց (Սիւնկելոս — Յովհ. Կաթող.) զԹորգոմ և զեղբարսն փոխանակ Գոմերայ՝ տանն որդի Թիրասայ որդւոյ Յաբեթի. իսկ Բագդէացիք (Ալիւդենոս. Մարիբաս) ըստ վկայութեան Մով. Խորենացւոյ, յորոց և ինքն և ամենայն հետեւող պատմիչք մեր, զԹորգոմ տանն որդի Թիրասայ, և զԹիրաս որդի Գոմերայ[175]. որով կրկին են Թիրասք և Թորգոմք, մին՝ յիշեալ ի Ս. Գրոց որդի Յաբեթի և Գոմերայ, միւսք անյիշատակք՝ որդի և թոռն Գոմերայ: — Հոս պարզ շփոթութիւն մը կամ սխալ մը չերեւար, որպէս ոմանք բռնին և մեղադրեցին զպատմահայր մեր Խորենացի, որպէս թէ Ս. Գրոց ըսածը թողլով հեթանոսացը նախադասէ, այլ կամ տարբեր է Ս. Գրոց Թորգոմն ի մերոյս Թորգոմայ, ու ազգակից և տեղակից, և երկուքն ալ զիրար յաջորդած, և կամ զարմանալի առակ մը կայ Նոյի սերնդեան չորրորդ ազգին վրայ. վասն զի երեք որդւոց թոռներուն վրայ այլ նոյն տարակոյսը կայ, ինչպէս մանաւորապէս գիտեր է մեր պատմահայրն այլ. զՍեմայն՝ ի Ս. Գրոց իսկ գիտեմք, այսինքն զԿայինան որդի Արփաքսադայ, զոր բազումք չեն ընդունիր, և զՍաղայ անմիջապէս Արփաքսադայ որդի տանն և ոչ թոռն. այսպէս և*

գՆեբրովթ՝ Ս. Գիրք զնեն երրորդ ի Նոյէ, որդի անուանելով Գամերայ, բայց գիտելու է որ նախ Գամերայ հինգ որդիքը և երկու թոռունքը կու համրէ, յետոյ զատ կերպով մը կ՚ըսէ. «Եւ Քուշ ծնաւ զՆեմրովթ». (Ծն. Ժ. 8. Ա. Մնաց. Ա. 10.) Խորենացի ուշմտագոյն աստի հեղինակի քննութեամբ զՆեբրովթ դասէ որդի Միսրայիմայ որդւոյ Քուշայ. նման նոյնն և Թորգոմ որ երրորդ է ի Նոյէ ըստ գրոց՝ ըստ հին պատմչաց ազգաբանութեան որ ի նմին ազգէ առած են, չորրորդ է, որդի դոլով Թիրասայ ուրումն չյիշե֊լոյ, զոր օրինակ Կայնանն. արդ ինձ հարկ է ընդունել կամ չընդունել զԿայնան, նոյնպէս և զԹիրասն կրնամք Թորգոմայ հայր ճանաչել կամ ոչ. շատ թէ ճանաչուի նահապետն մեր Հայկն որդի Թորգոմայ, և Թորգոմ սերունդ Յաբեթի և ժառանգորդ Հայաստան աշխարհի։

Ս. Գիրք, ինչպէս տեսանք, Յաբեթայ անդրանկան ցեղապետութիւնը հասցընէ մինչև ի Թորգոմ, նշանակելով զնա երրորդ որդի Գամերայ՝ որ քան զերէցն և զնախնիս ծանօթագոյն է արտաքին պատմչաց և ժողովրդոց, որք թէ՛ անուամբ թէ ազգակարգութեամբ քիչ մը օտարանան յեբրայական գրոցն. զինքն յիշատակողաց մէջ առաջինն է մեր ազգային պատմութիւնն, առնել ի Մարիբասայ կամ ի հնագոյն եւս աղանդութենէ. Մարիբաս ըստ Փաղկէացի գրոց կարգէ զազգաբանութիւնն, Յապետոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թակլաթ, որ են ըստ Խորենացւոյն մերոյ՝ Յաբեթ, Գամեր, Թիրաս, Թոր֊գոմ. որով սա ոչ չորրորդ կ՚ըլլայ ի Նոյէ ըստ Ս. Գրոց, այլ հինգերորդ. ըստ այսմ մեր ուրիշ պատմիչք այլ կարգեն. մինչ Յոհ. Կաթ. և Վար֊դան ըստ Սիւնեցւոյ Բիւզանդացւոյ կարգեն Յաբեթ, Թիրաս, Թորգոմ. նոյնպէս չորրորդ ի Նոյէ, այլ փոխանակ Գամերի՝ Թիրասայ (որդւոյ Յա֊բեթի) որդի համարելով. իսկ Վրաց պատմիչն[176] ի Յաւանայ որդւոյ Յա֊բեթի կ՚իջեցնէ զմեր նահապետն, կարգելով Յաբեթ, Յաւան, Թարշիշ, Թորգոմ[177]։ Ահա չորս հինգ տեսակ ազգաբանութիւն, քիչ վանազանու֊թեամբ, որոյ մէջ նշանաւորն է ազգակարգութեան թիւն, այսինքն փո֊խանակ չորրորդ ի Նոյէ ըսուելու հինգերորդ ըսուիլն[178], որ ուղղակի հա֊կառակ կ՚ելլէ Ս. Գրոց, սակայն գիտելու արժանի է որ, Նոյի երեք որդւոց այլ թոռնորդւոյն վրայ այսպիսի տարաձայնութիւն մը կայ, և մէկն (Սե֊մայն) նոյն իսկ Ս. Գրոց մէջ, տեղ մը Սեմայ որդւոյն Արփաքսադայ և Սաղայի մէջ դնելով (մէկուն որդի միւսոյն հայր) զԿայնանն և տեղ մը ոչ, չորրորդ ի Նոյէ. նոյնպէս Քամայ ցեղին մէջ այլ մեր պատմահայրն կու յիշէ, հետևելով հմուտ Ասորւոյ մը, զՄեստրեմ չորրորդ ի Նոյէ, որ ըստ Ս. Գրոց երրորդ է, որդի դոլով Քամայ, իսկ ըստ մերոյ՝ որդի Քուշայ

որդւոյ Քամայ։ Այսպէս ժամանակագիրք կարգեն «և զԹիրաս չորրորդ ի »Նոյէ, իսկ Ցարեթ երրորդ, թէպէտ ըստ մերում թարգմանութեանս ոչ »ուրեք ի բնագրի գտանի»։ Այսմանայ համար ոմանք ի մեկնչաց (մերոց) առանցեն (երկիւղածաբար), թէ գիտութեամբ անունը դուրս ձգուած ըլլայ ի Ս. Գրոց, իբրու զի նա եղաւ առաջին կուռք շինող. Թերևս իր սերնդակիցք կամ հասակակիցք հօրեղբօրորդիք այլ նոյն կամ նման ամպարշտութեան մը համար վտարանուն և անանուն սեպուեցան իրենց պապէն կամ ի մեծ նահապետէն Նոյէ։ Թողլով այս կարծիքս, Ս. Գրոց ազգաբանութեան չհակառակելու համար, դարձեալ երկու ճամբայ կայ մեզի. կամ Մարիբաս և օտար պատմիչք շփոթած կրնան ըլլալ, կամ իրենց Թորգոմն ոչ է որդին Գամերայ յիշեալն ի Ս. Գրոց, այլ եղբօրորդի այն յիշեալ Թորգոմին. վասն զի հաւանական է որ Գոմեր զատ յերից յիշելոց (Ասքանազ, Ռիփաթ, Թորգոմ), ուրիշ շատ որդիք այլ ունեցած պիտի ըլլայ, անոնցմէ մէկն այլ կրնայ ըլլալ Թիրաս՝ անուանակից իր եղբօրը (Թիրասայ որդւոյ Ցարեթի), ինչպէս որ իր մէկ ուրիշ եղբայրն այլ Ցաւան՝ գրեթէ նոյն անուամբ որդի մ՚ունէր զԹարշիշ։ Դարձեալ կրնայ այլ ըսուիլ թէ մեր հին պատմիչքն ի շարելն Ցարեթ, Գոմեր, Թիրաս, Թորգոմ, ոչ ազգաբանութիւնն ուզեն իմացնել, այլ Հայաստանի նահապետքն կամ նախիշխանքն, իբրու թէ յետ Ցարեթի իր անդրանիկն Գոմեր գրաւեց զՀայաստան, յետոյ Թիրաս (իր եղբայրն կամ որդին), յետոյ Թորգոմ։ Արդ ասոնցմէ որն այլ ըլլայ՝ միշտ ստոյգ է որ Թորգոմ թոռն կամ թոռնորդի էր Ցարեթայ, և հաւանօրէն որդի կամ թոռն Գամերի քան թէ Յաւանայ. և այս մեզի բաւական ըլլայ։

Գալով Թորգոմայ անուան վրայ, այսպէս կոչեն պատմիչք մեր և Ս. Գիրք ըստ Եօթանասնից թարգմանութեան, իսկ Հրէարէն բնագիրն և անոր հետևողքն գրեն Թոգարմա կամ Թոգորմա որ և Թուձէրմա. Յովսեպոս՝ Թուկրամ, Վիրք Թարգամոս կամ Թորգամոս, Մարիբաս Թակլաթ, ուրիշ մը (Փրեկուլփ) Տիգրան և անոր սերունդքն այլ Տիգրանեանք որ են փոխգացիք ըստ մտաց յիշողացն. անվաւեր պատմիչ մը կոչէ Թակեառն, և Սկիւթացիք ըստ Երոդոտի իրենց ցեղապետը անուանէին Տարգիտաոս, և շատոնց հաւանական երեւեցաւ ի Թորգոմայ ըլլալ նոցա. արդէն Թակլաթ կոչմանէն այլ հեռու չէ այդ. ինչպէս ուրիշ կողմանէ այլ Տիգրան անուան մօտենայ Թիդրամմիս, որ է հնագոյն նմանութիւն Թորգոմայ կամ Թոգարմայ։ Եբրայագէտք այս անունս թարգմանեն Ուժգնութիւն կամ զօրութիւն, և կամ Եկ, այսինքն օտար անդէ եկած. ոմանք յերկու զատելով

Digitized by Google

Թոկ–Արմա զառաջինն աւելորդ իմն սեպեն, և Արմեան կամ Արմէն (զուցէ լաւ ևս Հարմա) համարին զրուն անուանն, կամ զառաջինն ըստ հին սանսկրիտ լեզուի Դուրք, Դոգա իմանան Տղայ կամ Սերունդ–Արմայ այս մեկնութեան (եթէ ստոյգ ըլլայ) կրնար յարաբերիլ Աֆղաններուն աւանդութիւնն այլ, որք յիշեն Ցաբեթի երեք որդիք, Արմէն, Աֆղան, Կարդուլ, և համարին յառաջնոյն զՀայս, ի վերջնոյն զՎիրս, ի միջնոյն զիրենք (Պրոսէ)։ Ի Գալեռոն հին լեզու Բրիտանաց այլ Թոկարմա ասեն Թարգմանի Կապուտալիք–կղզի։ Իսկ նկատմամբ մեր լեզուին և ընիկ անուանց, նշանակելի է վերջաւորութիւնը ոմ կամ ամ, որ մեր շատ հին անուանց յանկակից է, ինչպէս Ար–ամ–ենակ, Հար–մա, Գեղ–ամ, Բիւրամ, Բագ–ամ, Պարք–ամ, Ձար 'մայր, Կաղ–ամ կամ Կաղմոս, և այլն. յորոց յայտ է թէ ամ մասնաւոր և հայրանունական իմաստ մը պիտի ունենայ։ — Այսչափ այլ այս ցեղապետիս անուան համար, գանք հիմայ պատմութեանն։

Ս. Գրոց ըրած Սեմայ ազգաբանութեան նայելով, մեր Թորգոմ եթէ անմիջապէս Գոմերայ որդի է՝ իբրեւ 130–50 տարի ջրհեղեղէն ետեւ ծնած կ'ըլլայ, ըստ Եօթանասնից, իսկ եթէ թոռն է նորա կամ թոռնորդի Ցաբեթի՝ իբր 250 տարի ետեւ. և ապրած է 600 տարի, ըստ աւանդութեան պատմչաց Վրաց[179]. և ինչ որ մեր պատմիչք իր որդւոյն՝ մեր Հայկ նահապետին համար վկայեն, զնոյն կրեն համար այլ ըսեն՝ թէ «էր նա » այր քաջ և հսկայ... որոյ էին բազում կանայք, և ծնան նմա ուստերք » և դստերք, (և) որդւոց և դստերաց նորա... և չրաւէր երկիրն բազմու- » թեան ախի նորա»։ Եւ այս ոչ միայն յառաջ, այլ և յետ բաժանման և սփռելոյ ազգաց և լեզուաց. վասն զի ինքն Թորգոմ այլ արեւելքէն կամ Նոյաբնակ երկրէն դէպ ի Սենաար գացող ձեռներէց կարիճներէն մէկն էր, ուր տարեր էր և որդւոց թոռնիկներն, և անշուշտ զամանս այլ հոն ծներ էր, ուր և որդիքն այլ որդւոց և թոռանց տէր եղած էին, ինչպէս մեր պատմութիւնն յայտնապէս յիշէ որ Հայկն ի Բաբելոն ծնաւ զիւր անդրանիկ Արամենակ, և նա զիւրն Կադմոս։ Բաբելոնէն դարձող նահապետաց մէկն այլ ինքն էր, բայց թուի թէ (իբր 50 տարի) յառաջ քան զիր և իրմէ յանդուգն որդին՝ զՀայկն. ինչպէս վկայէ պատմիչն և յաւելու, թէ «Եկն բնա- » կեցաւ ի մէջ լերանց Մասեաց և Արագածու». կամ լաւ ևս ըստ Վրացի բնագրին ընդ մէջ Արարադայ և Մասեաց, առջինն իմանալով զհին երկիրն Արարատեան, գաւառն Նոյի, զոր և հաւատայ պատմիչն Թորգոմազանց բնակութեան երկիրն հարաւային սահման դնելով «զԱրեւթ լեռան (որ » թուի նոյն ինքն Արարատ) յերկիրն Կորդուաց, հանդէպ Մարաստանի».

Digitized by Google

և դարձեալ մեր հին և կորուսեալ պատմչաց մէկուն մնացեալ հատուած բանքն վասն Հայկայ, թէ յետ դարձին ի Բաբելոնէ նախ բնակեցաւ այն տեղն՝ որ էր տուն Նոյեա նախնի, շինեալ ի Զրուանայ, այսինքն ի Սեմայ, «Հօրն և եղբարցն հանդերձ». այս խօսքս որ երկմտութեան տեղի կրնայ ըլլալ, աւելի երեւի յարմարիլ Հայկայ հօրն և եղբարց համար՝ քան Սե-մայ. այսինքն թէ, այն տեղ Զրուան շիներ էր բնակարան, ուր և Հայկն բնակեցաւ իր հօր և եղբարցն հանդերձ։

Բայց եթէ արդարեւ Թորգոմ բնակեցաւ այլ հօս՝ ոչ երկար տարի-ներ. այլ զի շատ կարիճ զաւակներ և թոռներ ունէր, «և չբաւէր երկիրն » բազմութեան ախի նոցա». բաժնեց անոնց սահմաններ, նախ ինքնին տիրելով և շատերը ինքնին տանելով և տեղաւորելով. և բոլոր այն ժառան-գած երկիրն, ըստ պատմութեան Վրաց՝ հարաւէն ի հիւսիս Կորդուաց և Կովկաս լերանց միջոցն, արեւելքէն յարեւմուտք այլ՝ Կասպից և Սեաւ ծովուն միջոց. ուր նախ իր անդրանիկ եղբարքն, հարքն և հօրեղբարք տիրէին, ըստ աւանդութեան մերոց իսկ պատմչաց, ինչպէս որ յիշեցինք մենք այլ ազգաբաժանման մէջ (66). նախ Գոմեր, յետոյ Թիրաս իր որդին (կամ եղբայրն). որոյ համար կ'ըսէ Յովհ. Կաթղ. «Եւ վասն զի զԹրա-
» կացիս ինքեան անձին առանձին Թիրաս պայազատէր, պարտ վարկաւ
» զի զայլ եւս վիճակեալն իւր սահմանս՝ յերիս հատուածս բաժանեալ
» տայցէ ի կալուածս որդւոց իւրոց։ Ուստի... և Աշքանազայ որ նախ
» զմերազնեայս յիւր անուն Ազքանազեանս անուանեաց, զՍարմատս նմա
» պայազատէր. իսկ Թիփատայ զՍաւրամատս. իսկ Թորգոմայ զմերազնեայս
» ռեպհականել. որում տիրեալ՝ զԱշքանազեանն նախ անուանեալ՝ յիւր
» անուն նուաճէր Տուն Թորգոմայ։ Արդ այսպէս իմա Աշքանազեան զմեզ
» և տուն Թորգոմայ. և այսպէս քեզ հաւատարմացին որ վասն նահապե-
» տութեան ազգիս մերոյ է բան, թէպէտ և ոմանք այլազգաբար և ոմանք
» այլաբանաբար զրուցաց վէպս տան»։

Աշքանազ, կ'երեւի որ երկար ատեն բնակեցաւ յերկրի մերում, Թոր-գոմայ և Նեբրովթայ և այլոց ի Բաբելոն գնացած և բնակած ժամանակ, մինչեւ ի դարձն անոր, հարիւրաւոր տարի։ Այս պատճառաւ է որ յառաջ քան զԹորգոմ և յետոյ՝ երկար ատեն յանուն Աշքանազայ կոչեցաւ մեր երկիրն և ազգն. և ինչպէս վերը Թորգոմայ համար ըսինք՝ թէ հին ատեն և ընտիր և վսեմական հեղինակաց մէջ աւոր անուամբ քան Հայկայ՝ անուանի մեր ազգն, այսպէս այլ Աշքանազայ էր. զոր օրինակ տեսանք Երեմիայ մարգարէին վկայութիւնն յառաջ քան զԵզեկիէլին, «Պատուէր

Digitized by Google

» տուք յինէն Այրարատեան գնդին և Աղուանազեան թագաւորութեանցն ». և Գր. Լուսաւորչայ ինքնագրութիւնն եպիսկոպոսապետ « տանն Թորգոմայ » և Աղուանազեանս ազինս ». որոյ հետեւող և համանուն և համարիւն. Գր. վկայանէր ի ԺԱ դարու նման ձեւով մը զինքն անուանէ, և սկզբնագիր Թարգմանիչ վարդապետս մեր Կորիւն սկսանի զպատմութիւնն ասելով. « Զաս- » քանազեան ազին և զՀայաստան աշխարհին » և այլն, այսպէս և այլք։ Բայց որպէս Հայկայ անունն տալով ընդարձակելով խափանեց զհօրն՝ զԹորգոմայն, այսպէս տարոն այլ զեր եղբօրն (կամ զհօրեղբօր) զԱշքա- նազայ։ Թերեւս աւելի քան զհինկու աշխարհակալս, այն հին հսկայ երկրակալաց հպարտութիւնն էր իրենց բնակած տեղւոյն վրայ անուննին թողուլ, ինչպէս մեր Հայկայ և իրենց զարմից վրայ մինչեւ յԱրամ պատ- մեն մեր պատմիչք. այսպէս անոր նախնիքն այլ ըրին. և մանաւանդ Թորգոմ, որ ոչ իբրեւ զԱշքանազ հայրենի ժառանգութեամբ և խաղաղու- թեամբ առած կ'երեւայ, այլ քիչ մը բռնութեամբ այլ, և բոլոր իր որդւոց ժառանգեցուցած ընդարձակ երկիրն այլ իր անուամբն Տուն Թորգոմայ անուանած, զոր ահա գրեթէ իբր 2000 տարի վերջ նոյնպէս անուանէր Եզեկիէլ մարգարէ, և յետ նորա այլք. և Վրաց պատմիչն՝ միշտ Կով- կասայ և Հայաստանի երկիրն և ազգերն նոյն անուամբ կ'անուանէ, Թոր- գոմեանք և տուն Թորգոմայ, գրեթէ ինչուան Քաղդէացւոց ինքնակալութեան ատեն կամ Սկիւթաց մեծ արշաւանաց։

Թորգոմայ տունն կամ երկիրն, նախ (ըստ վերագրելոցս) Հայկական լեռնապարուն (Մասեաց) և Հայաստաւրոսի միջոցն էր. որ նեղ գալով իր բազմածին սերնդոցն, թողուց զանիկա իր անդրանկան և մեր նախահօր Հայկայ, և անոր եղբարց տուաւ անոր հիւսիսակողմը ինչուան Կովկասու լեռնախումբը, ընդ մէջ Պոնտոսի և Սեաւ ծովուց։ Այս միջոց երկիրս Հայ- կայ եօթն քաջ և հսկայ եղբարցն ժառանգութիւն եղաւ ըստ Վրաց, որոց անուանք են ըստ երիցութեան Քարթլոս կամ Կարթլոս, Բարդոս, Մովա- կան կամ Մովկան, Լեկան կամ Լեկոս, Հերոս, Կովկաս, Եգրոս կամ Եգրէս, որք թուի թէ իրենց նախկին և հայկական հնչմամբ կոչէին Կարդ, Պարտ, Մուակ, Լեակ, Հեր, Կուակ, Եղեր։

Կարդ կամ Քարթլոս որ երկրորդ ի հսկայից Թորգոմազանց, ժառան- գեց իր երէց եղբօր՝ Հայկայ երկրին անմիջապէս հիւսիսակողմ երկիրը, զոր և իր անուամբ մինչեւ հիմայ Վիրք կոչեն Քարթլի, և զիրենք այլ Քարթուելի, իսկ մեք Վիրք և Վրաստան կոչեմք՝ յետոյ և օտար ծագմամբ առաջ եկած անունով. այն հին ատեններն մեր Տայոց և Գուգարաց նա-

Digitized by Google

հանգքն այլ Վրաց կամ Քարթլիաց ժառանգութիւն էին. որոց երկրին սահմանքն, ինչպէս մեր Հայոց՝ տեւին տեւին շատ փոփոխեցան և ընդարձակեցան։ — Պարտայ վիճակեցաւ Գուգարաց արեւելեան ծայրէն Կուր գետոյ և Հայկայ բաժնին մէջ եղած երկիրն, ինչուան Կուրի և Երասխայ խառնուրդ և ի ծով Թափած տեղն, որ յետոյ Հայոց Ուտի և Փայտակարան նահանգքն եղան. և միով անուամբ Աղուան կամ Ռան ըսուեցաւ. իսկ հակային անունն այլ ինչուան հիմայ մնայ Պարտաւ քաղաքին աւերակօք, որ յետ Հայոց իշխանութեան՝ Աղուանից մայրաքաղաքն էր։ — Մուսկայ կամ Մոսկանայ ժառանգութիւնն եղաւ Կարդայ և Պարտայ երկրին հիւսիսային արեւելակողմը՝ Իօռ կամ Փոքր Ալազան գետոյն հովիտը, կամ Թէ ասոր և Կուր գետոյն միջոցը. ուր և իր անուամբ քաղաք մը շինեց, որ ցարդ կ'երեւի Մուղան աւանաւ։ — Իսկ երկու Արագանից գետամէջքն առաւ բաժին Հերայ, և անոր անուամբ կոչեցաւ երկիրն այլ քաղաք մ'այլ Հերեք, որ և Խորասնրա։ Ասոր սահմանն արեւելքէն կ'երթար ինչուան Կովկասայ լեռնապարիսպը, որ ինչուան այն առեն « էր անմարդաձայն » (Վրդ. Պատմ.), այսինքն անբնակ. այն միայնութեան և դժարութեանց մէջ բնակեցան Լեկ, ի հարաւային արեւելս Հերայ և Մուսկայ բաժիններուն արեւելակողմը, որոյ անունը ցարդ կու հնչակեն քաջակորւ Լեկզիք, ինչուան մեր օրերս իրենց ազատութեան վրայ կռուելով ընդ Ռուսաց. — և Կովկաս կամ Կաւակ՝ որ հիւսիսային և արեւմտեան կողմերը տարածուեցաւ, և իր անուամբ բոլոր երկայնանիստ լեռնապարն և երկու ստորոտքն այլ ինչուան այսօր աշխարհածանօթ են Կովկաս կոչմամբ, և հիմայ զանազան ցեղեր բնակին հոն։ — Կաւակայ և Կարդայ սահմանաց արեւմտակողմն ինչուան ի Սեաւ ծով (կամ յԱւքսանոսեան) բաժին եղաւ Եգերայ, և անոր անուամբ կոչեցաւ առ ամենայն աշխարհագիրս և պատմիչս, և հիմայ այլ նոյնպէս ծանօթ է Աձարա ըսուելով։

Որչափ որ մեր Հայաստան աշխարհին անունն և պատճառն ստուգութիւն ունի մեր առջեւ, նոյնչափ այլ կ'երեւայ այս Հայկայ եղբարց և իրենց աշխարհաց անուանքն. զոր ոչ միայն մեր և Վրաց պատմիչք յիշեն, այլ այս հիմայ մեզի ծանօթ հեղինակներէն հին Հրեայք, և բաց ոմանց նաեւ խազիրք ի Ժ դարու[180]. որք ոչ միայն 8 այլ և 10 որդիս համրեն Թորգոմայ, յորոց ոմանք դեռ անուամբ այլ նոյնանման են, ինչպէս առաջինն Ագիոր կամ Այգիոր, որ է Հայկն, երկրորդն Տիրոս, որ Թերեւս ըլլար Վիրոս. երրորդն Ուլար (Բարլոս). չորրորդն Ուկին (Մովկան). Մնացեալքն նման չեն մեր նախայիշելոցն, այլ ուրիշ Կովկասեան ազգեր

յիշեցնեն, և են հինգերորդ՝ Գիզայ. վեցերորդ՝ Դատնա. եօթներորդ՝ Գոզար, յորմէ Խազրաց Թագաւորն կ՚ըսէր իր ազգին ծագումն և անուանէր զինքն Թագաւոր Թոգարմեանց. Արաբացիք այլ յիշեն զԽոզար իբր որդի Յաբեթի. ութերորդ՝ Մաճուր, յորմէ մեր պատմչաց ծանօթ ազգն Մանարաց. իններորդ՝ Բուլկար, յորմէ Բուլղարքն՝ յիշեալ նախ քան զամենայն պատմիչս ի Մ. Խորենացւոյ. տասներորդ՝ Սաւիր, յորմէ Սաբիր Հոնք, Թերեւս և Սիպերիացիք։ Այս ետքի վեց որդւոց անուանքն տարբեր սեպելով մեր պատմչաց յիշած ետքի չորսէն, փոխանակ ութի կամ տասին՝ 14 որդիք յիշուած կ՚ըլլան Թորգոմայ, կամ 14 ցեղք և աշխարհք։ (Վիվ. Սէն Մարդ. Բ. 22)։ Այս միաբանութիւն մեր և Վրաց պատմութեան՝ կամ աւանդութեան Կովկասայնոց ընդ աւանդութեան Հրէից կամ Խազրաց, գոնէ կու ցուցընէ թէ շատ հին և ընդարձակ է կարծիքն Թորգոմայ զաւակաց տարածուելու Տաւրոսի լեռներէն ինչուան Կովկասայ հիւսիսային սարորաքը և անկէ այլ անդին ասիական Ռուսաստանի մէջ. և կրնայ ըսուիլ թէ Կովկասայ զանազան ցեղերու շատն սերունդք են այս բազմածին և մեծազօր նահապետին որդւոց և Թոռանց։ Եւ ոչ միայն ընդ հիւսիս տարածուած վկային Թորգոմազունք, այլ և ընդ արեւելս և արեւմուտս. յարեւելս Սկիւթաց, Թաթարաց և Թիւրքմէնից հայր անուանելով զնա, որպէս առաջ յիշեցինք. և ցայսօր այս ետքիններս (Թիւրքմէնք) ճանաչեն և ասեն զիրենք Հօրեղբօրորդի Հայոց (Էմ-օղլու). և որչափ այլ օտարալեզու ըլլան, ինչ այլ որ ըլլան, մինչև իրենց Թիւրք կամ Թիւրքմէն անունն այս աւանդութեան անժխտելի պաշտպան մը պիտի ըլլայ։ — Իսկ Թորգոմայ յարեւմուտս այլ ծաւալիլն կ՚ընդունին ոմանք ի Հարց և ի մեկնչաց, անկից սեպելով զծագումն ազգաց կամ առհմից Փռիւգացւոց, Կապադովկացւոց և Գաղատացւոց, ինչպէս ոմանք (Փրենկուլփ — Պոշար — Ցլորիւսի) անոր անուամբ ճանաչեն զՏրոքմի ցեղ Կապադովկիոյ կամ Պոնտոսի։ Իսկ ոմանք ի մեր պատմչաց (Միխայէլ Ասորի. Վարդան. Մխ. Այրիվ.) զԱմազոնս այլ ի Թորգոմայ համարին, և ցուցնեն Թորգոմայ թագաւորութիւն մը ինչպէս Փոքր Ասիոյ արեւմտեան ծայրերը, որոյ Թագակալ արու ժառանգը պակսած ըլլալով, կանայք ձեռք ձգած ըլլան իշխանութիւնը, և Իլիոն քաղաքը շինեն ի Տրովադա[181]։ Ուր յայտնի կ՚երեւի առասպել առասպելի, աւանդութիւն աւանդութեան կցած, սակայն և այնպէս կ՚ընդարձակի թէ ստոյգ և անստոյգ տարածումն Թորգոմական ճիւղերու, որոյ արմատն հաստատուած է ի Հայաստան. և գոնէ հաւանական է թէ իր որդիքն և Թոռունքն միայն միակողմեան ընթացք մը չըրնեցին ի բա-

Digitized by Google

ժամման և ի ցրման իւրեանց, ինչպէս այլ նահապետք, այլ երեք կողմ այլ գացին, յարեւելք, յարեւմուտք և աւելի ի հիւսիս։

Այս երեք կողմերուն դէպ ի յոր դնաց ինքն Թորգոմ, ուր հաստատեց իր վերջին բնակութիւնն և ուր հանգչեցաւ իր 600ամեան գլուխն, ոչ ստոյգ բան մը գիտեմք և ոչ աւանդութիւն. նոյնպէս և ոչ այլ ինչ իր կենաց կամ գործոց վրայ. և ոչ այլ որոշ հասկընամ Գր. Մագիստրոսի սովորական մթարանութիւններէն մէկը, զոր կու գրէր Ահեկի ամսեան 23ին պատահած որոտման և ձեան վրայօք. «կամ եթէ ի Թորգոմեան երից » եօթնանկեանցն եռակի բարդեցելոյ Ահեկան. որում Արտաշէսն Պարթեւ » բաղձայր » և այլն, և յետոյ այս թագաւորի մեռնելու ատեն ըսած նշանաւոր խօսքը կը յիշէ ըստ աւանդութեան վիպասանից։

Թորգոմայ որդւոց և թոռանց այլ գործքերը (զատ ի Հայկէն) միայն ի Վրաց պատմութեան յիշուին համառօտ. յոտարաց միայն քանի մը հին ծանօթարարք և մեկնիչք (Սուիդաս — Յով. Անտիոքացի) յիշեն զԿովկաս ի սերնդոց Յաբեթի, իբրեւ պատերազմող հալածուած ի Թուրասայ, զոր համարին յաջորդ կամ թոռն Նինոսի. որ հաւանօրէն նշանակէ Ասուրի՝ այսինքն զԱսորեստանեայց կռիւն ընդ Կովկասայնոց և Թորգոմազանց, ինչպէս որ Վրաց պատմիչք այլ յիշեն։ Իսկ Կովկասայ համար մեր պատմիչն Վարդան այլ վկայէ, որ մի էր յերից քաջազունից ի մէջ ութ եղբարցն, «Երեք յորդւոց նորա (Թորգոմայ) նախադասէք եղեն, Հայոսն, » Քարթլոսն և Կովկասոսն, և ուրիշին ի ծովէն Պոնտոսի մինչեւ ցծով » Կասպից »։

# Ժ

# ՀԱՅԿՆ

ՄՐԲԱՋԱՆ կամ համաշխարհային պատմութիւնն և ազգային պատմութիւնն ի սկզբանէ միախառն կու գան մինչուան ի Թորգոմ նահապետ. անոր դիմաց քաշուի աստուածահիւս վարագոյրն, գրեթէ ամենայն ազգաց համար, բաց ի Հրէից. բայց մինչդեռ այլք ի մեծ և յերկար մթութեան մնան, մեր պատմութիւնն կամ ազգային աւանդութիւնն կու սկսի անմիջապէս Սուրբ Գրոց՝ Ցարեթի ազգաբանութեան լրած տեղէն, ի նոյն ինքն ի Թորգոմայ անդրանիկ որդւոյն, որ ժառանգելով անոր յաբեթաբաժին երկիրը, փոխանակ նորին և անոր նախնեաց կու թողու հոն և իրմէ սերեալ ցեղին վրայ իւր անունը. և մինչդեռ առաջին անուանքն հետ զհետէ կու քաշուին, կու ծածկուին կամ քիչ քիչ յիշուին, այնուհետեւ մնայ իր անունն երկրին բնիկ ժողովրդեան մէջ, որ անով կոչեն զիրար Հայ և զաշխարհն իւրեանց Հայաստան. և անշուշտ այս և այսպէս բռուած և լռուած է (գոնէ հոն) 4400 տարիէ ի վեր։ Այսչափ երկայն դարեր (որ խիստ քիչ ազգաց ժամանակագրութեան մէջ գտուին) չի կրցան մոռացնել կամ նուազել զանուն Ազգապետին մերոյ Հայկայ. 44 դար առաջ իր որդիքն և անոնց տպաւորած անձինք ի զանազան տոհմից՝ զՀայկն հռչակէին իբրեւ ազատարար և պաշտպան իւրեանց ի բռնաւորութենէն Բելայ, յետ այնքան դարուց այսօր այլ ի բերան և ի սիրտ իր սերնդոց քաղցր և գրեթէ պաշտելի է այդ անունդ յետ անուան Աստուծոյ։ Քրիստոնէութիւնն և անկէ առաջ այլ ճշմարիտ աստուածպաշտութիւնն օտար և մոլար ազգաց զառածմունքէն զգուշացունելով մեր նախնիքը՝ չի դրաւ ի կարգի աստուածոց, այլ իբրեւ աստուածամերձ և վեհագործ անձն պահեց ի պարս համաստեղութեանց, և հոն ընդ մէջ Երիդանոսի և Երկուորեակի տեսանէ և ճանաչէ ցայսօր իւր պայծառաճեմ Հայկն։

Սուրբ գիրքն, ինչպէս ըսինք, մինչեւ ցինքն ազգաբանեն զՅաբեթեանս, և անմիջապէս իր հօրն անուամբ լռելով Հայկն մնայ ընդ մէջ անմխտելի պատմութեան և ընդ մէջ աւանդութեան. որով և երկրայութեան և հակառակութեան ենթակայ կրնայ ըլլալ և եղած է. կենդանի կամ շօշափելի

արձանաց պակասութիւնն, օտար ազգաց լռութիւնն, դարուց հնութիւնն, և գիւցազանց մերձաւոր ըլլալն՝ թէ ժամանակաւ և թէ գործովք, կ'աւելցընեն այս տարակոյսս, մանաւանդ ի միտս օտարազգեաց, ուր մեր հայրենական սիրոյն կանխելով, բաւական կու սեպէ ի հաւատս, մերազգի պատմչաց և Հարց միաձայն վկայութիւնը, պատմութեան անառարկելի ճշմարտանմանութիւնը, այն մեծ անձին անուան յարատեւ մնալն թէ ի վերայ ազգին և թէ ի զանազան տեղիս աշխարհին իւրոյ։ Այս ետքի փաստս հաստարակայ մնաց այլ պէտք է մեծ հաւաստիք մ'ընծայել թէ եղած է Հայկն, զորոյ անունը կրէ ազգ մը յառաջ քան զժամանակս իւր Արմէն կոչուելուն յօտարաց, որ և ինքնին ըստ գրաւոր յիշատակաց 2500 տարուան՝ և ըստ աւանդութեան պատմչաց 4000 տարուան հնութիւն մ'ունի. և դարձեալ ինչուան հիմայ մեր աշխարհին մէջ մեզի ծանօթ 10 կամ 15ի չափ Հայկ անուն տեղուանք, աւելի ի հարաւային կողմանս աշխարհին, զամէն երկչոտ և երկմիտ պիտի ստիպեն կանգ առնուլ և այդ անուան հնութեան և կրկնութեանց պատճառը պահանջել։ Ուրիշ արձան չունենալով պէտք է այս փաստս ուժով բռնել և սակէ սկսանիլ Հայկայ և մեր բնիկ պատմութիւնը։ Մանաւանդ որ մինչ հին մատենագրութիւն չունելով, կու ստիպուիմք յօտար ազգաց մեր հնութիւնները քննել, այս քանիս նկատմամբ՝ անոնցմէ այլ զուրկ եմք, այսինքն, ոչ թէ միայն զՀայկն չեն յիշեր, այլ և ոչ Հայ անուամբ զազգ նորա, այլ նախայիշեալ անուամբք (Թորգոմ, Արարատ, Արմէն և այլն)․ որով Հայ անունն գրուածով այլ զանեմք նախ ի մեր ընտիր հեղինակս Դ—Ե դարուց։ Լսեցինք երբեմն թէ բեւեռաքանդակ արձանաց վրայ կարդացուեր է Հայ կամ Հայկայ անունն, այլ մեզ անստոյգ է և տեղին և ընթերցուածն։ Հայկայ անունն և պատմութիւնը գիտեմք, որ գրուած էր յունարէն և ասորերէն գոնէ Քրիստոսէ դար մը առաջ ի ձեռն Մար Աբասայ. բայց հիմայ ասոր ոչ բնագիրը և ոչ լիակատար թարգմանութիւնը ունենալով, հնագոյն պատմիչք մեր մնան ի Դ—Ե դարէ յետ Քրիստոսի։ Իսկ մնացեալ արձանագրութիւնք ազգայինք անոնցմէ այլ նոր են, թէպէտեւ ըստ որում նիւթական արձան՝ հնագոյնք քան զՁեռագիր գաղափարս պատմութեանցն։ Սակայն որպէս քան զպատմիչքն հին են պատմութիւնքն, հնագոյն են և հայակիր անուանք տեղեաց. մանաւանդ որ յոմանս ի տեղեացն հիմայ Հայ բնակիչ այլ չիգտուելով հին առնն անոր հոն բնակիլը յայտնի է։ Այսպիսիք սեպելու է Հայք գեղը ի ստորոտ Ջարապեհն Քէլի—շին (Կապոյտ—սիւն) լերին, յորոյ վրայ բեւեռաքանդակ արձանագիր կայ յ'9000' բարձրութեան. — Հայկս, ի

Գերմարի միճակի Հէքարեայ գաւառի կամ նահանգի Կորճայից, թէ նոյն իսկ այս հիմկու նահանգին անունն այլ չէ ծագած ի Հայք—արք անունէ կամ յԱյգառք գաւառէ Կորճայից. — որոյ մօտ ծանօթ է և Հայկաւն կամ Հէքաւն գեօղ ի Նօտըրզ. որպէս ի հնումն յիշեալ (Պատմ. Հռիփսիմ.) Հայաստանն գաւառ ի նոյն կողմանս. — և անկէ ոչ շատ հեռի յարեւելից հիւսիսոյ հիմկու Վան գաւառին սահմանաց մէջ զանազան տեղիք ամէնուն ծանօթք, Հայոց ձոր գաւառակն, յորում պատմութիւնն յիշէ զՀայք, որ թուի հիմայ Խեք կոչուիլ. Հայկայ—բերդն, Թոնցեալ աւերակ հին և մամռոտ քարերով. Հայկաւանս, մօտ ի Վան քաղաք. — միւս կողմէն՝ ի հիւսիսոյ արեւմտից՝ պատմութիւնն յիշէ զՀայկաշէն ի Հարք, և ճանապարհորդն կամ տեղացին ցուցընէ զՀայք (կամ Փայք) ի Խնուս, զՀայք աւան յԱլաշկերտ, և ինչուան յերկրին Կոտեքայ այլ, ի ստորոտս Ջիմէնտաղ լերին՝ Հայք գեղ մը, որք ամենեքին արձագանգ տան մեր ազգին անմեռանելի ընդհանուր կոչմանն Հայ՝ և աշխարհիս Հայաստան։

Օտարաց անծանօթ ըլլալովը՝ անոնց ստուգաբանութեան տակն այլ չէ ընկած այս անունս, ինչպէս Արմէնն և Արարատն. իսկ ըստ մերոցս անտարակոյս է որ ծագած է յանուանէ մեր ազգապետին Հայկայ. իսկ իր անունն ուստի՞ ծագել է կամ ինչ նշանակէ, շատ դժար է գուշակելն, իր կարճ և գրեթէ վանկ մ'ըլլալուն համար։ Ազգերնուս կոչումն զոր հիմայ Հայ գրեմք և վերջին գիրն այլ հնչեմք որպէս Y գիրն յունական կամ անգղիական, ստուգապէս է ՀԱ, ինչպէս ցարդ ընիկ երկրցիք կ'անուանեն զիրենք, և հոլովելով այլ Հա-ոց կ'ըսեն, մինչեւ Հաւոց այլ լսուիլ, զոր օրինակ Հաւու ձոր միճակն, որ է Հայոց ձոր ըստ նախնի գրչաց, այսպէս Թուի և Հաւուց Թառ = Հայոց – Թառ, փոխաձայն գրուած ի նախնեաց իսկ։ Արդ այս հնչումս և նոյն ինքն մեր ազգապետին անուան նուազական վերջաւորութիւնն Հայկ, յայտնէ թէ իր ընիկ կոչումն էր Հա, ինչպէս որ և Վրաց հին պատմիչն կոչէ զնա Հա—ոս, որ է ըսել Հա[182]. և այս ձայնին յարմարի պատմութիւնն այլ, որ վկայէ թէ Հայկ զազգ իւր ինքնին անուանեց յոգնաբար Հայք։ Այս փոքրիկ և հազագային հնչումն իբր յատուկ անուն մեր նախահօրն, շատ խոր հնութիւն և իսկական բան մը ցուցընէ, և աւելի զարմանալի է երբ յիշենք մէկ մը իր հօր և նախնեաց աւելի երկայն և յօդեալ անուանքը, Թորգոմ, Թիրաս, Գոմեր, մէկ մ'այլ իր որդւոց և թոռանց անուանքը, որ ամենեւին իրենին չեն նմանիր և ընդհանրապէս Ար ու ամ վանգովք յօդեալ են, ինչպէս Արամենակ, Արամայիս, Ամ—ասիա, Գեղ—ամ, Ար—ամ, Արա և այլն[183]։ Թէ հարց և թէ որդւոց

անուանքն՝ Արիական լեզուի յատկութիւն յայտնեն, իսկ իրենն կարծեմ թէ սեմական գաղափար մ'ընծայէ, կամ թէ սկզբնական լեզուին և ժամանակին նահապետաց յարմարի, ինչպէս Նոյ, Սեմ, Քամ, Յաբեթ (վասն զի մեզի յաւելուած մ'երեւի այս եւ վերջաւորութիւնն մեր Նոյեան նահապետին անուան): Եւ այս անուան աննմանութիւնն ու եզականութիւնն այլ կրնար քիչ մը զօրացընել անանց կարծիքը, որ առասպելեալ կամ գիտցուած անձ մը համարին զՀայկն: Բայց ինձ երեւի թէ Հա մեր ազգապետին երկրորդական կամ մակ—անուն մ'է, և գուցէ ոմանք նոյն իսկ մեր լեզուէն ստուգաբանէին Հի—անալ կամ Հայ—իլ բառերէն, որպէս թէ հիանալի կամ հայելի, հոյակապ, երեւելի անձն. իսկ ես կ'ընարեմ մեր Հ տառէն և ձայնէն առնուլ իբր ոյժ և զօրութիւն նշանակութեամբ. որով կազմած կամ բաղադրած են Հ—զօր, Հաստ, Հսկայ, Հ—ոգի և այլն բառերն. և մեր նախայիշեալ հին բառագրոց մեկնութեանն հաւանիմ որ զՀայք — Հսկայք թարգմանէ. և թուի թէ ի Բաբելոն աշտարակաշինութենէ ետեւ հսկայամարտութեանց առեն առած ըլլայ Հա (կամ անկէ ծագած Հայկ) կոչումը: Յայտնի է որ անգղ—գերման լեզուաց մէջ համաձայն բառն այլ High կամ Heag (Հայ – Հիկ) նշանակէ Բարձր:

Ոչ միայն նուագաբար և փաղաքշաբար անուանած է Հայկ իբր Հայակ, այլ իբրեւ այդ նշանական անունն իրեն սեփական, (զոր օրինակ և ախոյենին Ներրովթայ հսկայ կոչուիլն ի Ս. Գիրս), սովորութիւն եղած է ի հնուց անուան ծայրը աւելցնել անձնորոշ մասնիկը Ն, և իբր ընիկ անուանել Հայկն, մանաւանդ երբ այդ անուամբ նշանակուի մեր նահապետին նուիրեալ աստղն, զոր Յոյնք և Լատինք կոչեն Օրիոն, յանուն առասպելեալ գիւցազի միոյ. որպէս ընթեռնումք ի Ս. Գիրս Յովբայ, «Քո՞ բացեալ իցէ զպատրուակ Հայկին». և յԵսայի «Աստեղք երկնից Հայկիւն հանդերձ». — «Ի վերայ եօթնաստեղաց Հայկինն». և ի վարս Ս. Գրիգորիսի Արիստակազգացւոյ շատ անգամ, «Ուստի ինձ զկարգաւորութիւն Հայկինն... և յորժամ բանին զրունս Հայկինն»: — Թողլով առ այժմ Հայկին աստեղազարդ երկնակամարին մէջ բռնած տեղն, միայն անուան ուշ դնենք, որ թուի ինձ թէ այսու որոշեալ հնչմամբ Հայկն ծանօթ էր ի հնումն և մերձաւորաց ազգիս, յորս ամենամօտքն էին Փռիւգացիք, որպէս տեսանք (92), և սոքա ճանաչեն իրենց գիւցախառն նախաշնորհ երգահնար մը Հայկնիս կամ Հիակնէս անուն Ὑάγνης, ի Լատինաց Hyagnes կոչեցեալ[184]: Անուանց նմանաձայնութիւնն երբեմն պատմութեան այլ նմանութիւն կու գտնէ. այսպէս թուի հնաւէր և բնաւէր Հելլենախօսաց

մը (Տիպուս, Բ. 16.) կարծիքն այլ, որ Յունաց առասպելաց յիշեալ Այետես Թագաւորը Կողքեաց՝ նոյն համարի ընդ Հայկայ. Հայկն առէ ի Բաբելոնէ եկաւ ըստ ազգային և Քաղդէայի աւանդութեանց. այն քաղաքն Արեւու Նաւիրական քաղաք էր. արդ Յոյնք այլ Այետեայ համար տեսն թէ էր որդի արեւու և Պերսեայ դստեր արեւու[185]:

Ուրիշ փիլիսոփայ հեղինակ մ'այլ (Վոլնէյ), պատմութեան հնաւոր և բանազբօսեալ նմանութիւն մը կու գտնէ՝ զՀայկ դիւցային կամ առասպել ջանալով ցուցընել, և անոր հալածուիլն ի Բելայ կամ ի Բաբելոնէ՝ համարի Յունաց առասպելը իրենց Ապոլոն չաստուածոյն վրայօք, որ ի դից և ի դիւցազնաց Ողիմպոսէ հալածուելով՝ իջաւ յերկիր ի Թեսաղիա և անոր Ադմետայ Թագաւորի հովուաց եղբ և երաժշտութիւն սովրեցնէր: Երաժշտապետի պատուով կու ուրեմն զՀայկ Ապոլոնի նմանցնել, որուն փառզական Հայոցինի աւանդութիւնն այլ միաբանի, բայց ուրիշ կողմանէ հաւանականութիւն չեմ գտներ: Զարմանք չէ օտարաց և նորաց տարակուսելն կամ այլաբանելն զՀայկայ, երբ մեր հնագոյն պատմչաց և աւանդաբանից մէջ այլ անտեղի գրոյցներ ըլլալն կ'իմացընէ մեզի Խորենացին, զգուշացնելով հաւատալ անոր կամ անոնց՝ որք «Անոճ ինձ յաղագս Հայկայ և նմանեաց կակազել» էին: Իսկ իր պատմութիւնն զոր ի Մարիբասայ, յԱփիւղեննեայ և յազգային գրուցաց հաւաքեր էր, քիչ այլայլութեամբ և յաւելուածով քանի մ'ուրիշ պատմչաց և աւանդաբանից՝ մեր պատմելեաց նիւթն է, և կ'ընծայէ մեզի նախ դիւցակերպ հսկայ կարիճ մը, վայրպետ աղեղնաւոր և գինաշարժ, հակառակորդ երկրիս առաջին բռնաւորին (Բելայ), յորմէ զոնէ իր հայրենի առհմը և երկիրը կ'ազատէ, և քաջութեամբ վանելով զբռնաթիւնը, կ'ապահովէ զազատութիւն երկրին իրոյ, զոր և շինութեամբք և քաղաքական կարգօք և իմաստութեամբն յարդարելով կու թողու իր որդւոցն:

Թորգոմայ որդւոց անդրանիկն է Հայկ կամ ամենէն քաջն, ըստ վկայութեան մերոց և օտարաց, որպէս տեսանք, այն հին նահապետաց ազգաբանութեան համեմատութեամբ՝ իր հօր կենաց իբր 100որդ տարին ծնած կրնայ սեպուիլ, կամ իբր 350–400 տարի յետ ջրհեղեղի, յԱրարատեան կամ ի Նոյարնակ երկրին, ջրհեղեղին վկայ և ազգահայր նահապետաց քով, Յաբեթի ընտանեաց և ժառանգութեան մէջ, որոյ և յետին Թոռն կամ պայազատ կրնայ ըսուիլ, հոն ի հասարակաց հայրենիքն ի լոյս գալով, և որոյ անունն այլ կրէ իբրեւ սեփական իւր առհմին կամ իբրեւ ուղիղ պայազատ մեր հին պատմչաց[186], Թերեւս և միպատանից մէջ. կոչելով Հայկն յաբեթեան կամ յաբեթածին, մանաւանդ որ Բելայ



Digitized by Google

և Տիգրանայ դէմ յիշուի։ Հին նահապետաց մէջ մնած՝ անոնց նոյեան աւանդութիւններն այլ ընդունած էր։ Բայց ոչ երկար տարիներ հոն մնաց. այլ երբ միաբանեցան շատք ի նահապետաց երթալ ի Սենաար, Թորգոմ այլ այն յանդուգն և ձեռնարկող սանուտեարց մէկն ըլլալով, զՀայկ այլ մէկտեղ տարաւ հոն, մինչ սա դեռ նորահաս երիտասարդ կ'ըլլար ըստ այն ժամանակին. վասն զի պատմութիւնն վկայէ թէ ինքն զԱրմենակ (իր անդրանիկը) ծնաւ ի Բաբելոն. և ըստ այսմ սանուտեարց ցրուիլն այլ յԱրարատայ, գոնէ Թորգոմայ հետ եկողներուն, պէտք է ըլլայ յառաջ քան զաւորական նշանակեալ Թուական ազգաց բաժանման (525 տարի յետ ջրհեղեղի), կամ թէ առաջին ցրուելու առեն եղած ըլլայ, զոր յիշեցինք (75). դարձեալ պէտք է համարիլ որ հարիւրաւոր տարի բնակած ըլլայ Հայկն ի Բաբելոնի, որովհետև ոչ միայն որդիք ունեցաւ հոն, այլ և որդւոց որդիս, որք արդէն չափահաս կարիճք էին՝ անկէ ելած և յԱրարատ դարձած առեն։ Նոյնն գուշակուի և ընդհանուր պատմութեան և Ս. Գրոց ոճէն, թէ եկեալքն յԱրարադայ ոչ կարճ ժամանակ բնակեցան ի Սենաար, համանօրէն իրենց առաջին նահապետական կամ սանուտիրական օրինօք. և որովհետև երկիրն դաշտ էր ընդարձակ, և ոչ լերինք կային և ոչ քարինք ու քարայրք, անոնց մէջ ապաւինելու, կամ անոնցմով իրենց բնակարան շինելու, ինչպէս սովոր էին յերկրին Արարադայ, պէտքն և միտքն իրենց նոր ճար ցըցուց. «Ասեն այր ցընկեր իւր, եկայք արկցուք » աղիւս, և թրծեսցուք զայն հրով, և եղև նոցա աղիւսն ի տեղի քարի, » և կուպր ի տեղի շաղախոյ»։ Այս նիւթերով ընդարձակ քաղաքներ կամ պարսպապատ բնակութեան տեղուանք շինեցին, որք յետոյ Բաբելացւոց և Քաղդէացւոց թագաւորներէն նորոգուելով և դարձեալ աւրուելով, մինչև ցայսօր կու թողուն աւերակներ զանազան դարուց խառնուրդ։ Այս շէնքերուն մէջ Ս. Գիրք կու յիշեն ութ մեծամեծ քաղաքներ Ասորեստանի և Բաբելոնի և Տիգրիսի ու Եփրատայ միջոց, և առնցմէ զատ Բաբելոնի մեծ աշտարակը, որ այն ահեղ և մեծազօր հսկայից արժանի մեծագործ շէնք մը պիտի ըլլար և յիշատակ ապագայ դարուց. եթէ ոչ ցրուէր Աստուած անոնց մեծամտութիւնն այլ իրենց շինուածին հետ մէկտեղ, և զիրենք այլ մէկմէկէ զատէր աշխարհաքարոզ լեզուաց խառնակութեամբն, զոր յիշեցինք ի սկզբան պատմութեանս։

Հոս կ'ուզեմք նկատել որ այս շինութեանց ձեռներէց առաջնորդ կու ցուցնեն մեզի Ս. Գիրք զՆեբրովթ, որ է Բէլ ըստ արտաքնոց. և ըստ ոմանց թարգմանութեան կամ իմացուածոյ նաև Ասուր որդին Սեմայ[187]. իսկ

Digitized by Google

մեր աւանդական պատմիչք երեք գլխաւոր աստղ և Շնաբար, զԲէլ, զԼամ-սուր և զՀայկն։ Երկրորդն՝ եթէ ոչ նոյն ինքն Ասուր է, ով ըլլալն յայտնի չէ. բայց ոմանք փոխանակ նորա՝ զՓաղէկն աստղն առաջնորդ Սեմեանց. իսկ երրորդին՝ այսինքն մեր ազգապետին ճեռներիցութիւնն վկայեալ է և յօրինակագիր պատմահարց մերոց. որոց Հայրն և աղբիւրն Մարիբաս[188] ի Քաղդէացւոց հին պատմչաց վսեմ և վայելուչ օրինակաւ կարգէ իր և մեր և Հայկայ պատմութեան սկիզբն. զոր և արժան է ընդ Վաղարշակայ ամենայն ազգասիրի արձանագրել իր գրեանց մէջ. «Ահեղք և երեւելիք
» առաջինքն ի գիգ, և մեծամեծաց աշխարհի բարեաց պատճառք, որ
» սկիզբն աշխարհի և բազմամարդութեան...։ Յորոց մի էր և Յաբետոս-
» Թեանն Հայկ, անուանի և քաջ նախարար, կորովաձիգ և հաստաղեղն...
» գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խաժակն և հաստաբազուկ։ Սա
» ի մէջ սկայիցն քաջ և երեւելի լեալ»։ Այս մեր ազգապետին բարեմասնութիւնքը ուրիշ ազգային հին պատմիչ մ՚այլ՝ կամ նոյն առաջին պատմչին ուրիշ թարգմանք այլ (Սեբէոս. Մովս. Կաղանկ.) յիշեն, կոչելով զնա Սկայազօր կամ Հզօր զօրութեամբ, Արի, մարտիկ յոյժ, գեղեցիկ, քաջի անձամբ և այլն. յորս գլխաւոր գիտելի յատկութիւնքն են նախ հսկայութիւնն, որով կ՚իմացընեն հինքն զմեծութիւն և զօրն մարմնոյ. որոյ հետ իմանալու է և բանութիւնն ու բանաւորութիւնն. աւելի այս յետինն՝ ըստ Սուրբ Գրոց. բայց արտաքինք և ռամիկք ըստ երեւակայութեան հաճոյից աւելի մարմնոյ յաղթանդամութիւն իմանալով, անճոռնի հասակներ և չափեր կու ստեղծեն, ինչպէս Բէլայ համար այլ կ՚ըսեն թէ 60 կանգուն հասակ ունէր, իսկ Հայկին համար 36 կանգուն. անշուշտ առաջնոյն չափն Նաբուգոդոնոսորայ կանգնած անդրոյն չափէն առած է. երկրորդն այլ գուցէ անդրիէ մը զոր Հայք կանգներ էին ի պատիւ իրենց նախահօր, որպէս յետոյ կանգնեցին Վահագնի և Գիսանեայ և այլն։ Բայց հսկայութենէն աւելի յատկացընեն պատմիչք զգեղեցկութիւն կամ զվայելչութիւն մարմնոյ և կերպարանաց ազգապետին մերոյ. որով կ՚իմացուի այլ թէ ազգերնիս ի վաղուց կու յարգէր և սիրէր այս անձնական ձիրքը, և ընդ ուժոյ պահանջէր շնորհք և զարդ կերպարանաց իր կարիճներէն և զօրիկներէն. որոյ մեծ հաւաստիքն է և Արայի պատմութիւնն. իսկ հօս մեր դիւցազին ընծայուած մասնաւոր շնորհքն են խաժակն ըլլալն, որ թուի վառվռուն նայուածքն, և քաջագանգուր, որով կ՚իմանամ երկայն և հիւսուած խոպոպիքներն, ինչպէս Ասորեստանեայց անդրեաց վրայ տեսնեմք. այս երկու մասնաւոր յատկութիւնքն այլ իբրեւ սեփականք Հայոց արդէն գիտուած են

Digitized by Google

յօտարաց իսկ. հին Հռովմայեցիք յիշեն և կոչեն վարսագեղ զՀայս, իսկ հիմայ շատոնց ծանօթ է Հայոց աչեղութիւնն: Մեր դիւցազին երրորդ և մեծ ձիրք եւս վկայի քաջութիւնն, և իբրև սեփական ընծայուի իւրն մակդիր Արի այր, ինչպէս Բելայ Աճեղ արքայ. և մարտիկ յոյժ բացատրութիւնն այլ յիշեցընէ այն հսկայից կռիւներն որ Բաբելոնի խառնակութեան ատեն եղան, և որոց մէջ անուանի հանդիսացաւ մեր նահապետն: Բայց իր ամենէն յատուկ և եզական և գրեթէ սրբազնացեալ տուրքն է աղեղնաւորութիւնն, որոյ համար զանազան բացատրութեամբ կոչի Աղեղնաւոր, կամ լաւ եւս յոյժ աղեղնաւոր, կամ կորովի աղեղամբ, հաստաղեղն և կորովաձիգ, և կրնամք թերևս անուանել զՀայկն մեր հեղինակ աղեղան. եթէ ոչ իբրև հնարողութեամբ՝ անշուշտ գործածութեամբ առաջին աղեղնաւոր աշխարհի. Թէպէտ հոս ազգագրոյց և գրաւոր աւանդութիւն մը (Դիւանք Աղթամարայ), զգիւտն լարաշարժ գործւոյս այլ ընծայէ Հայկայ, և կերպով մը սրբազանէ այլ. վասն զի յերազի երևցաւ նմա կ'ըսէ աղեղն և նետ, զոր շինելով և ի գործ ածելով, հարուածեց այնով իր թշնամիները. և այս գիւտածս, ըստ զրուցարանութեանն, եղաւ յետ դարձի Հայկին ի Բաբելոնէ և ի բնակութեան ի Հայոց Ձոր. բայց սաուգագոյն է թէ և ի դաշտին Սենաարայ ցուցեր էր Հայկն իր կորովաձգութիւնը հաստ աղեղամբն, որով մրցէր ընդ Նեբրովթայ կամ Բելայ, այն որ անուանէր որսորդ հսկայ առաջի Աստուծոյ (Ծն. Ժ. 9):

Յառաջ քան զաշտարակաշինութիւնն՝ որոյ վախճանն էր, ըստ Սուրբ Գրոց, յիշատակ մարդկան թողուլ յերկրի, անոր հեռաւոր կողմերը ցրուելէն առաջ, Սենաարայ մէջ բազմացեալ նահապետական օրինօք ապրէին և միաբանութեամբ և միով լեզուաւ. իսկ երբ դարձեալ շատցան և այն ընդարձակ դաշտն այլ իրենց նեղ եկաւ և ձեռք զարկին շինութեան աշտարակին, արդէն ներքին շփոթութիւններն սկսեր էին նահապետաց մէջ, և իշխանասիրութեան կամ բռնութեան ոգին կու զօրանայր. փոխանակ բնական օրինաց բռնութիւն կամաց և ձեռաց երևցաւ. յորում յաջողագոյն կամ յանդգնագոյն գտուելով Նեբրովթ որդին Քուշայ Քամեան, և ըստ աւանդութենէ ոմանց՝ (Վարդան) քաջորսորդութեամբն կերակուր ճարելով աշխատողաց աշտարակին, զոմանս սիրով շահեցաւ, զայլս բռնութեամբ և բազմութեամբ իր կուսակցացն և ամէնուն վրայ կ'ուզէր իշխել. Հարկ էր կամ շատ հեռանալ այն կողմերէն, կամ զինքը ճանչնալ տէր և իշխող, հակառակ աստուածադրական օրինաց նահապետացն՝ որք ստիպուեցան այս երկու հնարից մէկը ընել: Բայց մէջերնին զօրագոյնքն՝

Digitized by Google

Թէպէտ քիչք՝ երրորդ ճամբայ մ՚այլ փորձեցին, բռնութեամբ բռնաւորին դէմ կենալ. կամ նուաճել զնա և Նոյեան հրամանաց և կարգաց հաւանեցնել, կամ իրենց ցեղը և տունը անոր բռնաբարութենէն ազատ պահել: Հոս ուրիշ արեւելեան աւանդութիւն կամ առասպել մ՚այլ (զոր յիշէ պատմահայր մեր Խորենացի) աւանդէ թէ ոմանք այլ այս շփոթիցս մէջ ջանային խաղա-ղել զամենքը հաւասար իրաւանց տէր և անտարբեր ցուցընելով, յորոց էր և Կենտորոս Պիւռիդեայ բուռած մէկն (որոյ անունն յայտնապէս այլ-այլեալ է ի Յունաց), և զոր Պարոք նոյնացուցին ընդ առասպելեալ դիւ-ցազնին Բիւրասպի Աժդահակայ. որ և հնազանդելով Նեբրովթայ՝ իր ցեղին տանուտիրութիւնը ժառանգեց, և սկսաւ հասարակայնութիւն մը քարոզել (communisme), որ ինչպէս հիմկու տաեն շատերը գլխէ կու հանէ և հաստատ գլխոց անընդունելի է, այն տաեն այլ նոյնպէս եղաւ. ոմանք հետեւեցան իրեն, մանաւանդ որ, կ՚ըսեն, առեղահմայութեամբ և կա-խարդութեամբ այլ խաբէբէր զիրենք, իսկ ոմանք այնով աւելի ճանչնալով անոր խաբէութիւնը՝ հալածեցին իրենցմէ:

Ահա այս տաեն կ՚երեւի Թորգոմայ դառնալն յերկիրն նահապետական. իսկ Հայկն դեռ մնալով ի Բաբելոն, անդրանկութեամբ Յաբեթեան ցեղին պայազատն ճանաչուէր, և քաջութեամբ ու իմաստութեամբ նշանաւոր ի մէջ հսկայից. որով «և ընդդիմակաց ամենեցուն որք ամբարտաւանին զձեռն » միապետել ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց»: Ուրիշ իրաւա-խոհից նման կ՚ուզէր որ ամէն տանուտէր իր վիճակին տիրէ, բայց շա-տերէն այլ զօրաւոր ըլլալով, ոչ միայն բանիւ, այլ և ուժով դէմ կենար անոնց բռնաբարութեանը, և պաշտպանէր զտկարս: Այսպէս պատմութիւնն ընծայէ մեզի զազգապետն մեր նախ և առաջ արդար և հզօր պաշտպան իրաւանց, նեղելոց և նուաճեալ ազատութեան. ինչպէս որ զԲէլ ցուցանէ առաջին բռնաւոր և անիրաւ նուաճող օտարաց ազատութեանն: Հարկ էր որ այս կրկին ոգիք միանգամայն և կրկին հսկայք քաջք, իրարու դէմ գային. Բէլ արդէն ոչ միայն իր Քամեան ցեղին նահապետաց բազմու-թիւնը հնազանդեցուցեր էր, այլ և Սեմական ցեղը, առոր վիճակեալ երկիրներուն մէջ բնակելով և քաղաքաշինելով. կարգն եկաւ Յաբեթեանց այլ, որոց առաջնորդ և պաշտպան կեցաւ Հայկն, և «Խրոխտացեալ ամբարձ » զձեռն իւր ընդդէմ բռնաւորութեանն Բելայ, ի տարածանել ազգի մարդկան » ընդ լայնութիւն ամենայն երկրի, ի մէջ բազմախոյժ սկայիցն, անհուն » խոլաց և ուժաւորաց: Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր զսուր » ի կող ընկերի իւրոյ ձգելով՝ ջանային տիրել ի վերայ միմեանց. ուր

Digitized by Google

« պատահմունք ի դէպ ելանէին Բելայ ընմանալ ունել զամենայն երկիր »։ Բէլ ոչ միայն մերձաւորաց, այլ և բաւական հեռաւորաց վրայ այլ իր իշխանութիւնը տարածեր էր. թէ և յայտնի չէ թէ այն հին ատեն ի՞նչ էր հնազանդելոց պարտքն կամ հրամայողին իրաւունքն. ըստ աւանդաբանից՝ Բէլ ոչ տանուտէր՝ այլ Թագաւոր անուանելի էր զինքն՝ Թագով այլ պսակելով և չէր Թողուր ուրիշներու այդ պատիւը, և ուզէր որ զինքը ամէնքն ճանչնան գերագոյն տէր, և ինչուան, աստուած մը յերկրի, զոր և ջանայր հաւատացընել Բիւրասպեան կախարդանօք, ըստ հին պատմչին մերոյ[189]. իր պատկերն այլ փորագրելով խաւրէր ի պաշտօն ազգաց և լեզուաց։ Հայկն արհամարհելով այս բաները, բայց յետ երկար կռուոյ և փորձոյ (իբր 50 տարիներու), չկարենալով այլ քինչերով Բելայ միաբանից բազմութեան դէմ կենալ, իր հօրը և եղբարցն ճամբան բռնել ուզեց. ժողվեց իր սերունդքը, որդիք և Թոռունք, որոց Թիւն կու հասնէր մինչև 302 կտրիճ մարդ[190], զատ ի կանանց և ի տկար հասակաց. անոնց հետ՝ առաջուց իրեն իբրև ծառայող անձինք և կամաւ իրեն ապաւինեալք, որք հարկ է Թէ միանգամայն քանի մը հազար պիտի ըլլային. անոնց ամէն ստացուածքն այլ մէկտեղ առնելով՝ Բելայ ուրիշ տեղ գրաւած ատեն, կամ զէնքով ճամբայ բանալով, իր հարց և յետոյ մեր հայրենեաց երկրէն բղխած գետերուն ընԹացքը բռնելով՝ դէպ ի վեր ելաւ՝ երԹալու յԱրարատեան և ի Նոյեան բնաշխարհն. և անցնելով Ասուրայ (Սեմայ անդրանկան) սեփականեալ սահմաններէն, և կտրելով անոր և Յաբեթական ցեղապետութեան անջրպետ Կորճայից լեռներն՝ մտաւ ի Նոյարնակն Արարատ։ Ահա այս փախուստն է Հայկին ի Բաբելոնէ, զոր Վոլնէյ համեմատէ կամ համարի Ապողոն յԱրամազդայ հալածեալ[191]։

Հայկայ դարձն յերկիր նախնեացն եղաւ իբր 2500 տարի յառաջ քան զԹուական Փրկչին. և իր նահապետական տունը մտած օրը՝ ըստ աւանդութեան տոմարագրաց և տօնագրաց մերոց՝ կարգեց գլխաւոր օր տօնի տարւոյն կամ տարեգլուխ. վասն զի, կ'ըսեն, այսպէս ըրին ամէն ցեղապետք այլ, իրենց երկիրը մտած օրերնին. իսկ Հայկայ մտած օրն էր ըստ յուլեան (հին) տոմարի, օգոստոս 11 կամ ըստ այլոց՝ 13 (23–25 ըստ նոր տոմարի). և մինչև ցայժմ այս է հաստատուն տարէմուտ հին հայ տոմարին կամ Յայսմաւուրաց և Սարկաւագի ըրուածին. բայց այն օրէն սկզբնաւորեալ Թուականն, որ և Հայկայ Շրջան կ'ըսուի, սկսած է քանի մը տարի առաջ, 2492 տարի յառաջ քան զծնունդ Փրկչին, երբ Հայկն յաղԹելով իր հակառակորդին՝ բոլորովին ազատեց զտունն Թորգոմայ ի

թանութեանէ Բելայ ։ Վասն զի այսոր իշխանութիւնն ոչ միայն Սենաարայ վրայ, այլ և հեռաւոր աշխարհներ սփռած էր, և նոյն ինքն Թորգոմ իր մեկայլ զաւակօքն անկէ ազատ չէր ,. նաև Արարատայ և կովկասեան եր-կիրներր անոնց բաժնելէն վերջն այլ. ինչուան որ Հայկն հաստատուելով իր արտրատեան բաժնին մէջ և նուաճելով չորս բոլորը , յայտնապէս գլուխ քաշեց և ինքնագլուխ ազգապետ եղաւ ։

Հայկ քիչ ատեն բնակեցաւ ի Լեռնոտն Արարատ , ի հին նահապե-տական տանն , ուր հաւանօրէն կային ի Բաբելոն չգացող կամ անկէ շուտ դարձող բնակիչք. որոց մէջ անշուշտ մնացեր էր հին նոյեան լեզուն. և հարկ էր որ Հայկայ լեզուն այլ (եթէ նոր էր Բաբելոնէն բերածն) խառ-նուէր հնոյն հետ, մինչդեռ զատուելուն վրայ շատ տարիներ չէին անցեր[192]։ Նահապետական շինուածոց վրայ ինքն այլ քիչ մ'աւելցուց, և բոլորն այլ թողուց իր թոռանը՝ Կադմեայ. որոյ անուամբ յետոյ անդն՝ միջնակայ սահմանօքն՝ Կադմեայ տուն բռնեցաւ , և Հայոց աէրութեան ատեն հարա-ւային արեւելեան սահմանակալ կու սեպուէր այդ տան իշխանն, և մեծա-թիւ զօրաց բանակ ունէր։ Այսպէս Հայկայ առաջին բնած տեղն ի հայ-րենիս մեր, յետին սահմանածայր եղաւ իր որդւոց պայազատութեան ա-տեն. վասն զի հարաւէն դէպ հիւսիս տարածեցաւ իր ազգն և աէրութիւնն։ Ինչպէս որ նախ ինքն այլ ելնելով այնկէ իր բնտանեօքն՝ դէպ յարեւ-մտեան հիւսիս գնաց Տիգրիսի հոսանաց դէմ, և հաւանօրէն անցաւ Բաղէշու գետոյն ձորէն , կամ Վանայ ծովուն արեւմտեան եզերքէն, որ այն ատեն այսքան յառաջ եկած չէր յայս կողմն . և դառնալով այլ աւելի յարեւ-մուտք՝ Արածանի գետոյն հովիտները մտաւ , թէպէտ այն ատենուան ըն-թացքն յայտնի չէ , և հաւանօրէն շատ տարիներ էր հիմնելոյնէն . բայց գրեթէ անտարակոյս է որ այժմեան Արածանւոյ արեւմտեան աղբերականց մօտ հասաւ՝ որք ի Սրմանց լերանց կ'իջնեն ի դաշտն Խնուսայ , լերանց միւս կողմը թողլով Երասխայ աղբերակունքը։ Այս է այն բարձրաւանդակ դաշտն, ուր դրաւ Հայկն իր հաստատ բնակութեան տունն, « և անուանէ » զանուն լեռնադաշտին ՀԱՐՔ , այսինքն թէ Հարք են աստ բնակեալք՝ » ազգի տան Թորգոմայ ։ Շինէ և գիւղ մի , և անուանէ յիւր անուն » ՀԱՅԿԱՇԷՆ » ։

Հարք կոչումն երկրին աներկբայելի է , թերևս ոչ նախնեաց մեր պատմահօր տուած հանգոյական և նոյնանիշ մեկնութիւնն՝ (ազգին) Հայրերն իմանալով նախ հոս բնակած . թերևս Հա—արք լինի ընդ կոչումն՝ բառ Հա անուան ազգին և ազգապետին, յաւելմամբ արք (մարդիկ) բառին, որ-

Digitized by Google

պէս և Գուգ–արք։ Սակայն ստոյգ և իրաւ է որ մեր ազգին Հարանց բնավայրն եղաւ այս տեղս, որ յետոյ Տուրուբերան աշխարհին գաւառաց մէկն սեպեցաւ. և թերևս ոչ միայն Հայկն իր սերնդեամբն՝ այլ նաև իր հայրն Թորգոմ գոնէ մէկ քանի որդւովքն հոն բնակած ըլլայ ատեն մը. յորոց թերևս Հեր կամ Հերոս իր անունն թողած է Հերևան կամ Հերեր գեղջ վրայ, որպէս կոչեցաւ և կոչի իսկ ի Վրաց՝ իր աշխարհն Հերեթ. իսկ այս կիւղս որ յաւուրս Թարգմանչաց մերոց ընծայեց մեզի մեր ազգին նորագոյն իմաստասէր հանճարը, զԱնյաղթ Դաւիթ, հիմայ այլ նոյն անունը պահէ բրդաձայն կոչմամբն Խըրդ և նշանակէ գաւառին գլուխը Երասխայ և Արածանւոյ անջրպետ լերին լանջակողմը։ Իսկ Հայկաշէնն պանծալի և փափագելի Հերեթէն իջած վտակին վարերը, դաշտին արևելեան կողմերը նշանակուած է, իրեն մօտ այլ Հարամիկ աւանն, որ կրնայ Հարանց նման հին անուան մնացորդ մ՚ըլլալ։ Այս կողմերս բրդաբնակ ըլլալով լաւ քննուած չեն, գուցէ ուրիշ և աւելի ստոյգ նշաններ այլ ունենան մեր Հայոց և ազգապետին բնակութեանն. որոցմէ մէկն այլ սեպուի կարծեօք՝ Էշխիւ կոչեցեալ գիւղն՝ ընդ մէջ Հերեթայ և Հայկաշէնի, որ յիշեցնէ մեր հին աշխարհագրական բառագրին ըսածն թէ «Հայկն զԱրփի- » սան շինեաց»։ Պէտք չէ մոռնալ նաև Հերեթէն քիչ հեռու և լեռան մը անդիի կողմը, հիմկու Վարդոյ վիճակին մէջ Պաղքամ գիւղաւանն այլ, որ կրէ զանուն Հայկայ թոռանց մէկուն։ Այսքան մեզի կիսածանօթ տեղանշանքս այլ բաւական են հաստատելու թէ ստուգիւ ազգապետն մեր Հայկն բնակիչ է այս լեռնադաշտիս մէջ։ Այսր հարաւակողմը երկայնաձիգ լերան մը ստորոտ (թերևս Ջեռնագ Լ.) դէպի Տարօնու կողմը, Հայկէն առաջ եկած բնակած էին քիչուոր մարդիկ. ասոնք մէկէն Հայկայ իշխանութիւնն յանձն առին, վախնալով որ չըլլայ թէ Բելայ կողմնակից երևնան և փաս կրեն։ Այս դիպուածս՝ զոր յիշած են թէ հին քաղդէացի պատմիչն Հայոց (առ Մարիբասայ), և թէ մեր հնագոյն նախնեաց վիպասանքն և գրոյցքն, գուշակել տայ որ կարևոր պարագաներ այլ ունեցած պիտի ըլլայ։

Այն ատեն որ Հայկն ի Հարք և ի շրջակայ կողմանս իր հօրը սեփական բաժնին մէջ իշխանութիւնը և տունը կը հաստատէր, եղբարքն այլ իրենց տունը տեղը կը շինէին. բայց, եթէ հաւատանք Վրաց պատմութեան, ամէնքն այլ վախնալով ի Բելայ՝ անոր գերագոյն իշխանութիւնը կը ճանչէին. թերևս Թորգոմ հայրենին խոհեմագոյն սեպէր զայս՝ որդիքը մեծազօր հսկային բռնութենէն անկասկած պահելու համար. և Հայկն

առ ակնածութեան ծեր նահապետին՝ կու լռէր։ Իսկ երբ յետ մահուան նորա ինքն անցաւ ի նահապետութիւն բոլոր Թորգոմազանց, ամէն յարաբերութիւն կտրեց ընդ Բելայ. և կանչելով եղբայրները, իբրև իրենց վիճակները հաստատելու համար, և ուրիշ իրեն հպատակ սահմաններ, ամէնուն իմացուց որ Բէլ ոչ միայն անիրաւ բռնաւոր մ՚է ի վերայ երկրի, այլ և աստուածուրաց, ոչ միայն հնազանդութիւն՝ այլ և աստուածային պաշտօն կու պահանջէ ի մարդկանց, որով իրեն հնազանդիլն անգամ իրենց և իրենց հարց պաշտած միոյն Աստուծոյ հակառակիլ պիտի սեպուի։ Նահապետաց օրհնութիւնն մեր վրայ է, ըսաւ, Աստուած մեզի ընդարձակ երկիր և բազմաբերունդ զաւակներ և ընդոծիններ տուաւ. ինչո՞ւ վախնանք ի Ներրովթայ. մենք մեզի բաւական ենք, Աստուած այլ օգնական։ Ամէնքն հաւանեցան և հնազանդեցան Հայկայ, իբրև տանուտեան Թորգոմայ ցեղին։ Մեր ազգին ընդունելի աւանդութիւն եղած է թէ Հայկայ գլուխ քաշելուն գլխաւոր պատճառն էր Բելայ անաստուածութիւնն. և ընդունելի է թէ Հայկն և Թոռունքն ճշմարիտ աստուածապաշտք էին, ինչպէս ուրիշ ցեղապետաց մէջ այլ կային յառաջ քան զԱբրահամ. և թերևս աստուածապաշտութեան ու նահապետաց երկիւղածութեան մէկ նշան մ՚այլ սեպուի միակնութիւնն. Վիրք Թորգոմայ համար կ՚ըսեն թէ շատ կանայք ունէր, բայց մեր գիտնագոյն պատմիչք՝ թէ՛ Հայկայ և թէ իր թոռանց միշտ կին մը յիշեն և ոչ կանայք։ Եւ այս հին և մթին ժամանակ, գրեթէ ինչուան Ասորեստանեայց տէրութիւնն ի Հայս (առ Շամիրամաւ), մեր պատմութեան մէջ ամենևին դիցաբանական յիշատակ մը չկայ. որով և շատ հաւանական կ՚երևի մեր բարեպաշտ նախնեաց կարծիքն այլ զՀայկայ, որ ոչ միայն անձնական այլ և կրօնական ոգւով հակառակէր Բելայ։ Այս երկու հակառակորդքն յամենայնի մէկմէկու ընդդիմակ ներկայանան մեզի. և թերևս միակ ընդդիմակք. քանզի Սեմայ սահմապետքն նուաճեալք էին ի քամածին Ներրովթէն, և մեր յաբեթածին ազգապետն միայն մնաց պաշտպան հայրենի և աստուածային իրաւանց։

Արդ երբ երկու հակառակորդքն այլ իրենց իշխանութիւնը ամրացուցին և պահանջեցին, մէկն (Հայկ) նահապետական պարզութեամբ, միւսն աշխարհակալաց նախօրինակ խրոխտանօք, հարկ էր որ գործով այլ յայտնուէին. բայց մեր նահապետն ոչ Բելայ դէմ ելնելու միտք ունէր և ոչ բաւական զօրութիւն. իսկ սա գոնէ բոլոր Սենաարայ և Միջագետաց մէջ սփռեալ սահմերէն կտրիճները ժողոված էր քովը՝ իր հակառակները նուաճելու համար, յետ ամենեցուն և տկարաց՝ կարգը հասած սեպեց Հայկայ։

Այս մեծ վիպուածս աւանդող պատմչաց սակաւ մնացեալ գրոյցքն այլ մեզի բաւական քաղաքական կրթութեան և հրահանգաց գաղափարներ կ'ընծայեն, որ թերևս ոմանց նոր փիլիսոփայից անհաւատալի երևայ. այսպէս են նախ Բելայ և Հայկայ պատգամաւորութիւնքն ։ Բէլ իր որդւոց մէկն դես-պանութեան գլուխ դնելով՝ հաւատարիմ և կորիճ մարդիկներով խաւրեց առ Հայկն, որք խաղաղութեան ձևով գալով՝ կրցան հասնիլ առ սա և բռնաւորին պատգամը տալ, որոյ իմաստն այս էր. « Ամէն ցեղ և լեզու որ ցրուեցան երկրիս վրայ՝ ինծի հնազանդին և պաշտած պատիւը տան, ես այլ զիրենք խնամեմ և պաշտպանեմ. դու միայն ինքնագլուխ մնացիր, և քեզի հետ քու ցեղակիցքդ մոլորցուցիր. որոնք կենաց օդուան անգամ յամառութեամբ մոռնալով՝ քեզի հետ ելան գնացին դէպ ի հիւսիս, առա-նապատ անընակելի լերանց մէջ պահուեցան ։ Թողէք այդ անյարմար մտածութիւնն այլ բնակութիւնն այլ. եկէք նորէն ի Սենաար, բնակեցէք մեր ջերմիկ և բարեբեր դաշտերուն մէջ, վայլեցէք երկրին բարութիւնը ։ Եւ եթէ դու Հայկ՝ քու աղեղանդ փորձերը կու սիրես, եկ և Բելայ որ-սապետն եղիր. իրեն որսական բարակները վազցուր սիրած կրէացդ ետևէն ։ Զայս խոստանայ Բէլ. իսկ եթէ դեռ յամառեալ մնաս այս տեղս, ինքնին Բէլ կու գայ զքեզ որսալու »։ — Այս պատգամս կ'երևի թէ ոչ բերան առ բերան խօսեցաւ որդին Բելայ ընդ Հայկայ, այլ ինքն այլ ուրիշի բեր-նով իմացուց Հայկայ, գուցէ վախնալով ասկէ, կամ մեծութիւն սեպելով անոր չերևալ ինչուան որ միտքը չիմանայ ։ Իսկ Հայկն պատգամին ապառնալիքն այլ լսելով՝ բոլորովին մերժեց առաջարկութիւնը, մանաւանդ թէ խստութեան խստութեամբ այլ պատասխանեց, կ'ըսեն. « Գիտեմ որ Բէլ շան պէս հաչէ, շան պէս որսայ, իր հետևողքն այլ նոյնպիսի են ։ Իսկ եթէ կ'ուզէ՝ գայ մեր վրայ և տեսնէ մեր ճարտարութիւնն այլ »։

Բելայ որդին և պատգամաւորքն դարձան առ նա ի Բաբելոն. յորոց իմանալով Հայկայ վստահութիւնն՝ Բէլ հարկաւոր սեպեց ժողովելու մեծ բազմութիւն զօրաց հետևակաց հանդերձ իր փորձած կորիճներու, որոց մէջ կային 60 անուանի հսկայք անճոռնի դէմքով հաստակով և ուժով, որոց ամէն մէկն առասպելեալ դիւցազանց կարգ կրնար բռնել ։ Հօս մեր պատմիչն (Խորենացի) թուի գիտմամբ յիշել որ բազմութիւն զօրացն Բելայ հետևակ էր. բայց ուրիշ կորուսեալ պատմչի (Սեբէ. Բուշք.) մնացեալ տող մը « Հեծելոցն սրաթևութեամբ առ Բէլն հասին », կրնայ թէ անոր կողմէն թէ գիմացինէն կարծել տալ այս հեծեալները. թէ և ուրիշ պատ-միչ այլ կ'իմացընէ յետ պատերազմին, որ գոնէ իբրև գրաստ կային

ձիանք այլ ի բանակին Բելայ։ Այս բանս կարեւոր սեպեցի յիշել վասն մեծ խնդրոյն, թէ որքան հին է ձիոց գործածութիւնն ի պատերազմի։ Թէ ոչ զօրքը կրելու՝ անոնց բեռները և պաշարը կրելու համար հարկ էր զրաստ վարել. և ասոնց հետ վերջին յիշեալ պատմիչն յիշէ նաեւ ուղտեր ի բանակի Բաբելացւոյն. և այս այլ առաջին յիշատակն է այդ հարաւաւէր անապատի անպրուվարին ի Հայաստան մտնելուն, որ կարաւանաց պատճառաւ մինչեւ հիմայ պտուի մեր ցրտակլիմ հայրենեաց մէջ։

Նեբրովթ Մարաց և Ատրպատականի միջոց լերանց ստորոտքը պատելով (ըստ Վրաց պատմութեան), ի հարաւային արեւելքէն դէպ յարեւմուտս հիւսիսոյ դիմեց, ի տունն նահապետաց, յերկիրն Արարատայ, որ եղեր էր տուն Կադմեայ։ Սա ընտաւորին մօտենալը իմանալով և յառաջապահքը տեսնելով՝ թողուց տեղը և ընտանեօքը փախաւ ի Հարք առ Հայկ, և մեծ վախով լուր տուաւ. «Գիտեա, ըսելով (ըստ հին պատ-
» միչին) ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ ի վերայ քո Բէլ, յա-
» ւերժիւք քաջօք և երկայնապիզօք հասակօք սկայիւք մրցողօք։ Եւ իմա-
» ցեալ իմ զմերձ լինելն նորա ի տուն իմ, փախեայ. և գամ աւասիկ
» տագնապաւ։ Արդ աճապարեա խորհել զոր ինչ գործելոց ես»։ Նեբրովթ անաշխատ տիրեց Կադմեայ տանն, ուր թերեւս ինքն այլ ծներ էր ի մէջի նահապետաց. և փութացաւ Հայկայ վրայ երթալու, անոր բռնած ճամբէն, Հողսայ պահակէն, կամ հիմկու Ռահվայի և Բաղիշու ճամբէն։ Այս ճամբուն գլուխը, Մշոյ դաշտին և Վանայ արեւմտեան այս պարտափին միջոց և անջրպետ ծանօթ է մինչեւ հիմայ Նեբրովթայ լեռն, Նամրուտ կամ Մամրուտ կոչուած, յանուն ընտաւորին, որ հաւանօրէն հոս կեցած կամ յիշատակի արժանի բան մը ըրած պիտի ըլլայ. զոր ոչ յիշէ գրաւոր պատմութիւնն. իսկ աւանդութիւն տեղացեաց մինչեւ ցայժմ առասպելախառն զրուցէ, թէ Նեբրովթ ընտաւորն եկեր էր ի հարաւոյ այս կողմերուն այլ տիրելու, և այս լերանս վրայ կու շինէր իրեն բերդ և բնակարան մը. և երբ աւարտեց բարձրակառոյց շինուածը, սանդեաց վրայ ելնելով և իր ժողովրդեան հաւատացընել ուզելով որ ինքն ամենակարող է՝ լարեց զաղեղն յերկինք ի վեր, որպէս թէ անոր իշխողն այլ (զԱստուած) զարնէ և վար ձգէ. իսկ Աստուած ծովէն մեծ ձուկ մ'առած՝ նետին գլխաց զրաւ. որոյ արիւնն վար վազելով՝ Նեբրովթ կարծեցուց թէ իր ուզածն էր զարկածը. այն ատեն Աստուած վերէն կայծակներ թափելով՝ կործանեց Նեբրովթայ շինածը, և զինքն իրեններովն շէնքին հետ մէկտեղ լերան անդունդքը իջուց, և անկէ ջուր բղխեցնելով ծածկեց անիշան ըրաւ տեղը.

միայն այն բղխած ջրէն են ինչուան հիմայ լերան վրայ եղած լճերն ։ Նոյն տեղն, կ'ըսեն, Ներրովթայ ուղտերն այլ որ Դատուանայ ծովեզերքէն աւազ բերէին շէնքին համար, քարացեալ մնացին հոն. և ատոնք են ինչուան հիմայ Ըղտոր քարեր ըսուած մեծամեծ ապառաժի կտորքն՝ որ Նամրուտայ և Դատուանայ միջոց իբրև շարեալ կան 60ի չափ։ Վանայ ծովուն եզերքն ուրիշ տեղուանք այլ կան որ Բելայ տապալելատան աւանդութիւններ պահեն, ինչպէս քիչ մ'ետև տեսնենք. և գոնէ զայն կու հաւատան թէ Ներրովթայ գիպուածն այս կողմերս եղած է։

Գլխաւոր դիպուածն որ է Ներրովթայ և Հայկայ պատերազմն, տոր յաղթելն և անոր սպանուիլն, հիմայ մեզի մնացեալ պատմիչք՝ երեք քիչ շատ զանազանութեամբ պատմեն և կրնան երեք աղբերք ըսուիլ (որ են Խորենացի, Վրաց պատմիչն, և Սեբիոսի սկիզբն եղած հատուածքն). բայց ամէնքն այլ մէկ մեծ գիւցազնական վիպասանութենէ մ'առաջ եկած կ'երևին, կամ շատ հին պատմութենէ մը՝ որ ժամանակին վսեմութեամբը և ծանրութեամբը պատմուած է, և երեքին յիշածն այլ ըստ մեզ այսպէս միաբանին ։ Ներրովթ՝ գեսպանագնացութեան օրինակին համեմատ՝ ծանրէն քաշելով մէկէն անձամբ չելաւ Թորգոմազանց վրայ, մանաւանդ որ դեռ բոլոր զօրաց բազմութիւնն այլ հասած չէր. այլ Կադմոսի տան և Հարքայ միջոց տեղ մը պարբելով (թէ ոչ յիւր անուն լերինն) յառաջամարտ գունդը գրկեց 60 հսկայից քն։ Հայկն այլ նոյնպէս յառաջ չնետուելով, այլ զինքն պաշելով Ներրովթայ գիմամարտելու, ընդդէմ անոր հսկայիցն հանեց իր հսկայ եղբարքն և որդիքն. ինքն այլ ետևնին կեցաւ իբր վերջապահ և ապաւէն. երկար և զանազան կռուոյ գործեր եղած են, և ոչ մէկ պատերազմ միայն, ինչպէս կրնայ կարծել մէկն միայն Խորենացւոյ պատմածը յիշելով. և երկու կողմին այլ տագնապ և դժարութիւն հասած ։ Առաջին պատերազմն կ'երևի Բզնունեաց և Խոսխոռունեաց գաւառին կողմերը եղած, ի ստորոտս Մասիք (Սիփան) լերին, ուր կեցած էր և Հայկն ։ Ներրովթեանց ինչուան հոն մօտենալուն չպատեհուն Թորգոմազունքն յարձակեցան անոնց վրայ, և հսկայից անուան և գործոց արժանի եղաւ պատերազմն աչաւոր. «խառնեալք ի միմեանս ահագին և սաստիկ բախմամբ իբրև
» զձայն որոտման ամպոց. և հողն որ վխտանայր ի ներքոյ ոտից նոցա
» թանձրանայր որպէս զամպս. փայլատակմունք զինուց նոցա որպէս յերկ-
» նից հատանէին, ձայնք նոցա որպէս զգոռոցոյ շանթից, և նետք և քա-
» րինք որպէս տեղատարափ թօթափեալք, և արիւն որպէս զհեղեղս գետոց
» յորդեալ ընթանայր »։ «Եւ եղեն կոտորածք յերկոցունց կողմանց անթիւ

» և անհամար։ Եւ Հայկն կայր յետուստ կողմանէ իւրոցն և սրտապնդեալ » քաջալերէր զնոսա ահեղագոչ ձայնիւն, և ինքն իբրև զկայծակն աս-» պատակէր շուրջանակի, և ընկենոյր զխաժուժն հսկայքն ձեռամբ քաջաց » Հարազատացն», որք բոլոր Թշնամի զունդն այլ վանտելով յաղթական խնդութեամբ ժողովեցան առ Հայկն, ոչ այնքան իբրև իրենց այլ Աստու-ծոյ Թշնամիներուն յաղթող սեպուելով։

Ներբովթ այս անկարծելի գործը տեսնելով և Թերևս չի լմնցած՝ փու-Թացաւ յանկարծոյն Հայկեանց վրայ հասնիլ՝ հակառակ կողմէն, այսինքն Վանայ ծովուն հարաւային արեւելեան եզերքը պատելով։ Հոս Ռշտունեաց գաւառին գլուխը՝ Բերոս անուամբ գեղ մը կայ, որոյ համար մինչև ցայժմ ռամիկն զրուցէ Թէ Բելայ յիշատակաւն է, անոր սպանուելէն ետեւ հոս բերուած և պաղարած ըլլալով։ Հայկն որ իր հակառակորդը կու գիտէր, ինչպէս նա զաս, փուԹացաւ իր կողմանէն Բելայ առջեւ ելնել, ծովուն հիւսիսային կողմէն պատելով, և աւելի շուտ հասնելով յետոյ Երուանդու-նեաց ըսուած գաւառը, հոն չորս դին լեռնապատ ձոր մը իջաւ, որ իր և իրեններուն անուամբ Հայոց ձոր ըսուեցաւ և ըսուի մինչև հիմայ, որոյ արեւելքէն գայ Հորգոմայ գետն և Թափի ի ծով՝ այդ անուն գիւղին քով, որ դեռ ժէ՛ դարուն մէջ շէն էր, հիմայ չյիշուիր. իսկ գետն հիմայ Խօ-շապայ անուամբ ճանաչի։ Ասոր աջ կողմը բարձրիկեկ և ամուր տեղ մը կեցաւ Հայկ, տեսնելով հեռուանց Բելայ զօրաց յառաջահասները. միան-գամայն գուշակելով որ շատ մեծ բազմութիւն պիտի հասնի, փուԹացաւ ինքն իր քիչուոր գունդը բանակեցնել ամուր և ճարտար դիրքով, երեք-անկիւնի ձեւով մը, որուն ծայրը ինքն կեցած էր. աջ Թեւը՝ որ Վանայ ծովուն կու նայէր՝ յանձնեց իր երեք որդւոց՝ զանդրանիկն Արմենակ առաջ-նորդ դնելով. ձախ Թեւն այլ տուաւ ուրիշ երկու որդւոցն, գլխաւոր դնելով զԿադմոս որդի Արմենակայ, զոր իբրև անդրանիկածին պայազատ, միանգա-մայն և կտրիճ՝ նախապատուել կ'երեւի. մնացեալ որդիքն և Թոռունքն և իր եօԹն դստերաց որդիքն այլ (Սեբիոս պատմ.) անոնց օգնական տուաւ, զամենն այլ վերջապահ Թեւին առաւ. Հաւանօրէն իր եղբարքն այլ հոս հոն բաժնուած էին։ Հայկայ դիտածն էր, ինչպէս ըսաւ այլ իրեններուն, փուԹալ չսպա-սել բոլոր Թշնամեաց հաւաքելուն, այլ դիտել գտնել Թէ ո՛ր կողմն է Բէլ, և հոն յարձակիլ. կամ ուժով յարձակմամբ մը յանկարծ վրան հասնելով և զնա սպաննելով՝ բոլոր բանակը վախով ցրուել, կամ գոնէ այն ահեղ բռնաւորին և իր հսկայից հետ կռուելով՝ քաջուԹեամբ մեռնիլ՝ քիչեր շատերէն։

Նոյնպէս Բէլ այլ զՀայկն դիտելով, իր յառաջահաս զօրքերը շառապեցնելով հասաւ Հորդոմայ գետոյն ձախ եզրը և Հայկայ դիմաց բարձրագոյն բլրակի մը վրայ կեցաւ. որ՝ ժամանակ չտալով անոր զօրաց զումարելուն ու շարուելուն, իր բանակը յառաջ շարժեց զգուշութեամբ. Նեբրովթ այլ իրենները առաջ քշեց. «Եւ հասեալ երկոցունց կողմանց հրա» կայից ի միմեանս՝ ահագին զղրդիւն ի վերայ երկրի առնէին շաչա» ռակելով, և ահա պակուցանողս տարազուք յարձակմանցն սպառա» զինացն զմիմեամբք հարկանէին: Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց » արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք՝ տապալ յերկիր կործա» նէին. և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի»: Այս անգամ այլ Նեբրովթ իր յուսոյն վրիպելովը սկսաւ յետ քաշուիլ՝ իր բլուրը, սպասելու յետամնաց զօրաց բազմութեան հասնելուն. Հայկն այլ նոյնպէս իր տեղը քաշուեցաւ. թերևս գիշերն և յոգնութիւնն այլ կու ստիպէին: Եւ թէպէտ այս դիպուածին մէջ այլ ինքն աւելի յաղթող սեպուեցաւ՝ ուշ ետ քաշուելովը, բայց ապագային կու դժուարանայր. վասն զի իր նուազած գնդին նոր օգնական չկայր, իսկ Բելայ ետևէն ետև կու հասնէին զօրքն. որով ան աւելի վտանգաւոր նորոգեց պատերազմը, Հայկն հարկաւ և իր սովորական սրտոտութեամբը յանձն առաւ. մանաւանդ որ հիմայ ինքնին Նեբրովթ իր հսկայից գլուխ կեցած յառաջ կու յարձակէր: Հայկն այլ ուժով դէմ յարձակեցաւ բայց չկարցաւ քշել այնքան բազմութիւնը, որ երթալով այլ կ'աւելնար և կու մօտենար իր բանակին. պէտք եղաւ որ շուտ շուտ յետ քաշուի, և տեսնելով հակառակորդը մօտեցած՝ նորէն դառնայ դէմ յարձակի: Այս կերպ կռուելն երկու կողմէն այլ օգտակար կ'երևար. Հայկեանց՝ ժամանակ շահելու և դիրքերնին փոխելու. իսկ Բելեանց՝ երթալով մօտենալու անոնց. և թերևս ասոնց աւելի շահաւոր կ'ըլլար, եթէ իրենք այլ նոյնպէս կանոնաւոր յառաջ երթային, և ոչ խառն ի խուռն արշաւանօք՝ որոյ օրինակն այլ անզգուշութեամբ տուաւ ինքն Բէլն Նեբրովթ. որ Հայկայ իրաւ կամ կեղծ փախչիլը տեսնելով իր զօրացմէ յառաջ անցաւ իւրեն զինակիրաւն և քիչ մարդով, և կու ջանայր որ զՀայկն պաշարէ և ի ձեռք ձգէ: Հայկն այլ նախատեսարար իրեններուն ապսպրեց որ յետ կենան և զինքն ետևէն պաշտպանեն, իր վրայ յանձն առնլով դէմ առ դէմ կռուիլն. որոյ ժամանակին այլ շատ չուշացաւ: Այնքան իրարու մօտեցեր էին երկու հսկայապետքն՝ որ երես դարձընելն՝ յաղթուիլ և կեանքը վտանգել էր. թէ և հիմակուան դրից մէջ այլ աւելի Հայկն վտանգեալ կ'երևար, սակայն կանգ առաւ և կանչեց ահեղ հակառակորդին.

«Ի՜նչ կ'ուզես, ի՜նչո՞ւ եռեւէս ես անկեր. չե՞ս տեսներ որ ես այն
» Հայկն եմ աղեղնաւոր. մինթէ կ'ուզե՞ս որ անսխալ նետերս թափե՜մ
» վրադ»։ — «Զքեզ բռնելու եմ եկեր, կանչեց Նեբրովթ այլ խրոխտա-
» նօք, բռնել, որպէս զի չըլլայ թէ իմ կարիճներս զքեզ սպաննեն։ Իսկ
» քու աղեղդ ու նետերդ պահէ՛, որ երբ սանձեմ զքեզ ի Բաբելոն հոն իմ
» շանցս հետ աղոցս որսորդութիւն ընես»։ — «Քու բռածդ է շան գործ,
» կրկնեց, կ'ըսեն Հայկն, և քու եռեւէդ եկողներուն. ուրեմն պէտք է որ
» կապարճս պարպեմ վրանին»։ Այս ըսելով սկսաւ հսկայաքայլ յառաջ գալ,
«և ունէր ի ձեռին իւրում զաղեղն որպէս հեծան հզօր մայրափայտեայ»։
Մէկ մեծ և ծանրակշիռ գործողութեան մը որոշիչ վայրկեանը հասեր էր.
Բէլ յաղթութեամբն գուցէ կեանքէն մեծ բան չէր վտանգէր, բայց Հայ-
կայ յաղթուելովն թերեւս աշխարհիս հնագոյն ազգաց մէկն պիտի չի մնար.
ուրեմն այս գործս ոչ երկու գիմամարտից կենաց և մահու խնդիր էր, այլ
ազգի մը և ազատութեան, և այն ազգն էր մերն. եթէ մէկ կեսի կամ
մէկ թեւի վրայ էր այն ատեն ազգիս բաղդն, այն կէսն լաւ գիտէր մեր
ազգահայրն այլ, և իր երկթեւեան նետին ծայրը գրեր էր վստահու-
թեամբ։ Վստահ էր Բէլ այլ, բաց իրեն հսկայներէն, նաեւ իր ամուր
սպառազինութեան վրայ այլ, զոր անթափանց սեպէր ի գլխոյ. վասն զի
ունէր «ինքն գլխանոց ապուցեալ երկաթի, նշանաւորօք մերձիւք, և տախ-
» տակս պղնձիս թիկանց և միջաց և լանջաց, և պահպանակս բարձից
» և բազկաց. զօտեւորեալ զմէջն, և յահեկէ կողմն՝ երկսայրի, և նիզակ
» անարի ի ձեռին իւրում աջոյ, և յահեկումն վահան» պղնձի։ Հայկայ
սպառազինութիւնն չի պատմուիր. աղեղնաւոր էր, ինչպէս իր որդիքն այլ
միշտ անուանի աղեղամբ հազարաւոր տարիներ. և աղեղնաւորաց չէր
վայլեր ծանր սպառազինութիւն. միայն կամար զօտին յիշուի հանդերձ
օղակաւն՝ յոր կախէր իր վրիժուց և քաջութեան գործաւորները, իր մահ-
արձակ կապարճը։ Այսպէս այլ բրաւ հիմայ՝ երբ բաւական մօտեցաւ
Նեբրովթայ գիմաց. ինք զինքն աղէկ գիրք մը գնելով, «զտեղի կալեալ
» պատրաստի ընդդէմ նորա (Բելայ) աղեղամբ, և կանգնէ զկապարճն
» ընդ գետնոյ ընդ ինքեան յօղս սկայօրէն կամարին. և ընդ գիրկս
» մտեալ զօրութեամբ, լի քարշէ ընդ զլայնալիճն, զերկուցանէ զերեք-
» թեւեանն կրծից տախտակին, ընդ պղնձի վահանն ի թափ անցուցանէ
» ընդ մեջէն արձանն ի լուսանցոյցս արեգակնացայտս, և շեշտ ընդ
» մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր հարաւ մտարեալ նետն. և
» այսպէս ճոխացեալն Տիտանեան՝ զատուածակարծեալ հսկայն յերկիր

» զարկուցեալ փչէ զողին։ Իսկ ամբոխն (նորա) տեսեալ զայսպիսի ահագին
» գործ քաջութեան՝ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց» (Խորենացի — Սեբէոս — Վրդ. Պտմ.)[193]։

Այսպէս բովանդակեն հին պատմիչք մեր Հայկայ դիւցազնական և քաջ մեզ՝ անդին գործն, վասն զի անով մեր ազգութեան ծնունդ եղաւ, և Բելայ այն հպարտ որսորդին և առաջին աստուածընդդէմ մարդոյ և զրկահար բռնաւորին կատարածը, որ ի հարկէ իր ազգայնոց կամ հետևողաց պատմութեան մէջ լուռ և անյիշատակ է. ինչպէս Հռովմայեցւոց մէջ Հռոմուլոսի չարաչար մահը, զոր ծածկելով համբաւեցին յերկինս յաստուածս յափշտակեալ։ Նոյնպէս ըրին և Բաբելացիք իրենց վեհագոյն առաջնորդին, նախնիքն ընդ համաստեղութիւնս դասեալ, որպէս և մերք իրենց Հայկն, և յետ մահուան նոցա նախանձընդդէմք զնոյն աստղն իւրաքանչիւր իւր դիւցազին անուամբ կոչելով, և անոր որսորդական ճարտարութեան նշան գրելով մօտի շուն համաստեղութեան նշանն. իսկ յետոյն Բաբելացիք յայտնապէս իսկ աստուած ըսելով պաշտէին զՆեբրովթ յանուն Բէլ կամ Բահաղ, որով և մեծագոյն քան զամենայն աստուածս կամ բուն իսկ Աստուածն ճանաչէր. և յետ հազարաւոր ամաց նոր նորագոյն Բաբելոնի և ժառանգ հօգւոյ Նեբրովթայ զօրաւոր Նաբուգոդոնոսոր՝ կանգնեց անոր անդրին կոթողաձև 60 կանգուն բարձրութեամբ և 6 լայնութեամբ։ Բայց ոչ հոն և ոչ յաստեղս, այլ Նեբրովթայ սուզագոյն դիրքն եղաւ Հայկայ նետին տակ Հորդոմայ հովտին մէջ, որ այս յիշատակաւ բուեցաւ Հայոց Ձոր. և այն բլրատային յորոյ վրայ ընկաւ նա՝ և իրեններէն շատքն, Հայկն անուանեց Գերեզմանակ, որ և մինչև նոր ատեններ կոչուէր Գերեզմանք։ Զաստուածութեան կարծեաց անհաւանք, նոյնպէս և մեր պատմութեան, կամ թէ անգէտք՝ կ'ըսէին թէ Բաբելոնի աշտարակին կործանման ատեն՝ փլածին տակն ընկած և կորած ըլլայ Բէլ. արժանավայել զրոյց, որ և մեզի այլ ախորժելի կ'ըլլար՝ եթէ մեր գեղեցիկ և պանծալի ազգային աւանդութիւնք չունենայինք. որ եթէ չափազանց այլ հռչակէ իր նախահօր ոյժը կամ աղեղնաւորութեան ճարտարութիւնը, հսկայի մը պղնձապատ սպառազէն մարմինը կողմէ կողմ ծակելով թափանցիկ և հանելով զսլաքն ի դուրս, յիշելու է որ հին ատեն սովորական էր պատերազմաց մէջ նետահար մահն, նաև զրահազգեստ մարտկաց. իսկ նետին մաս մը աւելի կամ պակաս ներս մխուիլն կամ դուրս ելնելն պատմութեան հիմը չաւրեր։ Տեղական աւանդութիւն մ'այլ մինչև ցայսօր կու զրուցէ թէ Բելայ մարմինը ի Հայոց ձորէն դէպ ի Բելու տա-

Digitized by Google

նելու տանն՝ Ոստանայ և Նարեկայ միջոց տեղ մը իջուցին, և նետը որ դեռ կրծոց մէջ մխուած էր՝ դուրս քաշեցին կռնկէն, անանկ որ կողմէ կողմ մարմինը ծակուած՝ արեան լոյսն միջէն շողաց, և անոր համար մինչև ցայժմ այն տեղի գեղն կ՚անուանի Տշող։ Որչափ այլ անհաւատալի կամ ծիծաղելի են այսպիսի աւանդութիւնք, այնքան սիրելի է ազգային հին ժամանակի յիշատակներ կամ աւանդութիւններ պահելն։ Իսկ ստուգախոյզ պատմութիւնն Նեբրովթայ դիակյան համար կ՚ըսէ, թէ Հայկն դեղերով օծել և զմռսել տուաւ, և խաւրեց իր բնագաւառը ի Հարք, «և թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց». որք այն տեղ մնացեր էին, մինչդեռ ամենայն կտրիճք Հայկայ հետ ի պատերազմ գնացին։ Այն՝ և դեռ ետեւի հին ատենուան սովորութիւնն էր մեռեալները (զոնէ նշանաւոր անձինք) բարձր տեղուանք թաղել, թէ շէնքերու և թէ բնական բարձանց. Բելայ բուն թաղուած տեղն անյայտ է, ետքի տանն սահմանուած բուն Հարք գաւառին մէջ էր, թէ առաջին տանն ընդարձակ էր Հարքայ անունն, և զուցէ Նեբրովթայ լեռն այլ անոր սահման սեպուէր, և հոն թաղուած ըլլայ. բայց անշուշտ ոչ ի Բելու գիւղն, ըստ նախայիշեալ աւանդութեան ռամկին, այլ հաւանօրէն Հայկայ դաստակերտ տան մօտ ի Հայկաշէն, ուր էին իր ընտանիքն։

Պատերազմէն և Բելայ մեռնելէն ետև Հայկեանք ի հարկէ փախստականաց ետեւէն ընկան, զոնէ մինչեւ Արարադայ և Ասորեստանի անջրպետ լեռները, և անոնցմէ աւար առին շատ ձի, ուղտ և ջորի. և մինչեւ որ բոլորովին Բելեանց վրէժխնդրութեան կասկածն չվերցաւ՝ առաջին բնակութիւններին չդարձան. իսկ այս վրէժխնդրութիւնս տարակուսական է, վասն զի անով հրապարակաւ խոստովանել մը կ՚ըլլար Բելայ խայտառակամահ սպանուելուն և Հայկայ յաղթութեան։ Բայց այս այլ ստոյգ է որ Հայկն ժամանակ մը կեցաւ մեծ պատերազմին եղած ձորը, հոն տեղուանքն այլ շէնցընելու և յիշատակարաններ թողլու, որոց գլխաւորն եղաւ իր բանակին ճակատած տեղը դաստակերտ մը, զոր և իր ուրիշ ձեռագործաց նման անուանեց ՀԱՅՔ, յանուն իւր և ազգին, որոյ տեղն է անշուշտ Ջարոյն հիւսիսակողմը, և անունն պահուած մինչեւ հիմայ Խեքուց վանքով (Հայք = Խեք). որոյ մօտ է այն երկայնանիստ լեռնաբլուրն այլ՝ յոր հասին նախ Հայկեանք և ուսկից «ի վեր զերեսս ամբարձեալ՝ երեւեցաւ » նոցա բազմութիւն անկարգ հրոսակի ամբոխոյն Բելայ, ցան և ցիր յան» դուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով». բոլոր լեռնագագաթն պարսպով պատած է, և մինչեւ հիմայ մնացեր են 3–4 կարգ անհեղեպ



Digitized by Google

մեծամեծ քարերն, շատն այլ փլած կամ փլուցած լեռնէն վար թափած. քարանց տաշածութիւնն կամ ողորկութիւնն թերեւս կիկլոպեան ըսուած հնութիւնը չի ցուցընէ, բայց անղացեալ յիշատակն զայս այլ հաստատէ Հայկայ Բերդ ճանչնալով եւ անուանելով. որ ի հարկէ զանազան տեսն նորոգուած եւ քակտուած է բնութեամբ կամ բանութեամբ. մէջն միայն քարափոր ջրամբարի նման փոս մը կայ, որ անշուշտ ի հորդումայ կ'առնուր իր ողեպահ ջուրը՝ թշնամեաց վտանգի առեն, ինչպէս որ ուրիշ շատ հին Հայոց բերդերու մէջ այլ կ'երեւի այս, եւ ազգային վաղեմի եւ կարեւոր ճարտարապետութեան արձան մ'ըլլալով քննութեան արժանի է. մանաւանդ այս Հայկայ բերդս իր սահմանօքն, որոյ համար արդէն հին գրաւոր աւանդութիւն մ'այլ (Դիւանք Աղթամարայ) կ'ըսէ, թէ ի բնակել Հայկայ հոն՝ «ազգեցութեամբն Աստուծոյ շինեցին զմեծ Բերդն անառիկ բերդ ի յահէ » թշնամեաց». եւ կ'աւելցընէ այլ թէ «եկին ի վերայ նոցա այլազգիք», որոց անունն ջնջած է բնագրին մէջ. եւ այս առթիւս կ'ըսէ աւանդողն, ալեղն երեւցաւ Հայկայ յերազի, եւ անով հալածեց զթշնամիս։

Ուրեմն կարեւոր էր Հայկայ հոս ուշանալն, միանգամայն եւ երեւի թէ միայն Բելայ սպանմամբ չհաստատեց նա իր տունը եւ ազգը. այլ եւ ուրիշ հսկայագործ կամ դիւցազնային քաջանութեամբք, զոր ծածկեց մեզմէ ժամանակն, եւ թերեւս դեռ յայտնուին։ Այս բերդս որ Հայոց Զորոյ շինուածոց գլուխ եւ պսակն էր, կամ ինքնին Հայկն կամ իր որդիքն ի յիշատակ այն մեծամեծ գործոցն՝ որով իրենք քիչուորք՝ շատերուն եւ դժուարութեանց յաղթող եղան, գերագոյն նախախնամութեան երախտեօք անուանեցին Աստուածաշէն. վսեմագոյն դրեթէ եւ հնագոյն անուն շինուածոց յերկրի վերայ, բարեբաստաբար եւ մնացեալ մինչեւ ցայժմ՝ թէ ոչ բերդին վրայ՝ այլ մօտ անոր յարեւելակողմն գեղին վրայ, որ դեռ շէն է եւ Հայաբնակ. արդեօք և այն Հայկայ ընկերաց ուղղակի սերունդք են, որոց համար ասէ վերոյիշեալ գրաւոր աւանդութիւնն թէ «Եւ յետ նորա (ի) զարմիցն » մնացին ի բերդն Աստուածաշինայ»։

Որքան խոր հնութիւնք եւ որքան խորին քննութեանց պէտք, յառաջ քան զստուգել որչափ բան որ կրնանք մեր ազգահօր վրայ ստուգել, եւ մանաւանդ յառաջ քան զմերժել զամենայն աւանդութիւն քաջահին՝ իբրեւ զառասպելս դիցաբանութեան Հելլենաց կամ այլոց։ Այնքան յիշատակաց մէջ (թողլով զալեղան երազատեսութիւնն), թէ եւ փիլիսոփայական հաւատալիք մը չըլլայ իրաց, այլ եւ ոչ փիլիսոփայական անտեղութիւն մը կամ հրաշախառն բանիք կան, ինչպէս շատ հին ազգաց ծագման եւ պատմու-

Digitized by Google

թեան սկզբանց մէջ. և եթէ կային մեր հին հեթանոս նախնեաց մէջ այլ այլպիսի գրոյցք և առասպելք, մեր քրիստոնեայ հարքն զանոնք թօթափեցին և ստոյգը կամ ճշմարտանմանը զտելով աւանդեցին, զայս այլ խնդութեամբ կ'ընդունիմք, որ այսքան բաներ ստոյգ ճանչցուած են մեզմէ հմուտ և բարեպաշտ անձանց պատմամբ: Բայց ունիմք մեծ և ուսումնական փաստ մ'այլ, թէ ոչ պատմութեան այս կարեւոր պարագայից, գոնէ անոր ժամանակին կամ տարէթուին. որ և նոյնպէս պանծալի յիշատակ և առաւելաշնորհք մ'է ազգիս, ինչպէս ազատութեան կամ ազգութեան ձեւանալն: Այս փաստս է Հայկեայ Շրջանն կամ Թուականն, զոր մենք ուրիշ տեղ մանրամասն բացատրեր եմք, բայց հոս իբրեւ ընիկ աղբերը քով ըլլալով, գոնէ համառօտիւ պէտք չէ զանց առնեմք ըսելու, որ եթէ Հայկ, ըստ կեղակարծ աւանդութեան իր յԱրարադ հասած օրն տարեգլուխ դրաւ, ստուգապէս Բելայ յաղթելով իր Թորգոմազանց ազատութիւնը ապահովելն այլ թուական մ'ըրաւ, ինչպէս որ կու վայլէր այնպիսի մեծ դիպաց. և եթէ ոչ Հայկն՝ գոնէ իր որդիքն պէտք էր այնով հաշուէին իրենց ազգային տարիքը. և այնպէս այլ ըրին և կ'ընեն մինչեւ ցայժմ, թէ և չգիտաբար կամ մոռացութեամբ պատճառին: Մեր պատմչաց մէջ միայն Յովհ. կաթուղիկոս կու յիշէ այս հին գործոյ և ժամանակին թուական մը, որ ըստ մեզ ոչ է ստոյգ, այլ շատ մօտ ի ստոյգն. ի Հայկայ մինչեւ ի Թագաւորելն Վաղարշակայ 2297 տարի կու դնէ, որ է ըսել 2446 տարի մինչեւ ի Քրիստոս (սեպելով զՎաղարշակ թագաւորեալ 149 տարի նախ քան զՔրիստոսի թուականն): Եթէ Բելայ մահուանէն վերջի դիպուածէ մը սկսի սա Հայկեայ թուականն՝ խօսք չունիմ, բայց մեր ազգահօր թուականն կու վայլէր սկսած ըլլալ այն մեծ գործէն, և է իսկ այնպէս. իսկ այս թուականս է 2492 տարի նախ քան զՔրիստոսի թուականն. որ մեր ազգային ժամանակագրութեան բեւեռն ըլլալով՝ պէտք է լաւ ճանաչել և հաստատ բռնել. և որոյ երկու մեծ հաւաստիք ունիմք՝ մէկն պատմական, միւսն ուսումնական: Պատմականն է Ափրիկանոսի և Եւսեբեայ քով ժամանակագրաց հաշիւքն՝ որ նախնի Բաբելացւոց և անոնց յաջորդ Ասորեստանեայց, Մարաց և Պարսից թագաւորութեանց տարիները մանր մանր գումարելով, Քրիստոսէ ինչուան Բելայ թագաւորութեան վերջի տարին կու հանեն այս յիշեալ թուականս 2492 տարի: Իսկ ուսումնական կամ չափաբերական փաստերնիս մեր ազգային ծանօթ ժամանակագրութենէն կ'առնումք, որ Հայոց թուականն կ'ըսուի. և ամենուն յայտնի է որ հիմայ (1864) անոր 1313–4 թուին մէջ եմք. ըսել է որ սկսեալ է սա յամի

Digitized by Google

Տեառն 552, երբ տոմարի մանաւանդ թէ տօնացուցի նորոգութիւն մ'եղաւ ի Հայս. իսկ այն Թուականին առաջին տարւոյն սկիզբն այլ՝ այսինքն առաջին օրն՝ եղեր է յուլիսի 11 (552 ամին Քրիստոսի)։ Այսպիսի տարեգլուխ՝ անկանոն անյարմար բան մ'է, եթէ կարեւոր պատճառ մը չունենար. պատճառն այլ այս է՝ որ տոմարագիրքն կամ ժողովն Դունայ՝ միայն նոր թուական մը հաստատեցին, բայց հին տոմարը տարւոյն սկսիլն չփոխեցին, վասն զի ռամկաց մեծ շփոթութիւն կ'ըլլար, որք յանյիշատակ ժամանակաց աննահանջ և փոփոխական արեգակնային տարիներով հաշուէին իրենց ժամանակը. սակայն գիտունք և մանաւանդ կրօնից պաշտօնեայք՝ զանէ տարւոյն եղանակաց վրայ սահմանեալ տօները ճիշդ կատարելու համար պէտք էր հաստատուն տոմար մ'այլ ունենային. այսպէս մեր ազգն այլ ունէր, և նման Եգիպտացւոց, անշուշտ և հին Քաղդէացւոց, որք հաստատուն աստեղաբաշխական կէտէ մը սկսեալ էին Թուականնին, այսինքն աստեղ մը, և սովորաբար շնիկ աստեղ բարձրագոյն կէտին վրայ եղած ատեն արեւուն դիրքը և տարեգլուխը զուգելով, ինչուան որ նորէն նոյն բարձրագոյն կէտին զուգէր արեւն և տարեգլուխն՝ մէկ շրջան մը սեպէին, և անուանէին Շնկան շրջան (Սոթիական ըստ Եգիպտացւոց, կամ Մենոֆրեան տարի)[194]. որ է 1460 արեգակնային (այսինքն 365 ¼ օրեայ) տարիներու, և 1461 աննահանջ (365 օրեայ) կամ շարժական տարիներու[195]։ Այս հաշուով կու գտնեն Եգիպտացւոց շրջանաց և Թուականաց սկիզբն. այսով այլ մենք զմերս գտնեմք. վասն զի արդէն մեր տոմարին մէջ երկու տեսակ Թուական նշանակեմք, մէկն հասարակ և Հայոց Թուական ըսելով, զոր ի վերն յիշեցի, միւսն Յայսմաւուրաց կամ Սարկաւագայ ըսելով. այս ետքինս է անշարժ արեգակնային տարիներով չափած, և մեր գիտուն տոմարագիտաց ծանօթ է Հին Հայ անուամբ։ Արդ մեր շարժական Թուականն որ անդադար կու համրուի, հարկաւ ժամանակի որոշեալ կէտէ մը սկսած է, զոր լինքն իրեն գտնելն դժուար է. ըսել է որ այն կէտն է նաեւ անշարժ տոմարին սկիզբն, կամ պարզ եւս ըսելով, եղած է ժամանակ մը որ երկու տեսակ տարեաց գլուխքն այլ նոյն մէկ օրը սկսած են, թէ՛ կրօնական և թէ քաղաքական նաւասարդն (տարեգլուխ) մէկ են եղած։ Հիմայ մեր երկու տեսակ տարեաց զուգութեան կէտն կամ տարին փնտռելու ըլլանք՝ կու գտնեմք ո՛չ յամի 552 (յորում սովորական Թուականս մեր հաստատեցաւ), այլ յամի Տեառն 428, ի վերջանալ Արշակունեաց թագաւորութեան և ի ժամանակի Թարգմանչաց մերոց. բայց արդէն ասոնց գրուածներէն յայտնի է որ անկէ առաջ այլ այս շարժական և անհաստատ

տարւոյ կիրառութիւն կար, և այն ատեն չէ՛ հաստատուած այս Շնկան շրջանն ի Հայս, և ոչ շրջան մ՚այլ առաջ, որ է ըսել 1032 տարի նախ քան զՔրիստոսի Թուականն, զի այս ատեն ոչ մեր ազգին և ոչ մեր դրացեաց մէջ նշանաւոր դէպք մի չի յիշուիր. այլ եթէ շրջան մ՚այլ ի վեր ելնենք՝ կու հասնիմք Քրիստոսէ առաջ 2492 տարւոյն, որ է վերը պատմութեան ցուցած Բելայ սպանման տարին և մեծի ազատութեանն և ազգութեան Հայոց ի ձեռն քաջին Հայկայ. որ և թուի թէ ինքնին, որպէս նախ ըսինք, հաստատեց այս տարիս թուագլուխ իր ազգին ժամանակագրութեան, և արեգակնային ստոյգ տարւով կանոնաւորեց. վասն զի հին տոմարն այս կանոնաւոր տարւոյն համար կ՚ըսէ Հին Հայն. և դարձեալ ուրիշ քաջահմուտ տոմարագիտէ մը (Սարկաւագ Վարդապետ) գիտեմք, որ Շնկան շրջանն ծանօթ էր Հին Հայոց և անուանէր Հայկայ շրջան. բայց ինչպէս Եգիպտացիք[196], Քաղդէացիք և Հրեայք և այլք՝ քաղաքական կամ ռամկական օրինօք արեւուն առերեւոյթ շարժմունքը գիտելով շարժական տարւով հաշուէին հասարակօրէն, այսպէս և մերազգիք (մինչեւ ցայժմ ըստ Հայ Թուականին). իսկ հաստատուն տարին քահանայից և գիտնոց ծանօթ էր, այլ հրապարակաւ չէր ի գործ ածուէր. այսպէս վարուեցան մեր նախնիքն այլ ինչուան Քրիստոսի 122 Թուականն, յորում Արտաշէս Բ Հայոց հին տոմարը ուզեց Հռովմայեցւոց տոմարին յարմարցընել և հաստատուն տարիներով վարել, և թողուց Հայկայ շրջանը. բայց թէպէտ ուրիշ գրած կարգերէն ոմանք մնացին, այլ տարէթուին հին սովորութիւնն անփոփոխ մնաց հասարակաց մէջ, ինչպէս անկէ ետքն այլ, և դեռ հիմայ այլ այնպէս հաշուի և նշանակի Թուականն Հայոց։ Արդ Հայկայ շրջանին կամ հին Հայ տոմարին տարեգլուխն կամ Նաւասարդն միշտ գտուի ընդ 11–23 օգոստոսի (ըստ Յուլեան և Գրիգորեան տոմարաց), որ է անպատշաճ տեղ մը եղանակաց մէջ, և պատճառն յառաջ նշանակեցինք ըստ աւանդութեանց մերոց՝ թէ Հայկայ յԱրարատ մտած օրն ըլլայ, որ էր ատեն 13 օգոստոս. և հանդիպի 2450–2497 տարիներուն միջոց նախ քան զՔրիստոս։ Սակայն եթէ լաւ գիտենք մեր հայ ամսոց սկզբնաւորութիւնքն, արեգական ամիսն Արեգ՝ կու հանդիպի ճիշդ և ստոյգ գարնային հասարակածին օրը, մարտի 9 = 21. որ է արդարեւ բնական տարեգլուխ, ուսկից կու ջանային սկսիլ նաեւ Հրեայք, Պարսք և ամենայն կիրթ և բանգէտ ազգք կամ ազգապետք. և մեր տոմարաց մէջ մինչեւ ցայժմ նշանակեմք այս գեղեցիկ, ճշմարիտ և հնութեամբ պանծալի կարգաւորութիւնը, դժբաղդաբար առանց գործածելու և օգտելու։ Գոնէ ճանչնանք մեր հին նախնեաց գիտութիւնը և արդիւնքը.

Digitized by Google

որոց առաջին և հեղինակ ինքնին Հայկն վկայի ի հին տօմարագրաց մե-
րոց. ոչ միայն արեգակնային շրջանին իւր անուամբն կոչուելովն Հայկայ
շրջան, այլ և հին աւանդութեամբ ազգային, թէ Հայկն դրած ըլլայ տար-
ւոյ և ամսոց կարգերը և անունները. և ազգիս աստուածաշնորհ պարգեւաց
մէկն այլ ըլլայ այս կարգաւորութիւնս, մինչեւ մեկնիչն հին տօմարագրու-
թեան Հայոց ըսէ. «Զշարժումն ամսոց Եբրայեցւոց և զանշարժութիւն Հայ
» ամսոցդ սահմանեաց Բարձրեալն. զի հաւատ և գիր և տումար՝ այս
» երկու ազգիս միայն ետ Աստուած, և այլոց ազգացդ մարդկան են արա-
» րեալ... զՑումարս՝ անդ Մովսէս. աստ՝ Հայկն յառաջ քան զնա»: Նոյն
դարձեալ. «Յառաջ քան զՄովսէս ոչ ուրեք էր դիտութիւն արուեստիս,
» բայց միայն ի Հայ ամսոցդ, որ էին յառաջ քան զՄովսէս. քանզի ասեն
» թէ ի ձեռն Հոգւոյն որ ազդէր ի նահապետսն՝ Հայկն առաջին նահա-
» պետն Հայոց՝ զամիսքդ կարգեաց, և զանուանս ուստերաց և դստերաց
» իւրոց ամսոցդ կոչեաց»: Առաջին աւանդութիւնն որ և ի հնագոյն
գրուածի է, այլ աւելի հնագոյն և սիրելի կարծիք և համարումն կ'ընծայէ մեր
նախնեաց առ նահապետն իւրեանց Հայկն. իբրեւ ոչ միայն քաջութեամբ՝
այլ և գիտութեամբն և բարեկարգութեամբք հայր և հեղինակ ազգին: Իսկ
երկրորդն, այսինքն ամսոց անուանքն ըստ Հայկայ զաւակաց կոչուած ըլ-
լալուն, աւելի շատոց գրոյց է, ոմանք՝ ինչպէս հոս յիշած հեղինակս (Վա-
նական, Վարդան), նոյն իսկ Հայկայ կ'ընծայեն այդ անուանադրութիւնը.
իսկ այլք՝ աւելի պատշաճապէս, թէ «Հայկ եդ որդւոց և դստերաց իւրոց
» անուանս, զոր առեալ Հայոց զանուանս ուստերաց և դստերաց նորա՝
» եդին ի վերայ ամսոցդ, վասն մեծարանաց հօրն, և են այսոքիկ Նա-
» ւասարդ և Հոռ և Սահմ և Մեհեկ և Արեգ և Մարեր, դստերք էին Հայ-
» կին. իսկ Տրէ և Քաղոց և Արաց և Հրոտից որդիք էին Հայկին. իսկ
» Մարգաց և Հարուսան զոր այժմ Ահկի կոչեն, զայսոցիկ ի գործոյ առին
» զանուանս»: Ուրիշներն տարբեր կերպով կ'ըսեն. ինչպէս Վանական
առաջին եօթն ամսոց անունները Հայկայ արու զաւակացն սեպէ, յետոյ
երեքն՝ դստերաց, իսկ Մարգաց և Հրոտից ըստ եղանակաց տարւոյ. բայց
իւր կարծիքն է թէ «Ստուգապէս ամենայնի ի վերայ յեղանակացդ» տարւոյն
յարմարեալ է: Այսպիսի քննութեան տեղն հոս չէ, բայց ի հարկէն ըն-
թուած մեր կարծիքն այլ ըսեմք համառօտիւ, թէ անհաւանական չէ որ ի
սկզբան Հայկայ զաւակաց և ուրիշ դիւցազանց անուանքն դրուած ըլլան
մեր ամսոց վրայ, բայց հիմայ յիշուած անունները չեմ կարծեր նոյն.
բայց գուցէ Հոռ ըլլայ Խոռ ծանօթ որդին Հայկայ, այլ հաւանագոյն երեւի
յետոյ դիցաբանական և աստղաբաշխական սկզբամբք դրուած ըլլալ:

Իսկ խօսք մ'այլ Հայկայ որդւոց Թուոյն վրայ ըսելով, պատմիչք եօթն դուստր յիշեն առանց անուան, հինգ այլ արու. Բելայ դէմ ճակատամարտին մէջ այլ յիշուեցան հինգ որդիք Հայկայ, յանուանէ Արմենակն միայն. իսկ պատմութեան մէջ յետոյ յիշուին և Խոռ և Մանաւազ: Թերեւս այս յիշեալ երկոտասանից Թուոյն յարմարցուցին աւանդաբանք և տոմարագիրք երկոտասան ամսոց անուանքն:

Այս ամէն միջանկեալ գրոյցներէս մեր ընդունած հետեւանքն է նախ, որ Հայկն որպէս ազգապետ և կարգադիր, միանգամայն և հմուտ նահապետական օրինաց, իբրեւ սրբազան կարգ մը սեպած էր տօնից և յիշատակաց և աւուրց հաստատութիւնն այլ, վասն այնորիկ և առաջին Տոմարագիր ըսուեցաւ. որ և պատճառաւ իր ցեղազարմութեանն (ի Յաբեթայ) Յաբեթական տոմար ըսուեցաւ[197], ըստ մերոց տոմարարանից: Երկրորդ՝ զի Նեբրովթայ յաղթելուն տարին թէ ինքն և թէ իր յաջորդքն ազգային Թուական մը սեպեցին, և գլուխ արեգակնային շրջանին, որ նորա անուամբն ըսուեցաւ Հայկայ շրջան, և որոյ սկիզբն է նախայիշեալ 2492 ամն նախ քան զՔրիստոսի Թուականն. ապա ամենայն իրաւամբք կրնամք և պէտք է մեր ժամանակագրութիւնն և ազգային Թուականն սկսանիլ այս տարիէս, որ և յետ Հրէից՝ ամենէն ստուգագոյն, հնագոյն, նուիրական և պանծալին է ի Թուականս ազգաց. յիրաւի ուրեմն պարծի հին տոմարագիրն մեր այս հնութեան և առաջնութեան վրայ:

Բայց պէտք է այս խնդիրներէն Թօթափիլ և նորէն զՀայկն գտնել, իր յաղթանաց Ձորէն դուրս. ուսկից՝ պատմութիւնն կու զրուցէ որ՝ դարձաւ յառաջին տուն նահապետաց, ի ժառանգութիւնն Կադմոսի, զոր Նեբրովթ գրաւեր էր, և ուր Թերեւս կային բնակեալ Բաբելացիք, զորս հալածեց. և անշուշտ հոն այլ ամրոցներ շինեց, և երկար ատեն այլ բնակեցաւ յապահովութիւն աշխարհին, վասն զի սահմանակից էր Թշնամւոյն երկրին հետ: Խորենացին այլ յիշէ այս բանս, բայց վերջը նորէն ի Հարք դարձաւ կ'ըսէ, ի բնագաւառն իւր, և հոն այլ կարծեցնէ անոր վախճանն. իսկ միւս հին պատմիչն ընդ հակառակն ի Հարք երթալն ոչ յիշէ, այլ և որոշակի կ'ըսէ Թէ հոս յառաջին տունն Արարատեան բնակեցաւ, և մեռանելու ատենը տուաւ ի ժառանգութիւն Կադմեայ, որպէս յառաջն, իսկ իր անդրանկան՝ Արմենակայ, պատուիրեց որ երթայ իր ընտրած և սատանը հաստատած տեղը, ի Հարք գաւառն: Երկուքին բանն այլ համաձայնի այսպէս. ի Հայոց Ձորոյ ելաւ Հայկն ի տուն Կադմեայ, բնակեցաւ որչափ բնակեցաւ, և Բելայ աւարներէն մեծ մաս մը հոն Թողուց՝ Կադմեայ,

Digitized by Google

*միանգամայն և կարիճ մարդիկներ «յիրոց ընդոծնացն առս անուանիս». որպէս զի թէ պէտք ըլլայ՝ Բաբելացւոց դէմ դնէ. և ինքն գնաց իւր տիրական տեղը, ի Հարք։ Բայց յետ ժամանակաց որ և է պատճառաւ՝ զարձեալ ի տուն Կադմեայ եկած է (ինչպէս թերեւս շատ հեղ այլ դայր), և հոս այս սրբազան և սրբագիր Արարադեան երկիրը, ուր որ ծներ այլ էր ընդ առաջին որդիս և թոռունս Նոյի, ուր թերեւս անոնց շատերն թաղուեր այլ էին, ուր թերեւս ինքն իսկ Նոյ. հոս և ազգահայր մեր Հայկն կնքեց իր նահապետական (իբր՝ 400ամեայ) կեանքն, իբր 50 տարի մը յետ մեծի պատերազմին և սպանման Բելայ. և եթէ վերոյիշեալ Յովհ. Կաթողիկոսի թուականը սեպենք Հայկայ մահուանը՝ 2446 տարի նախ քան զՔրիստոսի թուական, որ է 47ր տարի Շրջանին և Թուականին Հայկայ, թերեւս վերջին ըլլալով Նոյեան պայազատաց՝ որ այն երկրորդ մարդկութեան լեռնաստան բնավայրը՝ յԱրարատ բնակեցան ու մնացին. և որոյ մօտ հաւանօրէն կային դեռ իբրեւ դրակիցք՝ Սեմայ պայազատքն այլ, մինչեւ յԱբրահամ նախահայր Հրէից։*

*Հայկայ այս նահապետական և յաւերժայիշատակ երկրին մէջ վախճանիլն՝ նոր հաւաստիք մ՚այլ կրնայ զրուիլ իրեն ընծայուած ուղիղ աստուածպաշտութեան, որոյ վրէժխնդիր և ջատագով կեցաւ ընդդէմ Քամեանց և Բելեանց. և զոր ազնուագոյն ժառանգութիւն թողուց իր ազգին, որք ընդ նախահարց Աբրահամու՝ Նոյի հաւատքը պահէին, թերեւս մինչեւ այս մեծ նահապետին առեն, երբ տարրապաշտական հմայութեան շշուկ մը կու յիշուի Հայկազանց մէջ։ Այսոնց աստուածպաշտութեան հոս յիշելու արժանի հաւաստիքն այլ այս է որ ամենեւին Հայկայ պաշտօն մատուցանել կամ աստուած ճանչնալ յիշուած չէ մեր պատմութեան մէջ, ինչպէս որ յետոյ ուրիշ քանի մը դիւցազանց համար յիշուի. իսկ համաստեղութեանց մէջ դասելն զՀայկն՝ յետ ժամանակաց կ՚երեւի, որ թէ և մոլոր սկզբամբ ըլլայ այն առեն, կամ ի հակառակութիւն Բաբելացւոց, հիմայ որ այդ սնոտի կարծիքն հեռացուց մեզմէ ճշմարիտն Աստուած Քրիստոս, կ՚ուրախանամք մեր ամենարժեայ ազգապետը երկնից լուսաւորաց մէջ անուանել և տեսնել իւրանուն պայծառ աստղը, և շնորհակալ եմք մեր սրբազան մատենագրաց այլ որ զայդ անկորուստ աւանդեցին ի թարգմանութեան Աստուածաշունչ գրոց մուծանելով։ Այս առթիւս յիշեմք որ մեր աստղաբաշխական կամ տոմարական գրոց մէջ երբեմն Հրատ մոլորակին տեղ այլ Հայկն լսուի. կայ նաեւ Կշիռ համաստեղութեան տեղ այլ Հայկն բռնած. ինչպէս երբեմն այլ Հայկն և Շամփուր նոյնանիշ համարի. իսկ*

Շամիրով Թուի Սայլ համաստեղութեան մօտ կամ մասն իմանալ ։ Այս ամէնս այլ ցուցընեն որ երբ ախտաբաց պաշտօն մտաւ ի Հայս, և ըստ օրինակի այլոց՝ ազգային դիւցազունքը յերկինս դասաւորել ուզեցին մերայինք, նախ և ի վեր քան զամենայն զՀայկն պաշտաճեցուցին հոն ։ Թերեւս Հայկայ բրած տոմարական կամ տօնական ինչ ինչ կարգաւորութիւնքն այլ (զոր յիշեցինք վերը) այս բանիս աւելի պատճառ տուած ըլլայ. և զայս այլ Հայկայ թողած կամ իրեն ընծայուած բարի յիշատակաց մէկն պէտք է ճանչնամք ։

Ամենէն գլխաւոր յիշատակն և երախտիքն այլ է իր սերնդոց տալ և ապահովել ազգային ազատութիւն և իրաւունք, զոր նահապետական օրէնքն և աստուածախառն բաժանումն բաբելական դաշտին տուեր էին մարդկան , և զոր Նեբրովթ կ'ուզէր վերցընել ։ Արդ այն ցանկալի իրաւանց և ազատութեան , որոյ վրայ միշտ և առաւել եւս մեր ժամանակները խօսիր և կոխ կ'ըլլայ, առաջին քաջ և յաղթօղ նահատակ պատմութիւնն հռչակէ զՀայկն, ի մեծ պատիւ իր ազգին, թէ և դժբաղդաբար իր յետին սերունդքն շատ ատեն զրկուեցան ինքնագլխութեան շնորհքէն ։ Ինքնագլխութեան անհրաժեշտ հարկաւոր է ինքնուրոյն օրէնք և քաղաքական կարգք , մանաւանդ այնպիսի առթով ազգ կամ տէրութիւն մը ձեւացնողին պէտք է որ թէ առանձին բարեկարգէ , և թէ դրսեցոց դէմ զգոյշ և ապահով պահէ. ուստի անտարակոյս է թէ Հայկն այսպիսի կարգեր և զգուշութիւններ դրաւ. և պատմութեանս կարգին բերած քիչ շատ յիշատակքն իրեն պատերազմական հմտութեան, բնակութեան և ամրութեան շինուածոց, յիշատակարաններ ամբառնալուն կրնան վկայ ըլլալ այս բանիս ։ — Ազատին վարչութեան կամ պայազատական օրինաց մէջ այլ դիտելու է՝ ժառանգութեան տուրքը. որ թէ Հայկայ և թէ իր սերնդոց պատմութենէն կ'երեւայ, որ նախ անդրանկութեան իրաւանց մեծ պատկառանք ունէին. տանուտէրն կամ նահապետն երբոր որդիքը մեծնային և որդւոց տէր ըլլային, իր սահմանաց մօտ տեղուանք կու սփռէր զանոնք, անդրանիկը քովը պահելով. ընդ հակառակն կ'երեւի թէ (շատ հեղ) իր զաւակաց ընկերները իբրեւ տուն—փեսայ իր մօտ կ'առնուր ։ Երբոր խօսս բազմանային հայրենի տան մէջ, նահապետն ինքնին կու հեռանար անկէ՝ նոր տուն մը հաստատելու, որ և իր անդրանկան նոր ժառանգութիւն պիտի ըլլար, իսկ առջի տունը կրսեր որդւոց կու տրուէր. մինչեւ առ յետագայս այլ մնաց այս սովորութիւնս, ինչպէս յիշէ Մխիթար Գոշ ի դատաստանագիրս իւր. «Զտուն » հօր՝ կրսեր որդւոյն սովոր են տալ» (Գլ. ՃԶ) ։

Հայկայ ուրիշ յիշատակ կամ արձան չի գտուիր , որպէս ի սկզբան

ըսինք, բայց քանի մը համառօտաբան պատմչաց աւանդածն. բայց թէ հին ատեն երկայն տեղեկութեամբք գրուած էր իր դիւցազնական քաջագործութիւնն, և թէ անգիր զրոյցներ այլ կային, զայն այլ յիշէ պատմութիւնն. և բառագրոց մէջ մնացեալ քանի մը տողք պատմականք[198] (զոր ի կարգին խառնեցինք) վկայ են թէ նախնիք մեր անտարբեր չէին իրենց արժանաւոր անուան ազգահօրն. և անշուշտ իրենց վիպասանից երգոց մէջ պէսպէս այլաբանութեամբ ստոյգ և սուտ զրոյցներ այլ կար Հայկայ վրայ, զոր յետոյ ժամանակին երկարութեամբ իրարմէ ընտրել չկարացին ոմանք, և այնպէս խառնեցին իրենց գրուածոց մէջ, որոց համար ըսէ Խորենացին, «ի բայ բանից և անօճ խմն յաղագս Հայկայ և նմանեացն կակազէ»[199]:

Յայտնի է որ ազգն՝ ամէն բանէն աւելի իր նահապետին վրայ մեծօգուտ քաջութիւնը կու գիտէր և հիանայր, իբրև գերմարդկային իմն շնորհք և գաղափար ուժոյ և վայելչութեան, միանգամայն աւել դիւցային աստուածախառն իմն անձն և օրինակ. այնպէս որ գրեթէ Հսկայ և Հայկ բառերն միանան ի միտս նախնեաց մերոց քաջասիրաց. բատ այսմ և հին ընտիր գրիչք մեր՝ ազգային ոգւով և լեզուով փոխանակ մեծամարմին հսկայի կ'ըսեն Հայկազուն (Փիլ. Եփր. Ագաթ.). անհնարին ուժով ըրած բանին՝ Հայկաբար, զոր օրինակ Ագաթանգեղոս Տրդատայ համար ասէ. «Առեալ Հայկաբար զութ արձանսն ի վերայ ուսոց». ուր կրնայ և կարծիս այլ տալ թէ Հայկն այդպիսի գործ մ'այլ ըրած ըլլայ, այսինքն մեծամեծ քարեր շարժած, վերուցած, ձգած, ինչպէս յունական հսկայքն այլ: Անվախ և կարիճ քաջը կոչեն Հայկասիրտ (Թ. Արծր.). Թերևս Հայկայ վայելչութիւնն այլ իրեն նուիրեալ աստեղ հետ խառնելով, գերազանց իմն յանդգնութեամբ, սրբազան անձն մը՝ որ միայն կրնայ այսպէս անվախ յանդգնիլ՝ զամենաշնորհ Աստուածածինն իսկ կոչէ Հայկանման ի պատրուակն Հայկեան խորհրդաբանելով զսուրբ և Քրիստոսածին որովայնն: «Գաբրիէլ յաւետաւորութիւն առաքեալ Հայկանման Կուսին, երջանիկ և երանելի տիրուհւոյն, հրեղէն Թևօք սաւառնեալ, ուրախ լեր բերկրեալ և Տէր ընդ քեզ, ասէր»: Եւ ի վերջոյ. «Իբրև զՀայկն գեղեցիկ փայլելով զԱստուած ընկալցուք»: (Ս. Գր. Նարեկ. յՄիլ է զայ):

Եթէ այսպիսի դիւցախառն միանգամայն և նահապետական անձի մը որ և է յիշատակն ցանկալի է, և կորուստ յիշատակացն ցաւալի, պէտք է մխիթարական ըլլան նոր ատենս անոր արծարծմունքն ի բանասէր սերունդս խոր և յստակս իսկ[200]. որոց մեծագոյնն և արժանաւորն է համբաւական վէպքն ի Հայկն որ գրեթէ մեր այլի մատենագրութեան և ազգային պարտուց մէկ պակասութիւնը լեցուց:

# ԺԱ

# ՀԱՅԿԱԶՈՒՆՔ Ց'ԱՐԱՄ

## ԱՐՄԵՆԱԿ – ԱՐԱՄԱՅԻՍ – ԱՄԱՍԻԱ – ԳԵՂԱՄ – ՀԱՐՄԱ

ՀԱՅԿԱՅ *տէրութեան երկիրն ըստ աւանդութեան Վրաց՝ էր բոլոր Մեծն Հայք, ի Թորգոմայ ժառանգեալ, որոյ վրայ կ'աւելցընեն ոմանք նաեւ այն երկիրները՝ զոր յետոյ իր յաջորդքն ստացան և ձեւացուցին Հայոց աշխարհը կամ որոյ տիրեցին Արշակունիք. ինչպէս որ ասէ Վարդան պատմիչ Վաղարշակայ ընդարձակ տէրութեան համար, թէ ժառանգեց «Զսահմանսն զոր Հայկն ստացաւ զաւակօք իւրովք և որդւովք եօթն » դստերաց իւրոց»։ Բայց ստոյգ պատմութիւնն, ինչպէս տեսանք, մեզի ցուցընէ Հայկայ ձեռքին տակ՝ Հայաստանի միջին հարաւային չորս աշխարհքները միայն, այն այլ մասամբ, այսինքն են Կորճայք, Մոկք, Վասպուրական և Տուրուբերան ։ Իր երկրակալութեան ընթացից գլխաւոր ուղղութիւնն էր ի հարաւոյ ընդ հիւսիս, ինչպէս նաեւ իր որդւոց և թոռանց. միայն թէ ինքն դէպ յարեւմուտս գնաց, անոնք դէպ յարեւելս ։ Յիշեալ աշխարհաց առաջինները ինքն կտակաւ կամ հրամանաւ թողեր էր Կադմոսի և ուրիշ որդւոց և թոռանց, իսկ ետքինը որ իր բնիկ ստանն էր (Հարք), թողուց իր անդրանիկան պայազատին՝ Արմենակայ. որ եթէ առաջ այլ հօն բնակէր կամ չէր, հօրը մահուանն ատեն գտուեցաւ իր որդւոյն Կադմեայ տունը. և նոր պատուէր առաւ հօրմէն՝ երթալու ի Հարք, ուր և յետ կատարելու անոր մահուան և թաղման օրէնքները (որոց վրայ լռէ պատմութիւնն, որպէս և գերեզմանին տեղը), գնաց ի Հայկաշէն, և բնակեցաւ բաւական ժամանակ իր միւս եղբարքը և որդւովքն, մինչեւ աճելով լցուցին այն սահմանները։ Ապա Արմենակ իբրեւ տանուտէր և ազգապետ՝ իր երկիրը թողուց և բաժնեց իրմէ ետեւ եկող երկուց եղբարցն Խոռայ և Մանաւազայ, և սոոր որդւոյն՝ Բաղայ, որք սփռեցան ի Հարքայ դէպ յարեւելք, մինչեւ Աղթամարայ ծովուն արեւմտեան և հիւսիսային եզերքն։ Իսկ ինքն բոլոր ընտանեօք՝ որդւովք և թոռամբք և կրսեր եղբարբք և անոնց ընտանեօք և ընդոծնօք չուեց գնաց դէպ ի հիւսիս արեւելից, Արա-*

Digitized by Google

*ծանույ հոսանաց դէմ ելնելով, մինչեւ անոր ականց ծաւալեալ գեղեցիկ և ընդարձակ հովիտն Բագրեւանդայ, ուր և ժամանակ մը կ'երեւի բնակած, եթէ այն տեղն հիմկու գիւղ և բնութիւնն ունէր, և հոն թողած զամենա յիւրոցն. և անկից անցնելով Եփրատայ և Երասխայ անջրպետ՝ Հայկական լեռնապարէն, սկսաւ իջնել և կամաց կամաց բնակիլ ի պարահովտին Երասխայ, որ և բուն Հայոց գետահովիտն եղաւ, և Այրարատեան բնաշխարհ. և նոյն ուղղութեամբ յառաջելով հասաւ գրեթէ մինչեւ ի Հակակովկաս լեռները, անոնք՝ որ զԱյրարատ աշխարհ բաժնեն ի Գուգարաց։ Ասոնց ստորոտէն քիչ հեռու գեղեցիկ և ընդարձակ դաշտի մէջ հաստատեց իր տանուտիրական բնակութիւնը՝ մօտ բարձր լերան մը, որ դեռ Հայաստանի մէջ չափեալ լերանց գրեթէ երկրորդ ճանաչի բարձրութեամբ, և Մասեաց պէս և աւելի իսկ զատուած ուրիշ լեռներէ շեղջաձեւ կ'ամբառնայ։ Այս տեղը և Արմենակայ բնակութիւնը կայտառ գրչով մը նկարագրէ մեր պատմահայրն Խորենացի, անշուշտ իր նախապատմչէն առած, ի Մարիբասայ, զոր և արժան է ընթեռնուլ. «Արմենակայ առեալ զամենայն բազ-*
*» մութիւնն, խաղայ յարեւելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշ-*
*» տավայր մի ի բարձրագագաթանց պարապեալ լերանց, գետոց կարկա-*
*» ջասահից յարեւմտից ընդ մէջ անցելոց (որ են Երասխ և օժանդակք*
*» իւր), և զդաշտն արեւելեայ գոգցես իմն որսայսեալ, ձիգ յարեգակն կայս*
*» զերկայնութիւնն պարզեալ. և (առ) ստորոտովք լերանցն բազում ակա-*
*» նակիտ բղխեալ աղբիւրք, որք ի գետոց հաւաքումն եկեալ՝ հեզաբար առ*
*» սահմանօքն նոցա, ծնիւքն լերամբք և եզերօք դաշտին՝ պատանիք ամանք*
*» իբրեւ առ երիտասարդուհեօք ճեմիցին։ Այլ հարաւային արեգակնաճեմ*
*» լեառն՝ (Մասիս) սպիտակափառ ունելով զգագաթն, ուղղորդ ի յերկրէ*
*» բուսեալ, երեքօրէիւ, որպէս ասաց ոմն ի մերոց, քաջագօտւոյ առն*
*» շրջապատեալ ճանապարհաւ, և առ փոքր փոքր ի շեշտումն անկեալ, ծեր*
*» ոմն արդարեւ լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանցն»։ Այս երկու լերանց միջոցն (Մասեաց և Արագածու) բուն Այրարատեան աշխարհ կոչեցաւ յետոյ և ազնուագոյն մասն աշխարհին Հայոց. այս այն երկու լեռներն են՝ զոր մեծ աշխարհագիրն Ռիտտէր նմանեցուց երկուց դրանց պահակաց, յորոց միջէ կ'անցնին խոր արեւելքէն եկողք յարեւմուտք։ Արմենակ՝ այս լերանց հիւսիսայնոյն ստորոտը, և անոր այլ աւելի հիւսիսագոյն կողմը հաստատեց իր բնակութիւնը, ուրիշ տեղուանք այլ շինելով, յորոց մէկն ըլլայ թերեւս հիմայ Արամլը ըսուած գեղն. ի հարաւակողմն Արագածոտն գաւառի. որ է Արագած լերան չորս կողմն և մանաւանդ դէպ*

ի Հարաւ սահմաններն. և անուաննին առած են, ըստ պատմչին՝ յԱրմենակայ անուանէն. վասն որոյ սոուգարանեն հիմայ Արմենակայ—ազած տեղ, զուգէ համառօտելով զԱրմենազածն, եթէ այսպէս կոչուած էր ի սկզբան. կամ թերեւս լաւ եւս է կարծել որ մեր նահապետին անունն Արմենակ բաղադրեալ էր յԱր(այր) և Մեն կոչմանց, և առաջնոյն միայն կնքեց լերան և գաւառին անունը. որ յետոյ Այրարատայ 20 գաւառաց մէկն գրուեցաւ. իսկ հիմայ գաւառն ուրիշ մանր վիճակներ բաժնուելով (Թալին, Թալիշ, Բիւրական և այլն) լեռն դեռ հին անունը կրէ, փոխեալ յայլազգեաց յԱլակէզ: Լեռնէն և գաւառէն աւելի Արմենակայ անունը անմահացեալ է իր սերնդոց և ազգին վրայ, և թէպէտ հասարակօրէն իր թոռան թոռնորդւոյն՝ Արամայ՝ անուամբ կ՚ըսուի ազգերնիս Արմէն կոչուած, բայց թերեւս հաւանագոյն է որ այն երկիրն և ժողովուրդ որ մի ըստ միոջէ կրեց զանուն տան Աշքանազայ, Թորգոմայ և Հայկայ, աստ յաջորդին անունն այլ առած ըլլայ, որ է իսկ Արմէն, թողլով զ՚Այն մասնիկն զդուական. և զայլազգ գրուածս կամ կոչուածս, ինչպէս Արամանեակ, Արմանեկ, Արմանեակս, Արմենիկ[201]:

Յիշեցնէ պատմութիւնն՝ որ Արմենակ յետ ծննդեան և զարգացման իր պայազատին Արմայիսայ, շատ տարիներ այլ ապրեցաւ, ըսել է որ երկար ատեն ազգապետեց յետ Հայկայ, մինչ յ՚220 թուական սորա: Իսկէ որդւէ որդի յաջորդաբար ութ ազգ՝ Հայոց նահապետ եղան 300 տարւոյ չափ, մինչեւ Ասորեստանեայց բռնակալութիւնը. յետ որոյ ընդհատեցաւ ուղիղ իշխանական ազգասերութիւն Հայկայ, և երբեմն անոր ցեղէն երբեմն յօտարաց կացին Հայպետքն. բայց յետ հազար և աւելի տարիներու, Քրիստոսէ 7 դար առաջ դարձեալ յիշուին ազգապետք Հայոց յԱրմենակայ ցեղէն իջած, որոց սերունդքն այլ Դ Հայոց մէջ կամ Անգեղ տան կողմանց իշխանք և տանուտեարք, յորոց էր Վաղարշակայ ժամանակակից իշխան Տորք հսկայն:

Բ. Արմենակայ եղբարց մէջ աւագագոյնն կ՚երեւի Խոռ, թերեւս և Հոռ, մանաւանդ եթէ իւր անուամբն կոչուած է մեր ամարին երկրորդ ամսին Հոռի. այդ անունդ հիմայ աւելի ռամկօրէն ծանօթ է պակաս, ծուռ կամ խոր նշանակութեամբ, թերեւս և խոլոռ (նայուածք). պարձեալ խոռն, և յախուռն հոմանիշք լսին. յորմէ կրնայինք կարծել թէ իր տհեղ նայուածքէն կամ շարժուածքէն Խոռ ըսուած ըլլայ, եթէ այդ բառն այլ այդպէս լսուէր այն ատեն. այս իմաստին կրնայ նպաստաւոր ըլլալ նաեւ Խոռայ երկրորդ բնակութեան մէջ (զոր յետոյ պիտի յիշենք) Խոժոռնի անուն տեղն,

Digitized by Google

որ նոյնպէս խոլոռ նայուածք նշանակէ։ Իր անդրանիկ և ազգապետ եղբօր ի հիւսիս երթալէն ետեւ, Խոռ ժառանգեց հօրը՝ Հայկայ գաւառակերտ տունն և գաւառն Հարք, ընդ Մանաւազայ միւս եղբօրն, որոյ յետ զինակից էր Բելայ դէմ պատերազմին մէջ. և յետ ժամանակի տուր թողուց տեղը՝ բուն հայրենի օրինաց, և ինքն քիչ մը յառաջ քալեց դէպ յարեւելք՝ հիմակուան Աղթամարայ ծովուն արեւմտեան հիւսիսային անկիւնը, ուր որ Արագածոյ նման սրածեւ բարձրանայր հին Մասիք լեառն, հիմայ Սիփան, և անկէ քիչ պակաս բարձր կ՚երեւի. այս լերան բոլորակքն մինչեւ ի ծովեզրն իր անուամբ Խոռխոռունիք[202] ըսուեցան, և Տուրուբերանի 16 գաւառաց մէկն են, Հարքայ, Ապահունեաց և Բզնունեաց քով։ Այս Արարատեան Մասեաց անուանակիր և նախանձորդ լերին արեւելեան հարաւային ստորոտը մինչեւ ցայժմ ճանաչուի Խոռանց գիւղն, որ այս կորիճ գիւղագին գաւառակերտ տոտանն ըլլալ իմացընէ։ Դեռերուն մէկն այլ յարեւելեան հիւսիսի՝ Արմիզոնք անուանեալ՝ արդեօք Արամազոնք ըուշակել տայ թէ Արամազդայ պէս անուն մը. ինչպէս այլ ըլլայ՝ շատ հին շէնք և անուն մը ցուցընէ, ինչպէս Տարօնք, Ցրօնք, Ապտօնք և այլն։ Այս գաւառս այլ շինելով և բնակութեամբ լեցընելով Խոռ՝ թողուց իր կրսերաց, եղբարց և որդւոց, և ինքն Արմենակայ պէս չուեց ի հիւսիս, և անոր սահմաններէն այլ անդին անցնելով, այսինքն Վրաչայոց կամ Հակակովկաս լեռներէն, ինչուան Գուգարաց արեւելեան կողմը գնաց և բնակեցաւ, որուն վկայէ հին պատմիչն թէ, «Խոռն ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ » զշէնս իւր». և երկու շէնք, զոր մեր միջին դարու պատմիչք սակէ յիշեն Խոռակերտ և Խոժոռնի, որք և հիմայ այլ ճանաչուին Շուլաւէրի միճակին մէջ (ի հինն Տաշիր)։ Այս չուագնացութիւնք նահապետաց մերոց յայտնի նշան են ժամանակին շինութեան, բազմածնութեան և երկարակեցութեան։

Խոռայ պայազատքն այլ Հայոց մէջ ամենէն հին և նախապատուցեղ մը ձգեցին, «Մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց, արք » քաջք և անուանիք»։ Հայկեան քաջութիւնն աւելի իմն սեփական սեպուեցաւ իր այս որդւոյն (Խոռայ) և անոր ցեղին. այնպէս որ Վաղարշակ այլ անոնցմէ ընտրեց իր Թիկնապահքը, որոց գլխաւոր և ցեղապետն ըլլալով այն տանն Մախազ կամ Մալխազ անն մեծ, Թիկնապահութեան պատիւն այլ Մալխազութիւն ըսուեցաւ, և երբեմն փոխանակ Խոռխոռունեաց ալ կամ իշխան ըսելու Մալխազ կ՚ըսուէր, և Հայոց հարիւրաւոր նախարարաց և պատուաւորաց մէջ շատ հեղ նախապատիւ և նախագահն էր

Digitized by Google

իշխան կոչմամբ[203], Հայկեայ ցեղասերութիւնը յայտնի պահած ըլլալուն համար. ինչպէս որ Սիւնիք այլ այս ցեղապահութեան համար թէ նախապատիւ եղան և թէ Հայկազունք կոչուէին ց'ԺԱ դար: Բայց ինչպէս ուրիշ մեծամեծ և հին Հայ տոհմեր, այսպէս այս այլ շատ հեղ երկու գլխաւոր ճիւղ կամ աէրութիւն ունէր, մէկն կ'ըսուէր բուն Մաղխազ, միւսն Խոռխոռունի: Դ և Ե դարուց մէջ շատ անգամ ի պատմութեան յիշուին Մաղխազք և նահապետք Խոռխոռունեաց, որպէս Գարջոյլ, Խորէն և այլն:

Գ. Երրորդն յանուանէ ծանօթ ոստն է Հայկեայ Մանաւազ (և յեղափոխմամբ Մանազաւ) ոստին, որոյ անունն այլ նշանական յատուկ իմաստ մը խոստանայ. ի սանսքրիտ լեզու Մանաւյաս՝ մարդիկ նշանակէ և շատ համանական է. Մաև, մեն (յորմէ և Ար–մեն–ակ) անուամբ սկսեալ և կցեալ է իր որդւոյն անուան նման (Բազ) ձայնով: Սա այլ ժառանգեց զՀարք յետ Խոռայ, և անոր երկրորդ բնակութեան (Խոռխոռունեաց) հիւսիսակողմն այլ շէնցուց, որ է Հարքայ արեւելակողմն և Ապահունիք գաւառ կոչեալ յետոյ: Այս երկու գաւառաց սահմանամէջն (Հարքայ և Ապահունեաց), Արածանւոյ վտակաց մօտ՝ հաստատեց իր բնակութիւնը, որ յետոյ ընդարձակելով և ամրանալով մեծ և նշանաւոր քաղաք մ'եղաւ և մինչեւ ցայժմ կայ և ծանօթ է Մանազկերտ անուամբ, որով և Հայաստանի ամենէն հին և մնացեալ քաղաքն է, 4000 տարիէ աւելի ըլլալով սկիզբն, որոյ չափ հին խիստ քիչ քաղաք կայ բոլոր երկրիս վրայ. յայտնի է որ անոնց պէս այս այլ փոփոխեալ է և առաջին շինուածքին հետքն գտնել դժար է, սակայն նոյն անունը և տեղն պահած, և միշտ բնակուած և շինուած է: Հայոց հին ցեղից և գահուց մէջ նախապատներէն մէկն եղան Մանաւազեանք այլ, ինչպէս կ'երեւի գահնամակաց մէջ, ուր անոնցմէ զատ նշանակի և Ապահունիքն, կամ երկու անգամ Ապահունի նշանակի, մէկը և առաջինը՝ բուն Մանաւազեանը ցուցրնելով. երկու տոհմն այլ հայկական զօրահանդէսին մէջ հազարական հօգի կու տային, որ նոյնպէս ցեղին մեծութեանը վկայ է: Միջին դարուց ատեն, կամ Սկիւթացւոց և Բիւզանդացւոց աշխարհակալութեան՝ Հայաստանի ամուր միանգամայն և վաճառաշահ քաղաքաց մէկն ըլլալով Մանազկերտ՝ բռնաբարութեան և պատերազմի առիթ էր. հիմայ փոքր քաղաքաւան մ'է: Ապահունեաց գաւառին անուան ծագումն յայտնի և ստոյգ չէ. հին բառակարգ աշխարհագիրն Հուն կամ Հոն կոչէ զշինողն Ապահունեաց, որ գուցէ Մանաւազայ որդի ըլլայ, եթէ ստոյգ է շինողը. վասն զի գաւառին անունն կարծել տայ թէ շինողն Ապահ պիտի կոչէր. գիտնոց ոմանց և մեկնչաց կարծիք է թէ յանուանէ Ման–աւազայ՝ Հայաստ-

Digitized by Google

տանի միջնաշխարհը հին տանն Ման կամ Մին կոչեալ ըլլայ, և այս անունս է Երեմիայ մարգարէութեան մէջ յիշեալն ըստ եբրայեցի և լատին օրինակաց Ս. Գրոց. յայն անուն և Նիկ. Դամասկացի թուի Լեառն Մինեայ կոչել զապաւանակիր լեռը: Անտարակոյս է որ յետ եղբարցն Արմենակայ և Խոռայ ի հիւսիս չուելոյ, Մանաւազ ոչ միայն ժառանգեց իր հօր Հայկայ ստանը, այլ և կ'երեւի թէ անկէ չհեռացաւ. որով իր անունն մնաց այն և մերձակայ գաւառաց վրայ, և հարաւայնոց ծանուցաւ իբրև տուն Մանաւազայ կամ Մինայ:

Դ. Բազ որդին Մանաւազայ՝ բնակութիւնը հաստատեց Աղթամարայ ծովուն հիւսիսային արեւմտեան եզերքը, Խոռխոռունեաց, Տարօնոյ և իր հօր Մանաւազայ սեփական կալուածոց միջոց, և ինչուան ի ծով տարածելով շինութիւնը, թէ զերկիրը և թէ զաղի լիճն անուանեց Բզնունի, ինչպէս գրեն պատմիչք մեր և միշտ նոյնպէս յիշեն զգաւառն զայն. որով իմացուի թէ կամ անունը այլայլեր են յետինք, և կամ նախահայեան բուն Բազն՝ անուանէր ինչպէս պապն այլ Հայկն. այս անունն է հնագոյնն որ տրուած ըլլայ հիմայ Վանայ ծով կոչուածին: Բազայ գաստակերան կամ ոստանն ո՞ւր էր՝ յայտնի չէ, թերեւս ծովէն կլլուած ըլլայ, ինչպէս որ յառաջելով և բարձրանալով թէ՛ այս գաւառին և թէ Խոռխոռունեաց մեծ մասեր ծածկած է, ինչպէս գրեթէ զԱրծկէ այլ, որ գաւառիս գլխաւոր քաղաքներէն մէկն էր, և մօտեցած ի խորս՝ մեծագոյն եւս քաղաք, հիմայ երկուքն այլ գրեթէ աւերակ. ուրիշ մեծ քաղաք մ'այլ կայր, կ'ըսեն բնակիչք կողմանն՝ Արծկէի հարաւակողմը, զոր բոլորովին ծածկեր է ծով: Բզնունեաց տոհմն այլ մեծ և նախագահ տոհմից մէկն էր հին տանն, առաւել քան առաջին յիշեալն. և իր զօրաբաժինն էր 3000 մարդ, որով շատուոր ըլլալն այլ կ'իմացուի, ինչպէս հիմայ մեր լեզուն գուշակէ, նախապետին անուան ստուգաբանութիւնն այլ: Բայց պատմութեան մէջ վերջերն գրեթէ չյիշուիր այս մեծ տոհմը, և պատճառն այլ ստոյգ նշանակուի, որ է այս: Բազայ գաւառին սահմանակից (չէ յայտ ո՛ր կողմն) էր Որդունեաց երկիրն այլ, որք սերեալ էին անշուշտ Որդ կամ Որդի անուանեալ նախապետէն, որ թուի թէ էր եղբայր կամ որդի Բազայ. այս երկու ցեղքն յետ հազարաւոր տարեաց իրենց հին բնակութեան սահմանաց վրայ կռուելով Հայոց անիշխանութեան միջոց մը, յետ մահուան Ս. Տրդատայ, զիրար ջարդելով շատ քիչցան. անոր համար Արշակունեաց և Սասանեանց իշխանութեանէն ետեւ՝ չի կրցան այլ իրենց նախապետութիւնը քշել, և ընկան ուրիշներու իշխանութեան տակ և անյիշատակ եղան: Այս երկուքն

առհմապետքն այլ Բազ և Որդ՝ իրենց հօրեղբարց պէս՝ կ'երևին յետ ժամանակի նոյն հիւսիսային ճամբան բռնած և Խոռայ երկրորդ բնակութեան մօտ բնակած. ուր և Խոռակերտի մօտ կայ մինչև հիմայ Բազկերտն կամ Բազարկերդ, և Բազու ձոր՝ անոր մօտ ի Տաշիրս, ինչպէս նաև Բազում լեառն ի նոյն գաւառի. հոն է (Տաշիր) նաև Որդաձորն յիշատակեալ ի պատմչաց. և այս ամէնքն հաստատեն հին պատմչին ըսածն այլ չըսածն այլ. այսինքն թէ Խոռայ և թէ իր եղբօրորդեաց վերջին բնակութիւնը ի լերինս և սկզբան ի հովիտս Կուր գետոյ, ի սահմանակցութեան Տաշրաց և Գուգարաց։

Ե. Հոս այս հին նահապետաց երկու իրարմէ հեռու բնակարանները յիշելով, մէկն ի Տուրուբերան աշխարհի, միւսն ի Գուգարս, զարմանք և գիտելիք կու գայ, թէ ինչո՞ւ անոնց երկուքին միջոց գաւառքն ամենևին յիշեալ չեն բնակութեամբ, որպէս արժան էր ըլլալ. այսինքն ի Հարքայ և յԱպահունեաց բնական կու գար անցնիլ ի Բագրևանդ և ի Կոգովիտ և անտի յԵրասխաձորն կամ հովիտն. լռութիւն հին պատմչին և բնութիւն երկրին գուշակել տայ, որ այն հին ատեն գոնէ Բագրևանդ և Կոգովիտ ընդարձակ ծովակ մ'էին, որոց եզրակից էր մեծ հրաբուխ լեառն Մասիս. և անշուշտ ասոր քովերէն (վանայ ծովուն արևելեան հիւսիսէն գալով) անցաւ յետոյ Արմենակ, Խոռ, իր եղբայրն և եղբօրորդիք յԱրագածոտն և ի Տաշիր երթալու ատեն։ Այս կարևոր և մութ խնդիրը թողլով ի քննութիւն երկրաբանից՝ դառնանք ի պատմութիւն Հայկազանց, և յերրորդ ազգապետն մեր,

Զ. ԱՐԱՄԱՑԻՍ, կարծուի 60 տարւոյ չափ և մինչ յ'280 թուականն Հայկեայ ազգապետեալ, շինութեամբք և քաջութեամբ գործոց անուանի եղեալ, ըստ ակնարկելոյ պատմչաց, եթէ անուանք ստուգաբանութիւնքն չեն գուշակեր իր քաջագործութիւնը, վասն զի զ'Արմայիս՝ Արաքսին իմանան. ինչպէս Մագիստրոս, «Մեր Արմայիսեան արութիւն», և յառաջ քան զնա՝ Յովհ. կաթ՝ գովութեամբ ասէ, թէ «Սորա արիական քաջամասնութեան » հանդէսք՝ բաւական քեզ յառաջնոցն քան զիս մատենագրացն՝ պատմի». բայց զի չհասան այդ քաջագործ հանդիսից պատմութիւնքն, և ոչ գիտեմք թէ ընդդէմ որո՞ց էր գործածն, Բաբելացւո՞ց թէ այլ կողմանց[204]։ Իր գլխաւոր և հաւանական թողած յիշատակն է դաստակերտ մը՝ որ հազարաւոր տարի Հայոց տէրութեան մայրաքաղաք եղաւ, այն է Արմաւիր կամ Արմավայիր, զոր «և անուանէ յիւր անուն». ասէ պատմիչն (Խորեն)։ Արմաւիր անունն ինչուան հիմայ ծանօթ է՝ այդ հին դաստակերտին փլատակաց վրայ.

*Հայկայ որդին այլ Թոռն այլ Արամ՝ տար նման անուամբ կոչուած են՝ ուրիշ բառ կամ մասնիկ մ՚այլ հետն ունենալով. իսկ տար անուան կցորդ բառը, որով քաղաքն անուանի՝ կ՚երեւի զուգաձայն և զուգանիշ հին Թրակացւոց Խրիա կամ Բրիա բառը, որ նշանակէ քաղաք[205]. ինչպէս են իրենց քաղաքներն Սելիմբրիա, Մեսեմբրիա կամ Մեսեբրիա (Մեսաւիր) և այլն։ Այս քաղաքը կամ ոստանը, հաստատեց Երասխ գետոյն եզերքը «ի վերայ սարոյ միոյ», այսինքն բարձրիկ տեղ մը, համանօրէն գետոյն հիւսիսային եզերքը, ինչպէս որ հիմայ այլ է, Թէպէտ և բաւական հեռացեալ շէնքէն, ինչպէս որ արդէն Քրիստոսի Ա դարու վերջերն այլ՝ Երուանդայ ատեն՝ այնքան հեռացեր էր, որ դժար կ՚ըլլար քաղքէն ջուր առնուլ, և անոր համար Թողուց նա զհին զ՚2300 տարուան մայրաքաղաքն Հայոց և շինեց զնորն, Երուանդաշատ. բայց Արմաւիր իբրեւ Թագաւորական կալուածք և ամրոց ճանաչուէր մինչեւ ի կէս Ե դարու. յետ որոյ աւերեալ անշքացաւ, և հիմայ միայն տեղն յայտնի է, Թէփէտփը ըսուած գեղին քով, բոլորովին ամայի և խոպան դարձած, ոչ շատ հեռու ի Սարտարապատ քաղաքէ։ Արմայիսայ յաջորդ Հայկազունքն մինչեւ ի բռնակալութիւն Ասորեստանեայց՝ Թէ և առանձին դաստակերտներ շինեցին Այրարատ աշխարհին զանազան կողմերն, բայց առաջ կամ վերջը ամէնքն այլ յԱրմաւիր բնակեցան՝ որ արդէն մայրաքաղաք մը ձեւացեր էր հանդերձ ամրութեամբն. որոյ և պարիսպքն և աշտարակք յիշուին Արմայիսայ Թոռնորդւոյն ատեն, որոց շինող անշուշտ ինքն էր հիմնադիրն. Թերեւս նոյն և անկող սօսի ծառերու՝ ի յիշատակ հօր իւրոյ Արմենակայ. յորմէ կրնամք գուշակել Թէ հոս փոխադրեց անոր մարմինն այլ, և Թերեւս այն սօսիքն իր գերեզմանին շրջապատքն էին, որ սրբազան տեղ մը դառնալով, քիչ ատենէն անոնց տերեւոց ձայնքն այլ հովերուն շատ կամ քիչ փչելուն չափով՝ զանազան հմայից նշանք համարուեցան. և սրբազան կամ կրօնական անձանց կայանք եղաւ, Թերեւս և քրմարան և յետոյ մեհեան և վարժարան։*

Է. *Արմաւրայ շինուԹենէն կու սկսի անոր մատուցող Երասխ գետոյն հնչակն այլ, որ Հայոց սեփականագոյն գետն եղաւ, ինչպէս իւր հովիտքն այլ ազգերնուս ամենէն հին և մեծ քաղաքաց յատակ և անոր պէսպէս անցից յիշատակարան։ Իր անունն այլ գրաւ Արմայիս, յանուն Թոռին իւրոյ Երաստոյ[206] ըստ պատմչին, որոց վերջաւորուԹիւնքը նման չեն, և հաւանելի է Թէ մեր ազգայինին Թոռն այլ Երաստ կամ Արաստ կոչէր, Թերեւս երկու վանկական անուանց բարդուԹեամբ Ար և Աստ, մին Աս-*

Digitized by Google

տուծոյ նշանակ, միւսն հայկական Արամենանց. մանաւանդ զի օտարաց մէջ Արաքս կամ Արաս և ըստ Պարսից Արազ կոչի գետս ։ Բայց ինչ պատճառաւ այս հայկազնոյն անունը դրուեցաւ գետոյն, մեր պատմութիւնն լռէ, այլ հետաքննին և բազմահմուտ հելլեն պատմիչն Պլուտարքոս՝ գետոց անուանադրութեան գրոց մէջ պատմէ խառնակ աւանդութեամբ, թէ գետն առաջ Երմոս կամ Ակմոն կ՚ըսուէր, և Արաս ոմն Հայոց թագաւոր՝ որդի Պիլասի՝ նետով զարկաւ սպանեց զիր պապը՝ զԱրբել, և տեղը անցաւ. բայց խղճէն և յարհաւրաց տանջելով և վախնալով՝ ինք զինքը նետեց գետոյն մէջ, և անկէ անուանակոչեցաւ ։ Ուրիշ պատմիչ մ՚այլ (Կտեսիփոն վասն Պարսից առ Պլուտարքոսի) կ՚աւանդէր թէ Արաս Պարսից հետ մեծ և դժար պատերազմ ունէր. աստուածոց պատգամներէն իմացաւ որ եթէ իր երկու կոյս աղջկունքը զոհէ անոնց՝ կու յաղթէ թշնամեաց. Արաս աղջկանցը արեան չխնայելով, յաղթութիւնն այլ չուզելով փախցընել, իր մէկ արքունական պաշտօնէին (որոյ անունն էր Մեսալքս) երկու դստերքը զոհեց. նա այլ հայրենի աղէխարշութեամբ և վրէժխնդրութեամբ՝ թագաւորի դստերքը սպանեց, և փախաւ Սկիւթացւոց քով. իսկ Արաս յուսահատեալ և չկարենալով վրէժխնդիր այլ ըլլալ՝ ձգեց զինքն ի գետն ։ Մեր պատմութեան լռութիւնն այլ չարգիլեր կարծել թէ այսպիսի դժբաղդ դիպուած մը հանդիպած ըլլայ, այսինքն Արմայիսայ սիրելի թոռան ողբերգական մահ մը գետավիժութեամբ. թերեւս ուրիշ նշանական դիպուածովք, զոր այլափոխութեամբ յիշեն օտար պատմիչքդ, և այդ նշանական և եղերական դիպաց համար համբաւն տարածեալ ըլլայ յարեւելս և առ հելլէնս, որպէս յետոյ և համբաւ եղերական մահուն Արայի և գեղեցկին, այլափոխութեամբ զաւնի յիշեալ և ի Պղատոնէ ։ Այսպէս մարդկային բնութիւնն կամ սիրտն ի սկզբանէ հետէ աւելի զգայուն գտուած է առ ցաւալիս քան առ ուրախականս. և առ մերս գալով, մինչդեռ մեր պատմութեան յաջողութեանց և գլխաւորագոյն դիպուածոց անգամ տղէտ են օտարք, անոր սրտահար դիպուածները իրենց ողբերգութեան նիւթ առած են. և այս Հայկազանց հանդիպածքն կարծես թէ ցուցանեն ողբերգութեանց առաջին նիւթ ըլլալ, պատմական կարգաւ յառաջելով քան զամենայն հելլենական դիւցազանց դէպս ։ Իսկ այս անուանակոչութեան դէպքը՝ նման է Հռովմայեցւոց հին պատմութեան յիշածին այլ, (Լիւ. Ա. Գ.) թէ Տիբերինոս՝ մի ի պայազատաց Ենէասայ, գետավէժ ըլլալով յԱլպուլա (Սպիտակ) գետ, սա անկէ ետեւ մինչեւ ցայժմ Տիբերիս կոչի ։

Երասխայ պատմական աւանդութեանց վրայ խօսելով՝ յիշենք աւելի

անվաներ զրոյց մ'այլ, յԱննիոսեանն Բերոսոսէ, ըստ որում Նոյ յետ ջրհեղեղի ծնած է բաց յայլոց և դուստր մի Արագա անուն, յորմէ կոչեցաւ գետն Երասխ։ Ասի թէ և Ս. Ճիլտաս Բրիտանիացի որ ի Զ դարու իր խրատական գրոց մէջ հայրենեաց վրայօք այլ խօսի, յիշած ըլլայ զԱրագա դուստր Նոյի և մայր Բրիտոնի, յորմէ Բրիտանիացիք. որով համաձայնի ընդ մերայոցն աւանդութեան զՄանիտոնէ. ըստ Աննեայ՝ Բրուտոս և Նեպոս որդիք են Սկիտայ, որդւոյ Արագայ. և ասոր անուամբ կ'ըսէ Սկիտայ կոչուեցաւ Հայաստան ի նախնումն. Արագայ համար այլ առէ թէ նկարէին կէս կին կէս իժ, մարդու հետ պլլուած։

Ը. Երասխ Արմայիսայ ո՞ր որդւոյն որդին էր, չըսեր մեր պատմութիւնն, այլ միայն երկու որդի յիշէ մեր երրորդ նահապետին, զԱմասիա՝ որ իր յաջորդն եղաւ, և զՇարա. ոմանք ի յետին դարու գրչաց մերոց (Եղ. Ջմիւռն.), ասոր տեղ երկու անուն կու դնեն Շարա և Սագ, և ոմանք՝ (Երեմ. Չէլէպ.) այս երկուքը միացնելով Շարագ։ Շարա՝ ըստ պարսկականին Շէրէ, նշանակէ որկրամոլ, շատակեր. արդ պատմութիւնն և աւանդութիւնն վկայեն թէ, այսպիսի էր Արմայիսայ երկրորդ որդին, միանգամայն և յորովածին. Թերևս և բազմակին ըլլալով, հակառակ նահապետական օրինաց, ուր եղաւ շատ զաւակաց և Թոռանց՝ որք այնքան բազմացան և տարածեցան Արմայիսայ կալուածոց մէջ, մինչև ուրիշ որդւոց բաժինները նեղցընել. անոր համար հայրն խաւրեց զՇարա ամենայն ընտանեօքն իր պատանկերանին (Ամաւրայ) և Երասխաձորոյ հիւսիսակողմը, և Արագածոտան արևմտեան հիւսիսակողմը, ընդարձակ և բարեբեր դաշտ մը, որ թէ յԱրագածայ և թէ ի Գուգարաց լերանց իջնալ վտակներով ոռոգի և բարգաւաճի, և հոն բնակիցուց. որ և անոր անուամբ Շիրակ կոչեցաւ, և Այրարատայ ընդարձակ և բազմաշէն գաւառաց մէկն եղաւ, և ի միջին դարու արքունիք Բագրատունեաց հարստութեան։ Շարայի շատակերութեան կամ շռայլութեան համբաւ՝ իբրև առակ ազգէ ազգ բերնէ բերան անցաւ, մինչև յետ 2–3000 ամաց ազգային ռամկական առածից մէջ կ'ըսուէր շատակերաց համար, «Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ » համբարքն չեն». և ըստ համբաւոյն և աւանդութեան գուշակի թէ շռայլ և շուայտ, կերող արբեցող, զբօսասէր կենցաղասէր անձ մ'էր, և այնպիսի անձանց նախատիպ, թերևս յետոյ և պաշտօնընկալ ի Հայս, որպէս Բագոսն Յունաց։ Ըստ այսմ դիտման անյարմար չէ Շարայի եղբայր մ'այլ ունենալն Սագ անուամբ, նոյն պարսկերէն իմաստիւ Նուագարանաց, որ խնջոյից և գինարբուաց յորդորակք և ախորժակք են։ Շարայի Թոռանց

*կամ մերձաւոր սերնդոց և պայազատաց մէկն իր անուան մօտ կոչմամբ յիշէ Գուշար, որոյ սերունդքն բնակեցան Շիրակայ հիւսիսակողմը և Գուգարաց լերանց ստորոտը, լեռնահովիտ և լճոտ երկիր մը, որ կ'երեւի թէ Գուշարայ սերնդոց մէկուն անուամբ կոչեցաւ Աշոցք գաւառ, և Այրարատոյ հիւսիսագոյն մասն եղաւ. և յետոյ առանձնակ իշխանութիւն կամ պայազատութիւն մը սեպուէր այս գաւառս, իբրեւ սահմանամէջ Հայոց և Վրաց. այս հաքիններս փոխանակ Աշոց ըսելու՝ Աշոց կ'անուանեն զգաւառը։ Արշակունեաց թագաւորութեան հիմնողն Վաղարշակ՝ Գուշարայ սերունդքը հաստատեց իշխանական ազատութեան երկրին. և այս երկրին անուամբ միայն կու յիշուին անոր (Գուշարայ) ցեղն՝ Աշոցան*[207] *կոչելով, մինչեւ ի Ե դար, ըստ բաւական մեծապատիւ ցեղս, որոյ զօրաբաժինն այլ արքունի բանակին մէջ էր* 500 *ոգի։*

**Թ. ԱՄԱՍԻԱ** *Թոռնորդի Հայկայ և չորրորդ ազգապետ մեր, երեւի իբր յ'*280 *թուին Հայկայ կամ աւելի ետքը տանուտէր նստեալ Հայոց յԱրմաւիր։ Իր անունը Մազխուրոս ստուգաբանէ Աստուածոր տեսուչին, չգիտեմ ո՞ր սկզբամբ կամ լեզուաւ. այս անունս Եգիպտացւոց թագաւորաց մէջ այլ գտուի Ամասիս կոչմամբ, և հելլենաց այլ ոչ անծանօթ և ոչ հեռաւոր. մանաւանդ առաւ նշանաւոր՝ որ աշխարհիս մեծագոյն և հնագոյն մասին անունն Ասիա՝ նախ այս մեր նահապետին անուան մէջ պարունակի. յորմէ թերեւս խորհրդածեն ոմանք ի նոր բանասիրաց մերոց՝ թէ սա ինքն ըլլայ նախ հիմնարկող Ամասիա քաղաքին Պոնտոսի, և անկէ նախ այն կողմերն, ապա բոլոր մեծ մասն հին երկրին կոչեալ ըլլայ Ասիա։ Ասիկայ շատ մեծ պարծանք կ'ըլլար թէ մեր նահապետին և թէ իր սերընդոցս, եթէ բաց յանուան նմանութենէն՝ ուրիշ փաստ մ'այլ ունենայինք. այլ զինչ և ըլլայ՝ նշանական է հնութիւնն՝ որոյ չափ մեր չեն եղեր ուրիշ ազգաց աւանդութիւնքն զԱսիոյ և զԱմասիոյ։ Մեր հին պատմիչն Ամասիոյ համար կ'աւանդէ միայն շինութիւնք Այրարատեան դաշտին և աշխարհին հարաւակողմը, և անոր և բոլոր Հայաստանի բարձրագոյն լերին անուանակոչութիւնն յիւրմէն՝ Մասիս կամ Մասիք, որպէս կոչուէր և Խորխորունեաց մէջ եղած բարձր լեռն Ցիպնայ (Սիփան), և որոց ձայնակից է Մասիոս լերինք՝ Միջագետաց և Հայոց սահմանակցութեան վրայ, յորոց գուշակի մասնաւոր նշանակութիւն մը անուան, սեփական լերանց, որ մեզ անծանօթ է։*

*Արդ Ամասիա յետ երկար ատեն բնակելոյ յԱրմաւիր և ծնանելոյ հոն բաց յայլոց՝ երեք որդիս՝ Գեղամ, Փառոխ և Ցոլակ, առաջինը թողուց հոն*

*իր տեղ, և մէկայլ երկուքովն անցաւ Երասխ գետը, ուղղակի յարևելս Հարաւոյ երթալով իբրև աւուր մը ճանապարհ, կամաց կամաց սկսաւ ելնել Այրարատեան բարձրագոյն լերին հիւսիսային ստորոտին վրայ. որոյ և բոլորտիքն բնակութիւններ հաստատելով՝ այն այլ առանձին գաւառ մ'եղաւ և անուանեցաւ յետոյ Մասեաց-ոտն։ Գլխաւոր երկու մեծ բնակարան շինեց «մեծապէս ծախուք» ըստ պատմչին, լերան ամուր և խորունկ տեղուանքը. մէկն անոր հիւսիսային արևելեան կողմը, լեռնոտէն ըղխեալ աղբերակաց քով, և տուաւ ղայն Փառախ, որոյ անուամբն այլ Փառախոտ ըսուեցաւ։ Այս անունս և ստուգաբանութիւնն երկբայական է. միջի խ տառը բնիկ Հայկազնեան չերևիր այլ Սեմական[208]. բայց եթէ անունն սկսուէր Փարախ ըստ այժմու նշանակութեան՝ հօտից տեղ, և շէնքն այլ Փարախոտ. չեմք այլ կարծեր թէ շէնքին վերջանունը պարսկերէն խոտա, ստացուած, բառը նշանակէ։ Իսկ միւս շէնքը՝ յանուն Ցոլակայ կոչեցաւ Ցոլակերտ, և առաջինին արևմտակողմն էր և անկէ հեռու իբրև օրուան մը ճամբայ հետևակ գացողի։*

*Ամասիոյ այս երից որդւոց գրուած պերճ ու պայծառ անուանքն՝ որ գեղեցկութիւն, լոյս և փառք իմացնեն, մեծամեծ շինութիւնքն տան գուշակել, իր պերճասէր և բարգաւաճ բարքն ու վիճակն, միանգամայն և հարուստ ու յառաջացեալ քաղաքականութիւն մը, որոց չափն և արգասիքն կամ միջոցքն մեզմէ անծանօթ են, այլ թերևս սովորաբար կարծուածէն աւելի՝ ժամանակին խաղաղութեամբ և երկարակեցութեամբ։ Ամասիա իր անուամբ կոչեալ գաւառին մէջ տուն մը բնակելով իր կրսեր որդւոց քով՝ նորէն դարձաւ իր Հայրենական ոստանը, և քիչ տարիէ վերջ՝ մեռաւ. ինչպէս թուի շատ երկար չապրելով, վասն զի յետ մահուան ցուցանէ պատմիչն զծնունդ Հարմայի թոռին նորա։*

*Ժ. ԳԵՂԱՄ հինգերորդ ազգապետ մեր, գեղեցկանուն և գեղեցկաշէն, ըստ Հայրենի օրինաց բնակեցաւ յԱրմաւիր այնքան ատեն, մինչև իր անդրանիկ և պայազատն Հարմա այլ որդւոց տէր եղաւ, և այն կողմերը նոր տամբք լեցնել սկսաւ. ապա թողուց զնա յԱրմաւիր՝ յոստանն տէրական՝ հանդերձ անոր մանր որդիկոքն, ուզելով որ իր օրինաւոր ժառանգն մնայ պապուն հաստատած տեղը, և անկէ հետև ուրիշ տեղ չփոխադրեն ազգապետքն[209]։ Իսկ ինքն անոնց կրսեր եղբարց նոր տեղ և բնակութիւն պատրաստելու համար գնաց դէպ ի հիւսիսային արևելք, ուր կ'երևային երկայնաշար լերինք իբրև արևելեան պատուարք այն Երասխեան և Արարատեան ընդարձակ դաշտաց՝ ուր սերունդքն Հայկայ ազգէ յազգ սփռուէին։*

Digitized by Google

Այս լերանց մէջ քանի մը բարձր գլուխներ և մանաւանդ ամենէն բարձրագոյնն՝ որ հիմայ Նալթէփէ և Աղ տաղ կ՚ըսուին, և յետ Մասեաց և Արագածու բարձրագոյն չափեալ լեառն է Հայոց (12010′) Գեղամայ աչքը քաշեց։ Այն ատեններ որ դեռ երթեւեկ և բնակութիւն այլ չկայր երկրիս վրայ, գետերն միայն գարվէր ճամբայ էին, և բարձր լերանց գագաթունքն՝ ուղղեցոյց. այսպէս Արմենակ զԱրագած գիտեց և գնաց ի հիւսիս, Խոռ զՑիփնայ Մասիքն, Ամասիա զմեծն Մասիս, Գեղամ այլ զսա, որ և յիւր անուն կոչեցաւ Գեղայ կամ Գեղայոյ լեառն, և իր լծակիցքն այլ մէկտեղ Լերինք Գեղամայ. որոց թերեւս ոչ այնքան ձիւնածայր գագաթն ի տունջեան, որքան բոցարձակ բաժակքն ի գիշերի իբրեւ ցամաքային լապտերք ձգէին մեր առաջին երկրաշէն նահապետքը։ Գեղայ լերան մօտենալու յարմար ճամբան այլ էր իրմէ իջած գետը՝ (Ազատ) որ դէպ յարեւմուտք երթալով Արմաւրէն ոչ շատ հեռու խառնէր յԵրասխ. անոր ականց հասնելով Գեղամ՝ կու տեսնէր որ այն լեռն քովիններէն զրեթէ զատուած ուրաբարձր է, և քովերէն տեղ կայ՝ Արարատեան պարահովտին պատուարը անցնելու, ինչպէս որ բրաւ ինքն այլ։ Եւ երբ այն կողմը պատուարներէն վար նայեցաւ՝ ոքանչելի գեղածիծաղ միանգամայն և չարժուն տեսարան մը նկարեցաւ աչացը. ընդարձակ տաշտաձեւ հովիտ մը՝ չորս կողմէն բարձր լեռներով պատած, և մէջ տեղը կապոյտ ու պայծառ մեծկակ ծովակ մը իր հովտին ձեւով, որուն երեսն իսկ 6500 ոտք բարձր ըլլալով, մեծ ծովուն երեսէն, ամառ ատեն շատ զով և զուարճալի պիտի ըլլար. և այս եղանակին համար՝ թերեւս իր նախորդաց ամէն բնակած տեղերէն վայելուչ և զանազանն էր։ Անկէ անդին ի հարկէ չէր ուզեր անցնիլ. այն բարձր լեռը իր անուամբ կնքելէն ետեւ, անոր ստորոտքն այլ՝ ծովուն գլխոյ՝ շէնքեր շինեց և անուանեց կամ անուանեցան Գեղարքունի, ինչպէս հիմայ գրուի, զուցէ լաւ եւս Գեղամունի կամ Գեղակունի ըլլար, քան Գեղարքունի, որպէս ոմանք գրեն, բայց ոչ յստ նախնեաց. պէտք չէ այն հին ժամանակ անուանց ածանցման և բաղդութեանց օրէնքն հիմկու օրինաց հետ նոյն համարիլ։ Ոչ միայն Գեղամայ շէնքերն՝ այլ բոլոր իսկ այն ծովուն բոլորտիքն, և մանաւանդ արեւմտեան ու հարաւային կողմանքն լսուեցան Գեղարքունի գաւառ, և ծովն այլ նոյնպէս. որք դարձեալ նահապետին անուամբ կոչին եւս Գեղամաշէն գաւառ, մանաւանդ հարաւակողմն, և Գեղամայ ծով։ Տօնական գրոց ճակատը (մեծանուն Սողոմոնի) վասն գաւառին ասէ «Գեղարքունի՝ որ յորջորջեցաւ յանուն Նախարարին Գեղամայ» և վասն ծովակին «Դաշնաւոր անուանեալ ծովուն Գեղագունեաց»։

Digitized by Google

ԺԱ. Արդ Գեղամ իւր սիրուն դաստակերտաց մէջ բնակեցաւ երկար ատեն, և հոն ծնաւ զաւակ մ'այլ զոր Սիսակ անուանեց, թերևս ուրիշներ այլ. բայց սա աւելի սիրուն և յառաջադէմ եղաւ շատ բարեմասնութեամբ. վասն զի այն ատեն աւելի յարգի եղած՝ մարմնոյ վայելչութիւն և ճարպկութիւն ունէր, հսկայակերպ կազմուածք՝ ուժով, բայց պատշաճագեղ, և անոր համեմատ շարժուածք և ընթացք, երագութիւն և յաջողութիւն ի զինաշարժութեան, մանաւանդ աղեղնաւորութեան, յորում Հայկայ սիրելի յիշատակն արթընցընէր. և ձեռաց ու ոտից շարժման հետ՝ լեզուի այլ վայելուչ շարժուած, զոր կորովաբան կոչէ պատմիչն. ճարտարաբան և համոզող խօսուածքը գուշակել տալով, կամ թերևս այն ատեններուն յարմար ոճից և հանդիսից մէջ յորդորախօս կամ երգիչ: Այս սիրուն և ճարպիկ որդւոյն թողուց Գեղամ իւր Գեղաքունի գաւառը հանդերձ ամենայն շինուածովքն, և իւր ստացուածոց մեծ մասն. և ծովակին հարաւակողմէն առաջ անցաւ անոր հետ, Երասխայ ընթացքը բռնելով դէպ յարևելս հարաւոյ, ինչուան գետոյն քարավազ հոսանաց տեղն, որ է հիմայ ընդ մէջ Գարապաղ և Գարատաղ նահանգաց, իսկ այն ատեն՝ քիչ մը տարբեր ընթացք ունէր. ինչուան այս տեղս Սիսակայ սահման կարեց, որ զաւկըներովն շէնցընէ. արևելքէն այլ անշուշտ ինչուան առաջին լերանց կարգը սահման դրաւ, ուսկից յետոյ Սիսակայ սերունդքն առաջ անցնելով ինչուան Կուրն և Երասխայ անջրպետ լեռները բռնեցին. և բոլոր այս երկիրները հանդերձ Գեղամայ ծովուն բոլորովն Սիսակայ ցեղին ժառանգութիւն եղաւ. և Հայոց հին ու գլխաւոր նահանգաց մէկն, որ յանուանէ նահապետին Սիսականն աշխարհ ըսուեցաւ, զոր և Պարսք և Արաբացիք մինչև ցԺԱ դար Սիսէճան կոչէին. իսկ միայնինք աւելի շատ անգամ կոչեն Սիւնիք, որ կ'երևի յանուն Սևան կղզւոյն Գեղամայ ծովուն. և այն այլ անուանեալ թուի ի Սևունի նահապետէ, որ ի սերնդոց Սիսակայ, եթէ ոչ և ինքն Սիս—ակ սեւ նշանակէ. և թէ ասոնց թէ թերևս հնագոյն Քամեան բնակչաց պատճառաւ՝ այս աշխարհս է, ըստ իս, նախամարգարէին Եթովպիա կոչած երկիրն ի նկարագրութեան դրախտին: — Գեղամ այսքան ընդարձակ բաժին լեցընելու և շէնցընելու համար, Սիսակայ տուաւ բազմութիւն ծառայից և ընդոծնաց, և որպէս թուի այն կողմերը տեղ տեղ առաջուց ցրուած ու բնակած մարդիկը, զորս իւր իշխանութեան տակ առած էր: Այս Գեղամայ մասնաւոր խնամով մեծցուցած ցեղն Սիսականն՝ այսպիսի ծագման համար, միանգամայն և պայազատաց քաջութեան և հարազատութեան համար՝ շատ հեղ յետոյ բուն Հայկազուն ըսուեցաւ աւելի քան

Digitized by Google

*զայլ ամենայն ցեղս Հայոց. և ըստ այնմ այլ երբեմն զահագլուխ եղաւ ամենայն ցեղից, շատ անգամ այլ միայն քանի մը ցեղէ յետադաս. Հայոց ամենայն հարստութեանց ատեն այլ, մեծապատիւ և քաջանշան եղաւ ցեղս, թագաւորութեան այլ հասաւ ի ԺԱ–ԺԲ դարս. և թերեւս քան զայլ ամենայն տոհմս և տունս Հայոց իր նախնի իշխանական և արիական սեփականութիւնը, թէ և այլափոխեալ և նուազեալ, պահեց մինչեւ ի յետին դարս, և դեռ հիմայ այլ գտուին սերունդք նոցա մելիք կոչմամբ պատուեալք։*

*Միայն Սիւնիք չեն ի Սիսակայ յառաջացեալք, այլ և Աղուանք, ըստ աւանդութեան հին պատմչաց մերոց, գոնէ Կուր գետոյ և Սիւնեաց մէջ եղող Աղուանք, այսինքն են բնակիչք Արցախ և Ուտի նահանգաց. և այդ անունդ (Աղուանք), կ'ըսեն, նոյն Սիսակայ ընծայուածէն յառաջ գայ, վասն զի իր անոյշ բարուց համար Աղու անուանէին. և երբ նա իր բնիկ հօրը տուած բաժնէն այլ դուրս ելնելով դէպ յարեւելք բնակութիւն հաստատեց ի լեռնակողմանս Արցախոյ, և անտից ի վայր ի դաշտն միջագետաց Կուրի և Երասխայ, զոր և լցին իր սերունդքն, բոլոր այն միջոցին բնակիչքն Աղուանք կոչեցան. թէ և առանձնակի գլխաւոր տոհմեր և ցեղեր այլ ունէին, անշուշտ անոր զաւակաց և թոռանց անուամբք, ինչպէս Ուտեացիք, նախապատիւ քան զայլս, որ և բոլոր նահանգի մը անուն տուին, և երբեմն բոլոր իսկ Աղուանից լեզուին, և թուին յառաջ եկեալ յՈտա կամ Ուտա անուն անձէ մը, (որպէս և յետոյ գաւառ Օտա կամ Ոտա անուն նախարար յաւուրս Ս. Տրդատայ). — Գարդմանեցիք, որ նոյն Ուտէացւոց նահանգին մէկ գաւառը բռնեցին. — Գարգարացիք, որ ի հնումն մեծազօր և մեծատարած ցեղ մ'եղած են, մինչեւ երբեմն Աղուանից կամ Ուտէից լեզուին տեղ՝ Գարգարացի ըսել, բայց յետոյ նուազեալ՝ չեն յիշուիր, սակայն դեռ անոնց անուանակիր գետն ծանօթ է ի դաշտին Կուրի – Երասխայ. — Ծօդէացիք, որ Կուրի յայն կողմն (արեւելեան) բնակէին, և առանձին ազգ համարէին շատ հեղ անկախ ի Հայոց, և աւելի բնիկ Աղուանից յարակից։ Բնիկ Աղուանք ըսինք այդ Կուրի արեւելեան կամ ձախակողմը և Կովկասայ ողնաշարին միջոց Թորգոմական ազգը, զոր յիշեցինք ի սկզբան Թորգոմայ պայազատութեան մէջ (էջ 121). որք և միայն Կուրի անդժուար ընթացքն ունենալով անջրպետ հարթածաւալ երկրի մը մէջ, շուտով իրարու հաղորդեցան լեզուաւ և սովորութեամբք, և երբեմն քաղաքական վարչութեամբ[210]։ Օտար պատմչաց այս ետքի արեւելեան Աղուանքն միայն ծանօթ են, զորս և* Alvani *կամ* Albani *կոչեն. ոմանք յիշեն նաեւ զՕտեացիս* (Otene) *և զԾաւդէացիս* (Sodri)։ *Հայկազանց ժամանակ բոլոր Երասխ և*

*Կուր գետոց միջագետաց երկրին (այսինքն Սիւնեաց, Արցախոյ, Ուտիոյ գուցէ և մասին Փայտակարանի) կ'իշխէր Սիսակայ պայազատն. Վաղարշակայ տուեն Առան անուամբ մէկն էր ցեղապետն, զոր և հաստատեց նա յիշխանութեան երկրին միանգամայն և զինուորական կողմապետ դրան արքունեաց. անկէ ետեւ ասոր անուամբ բոլոր երկիրն այլ կոչեցաւ Առան, և այսպէս ծանուցաւ Պարսից մէջ այլ մինչև ետքը: Այս Սիսակայ և Աղուանից նկատմամբ բանասերներու մէջ՝ կան երկբայական և քննութեան խնդիրներ, զոր ուրիշ տեղ լուծելու է: Դառնանք հիմայ մենք մեր ազգապետին, Հօրն Սիսակայ, որոյ ուրիշ մեծ շինութիւն մ'այլ յիշէ պատմութիւնը:*

*Եւ է սա Գեղամի կամ Գեղամէ դաստակերտն, զոր շինեց Գեղամ նորէն Գեղայ լերանց ստորոտը, բայց ոչ յարեւելակողմն, ի բաժնին Սիսակայ, այլ յընդդիմակողմն Գեղաքունեաց, յարեւմուտս, յԱրարատեան աշխարհի, և ի բաժնի Հարմայի, կամ մանաւանդ անոնց մէկ ուրիշ եղբօր, որոյ անունն ոչ յիշի, այլ անոր որդւոյն, որ է Գառն կամ Գառնիկ: Այս դաստակերտը, որ թուի յետին բնակութիւն Գեղամայ, շինեց լերանց ամուր ձորաւոր տեղ մը, Ազատ գետոյն ականց մօտ, գեղեցիկ դիրք, և այլ աւելի գեղեցիկ և ահաւորահայեաց տեսարանօք, զոր աւելի շէնցընելով Գառնիկ՝ իր անունը թողուց վրան, և մինչև հիմայ ծանօթ է Գառնի կոչմամբ, թէ և աւեր ամայի. բայց և աւերակաց մէջն այլ ունի զգեղեցկագոյն մնացուած ճարտար շինուածոց, Գեղամէն աւելի մեծ և սիրելի և սըրբազան ձեռքի մը, մեծին Տրդատայ, որոյ Թախտ կամ Սարաւոյր կ'ըսուէր առ յետինս, և ի նախնեաց Հռովմեոց Խոսրովիկիանոյ: Գեղամայ լերանց և ծովուն պարատափին արեւմտակողմը, այսինքն Արարատեան աշխարհին արեւելեան հիւսիսային մասն, մանր գաւառներ բաժնուած է ըստ օրինակագիր աշխարհաց, որք են սկսեալ ի հարաւոյ Արած և Երծ, Մազազ, Կոտայք, Նիգ, Վարաժնունիք կամ Մաղկունիք. հաւանական է որ ամէնքն այլ Գեղամայ և Գառնիկայ որդւոց և սերնդոց սեփականութիւն ըլլան. ինչպէս ետքինին համար յիշուի որ Վաղարշակայ ժամուն Ա. Արտաշիսի տուեն Վարաժ անուամբ կորիճ և մարդիկ աղեղնաւորի մը անուամբ կոչեցաւ, որ էր ի սերնդոց Գառնիկայ և ի պայազատաց կողմանցն:*

*Գեղամ իր երկու աւագ որդւոց բաժիններ զատելով յարեւմուտս և յարեւելս, անոնց երկուքին միջ սահմանը բնակելն նշանական բան մը կ'երեւի. գուցէ նախանձու կամ բռնաբարութեան արգելք մը ըլլալու, նոյնպէս և հրամայելն Հարմայի որ Արմաւիրը չթողու, կենայ կարծիք մը տալ ասոր վրայ կապած կամ նուազ ակր ունենալու: Այս այլ գիտելու է, որ*

Digitized by Google

մեր ազգապետացն Հայկայ ոստանէն ելնելով՝ միշտ դէպ ի հիւսիսային արեւելք կ'երթային. հիմայ Հարմայի հայրենական բնակութեան թէ հիւսիսը թէ արեւելքը բռնուած էր, ինչպէս և հարաւ, անոր համար ի դէպ գայ հօրը պատուէրն Արմաւրէն չելնելու. բայց եթէ դէպ յարեւմուտս կու մնար տարածուիլ. ուր երթալու ինչ արգելք կար, չեմք գիտեր, մանաւանդ երբ հիմակուան երկրին դիրքը նկատեմք, Վանանդայ և Բասենու ընդարձակ և բարեբեր դաշտերը, նման Շիրակայ. սակայն իրենց բնակագութիւնն և ձեւն այլ նշան տան հին ատեն ջրով բռնուած ըլլալու, ինչպէս որ Բագրեւանդայ համար ըսինք: Գուցէ եւս այն կողմերը դեռ Հայկայ հօրեղբօր՝ Ասքանազայ սերնդոց յետին արեւելեան սահմանքն էին, որոց հետ խնամութեամբ և բարեկամութեամբ ապրէին Հայկազունք: Ասոնք իբրեւ վարկած թողլով յընտրութիւն բանասիրաց, ՀԱՐՄԱՅԻ մեր վերջերորդ ազգապետին համար կրնամք ըսել որ վրան պատմութիւն մը չյիշուիր. բայց միայն բան մը, որ վերը բաժնուս նպաստ կրնայ ըլլալ. այսինքն տանուտերաց և տոհմից սահմանները տարածելուն: վասն զի հին պատմիչն Հարմայի ազգապետութեան միջոց յիշէ, թէ այս ատենէն սկսան Հայկազունք աւելի «բազմանալ և լնուլ զերկիրն», սփռելով չորս կողմն. անշուշտ ոչ իբրեւ զառաջինն՝ ազգապետին առաջնորդութեամբ նախարնակ երկրին եզերքները քշելով և ընդարձակելով, այլ թերեւս (և բռնութեամբ այլ) միջամուխ ըլլալով ի բաժին օտարաց, կամ անոնց միջէն ճամբայ բանալով ի խնդիր նոր բնակութեանց[211]:

Մինչեւ հիմայ յիշածնիս ցուցանեն որ յետ Հայկայ հինգ ազգապետք իբրեւ 350 տարի, շինեցին և լցուցին Այրարատ աշխարհին մեծ մասը, նոյնպէս զՍիւնիք, զմասն Գուգարաց, անոնց հարաւարենակ եզերքն այլ, այսինքն Հայկայ առաջին բնակութեանց մէջ Թողեալքն, անշուշտ լցուցին զՏուրուբերան, և Աղձնեաց, Մոկաց, Կորճայից ու Վասպուրականի մասերը. հաւանօրէն նաեւ Դ Հայոց կամ Մոփաց արեւելեան մասը՝ որ Տարօնոյ սահմանակիցն է. իսկ անոր արեւմտեան և հիւսիսային մասը, Բարձր Հայք և Տայոց աշխարհը, երբ սկսան բնակիլ և շինուիլ ի Հայկազանց՝ անծանօթ է. և երեւի թէ անոնցմէ առաջ բնակեալ էին ի Յաբեթական զարմից: Ուրեմն մինչեւ հիմայ յիշեալ հինգ վեց ազգապետքը կրնանք կոչել աշխարհաշէնս, ինչպէս որ կոչին այլ իրաւամբ ազգածինք. անոնց յետագայք աւելի աշխարհակալ և ազգավար. ինչպէս որ պիտի տեսնենք ի պատմութեան Արամայ:

## ԺԲ

# ԱՐԱՄ

Յետ Հայկայ իր պայազատաց մէջ ամենէն նշանաւորն քաղաքական վարչութեամբ, ազգաշէն խնամքով և պատերազմական քաջութեամբ՝ եղաւ Արամ. ահարկու օտար ազգաց և սիրելի ընտանեաց. մինչեւ ըստ հին աւանդութեան, զոր կանխաւ յիշեցինք (էջ 111), ազգերնուս Հայ անունն՝ որ կամ դեռ չէր լսուած կամ խիստ քիչ լսուած, խափանուելով օտարաց մէջ Արմեն հռչակեցաւ յանուն այս նոր նահապետիս. որ զէնքերով ընդարձակեց թէ իր տէրութիւնը և թէ ազգին անունը. միայն թէ զէնքերը փառասիրութեամբ և ագահութեամբ չառաւ ձեռք, ինչպէս շատ աշխարհակալք, այլ նախ իր ազգապետին Հայկայ՝ և անոր որդւոց սեփական երկիրները նորէն հայկական իշխանութեան տակ առնելու, ուսկից քանի մը կողմեր զրկուեր էին, կամ իր նախորդ տանուտերաց թոյլ և վախկոտ կառավարութեամբն, և կամ մանաւանդ յանդուգն յափշտակողաց բռնաւորութեամբ։ Ինչուան ի Նինոս՝ որ ժամանակակից էր Արամայ, վկայեն հին պատմիչք (Յուստին. – Դիոդ.) թէ ամենայն ազգապետք իրենց երկրին տիրէին. Նինոս առաջին եղաւ որ օտար երկիրներու տիրէ. Արամ 30 տարի մը յառաջ քան զՆինոս պայազատեց (իբր 2087 տարի նախ քան զՔրիստոս), երբ դեռ հին Բաբելացւոց թագաւորութիւն մը կար՝ Արաբացի ցեղի մը ձեռք, որ Բելեանց առաջին կարճութիւնը և բռնութիւնը չունենալով՝ անհոգութեամբ թողին իրենց երկրին չորս դին եղած աւելի մանր ազգաց իշխողներուն զօրանալ և իրարու սահման կոխել։ Այսպէս ընդ Բաբելացւոց և մեր Հայոց երկրին միջոց և սահմանակից եղող քանի մը ուժով կամ յանդուգն իշխողք. որք Հայաստանի երեք կողմէն ալ (բաց ի հիւսիսոյ) յառաջ գալով, և անոր եզերական գաւառաց տիրելով կը ստիպէին զՀայս դէպ ի հիւսիս քշուիլ. և զի այն կողմն ալ արդէն բաւական բնակուած էր այն ատեն Հայկայ եղբարց սերնդեամբք, հարկ էր Հայոց կամ նուաճիլ օտարներէ կամ վանել և նաեւ նուաճել զօտարս։ Այսպէս ըրաւ Արամ, որ և բնաւորութեամբն աւելի նուաճելու քան նուաճուելու համար եղած էր. ոչ միայն կորիճ, անվախ և կռուող, այլ և իր ազգին,

Digitized by Google

տախնեաց և երկրին վրայ մեծ և հաստատուն նախանձ ու սէր ունող, որով և պատրաստ առ ամենայն գործ և ի ջան՝ Հայկայ իրաւունքն և որդւոցը ժառանգութիւնն ապահովելու:

Այս բանս համառօտ՝ այլ ազգաւ և մեզի պանծալի կերպով կը բացատրէ մեր պատմութեանց նախապատմիչն (Մարիբաս). «Սա այր եղեալ հայրենասէր և աշխատասէր, լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեաց՝ քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենեացն. և հարազատից արեան նորա՝ տիրել արանց օտարածնաց»: Մեր պատմութեան մէջ, և կարծեմ թէ նաև ամենայն ազգաց և ժողովրդոց մէջ, առաջին անձն և իշխողն Արամ եղած է՝ որուն հին պատմիչք և երգիչք այս ցանկալի և աշխարհածանօթ, այլ սուղիւ հաղուագիւտ Հայրենասէր անունն ընծայած են, և զոր արժանապէս ժառանգեր է այն առաքինութեամբ՝ զոր միւս անունն հաստատէ, աշխատասէր: Առանց աշխատասիրութեան ընդունայն և սուտ է հայրենասիրութիւնն. զուցէ հայրենեաց բարիքը և վայելքը սիրել մ'ըլլայ, բայց բարերարել հայրենեաց և վայելել տալ հայրենակցաց՝ այս է բուն հայրենասիրութիւնն՝ որ անկարելի է յաջողելու առանց մեծ և շատ աշխատութեան: Իր պայազատութեան առջի քանի մը տարիները դժարութեամբ տեսնելով օտարաց բռնաւորութիւնը՝ աչալրջութեամբ համբերեց և պատրաստեցաւ բռնութիւնը բռնութեամբ վանելու. որոյ համար հարկ էր զէնքի և կռուի կրթել իր ժողովրդեան երիտասարդները, և յիշեցընել Հայկայ օրերը՝ որոցմէ վերջը 300 տարւոյ չափ կ'երևի թէ պատերազմ եղած չէր այն կողմերը: Բայց մեր նահապետին հնարած կամ փառաւորած աղեղն՝ թէ պաշտպանութեան թէ որսոյ պատճառաւ միշտ Հայկազանց ուսն էր. անոր հետ տէգ ու նիզակ շարժող այլ կար. որոնց կրթութիւնն և թիւն աւելցընելով Արամ՝ քիչ տարուան մէջ ինչուան 50000 ոգւոյ զօրագունդ մը կազմեց. որոց դեռ հազիւ քսաներորդ մասն ձիաւոր էր. բայց ամենքն այլ կարիճ, յաջող և ճարպիկ երիտասարդներ. միանգամայն և ընտրուած ուժով, հսկայակերպ և ահարկու մարդիկ:

Այս է առաջին թուով յիշուած զօրագունդն Հայոց ի պատմութեան. որոյ և առաջին փորձն գործն և յաջողութիւնն եղաւ ընդդէմ Մարաց: Այս ազգս՝ որ հնագոյն ազգաց մէկն է և ի հռոմ և յեւրոպացի լեզուաց՝ Մեդ կոչուի՝ իր նախահօր Մադայի անուամբ, որ էր ի զաւակաց Յաբեթի, (և այս ժամանակիս պատմութեան մէջ ալ սոյն անուամբ յիշուի ի խորենացւոյ) թէ սահմանակցութեամբ, թէ բարուք և թէ լեզուաւ, (թուի թէ

Digitized by Google

*և կրօնքով) հին ազգաց մէջ ամենէն նմանն և մերձաւորն էր մեր Հայկազանց. երկուքին սովորոյթքն այլ ի քաղաքական օրէնս և տնտեսութեան, եւս և ի զինուորութեան՝ նմանք էին, աղեղնաւորութեան և հեծելութեան մէջ հաւասարապէս վարժք ըլլալով, երկուքին երկիրն ալ աղէկ ձիոց երամակներ բերելով: Անտարակոյս է որ Հայոց պէս ալ իրենց ազգապետներն և թագաւորներ ունեցեր են, և բաւական կրթութիւն և զարգացումն. բայց իրենց հին պատմութիւնն բոլորովին կորած է, և ծանօթն կը սկսի յետ Ասորեստանեայց ինքնակալութեան կործանման և նոր թագաւորութեանց ծագման (Քրիստոսէ Ը կամ Թ դար առաջ): Գուցէ իրենք ալ ի սկզբան Բելայ բռնաւորութիւնը զգացին, և յետոյ թօթուելով Հայոց պէս ազատ էին. Արամայ ատեն իրենց թագաւորն կամ առաջնորդն Նիւքար անուամբ մէկն էր, «Հպարտ և պատերազմասէր». որ իր երկրին և Հայաստանի անջրպետ սահմանը անցնելով մեր աշխարհքը կոխեր էր. այս սահմանը բնական բաժնող և պարիսպ մ'ունէր երկու ազգաց մէջ՝ այն երկայնաշար լերանց գօտին՝ որ Վանայ և Ուրմիոյ ծովերը և Տիգրիսի ջրերը՝ արեւելքի ուրիշ գետերէն կը զատէ, և հիմայ Քէլի-Շին կ'ըսուի, հին ատեն՝ յարեւմըտեայց Զակրոս կոչուէր, իսկ յարեւելեայց Զարասպ: Այս լեռներէն անցնելով Նիւքար բազմութեամբ աւերող զօրաց, և յանկարծ յանկարծ յարձակելով՝ վերջապէս տիրեր էր մեր հին Պարսկահայք ըսուած նահանգին, և հաւանօրէն Վասպուրականի արեւելեան և հարաւային կողմանց այլ, և երկու տարի էր որ կը ճնշէր անոնց բնակիչը, որք ինչուան այն ատեն Հայկազանց երկիր և ժողովուրդ սեպուէին: Արամ իր հինգ բիւր զօրօքն եկաւ ասոր դէմ. բայց կամ անոր աւելի բազմաթիւ և զօրաւոր գունդերէն, և կամ աւելի արիւն թափելէն զգուշանալով, և կամ՝ որ հաւանագոյն է, այն ատեն դեռ կարգաւորեալ ճակատամարտ չէին ըներ, այլ աւելի խարէական յարձակմունք, ինչն այլ գիշերուան մութը և կանուխ առաւօտուն հանգիստ քունը հնարք առնլով, դեռ արեւը չծագած յանկարծ վազեց կոխեց կոտրեց Նիւքարայ բանակը, «և զնոյն ինքն զՆիւքարն կա» չեցեալ Մադէս՝ ձերբակալ արարեալ », բոլորովին ցրուեց անոր զօրքն այլ տիրապետութիւնն այլ, իր իշխանութեան տակ ձգելով երկիրը ինչուան ի Զարասպ լեռը, ուր թերեւս Հայկայ իշխանութիւնն ալ հասած էր, ինչպէս որ յիշեցինք (Էջ 126), և ուր իր անուամբ Հայք գեղ մ'այլ ետքի դարերու մէջ ճանչցուած էր, իսկ այն լերանց վրայ յարմար անցնելու տեղ մը (9000 ոտք բարձր) հիմայ յայտնի է բեւեռաքանդակ արձան մը, որոյ կանգնող և գրողն դեռ անծանօթ, կրնայ կարծիլ տալ թէ Հայոց սահմանա-*

Digitized by Google

ծայրը նշանակէ. և եթէ ստոյգ է (ըստ Խորենացւոյ) վանայ արձանագրութեանց ի Շամիրամայ գրուած ըլլալն, կրնայ Զարասպայ արձանն այլ Արամայ յիշատակն կարծուիլ։ Բայց իր ստոյգ կանգնած յիշատակն, թէ և վայրենի, եղաւ նոյն ինքն բռնուած բռնաւորն Նիւքար (որոյ անուան առաջին մասն հաւանօրէն Նոր նշանակէ, իսկ երկրորդն գուցէ զոռ կամ պատերազմ)[213]. զոր քշեց տարաւ Արամ՝ մինչեւ իր մայրաքաղաքը՝ Արմաւիր, և հոն ասոր պարսպաց գլխաւոր աշտարակին ծայրը հանել տուաւ և երկաթէ ցից մը զարնելով ճակտին՝[213] գամել կախել «ի տեսիլ անցաւորացն » և ամենայն եկելոցն անդր», ինչպէս որ Հայկ այլ ըրաւ Բելայ մարմնոյն ի Հարքս։ Նաև յաղթողաց բարբարոս ոճը, կամ յաղթուողաց անիրաւութիւնը ցուցնելու համար՝ հին ատեն սովորական պատուհաններ կու տային, ինչպէս քիչ մ'եաք Նիւքարայ յաջորդին այլ հանդիպած պիտի տեսնենք։ Իսկ անոր բռնութենէն ազատած երկիրը՝ Արամ յանձնեց Սիսակայ ցեղին, որով յայտնի կ'երեւի թէ Նիւքար Վասպուրականի կողմանց տիրեր էր, որ և Սիւնեաց սահմանակից է Երասխ գետով բաժնուելով, որոյ եզերքը կը տիրէին Սիւնիք. և ահա ինչուան այս (Արամայ) ատենէն իրենք եղան մեր աշխարհին արեւելեան կողմին պահապան կամ կողմնակալ, ինչպէս որ յետոյ Արշակունեաց թագաւորութեան կանգնելուն ատեն այլ՝ Վաղարշակ զանոնք հաստատեց, նոյնպէս իրմէ վերջն եկողք այլ։

Այս ատեն հաստատուեցաւ Հայաստանի հարաւային կողմին ալ սահմանակալ և պահապան Կադմէական ցեղն, որ է սերունդ Թոռին Հայկայ, և նախ այս մեր նահապետէն այնպէս հաստատուած։ Վասն զի արեւելքէն շրջան առնելով Արամ՝ եկաւ իր երկրին հարաւակողմը, որ սահմանակից է Ասորեստանի, և երկուքին միջոց կան Կորճայք (Քիւրտիստան) որ մեր հին հայրենեաց 15 աշխարհաց մէկն էր։ Արդ այս կողմերուս այլ, որ Հայկազանց ժառանգութիւն էր՝ ուրիշ բռնաւոր մը տիրեր էր, Սեմական ցեղէ, Բարշամ անուամբ, որ թուի այն լեզուին մէջ որդի արեւու նշանակել, և այս անուամբ Ասորւոց չաստուած մ'ունենալն յայտնի է. նոյնպէս և անոնց այս Բարշամն այլ աստուծոյ պէս պաշտելն վկայէ մեր հին պատմիչն։ Սակայն իր անոնց մէջ առած պատիւն՝ Արամայ քաջաց ձեռքէն անարգական մահուամբը գտաւ։ Ինչպէս կ'երեւի, Բարշամ Նիւքարէն աւելի քաղաքակիրթ էր, և գուցէ հին Ասուրայ ցեղէն պայազատութեամբ կ'իշխէր Ասորեստանի մէկ մասին, և սահմանն ընդարձակելով տիրեր էր Հայոց բաժնին ալ. ասոնք իրենց մօտ Կորճայից լեռներուն ապաւինելով անոր բռնութենէն կրնային փախչիլ. բայց անով ինքն ալ աւելի խստանալով

պաշտակողմերը կ'այրէր և ակամայ նուաճուողներուն վրայ ծանր հարկ ձգելով սաստիկ կը նեղէր. այնպէս որ Տիգրիս գետոյն այն առաջին տափակ և բարեբեր եզերքն անապատ դարձուցեր էր. վախ և սպառնալիքն այլ չորս դի տարածեր էր. վասն զի 40000 զինուած զրահուած հետեւակ և 5000 այլ հեծեալ զօրք ունէր. ինքն այլ կարճութեամբ անուանի և հսկայից ցեղէն խնջած կը սեպուէր։ Ասոր հետ պէտք եղաւ որ Արամ բուն պատերազմական կարգաւ դէմադէմ կռուի. պատերազմին տեղն կ'երեւի Աղձնեաց և Մոկաց աշխարհաց միջոցն ըլլալ. ուր զարնուեցան քշուեցան Բարշամայ զօրքն դէպ ի Կորդուաց լեռները. Հայք ետեւնուն ընկնալով վռնտեցին ինչուան լեռներուն անդին ասդը՝ Ասորեստանի դաշտագետինը։ Բարշամ որ իր հսկայական ցեղին և անուան նախատինք կը սեպէր՝ իրեն հակառակող մ'ունենալն, թուի թէ կ'ուզէր անձամբ Արամայ հետ զարնուիլ. բայց ասոր քաջ զինակիրքն՝ իրենց տէրը պաշտպանելով զարկին սպանցին զԲարշամ, զոր իր ազգայինքն Ասորիք՝ ինչպէս Բաբելացիք զԲէլ՝ չամըչցան իրենց աստուածներուն դասակից ընել, ի վարձ առջի քաջութիւններուն։ Արամ ոչ միայն անոր մահուամբ Հայաստանի սահմաններն ազատեց, այլ և առջիններէն աւելի ընդարձակեց՝ Ասորեստանի հիւսիսային կողմին այլ տիրելով քանի մը տարի, ինչուան որ Նինոս զօրացաւ և աշխարհակալեց։ Երկրին հարաւային կողմն այլ ապահովելով և յանձնելով Կադմեայց և Կորդուաց, Արամ յառաջ անցաւ դէպ յարեւմտեան հարաւային կողմերն, ինչուան Միջագետաց գլուխը, այսինքն Տիգրիսի արեւմտեան բարձրահովիտը, մինչեւ Եփրատ գետ, որ էր բուն սահման Հայոց արեւմըտեան կողմէն։ Արամ առաջին եղաւ ի Հայկազանց, որ անցաւ այս մեծ գետը և կոխեց արեւմտեան կողմը, որ և իր տիրելովն եղաւ մասն Հայաստանի, բայց բուն Հայկազանց օրինաւոր երկրէն որոշելով Փոքր Հայք կ'ըսուի։ — Մինչեւ հոս Արամ աշխարհապահ էր, այսինքն իր հայրենեաց սահմաններն ազատող, շինող և պահող. ասկէ անդին աշխարհակալ եղաւ. մինչեւ հոս ստոյգ հայրենասէր էր, ասկէ անդին աւելի աշխատասէր և չափազանց հայրենասէր։

Յայտնի է որ բնիկ Հայաստանի (Մեծ Հայոց) այս արեւմտեան սահմանակից երկիրն սովորական և աւելի ծանօթ անուամբ Կապադովկիա կ'ըսուի. այս անունն առած է շատ ետքն երբ Պարսիկք տիրեցին, և անոնց լեզուաւ կ'ըսուի թէ Քարոտ երկիր նշանակէ, որուն կը համաձայնի մեր մէկ հին վարդապետն այլ Երկիր Մրձաւորաց թարգմանելով։ Հին Յոյնք (ինչպէս Հոմերոսի ատեն) Սպիտակ – Ասորիք (Լեւկոսիրի) կ'անուանէին այս

Digitized by Google

աշխարհս, իսկ մերազգիք՝ որ աւելի մերձաւորք և ծանօթք էին՝ Գամիրք կ'անուանեն, յանուն Գամերայ որդւոյ Յաբեթի, որ արդարեւ երկուքին այլ նախահայրն է, և Հայաստանէն ելնելով բնակեցաւ այդ կողմերը. ուստի մեր Թարգմանիչք և առաջին մատենագիրք այս անունը կը պահեն, (որ և կը ստուգուի ինչուան հիմայ Կեսարիոյ մօտ Կամարակ գեղի անուամբ, և Քէօմիւր գետով)։ Մէկ հին նահապետի (Գոմերի կամ Գամերի) սերունդք ըլլալով[214] Հայք իրենցմէ շատ օտար պիտի չսեպէին զԳամիրս, մանաւանդ անանկ հին ժամանակ՝ որ ազգաց բաժանումն և իրարմէ ծագումն շատ մութ բան չէր. ուստի կրնանք ըսել թէ Արամ՝ իբրեւ խնամեաց և մերձաւորաց մէջ մտնելով համարձակ կ'երթար այս կողմս։

Բոլոր պատմութեան ծանօթ միջոց՝ Փոքր Ասիա, որուն մէջ է Կապադովկիա, միշտ մանր տէրութիւններ և աշխարհներ բաժնուած է. միայն ետքի ատեններ օտար հզօր աշխարհակալաց ձեռքի տակ ընկած է բոլորը մէկէն. միայն այս մեր նահապետին ժամանակ, այսինքն Արամայ, մեր պատմութիւնն կը յիշէ՝ որ այս աշխարհին (գոնէ մեծագոյն մասին Փոքր Ասիոյ) վրայ բռնացեր էր հսկայազօր իշխան մը, զոր և Տիտանեան կոչէ. և կ'իմացուի անուանէն՝ որ էր Պայապիս Քաաղեայ, թէ Բաբելացի պիտի ըլլայ[215]. արդէն նոյն մեր պատմիչն Բաբելոնի առաջին թագաւորաց մէջ կը յիշէ զԲաբ իբրեւ որդի Նեբրովթայ, և զԲայաղ Թոռնորդի Բաբայ, նոյն ինքն զԲամ զնախահաւ Նեբրովթեանց կամ Բելեանց այլ՝ Տիտան կ'անուանէ. գարձեալ, արտաքին պատմիչք ալ այս կողմերուս հին բնակիչները Տիտանեան կ'անուանեն, յորոց էին ըստ նոցա Կռոնոս և Արամազդ և Հերմէս կամ Տեւտատ, և առաջին թագաւորքն Մանէս, Ակմոն, Ուրանոս և այլն. որով մեր պատմչին ըսածն թէ զԱրամայ՝ «յարեւմուտս ընդ Տիտանեայն է սորա գործ քաջութեան», կրնանք իմանալ նաեւ ուղղակի Կապադովկիոյ և Փռիւգիոյ բնակիչները, ինչպէս նաեւ իրենց տիրապետը Բաբ մը Քայաղայ և Բելայ ցեղէն, «որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց, զՊոնդուն և զՈվկիանու», այսինքն զմէջ Սեւ ծովու և Միջերկրականին, որ է ըսել բոլոր Փոքր Ասիային հիւսիսէն ի հարաւ. որոյ և մեծագոյն աշխարհն էր Գամիրք կամ Կապադովկիա։ Այդ Արամ երբ իր հարց հին հարաւային սահմաններն ազատելով անկից յարեւմուտք կու գար՝ կամաց կամաց կոխած երկրին տիրելով, մինչեւ հասաւ անոր ամենէն բարձր և նշանաւոր լերան քով, որ կրնայ այն աշխարհին Արարատն ըսուիլ, և է Արգէոս (Էրճիէշ) լեառն ըստ Յունաց, որ հաւանօրէն Արեգ կամ առոր նման պէտք էր կոչուիլ. ինչպէս որ այն երկրին մեծագոյն

գետն այլ՝ Ալիւս ըստ Յունաց Արեգան կոչի ի նախնեաց Հայոցս ։ Այս լերան հիւսիսակողմն է արեւմտեան Ափոյ հնագոյն և անուանի քաղաքաց մէկն և մայրաքաղաքն Կապադովկիոյ՝ Կեսարիա, որ այն ատեն չէր նշանաւոր ոչ իբրեւ քաղաք և ոչ իբր շէնք, այլ յարմար դիրք մ'ունէր. անոր համար Արամ հոն դադրեցաւ և ուզեց քաղաք մը շինել[216] ։ Տիտանեանն՝ որոյ ուր նստիլն յայտնի չէ, (բայց թուի թէ ի հարաւակողմն էր) լսելով որ ուրիշ զօրաւոր մ'եկեր է իր տիրածին տիրելու՝ փութացաւ վանտելու. բայց ինքն հալածուելով յԱրամայ՝ որ հետն 40,000 հետեւակ և 2000 ձիաւոր բերած էր, փախաւ ընկաւ ինչուան Կիլիկիոյ հարաւակողման կղզեաց մէկուն մէջ, ի Կիպրոս կամ ի Կրետէ[217], ինչպէս տեղ մը ըսինք (էջ 71)։ Ապա Արամ անարգել իշխանաբար տիրեց ինչուան Արեգան գետոյն արեւմտեան արմունկը կամ դարձուածը դէպ ի հիւսիս. և իր ընտրած տեղը կամ շինել տուած քաղաքը՝ անոր շինող և իր տեղակալին անուամբ Մշակ կոչեց, զոր Յոյնք չկարենալով արտաբերել՝ Մազաք կոչեցին, անկէ յետոյ մեր մէջ այլ Մաժակ անուանեցաւ. ահա այս տեղս է որ յիշխանութեան Հռովմայեցւոց 2000 տարի վերջը Կեսարիա անուանեցաւ ի Տիբերիոս կայսերէ և անկէց այլ ինչուան հիմա՝ նոյնպէս կոչի (Գայսէրի ի Տաճկաց) ։

Բոլոր Հայկազանց տէրութեան միջոց որ 2000 տարիէն աւելի տեւեց, գրեթէ միայն այս Արամայ աշխարհակալութիւնն կը յիշուի, որ և ետքի ատեններ եղածներէն աւելի նշանաւոր և հաստատուն և իրական եղաւ. վասն զի անով մեր ազգն և երկիրն ընդարձակեցաւ. և առջի բուն Հայկազանց երկիրն՝ Եփրատայ արեւելակողմը՝ ըսուեցաւ Մեծ կամ Արեւելեան Հայք, իսկ գետոյն անդին կողմերը և Արամայ տիրածը՝ Փոքր կամ Արեւմտեան Հայք։ Եւ ինչպէս Մեծ Հայք՝ Հայկայ օրուց կամ ուրիշ նահապետաց անուամբք զանազան աշխարհներ բաժնուած էր, այսպէս Փոքր կամ Արեւմտեան Հայք այլ քանի մը աշխարհ բաժնուեցան. և նախ Գամրաց արեւմտագոյն մասն՝ ուր Մշակն հաստատեցաւ՝ ըսուեցաւ Ա Հայք, իբր զի յարեւմտից կամ ի Յունաց կողմանէն գալով՝ այն է առաջին երկիր և կուսակալութիւն Հայոց. միանգամայն և առաջին երկիր նուաճուած և շինած ի Հայոց։ Անոր հիւսիսային արեւմտեան կողմը՝ մինչեւ Մեծ և Բարձր Հայոց կողմերն՝ եղաւ նոր աշխարհ մը և ըսուեցաւ Բ Հայք, զանազան գաւառներ բաժնուելով, որոց մէկն էր Կողոպենէ և անոր մէջ Բ Հայոց մայրաքաղաքն ալ՝ յետոյ և հիմայ Սեբաստիա ըսուած։ Մաժակայ և Սեբաստիոյ կամ Ա և Բ Հայոց արեւելակողմն մինչեւ ցԵփրատ և ցՄեծ Հայս՝ ըսուեցաւ Գ Հայք, որոյ մայրաքաղաքն այլ եղաւ Մելիտինէ, ըստ ոմանց Շամիրամայ

Digitized by Google

մէկ անուամբը։ Ասոր անմիջապէս սահմանակից մասն Մեծ Հայոց Եփրատայ արեւելեան կողմն՝ որ կ'երեւի թէ դեռ բուն Հայոց երկիր չէր սեպուեր, հիմայ այնպէս եղաւ և բռնեցաւ Դ Հայք, որ և առանձին և հնագոյն եւս անուամբ կ'ըսուի Ծոփք։ Կ'երեւի թէ առոր հիւսիսակողմն եղող Մեծ Հայոց մէկ աշխարհն այլ՝ Կարին՝ ինչուան այն ատեն Հայկազանց երկրին մասն չէր, և հիմայ եղաւ ու բռնեցաւ իր բնական դրիցն համեմատ Բարձր Հայք։ — Թէպէտ և յետ 2000 և աւելի տարիներու Կ. Պօլսոյ կայսերութիւնն հաստատուելէն ետեւ՝ այս հին արարատեան բաժանմունքը փոփոխելով Ա, Բ, Գ և Դ Հայոց անուանքն այլ իրար անցան Յունաց մէջ, բայց մեր պատմիչք դեռ ջանացին հին ազգային բաժանմունքը հաստատ պահել։ Այս ամեն աշխարհներն այլ Արամայ ատեն դեռ լաւ բնակուած կամ մարդաշատ չէին. անոր համար ինքն որ հաւանօրէն Փոքր Ասիոյ ուրիշ կողմերու այլ տիրեր էր, գոնէ Պայապիսը հալածելու ատեն, այն տեղերէն գերութեամբ և գաղթութեամբ շատ մարդ բերելով՝ բնակեցուց իրեն նուաճած և բաժանած աշխարհաց մէջ. և զանոնք իր ազգին հաւասարելու համար՝ պատուիրեց և ստիպեց «ուսանել զխօսս և զլեզուս » Հայկական »։

Այս հնարքս որ աշխարհակալի և բռնաւորի մը համար զէնքերէն շատ աւելի զօրաւոր է, և ընդարձակիլ ուզող ազգի մը համար՝ յարմարագոյն միջոց, և զրուանց սաստիկ հայրենասիրութեան մը նշան, առաջին օրինակ է ի պատմութիւնս՝ այս կերպ խիստ և բռնական հնարից՝ օտար ազգեր բոլորովին նուաճելու և իւրացընելու համար, զոր յետոյ շատեր բանեցուցեր են և միշտ պժգալի եղած է. գուցէ անով ազգերնիս բան մը շահեցաւ, և նոյն ինքն Արամ այլ, բայց ոչ իր պատիւն. միայն եթէ չկայ ուրիշ բանաւոր պատճառ մը՝ զոր պատմութիւնն լռէ. ինչպէս կրնայ ըլլալ այն գաղթած ազգերուն անկրթութիւնը կամ անկարելութիւնը իրենց մայրենի լեզուն պահել՝ նոր և մեծ ազգի մը շրջապատին մէջ, ինչպէս էր Հայոցն, որք ոչ միայն Եփրատայ մէկ կողմէն անոնց սահմանակից էին, այլ և մէկ այլ կողմն այլ անցան, և Արամայ նոր առած աշխարհաց մէջ քիչ շատ սփռեցան. արդէն այն տեղուանքը պահելու համար՝ Արամ 10,000 զօրական թողեր էր Մշակայ քով, որք ի հարկէ սփռեցան այն կողմերը և շատ տուն տեղ հաստատեցին։ Դարձեալ յիշելու է որ բնիկ Գամիրք շատ տարբերած չէին ի Հայկազանց, և առաջուց ինչպէս երկրաւ այսպէս և լեզուաւ մօտ էին իրարու, միջասահման մ'ըլլալով Արեաց և Յունաց լեզուներուն։ Արդ թէ՛ այս հին և նախնական պատճառաւն ըլլայ, թէ՛ Արամայ հնար-

Digitized by Google

քով՝ Կապադովկացւոց մնացեալ յիշատակներէն այլ յայտնի է՝ որ ոչ միայն իրենց անձանց և շինից անուններն՝ մօտ և նման են Հայ անուանց, այլ և տօմարնին գրեթէ նոյն է, այսինքն իրենց տարւոյն չափերը և ամսոց անունները[218]։ Մեր նախնիք այլ օտարաց բուն Կապադովկիա ըսածն (զոր Արամ տրոհեց յԱ, Բ, Գ, Հայք) միշտ Գամիրք Հայոց կ'անուանեն, որոշելով անոր հիւսիսային մասէն՝ որ ինչուան Սեաւ ծովուն եզերքը կը ձգուէր և կ'ըսուէր Պոնտական Կապադովկիա կամ Գամրական Պոնտոս, ըստ մերոցս, որ յետոյ սոսկ Պոնտոս ըսուեցաւ։

Մեր քերթողահայր պատմիչն այս բաները յիշելէն ետեւ կ'ըսէ. «Արդ
» սա (Արամ) այսպէս հզօր և անուանի եղեալ, յանուն սորա՝ մինչեւ
» ցայսօր, որպէս ամենեցուն յայտնի է, որ շուրջ զմեօք ազգք՝ զաշխարհս
» մեր անուանեն». կամ ինչպէս առաջուց այլ կ'ըսէ. «Ընդարձակել զսահ-
» մանս Հայոց յամենայն կողմանց, յորոյ անուն և զաշխարհս մեր անուա-
» նեն ամենայն ազգք. որպէս Յոյնք՝ Արմէն, իսկ Ասորիք և Պարսիկք
» Արմինիք (կամ Արմէնիկ)»։ Այսպէս կրնամք ըսել մենք այլ, թէ Հայկն իր անունը անկեց արարատեան աշխարհին մէջ, իսկ Արամ իրենը սերմանեց՝ անոր եզերքները, ուսկից սփռեցաւ ընդ ամենայն աշխարհ, և միայն մեզմէ զատ, ամեն օտարք այլ մեզի և մեր աշխարհին այս Արմեն անունը տուեր են և կու տան։ Գուցէ այս Արամայ տարած ու բերած գաղթականութենէն մնացած են Գամրաց և Պոնտոսի կողմերը քանի մը Արմեն անուամբ տեղիք, ինչպէս ինչուան Սեւ ծովուն եզերքը և Սինոպի մօտ՝ Արմենէ աւանն. իսկ Արմենիակ գաւառն՝ յետոյ Հռոմ կայսերաց տեղն անուանած է։

Պատմիչն այս խօսքէն ետեւ կ'աւելցնէ «Բազում և այլ գործք արու-
» թեան ի սմանէ գտանին կատարեալ. այլ մեզ բաւական լիցի առացեալս»։
Նոյնպէս և ի սկզբան կ'ըսէ. «Արամայ բազում գործք քաջութեան պատ-
» մին մարտից նահատակութեան... զընդարձակութիւն պատմութեան սորա
» և զգործս քաջութեան թէ զինչ կամ առ որով ժամանակաւ, թէ կա-
» միցիս արտաքոյ այսորիկ գրոց կարդասցուք և կամ թողցուք. ապա թէ
» ոչ՝ ի սմին»։ Եւ աւել կ'իմացնէ, որ ըստ սովորութեան իւրոյ՝ գործոց մաս մը պատմած է, մաս մ'ալ թողած. և պէտք ալ է թողած ըլլալ, որ կարենայ բազում գործս ըսել։ Արդ այս շատ քաջութեան գործքերը, զոր և Արամայ աշխատաւոր կոչումն կը պահանջէ, հաւանօրէն իր տէրութեան այս տեւենս ըրաւ, երբ ի Նոր և յարեւմտեան Հայս էր, վասն զի երկար տեղն այլ հոն կեցաւ կ'ըսէ պատմիչն[219]։ Ինչուշտ Կապադովկիայէ զուրս տեղեաց

այլ տիրած պիտի ըլլայ, և պիտի տիրէր՝ գուցէ իր հալածած Տիտանէն աւելի՝ եթէ իրմէ ալ մեծ և զօրաւոր աշխարհակալ մը յերեւան չելնէր, որ և պատմութեան մէջ առաջին աշխարհակալ և միապետողն է։

Հայկայ քաջութեամբ ստացած երկրին բնական ապահովութիւն և պատսպարան էր Տաւրոս լերանց պարն, որ հոս Կորդուաց (և հիմայ Քիւրտիստան) անուամբ կը յիշուի. այս լերանց հարաւակողմէն սկսեալ մինչեւ ի Հնդկային ովկիանոս կամ անոր դէպ ի հիւսիս երկընցած ծոցերը (Պարսից ծոց և Կարմիր ծով) կը ձգուի անհուն տարածութեամբ երկիր դաշտ ու անապատ, որուն վարի մասն է Արաբիա, վերինն՝ ուստի կ'անցնին Եփրատ և Տիգրիս՝ հին աշխարհի առաջին մեծ և հզօր տէրութեան տեղն էր, Բաբելացւոց և Ասորեստանեայց անուամբ հռչակուած. որուն հիւսիսային սահմանը Հայոց հարաւային սահմանաց կը հանէր. յիշեալ լերինքն Կորդուաց անջրպետ եղաւ Հայկայ և Բելայ հակառակութեան և տիրապետութեան։ Հայկէն մինչեւ ցԱրամ 400 տարուան միջոց՝ ինչպէս իր յաջորդքն մեր պատմութեան մէջ նշանաւոր մը չեղան, այսպէս այլ Բելայ յաջորդք Բաբելոնի առաջին թագաւորաց հարստութիւնն. և ինչպէս մեր մէջ Արամաւ նորոգեցաւ և զօրացաւ տէրութիւնն, այսպէս իր դրացի մեծ տէրութեան մէջ այլ՝ Նինոսիւ, զոր ոմանք Բելայ կամ Ներրովթայ ցեղէն սեպեն, ոմանք յԱսուրայ. բայց այս և սոյն նման խնդիրներ՝ որ այս մեծանշան անձին վրայ եղած են, մեր պատմութենէն դուրս թողլով միայն մեզի հարկաւորագոյնը յիշենք. որ սա եղաւ կանգնող կամ վերականգնող Նինուէի և Ասորեստանեայց հզօր միապետութեան։ Նինուէ մայրաքաղաքն՝ Հայկայ օրերէն ի վեր կանգնուած էր՝ (յԱսուրայ կամ մանաւանդ) ի Ներրովթայ. Նինոս՝ նորոգեց և կամ իր թագաւորութեան աթոռն հաստատեց ի Նինուէ, (որ թուի թարգմանիլ Նինու աւան), որ առաջինն եղաւ երկրիս մեծ և համաշխարհական քաղաքաց, (ինչպէս յետոյ Բաբելոն, Աղեքսանդրիա, Հռոմ, և այլն) և երկար դարեր այլ, (իբրեւ 1300 տարի)։ Նինուէ որ յետ այնքան դարերու ալ մէջն միայն 120,000 մանր տղայ ունէր, որոյ պարիսպքն 100 ոտք բարձր էին, 1500 աշտարակներն 200′, կենդրոնն ասիական հնագոյն[220] և հզօրագոյն իշխանութեան, զօրութեան, բարգաւաճանաց և շռայլութեան, ուր բազմաթիւ ազգապետք հարկ տալու և օրէնք առնըլու գային, կրնար գրեթէ դրակից ըսուիլ Հայոց, այնքան մօտ է մեր հին աշխարհին սահմանաց, հազիւ թէ օրուան մը ճամբայ հեռու Մոկաց կողմէն, և հազիւ 30–40 մղոն յԱմիտիէ քաղաքէ՝ որ Կորճայից մէջ կամ քով է։ Այսքան կից մօտաւորութիւն անկարելի էր որ Հայաստանի վրայ

*մեծ ազդեցութիւն չունենայ. որուն թէ և մայրաքաղաքն՝ Արմաւիր՝ Երասխայ հիւսիսային եզերքը բաւական հեռու Նինուէէն որ Տիգրիսի վրայ է նստած, բայց Հայկայ և իր եղբարց և թոռանը Կադմոսի բնակած տեղիքն՝ ուր և իրենց սերունդքն կը պայազատէին՝ շատ մօտ էին. մանաւանդ որ Արամ ոչ միայն մինչեւ Հայկայ հին սահմանը կը տիրէր, հապա անկէ այլ անդին՝ լերանց դաշտակողմը, որ է ըսել ինչուան բուն Նինուէի սահմանները, զոր պահպանելու յանձներ էր Կադմեան ցեղին. բայց տարակոյս չկայ որ Նինուէի շինութեան ատեն՝ Հայոց սահմանները նորէն իրենց լեռներուն քշուեցան։ Նինոս կը փափագէր բոլոր Ասիոյ տիրել, ի Կովկասայ մինչեւ ի Նեղոս, յԵփրատայ մինչեւ ի Հնդիկս. բայց շատ հեռու չգացած պէտք էր նախ մօտաւոր և դրակից ազգերը նուաճել. և ասոնց ամենէն մօտն էր Հայոցն, միանգամայն և ամենէն դժուարինն, վասն զի Արամ էր այն ատեն Հայոց նահապետ։*

*Հայոց և իրենց հարաւային դրացւոյն մէջ ի սկզբանէ ի վեր թշնամութիւն կար, պատճառաւ Հայկայ և Բելայ հակառակութեանն. Նինոս այլ (որ Բելայ ցեղէն կ'ըսուի) ըստ աւանդութեան մեր հին պատմչին՝ (Խոր. Ա. ԺԳ.) այս հակառակութիւնն ունէր և կ'ուզէր հին վրէժն առնուլ. բայց նախ թէ՛ իր աշխարհէն և ազգէն ունեցած խռովութեան վախն, և թէ Արամայ քաջագործութեանց համբաւն՝ արգիլեցին զինքը. և երկայն տարիներ ուրիշ գործոց պարապելով՝ յարմար ատենին կը սպասէր. «յամս ձիգս, » նկատել որպէս զյաջողութիւն աւուրց, բառնալ ջնջել զամենայն ծնս » սերմանեալ յարանց քաջին Հայկայ»։ Արամ այլ Նինոսի շուտ շուտ աճել զօրանալը կը տեսնէր, և երկուքն ալ Կորճայից լեռները իրարու անջրպետ ձգելով՝ զիրար կը դիտէին առանց համարձակելու իրարու դէմ անցնիլ. երկուքն ալ ջանալով իրենց աշխարհը շէնցընելու, բայց Նինոս նաեւ իր իշխանութիւնը տարածելու. որոյ համար ընծաներով և դաշնակցութեամբ՝ իրեն ձգեց Արաբացւոց (Եմէնի) թագաւորը, զոր Արիէս կամ Արայոս (որ է Արայ) կ'անուանեն պատմիչք, և անոր կարիճ զօրաց հետ՝ նախ իրենց երկուքին միջոց եղած Բաբելացւոց ակար թագաւորութիւնը վերուց, ապա իր երկրին արեւմտակողման՝ այսինքն Ասորւոց տիրեց. և զօրքերն աւելցնելով դարձաւ դէպ ի հիւսիս՝ Հայաստանի վրայ։ — Եթէ մեր հին պատմութեանը նայելով և եթէ օտարի մը (Դիոդ. Բ.) որ մինակ կը յիշէ զայս, Արամ այնպիսի բռնութեան և բազմութեան դէմ կենալը խոհեմութիւն չսեպեց, այլ իրմէ զօրաւորին կամ բռնաւորին խոնարհեցաւ[221]։ Օտար պատմիչն (Դիոդորոս) փոխանակ Արամայ՝ Բարզան կոչէ Հայոց նահապետը և թագաւոր պատուա-*

Digitized by Google

նուամբ։ Նինոս Հայաստան մտնելով սկսաւ ասպատակել, և քանի մը քա-
ղաք աւրեց. Բարզան՝ որ գուցէ Արամայ մէկ որդին էր կամ իր այն կողմը դրած (Կապմէական) կողմնապետն, եկաւ խաղաղութեամբ Ասորեստանեայց ինքնակալին առջև, որ մէկէն ետք կեցաւ պատերազմէ, անշուշտ չյուսալով այլ անով կարենալու տիրել այնպիսի ընդարձակ և դժուարին երկրի՝ անանկ զօրաւոր առաջնորդի մ՚առնին։ Եւ հոս թէ՛ մեր և թէ օտար պատմիչն միաբանին թէ Թողուց Հայոց տիրապետին իր տէրութիւնը. և ըստ մերոյ պատմչին՝ թոյլ տուաւ անոր կամ իր կողմէն աւելցուց՝ «Վարսա- » կալ ածել մարգարտեայ, և երկրորդ նորա կոչել»։ Վարսակալն բուն հին Թագաւորական թագն չէր, այլ ճակատին վրայ մազերը ժողովող պսակ մը, որ մարգարտով բանած էր, և անշուշտ այս մարգարիտն այլ յԱրաբիոյ բերած ընծայ մ՚էր Նինոսի առ Արամ. ասկից ինքն այլ փոխարէն անոր քաջ և վարժ զօրքերէն օգնական գունդ մը խնդրեց, Մարաց դէմ երթալու, որոց անյարմար էին իր դաշտաբնակ զօրքերը։ Մարաց թագաւորն այն ատեն կ՚անուանէր Փառնն կամ Փառնակ (զոր Փառնոս կոչեն օտարք). դէմ ելաւ անոնց բայց կարծածէն աւելի զօրաց և զօրավարաց հանդիպելով՝ յաղթուեցաւ. շատ մարդ կորսնցնելով՝ ինքն ալ բռնուեցաւ իր կնոջն և եօթն որդւոցն. զորս անխնայութեամբ խաչել տուաւ Նինոս, որ նման պատուհաս մ՚էր Արամայ բրածին առ Նիւքար, որոյ թերևս յաջորդն էր Փառնն, եթէ ինքն Նիւքար օրինաւոր առաջնորդ էր Մարաց։

Նինոս ասանկ ճարտարութեամբ իր սահմանակից չորս մեծ ազգութիւններէն ապահովելով, զերկուքը նուաճելով (զԲաբելացւոց և զՄարաց) երկուքին հետ այլ դաշնակցելով (Արաբացւոց և Հայոց), 17 տարուան մէջ, կ՚ըսեն պատմիչք, տիրեց բոլոր արևմտեան Ասիոյ, ի Պարսից մինչև յԵղլեսպոնտոս, ի Պոնտոսէ մինչև ի Միջերկրականն, և երեսնի չափ աշխարհք կը համրեն, որոց կէսն ի Փոքր Ասիա, կէսն յԱսորիս, ի Միջագետս և յայնկոյս Տիգրիսի մինչ ի Պարսկային ծոցն, ի Մարս և յեզերս Կազբից ծովուն. և հոս այլ զՀայաստան ընաւ չյիշելով այլ անոր սահմանակիցները, անտարակոյս կ՚ընեն մեր աշխարհին ազատութիւնը և անոր իշխողին քաջութիւնն և իմաստութիւնն. կ՚արդարացընեն և անոր վրայ սքանչացող մեր իրաւաւէր պատմիչը, որ Հայկէն ետքը մինչև ի Տիգրան Երուանդեան, իբրև 1800 տարուան միջոց, միայն զԱրամ կը դնէ արժանի քաջաց և մեծաց անուան, «վասն որոյ սիրեմ կոչել այսպէս ըստ
» քաջութեան, Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ իմ քաջաց ազգք
» քաջքն. իսկ միջոցքն՝ որպէս կամք ումեք թուեսցի կոչել»։ Թէ այս պատ-

միչս (Խորենացի) և թէ իրմէ ետքն եկողք[222] կ'իմանան՝ թէ Նինոս ակամայ և վախով պատուեց զԱրամ իրեն երկրորդ անուանելով. շատ աւելի անդին կ'անցնի բազմահմուտ Գերմանացի մը (Ռոմմէլ ի Գերմ. Հանրագիտ. Armenien բառ), զԱրամ ոչ միայն հարկատու չէր ըսելով Նինոսի, այլ և անոր յաղթող. Թէպէտ և անտարակոյս է որ բարոյապէս յաղթուեցաւ Նինոս յԱրամայ, որոյ քաջութիւնն և խելքն չթողուց անոր որ դէպ ի հիւսիս յառաջ գայ. այլ դարձուց յարեւելք, մինչեւ ի Բակտրիա, որուն տիրեց ճարտարութեամբ կնկան մը՝ (Շամիրամ) որ տիրեց նաեւ անոր սրտին, և յետոյ թագին այլ։

Գրեթէ բոլոր Նինոսի թագաւորութեան ատեն (52 տարի) ապրեցաւ Արամ՝ իշխելով Հայոց իբր 80 տարի փառօք և բարեօք, գուցէ ծերութեանն ատեն իրեն գործակից ունենալով վերոյիշեալ Բարզամը, թէ ոչ և յաջորդ. վասն զի պատմութիւնն՝ որ իրեն յաջորդ և որդի կ'ընծայէ զԱրայն գեղեցիկ՝ ասոր հինաց դիպուածով և իրեն 12 տարեկան որդի մը (Կարդոս) ժառանգ թողլով՝ այլ՝ կ'իմացընէ որ ինքն Արայ այլ երիտասարդ էր Հայոց իշխած ատեն. ապա կամ թոռն և ոչ որդի էր Արամայ, և կամ ասոր ծեր հասակին պտուղ. ինչպէս կրնանք գուշակել պատմչին այս խօսքէն այլ. «Բայց Արամ զկնի ամի կենաց իւրոց՝ ծնաւ զԱրայն, յետ որոց » և այլս բազումս կեցեալ ամաց՝ մեռաւ »։

Կրնամք առանց կողմնասիրութեան ըսել, թէ ստոյգ կամ ստուգագոյն երեւցած պատմութեան մէջ հնագոյն և սիրելագոյն և պանծալի կերպարանք մ'է Արամայն. որ Հայկայ նման շատ յիշատակներ թողած էր աշխարհին մէջ. որոց մոռացութեան պատճառ կու տայ մեր պատմահայրն (Մարիբաս), մէկ մը այն ժամանակ պատմութիւն գրելու սովորութիւն չըլլալն, մէկ մ'այլ Նինոսի նախանձն և իրմէ առջիններուն յիշատակը ջնջելն, որուն հետեւեցան և իր յաջորդքն՝ որք տիրեցին այլ Հայաստանի։ Ի վերայ այսր ամենայնի, կ'ըսէ նոյն պատմիչն, թէպէտ և բուն թագաւորական պատմութեան գրոց մէջ չգրուեցան այլ, բայց առանձին մանր յիշատակագիրներ և երգիչներ անմոռաց աւանդութեամբ թողուցին յետնոց արժանաւոր անձին գործերը, ուսկից յետոյ գիտունք քաղելով գրեցին պատմութիւնը[223]։

Digitized by Google

# ԺԳ

# ԱՐԱՅՆ ԳԵՂԵՑԻԿ - ՇԱՄԻՐԱՄ

## ԱՐԱՅԵԱՆ ԱՐԱՅ (ԿԱՐԴՈՍ) – ԱՆՈՒՇԱՒԱՆ

ԱՐԱՄԱՅ և Նինոսի յաջորդներուն ատեն բոլորովին կերպարանափոխ կ'ըլլայ պատմութիւնն Ասորեստանեայց և մանաւանդ Հայոցս. և անանկ փափուկ և զգայուն դիպուած մը կը հանդիպի հոս՝ որ շատերուն զուտ վիպասանական և ողբերգական դէպք մը կ'երեւի, սակայն ամենեւին անհաւատալի չէ անոնց՝ որ Շամիրամայ բարուցը հաւատան, որոյ միաբան վկայեն ամենայն հին պատմիչք։ Այս կինն որ և առաջին տիկին այսինքն տիրապետող կին եղաւ ի վերայ ժողովրդոց՝ հին պատմութեան ամենէն նշանաւոր և տարօրինակ անձանց մէկն է. անոր համար ոմանք բոլորովին առասպելեալ և մտահնար մէկ մը համարին զնա. սակայն անաչառ քննիչք խոստովանին՝ որ թէ և շատ առասպել կայ իր պատմութեան մէջ, մանաւանդ իր ծագմանը վրայօք, և թէ շատ նոքի և օտարաց դիպուածք՝ իր վրայ գրուցուած են, ի վերայ այսր ամենայնի ինքն ստոյգ պատմական անձ է, և վրան ըսուածներն մասամբ ճշմարիտ. զորոնք քննել և պատել՝ մեր պատմութեան մասն չէ, բայց այսչափս ըսելս հարկաւոր էր՝ Շամիրամայ մեր պատմութեան մէջ այլ մեծ և նշանաւոր տեղ մը բռնելուն համար, որ և կերպով մը իր պատմութեանն ալ նշանաւորագոյն մասն է, և աւելի մանր պարագաներով պատմուածն, ի Մարիբասայ և մեր նախնի Հայկազանց երգերէն, որոց համաձայնին Կտեսիասայ և Դիոդորի Սիկիլիացւոյ մնացորդ յիշատակարանքն։

Արամայ մահուանէն 2 տարի վերջը թագաւորեց Ասորեստանեայց այս հրէշաւոր կինն, որ ընիկ Ասորի, Սեմայ ցեղէն էր կ'ըսեն, իսկ անունը շատ կերպ կը մեկնեն[224]. էրկանը (Նինոսի) մահուանէն կամ փախչելէն ետեւ, որուն արդէն անօրինաբար կին եղեր էր, չուզեց, կ'ըսեն, ուրիշ օրինաւոր ամուսին ունենալ. այլ իր անթիւ հպատակաց և զօրապետաց միջէն հաւնածը կ'ընտրէր ընկեր անառակութեան, և յետոյ կը թողուր, մանաւանդ թէ սպաննել կու տար, և անոնց մարմնոյն վրայ մեծ հողաբլուր մը կը կան-

Digitized by Google

գնէր, որ Թիլք բռնեցան. ոմանք կ՚ըսեն թէ այս հողաբլուրներն կամ Թիլք իրեն գլխարաններն էին զօրաց բանակը և երկրին դիրքը քննելու համար. ոմանք այլ ուրիշ պատճառ կու տան, բայց կը միաբանին թէ Շամիրամ բարձրացընել տուաւ այն ձեռագործ բլրոց շարերն՝ որ դեռ կ՚երեւին Միջագետաց և Ասորւոց կողմերը։ Իր անկարգ բաղձանաց մեծ կրակ եղաւ մեր ազգին Նահապետն այլ, և այնչափ աւելի քան զուրիշներն՝ որչափ որ սա թէ յիրաւի բնական շնորհքով կերպարանաց վայելչութեան զարդարուած էր, մինչև Գեղեցիկ մականուանիլ[225], և թէ հոգւոյն ազնուութեամբն, որով կ՚առնէր զմոլի ոխկնը։ Արայ պայազատն Արամայ՝ վերը յիշածիս համեմատ անոր կրտսեր որդին էր, և գուցէ առջի Հայկազանց սովորութեան համեմատ՝ նոյն վերջինեկութեանը համար Արամ իրեն թողուց իր ոստանը, Արմաւիրը. անդրանիկ զաւկըները զրկելով դէպ յարեւմուտք՝ ուր նոր գաւառաց և աշխարհաց տէրեր էր. գուցէ հոն խաւրեր էր և զԲարզամ՝ որ նիզակակից էր Նինոսի։ Ասիկայ իր ինքնակալութեան ետքի տարիները պատուեց զերիտասարդ ազգապետն Հայոց զԱրայ՝ թոյլ տալով անոր որ իր հօր պէս մարգարտակապ վարսակալ կապէ նշան իշխանութեան, միանգամայն և նախապատուութեան յիշխանս՝ որք Ասորեստանեայց իշխանութեան մեծութիւնը կը ճանչնային։ Արայ իր անձին և սրտին համեմատ վայելուչ կենակից ունէր զՆուարդ, որ յայտնապէս ստուգաբանի Նոր վարդ, և որ մեր պատմութեան մէջ առաջին յանուանէ յիշեալ Հայուհին է, առաջին իգական հայ անուն. իրենց ամուսնութեան պտղոց մէջ կը յիշուի մէկ մը միայն, իրեն յաջորդն և յետոյ անուանակիցն, զոր ծնողքն անուաներ էին Կարդոս, որոյ յունական վերջաւորութիւնը թողլով կրնանք կարծել թէ այդ անունն արև կամ պայծառութիւն նշանակէ՝ ըստ պարսիկ լեզուի[226]։ Յայտնի է թէ այսպիսի սիրելի, պարկեշտ զաւկի տէր և ամուսնոյ մը յարգը որչափ աւելի զգալի և զայրանալի կ՚ընէր՝ այնպիսի անառակ անամօթ ախտով մը հրապոյրքը և հրաւէրքը, ինչպիսի էր Շամիրամի շուայտ և թանձրամարմին[227]։ Եթէ մեր պատմչին բառը գիտենք՝ Շամիրամ Նինոսի ողջութեան ատենէն լսեր էր Արայի գեղեցկութիւնը, և շատոնց փափաքեր անոր. սակայն առջի տարիները ծածուկ հեշտակութեամբ սկսաւ հրապուրել զնա, յետոյ երբ ամենուն այլ յայտնի եղաւ իր լրբութիւնն ուրիշ տեղ բռածներուն, աւելի յայտնի պատգամներով և ընծաներով և ինչուան Նինոսի ինքնակալութեան թագը խոստանալով կը յորդորէր շատ տարիներ, մինչ գրաւած էր Բաբելոնի շինութեանը և ուրիշ գործերու. բայց Արայ ոչ հրապոյրը յանձն առաւ և ոչ ընծաները, մինչև որ Շամիրամ

պարապ և յարմար առեն գտաւ, և Նինոսի աշխարհակալութիւնը ի գլուխ տանել ուզելով, իբր թէ բոլորովին զՀայս նուաճելու համար՝ «առնու » զբազմութիւն զօրաց իւրոց և փութայ երթալ հասանել յերկիրն Հայոց ի » վերայ Արայի։ Բայց որչափ զիմաց էր նշանակել՝ ոչ այնչափ ինչ ի սպա- » նանել զնա և ի հալածել փութայր, քան թէ ի նուաճել կամ զբռամբ » ածել, զի լցցէ զկամս ցանկութեան իւրոյ. զի առ յոյժ ցանկականի մո- » լեգնութեանն, ի բանսն որ զնմանէ՝ որպէս ի տեսութիւն շամշութեամբ » վառեալ էր»։

Շամիրամայ այլանդակ փափագն առաջնորդ եղաւ առաջին անգամ մեր աշխարհը ոտնակոխ ընելու օտար զօրաց՝ որք անկէ ետքը այլ և այլ պատ- ճառաւ բիւր անգամ հոն թափեցան։ Հայաստանի հարաւային կողմնակալքն չկրցան զէմ զնել անոր բիւրաւոր բանակին, որ հեղեղօրէն վազելով հա- սաւ Նինուան միջին աշխարհը և Հայկազանց ոստանը, յաշխարհն ի գա- ւառն և ի դաշտն Այրարատ, որ ըստ ոմանց այս առեն և Արայի պատ- ճառաւ այդ անունն առած[228] է, բայց ըստ այլոց անկէ առաջ՝ նոյն դաշտին մէջ շինութիւններուն պատճառաւ[229]։ Հաւանելի չէ որ Արայ Նինուան իր ոս- տանին սահմանները կոխել թողու Շամիրամայ՝ առանց անոր զօրաց առջևէն ելնելու։ Մեր գրաւոր և անգիր աւանդութեանց մէջ երկու տեղ յիշուի Արայի և Շամիրամայ պատերազմը. մէկ մը այս յիշեալ Այրարատ գաւառն, մէկ մ'այլ շատ յարևելեան հարաւ՝ Տոսպայ (Վան) գաւառին մէջ, ոչ շատ հեռու Հայկայ և Բելայ ճակատամարտին տեղէն. Վան քաղքէն քանի մը ժամ հեռու Աւանս աւանին մօտ կայ Լէզք գեղը, ուր մինչև հիմայ կ'ա- ւանդեն տեղացիք թէ եղած ըլլայ Արայի պատերազմն և մահն և լզուիլն յետ մահուան. զոր և քիչ մը մութ խօսքերով յիշէ Թովմ. Արծրունի պատ- միչն, թէ այն գեղին զիմաց Երիվարաց արձակման դաշտ բռուած տե- ղին մօտ կայ զոգաձև տեղ մը՝ ձևացած երկու կարգ «արձանաչար քա- » ռակարկառ» մեծամեծ քարերով. բայց հոս աւելի Շամիրամայ (յետագայ) կոտորածն կարծել տայ այս պատմիչս՝ քան Արայի զօրացն։ Որչափ այլ անծանօթ է հիմայ մեզի մեր այս քաջ, առաքինի և գեղեցիկ նահապետին գործերն ընդդէմ Շամիրամայ, յայտնի կ'երևի որ առենօք հռչակուած էր մասնաւոր զիպուածներով ալ, և միայն մէկ իրարու հետ զարնուելով մը լմնցած չէ պատերազմն և Արայի մահն։ Այս՝ կամ վերջին պատերազմն եղած է բուն Այրարատեան գաւառին և դաշտին մէջ, ուր «գայ հասանէ » տագնապաւ», Շամիրամ, զուցէ Արայի աւելի պատրաստութեան և զօրաց շատնալուն ժամանակ չթողլու համար. և ինչպէս կ'աւանդեն մինչև հիմայ՝

Digitized by Google

Շամիրամ բանակեցաւ Նինուայից գաւառին եզերքը լերան մը վրայ՝ զոր Հայք դեռ կոչեն Շամիրամայ լեռ, որոյ դիմացն՝ յարեւմուտս, է Արայի լեռն, ուր մեր նահապետն բանակած էր, և մէջ տեղն է դաշտ, մասն Այրարատայ, ուր կայ գեղն Արամօնս, նոյն Արայի յիշատակաւ մը այսպէս անուանած ըստ ոմանց[230]։ Այս լեռնամէջ դաշտիս վրայ եղաւ Հայոց և Ասորեստանեայց պատերազմն. որու յաղթելէն ալ յաղթուելէն ալ կը կասկածէր Շամիրամ. և նոյն խոկ իր զօրաց բազմութեան վրայ վստահութիւնն կը վախցընէր որ Արայ քաջութեամբ մինչեւ ի մահ կռուելով իր բուն փափագը պարապ հանէ. անոր համար «և ի լինել ճակատուն՝ պատուէր տայր » զօրապետաց իւրոց՝ թէ դէպ լինիցի հնարել ապրեցուցանել զԱրայն». և կ'երեւի այլ թէ զօրապետքն ջանացին այս բանիս, և Արայի հետ նորէն բանագնացութիւնք եղան, ինչպէս կրնանք գուշակել մեր մէկ կորուսեալ պատմչի մը այս կարճ մնացեալ խօսքէն. «Ապա գեղեցիկն Արա պատգա- » մաւորէ զզօրավարն իւր առ Շամիրամ». յիշատակ զօրավարաց և ճակատու նշանակեն երկու կողմէն այլ կարգաւորեալ բանակներ և երկար կռիւ, զոր նախ զօրավարքն ըրին իրարու դէմ. Շամիրամ հաւանօրէն իր անձնապահ գնդովն հեռու կեցած բարձրէն կը դիտէր. նոյնպէս և Արա ի սկզբան. բայց յետոյ անշուշտ թշնամեաց բազմութենէն իրեններուն տկարանալը տեսնելով՝ ինքն այլ նետուեցաւ անոնց մէջ. և ինչպէս նոյն կորուսեալ պատմութեան մէկ մնացորդ կտորակն այլ կ'ըսէ. «Եւ ի խմբման » պատերազմին քաջն Արա շահատակէր արիաբար». և նովին արիութեամբ և առաքինութեամբ զարնուելով ինկաւ հոն՝ ուր իր անունը անմահ և անմոռաց թողուց, և անկից ամենայն ազգաց մէջ այլ, թէ ոչ դեռ իր պատմութեան ծանօթութեամբը՝ գոնէ Ս. Գրոց մէջ մտած Այրարատ կոչմամբ։

Պատերազմն դադրելէն եւեւ իմացուեցաւ Արայի սպանուիլն, որ հաւասար թէ և այլօրինակ ցաւ պատճառեց երկու բանակաց այլ, և թէ Նուարդայ թէ Շամիրամայ. որ շատ ջանալ, փնտռել և գտնել տուաւ առաքինի քաջազնին և իրեն փափագածին դիակը, զոր և տեսնելով լաւ իմացաւ թէ՝ ըրած կորուստը և թէ իր անարժանութիւնը այնպիսի կտրիճի մը. բայց դեռ կէս մը դայրագին ցանկութեամբը յիմարած կէս մ'այլ մնոտի հաւատքով, կարծեց կամ կարծել տուաւ թէ կախարդութեան հնարքով պիտի կարենայ ողջընցընել զԱրայ, և սէրը կամ վրէժը առնուլ անկէ. պատուիրեց «դնել զնա ի վերնատան ապարանից». որ կամ իր սովորական Թիլբրուն պէս բարձր տեղ մ'էր, կամ թէ իր և կամ Արայի բնակարանին վերնայարկը կամ սանիքը։ Հայք՝ որ ունէին դեռ բաւական զօրք և ուժ Արայի

մահուան ցաւովն սաստկացեալ՝ ուզեցին նորէն յարձակիլ Այսրեստանեայց վրայ. բայց Շամիրամ անօգուտ կռիւ մը պարբեցընել փութալով՝ համբաւել տուաւ թէ իր չաստուածներն Արայի վէրքերը լզելով քիչ ատենէն պիտի ողջընցընեն զնա. բայց երբոր դին սկսաւ ապականիլ, հրամեց որ ծածուկ տանին խոր փոսի մը մէջ ձգեն. և նորէն ձայն հանել տուաւ որ չաստուածքն լզեր և ողջացուցեր են զԱրա, և նա ալ հաւաներ է իրեն հետ ըլլալու։ Ուստի նախ աստուածոց շնորհակալ ըլլալու համար՝ «կանգնէ նոր » իմն պատկեր յանուն դիւաց (այսինքն դիւակերպ կուռք) և մեծապէս զո- » հիւք պատուէ. ցուցանելով ամենեցուն՝ իբր թէ այս զօրութիւն աստուա- » ծոց կենդանացուցին զԱրայ. և այսպէս համբաւեալ զնմանէ ի վերայ եր- » կրիս Հայոց, և հաւանեցուցեալ զամենեսեան, դադարեցուցանէ զխազմն »։ Իսկ Արային ողջութեանը հաւատացընելու համար՝ իր մարդկանց մէջ անոր նմանագոյն մէկ մը գտնելով և անոր նման հագուեցընելով՝ հետը կը պտըտցընէր և հեռուէն Արայի կը նմանեցընէր, զգուշանալով մօտէն ցուցընելու[231]. ինչուան որ իջեցուց Հայոց գրգռութիւնը. յորոց ոմանք հաւատալով, ոմանք ատեն անցընելով պաղելով ի վրէժխնդրութենէ, շատն ալ տեսնելով որ պատերազմաւ պիտի չկարենան ի գլուխ ելնել, կամայ ակամայ դադրեցան. մանաւանդ երբ տեսան որ իրենց յափշտակուած դիւցազին որդին՝ Կարդոս որ դեռ 12 տարուան էր, Շամիրամայ ձեռքն ընկնելով՝ անոր սիրելի և գգուելի եղաւ. որ և յիրաւի անոր հօրը վրայ ունեցած սիրով, միանգամայն և Հայոց հակառակութեան վախով՝ զԿարդոս հօրն անուամբ կը կանչէր, մինչև Հայք ալ այնպէս ըսին Արայ Արայեան. և խոստացաւ, ու յետ ժամանակի դրաւ ալ զնա հօրը տեղ Հայոց ազգապետ, որ և հաւատարիմ մնաց իշխոյին, ու յետոյ անոր հետ պատերազմի մէջ մեռաւ։ Պատմութիւնն ոչ յիշէ թէ ինչ եղաւ անոր մայրն Նուարդ. բայց կարծել տայ, թէ եղերական վերջ մ՚ունեցաւ կամ թողուց հեռացաւ յԱյրարատայ, ուր անկէ ետև իրեն սրտին անմարելի սիրոյ և վրիժուց հնոցներ կը վառէին. պատմութեան թողածն հոս քերթողաց յարմար երգոց և ողբոց դրուագ մը կրնայ ըլլալ։

Շամիրամայ սկսպէս գործքերն մեր աշխարհին մէջ, զոր վարը պիտի յիշենք, հոս ալ զինքն անմոռաց ըրին՝ ինչպէս ուրիշ շատ աշխարհաց մէջ, և թերևս ի Հայս աւելի քան թէ ուրիշ տեղ. միայն թէ դժբաղդաբար իր յիշատակաց ամենէն վտանգաւորն՝ երկար ատեն ամենէն ալ զգալի և ընդունելի մնաց. այն է Արայի կենդանութեան կերպն. որ թէ և մեր հին կրօնական պատմութեան կրնայ վերաբերիլ՝ այլ հոս այնքան հին ժամանակի

Հաւաստիս յիշատակ մ'ըլլալով, հարկաւոր է քիչ քննութեամբ երկրորդել։ Այս ատեններս, որ Աբրահամ նահապետին կենաց ժամանակն է, շատ տեղ կռապաշտութեան ծաւալիլն անտարակոյս է, բայց շատ տեղ ալ աստուածպաշտութեան դեռ մնալն՝ նոյնպէս անտարակոյս է. ատանկ ալ կ'երեւի մեր աշխարհն. ուր այս Արայի ոչնչըցընելու հնարքն և հաւատքն առաջուց լսուած ըլլալու չէ. վասն զի անոր սաստութեան ալ փորձ ըլլալով Հայ զօրքն՝ աւելի պիտի զայրանային ընդդէմ Շամիրամայ, ապա նոր բան մ'ըլլալով, և ուրիշ կողմանէ Շամիրամայ վրայ մեծամեծ և հրաշալի բաներ լսելով, գուցէ և տեսնելով, անոր սաստութեամբք և կախարդական հնարքներուն, յետոյ Արայի նման մէկն ալ տեսնելով իր քով, ոչ միայն մասն Հայոց մէջ այս սուտ հաւատքը, այլ գուցէ և ուրիշ ազգացմէ աւելի սեփական եղաւ անոնց. և մինչև իրենց քրիստոնէութեան առաջին դարերուն (Դ, Ե) մէջն անգամ կային հաւատացողք. յամի (Տեառն) 379 երբ Պապ թագաւոր դաւաճանութեամբ քաջակորով Մուշեղ Մամիկոնը սպաննել տուաւ՝ և մարմինը տարին ընտանեացը՝ այն թերահաւատք քրիստոնեայքն առին կարած գլուխը վզին կարեցին ու աշտարակի մը տանեաց վրայ դրին՝ յուսալով որ «վասն զի այր քաջ էր՝ Առլէզք իջանեն և յարուցանեն զնա». ինչուան որ այն ալ Արայի պէս հոտելով և նեխելով թաղուեցաւ։ Դեռ դար մ'ետք ալ՝ մեր թարգմանիչքն (Եզնիկ, Մովս. Խորենացի) յիշեն զայն. և առաջինն կ'իմացընէ որ այդ առասպելեալ լզող ճիւաղն՝ զոր ինքն և Բուզանդ Առլ'ղ կամ Առլէզ կոչեն, այլք Արալէզ կամ Արալէզք, կամ Յարալէզ, կամ Արայի անունէն առնուած էր (իբրև զԱրայ լզող), կամ միշտ լզող իմացընելով (Յարալէզ) և կամ ուրիշ սկզբամբ մը. և թէ շան կերպարանքով կամ շնախառն կենդանի կամ հրէշ մը կարծուէր, ինչպէս յայտնապէս կ'ըսէ Եզնիկ. «զՄովացուլն՝ ի կովէ ելեալ ասեն. և զԱռ-
» լեզն ի շանէ... զոր Արալէզս կոչեն»։ Բ դարուն սկիզբները մեր Արտաւազդ Բ ին մահուանը վրայ եղած առասպելն ալ թէ երկու շունք սեւ ու ճերմակ՝ իր շղթաները կը լզէին որ մաշեցընեն փրցնեն և ազատեն զնա ի մշտնջենաւոր կապանացն՝ նոյն Արայի կենդանիներէն կարծէ մեր միջին հեղինակաց մէկն, (Վանակ. Տարիմս.) «Այս է Յարալէզ առասպելն որ ասեն»։ Ուրիշ մ'ալ՝ գուցէ աւելի հին քան զսա, կը յիշէ թէ «ասեն ոմանք թէ գոյ
» կենդանի որ յար և հանապազ զերկիր լեզու. և ոչ գոյ. և կամ զոր
» Շամիրամ ստաբանեաց, այսպէս ասելով թէ աստուածքն շնորհեցին մեզ
» կենդանիս ոմանս՝ որ լիզեալ զԱրա կենդանացուցին... Անդուստ սկսեալ
» ասեն գոլ կենդանի Յարալէզ. բայց սուտ և ոչ իրաւ»։

Digitized by Google

Այս առասպելս Հայոց մէջ ամենէն հին սնահաւատութիւնն է, որ և Շամիրամայ հետ մտած կ'երեւի մեր աշխարհը, ինչպէս ուրիշ դիպուածէ մ'ալ կը յայտնի՝ որ նոյնպէս իր և իր սանական եղած Արայեանն Արայի ատեն կը յիշուի Անուշաւանի վրայօք. ինչպէս պիտի տեսնենք անոր վրայ խօսած ատեններս։ Իսկ թէ այս Արալեզաց զրոյցն Արայի համար կամ ատեն[232] հնարուած է՝ ուրիշ հեռաւոր վկայութեամբ մ'ալ հաստատուի, որ և նշանաւոր բան մ'այլ է, թէ՛ յիշատակին և թէ յիշողին համար. միանգամայն և սնահաւատութեան հետ կը ցուցնէ Հայոց սովոր հաւատքն այլ հոգւոց անմահութեան վրայօք։ Արամայ անունն բաւական ծանուցած էր իր ազգն և աշխարհն արեւմտեան ազգաց. շատ բնական էր որ իր որդւոյն դէպքն այլ հռչակուի անոնց, մանաւանդ որ Շամիրամայ հետ խառնուած էր անոր յիշատակն. իր մահուան վրայ առասպելն այլ բերնէ բերան և կարծիքէ կարծիք անցնելով՝ Յունաց մէջ, և (Պղատոնի) անոնց գեղեցկագոյն գրչին տակ՝ խորանիշ կերպարանք մ'ալ առաւ։ Արդ Պղատոն իր մէկ իմաստասիրական գրոց մէջ (Ժ Գիրք Հասարակապետութեան) կը յիշէ երեւ. ոմանց ծանօթ զրոյց մը, թէ Էր (Արայ) անուամբ քաջ հայկազուն մը, բայց ծննդեամբ Պամփիւլիացի՝ պատերազմի մէջ մեռեր է, և տասն օրէն իր դիակը գտեր են անապատ և տարեր են տունը, երկու օրէն վերջը խարուկի վրայ դրեր են այրելու. մէկ մ'ալ յանկարծ ողջնցեր ելեր է, և սկսեր է պատմել ինչ որ անդիի աշխարհին մէջ տեսեր էր արդար և մեղաւոր հոգւոց վարձուց և պատժոց վրայօք. բայց ինքն ամենեւին չէր յիշեր թէ ինչ կերպով հոգին նորէն դարձեր էր ի մարմինը։ Պատմածներն յունական առասպելաց և կարծեաց համեմատ են. բայց բուն իրեն պատմութիւնն անտարակոյս կ'ընէ մեր Արայի յիշատակը կամ աւանդութիւնը, որ ի Յոյնս և ինչուան ի Պղատոն հասած էր, որ և յայտ մասին երկու կամ երեք դար յառաջ քան զՄարիբաս մեր հին պատմութեան շատ հետաքննական դիպուածոց մէկն աւանդած կ'ըլլայ։ Էրայ կամ Արայի ծննդեամբ Պամփիւլիացի ըսուիլն այլ՝ եթէ մոլորութեան կամ հաւատալու արժանի սեպուէր՝ կրնայինք ըսել թէ ծնած ըլլայ Արամայ յարեւմտեան Հայս եղած ատեն, և թէ անոր իշխանութիւնն՝ յետ հալածելոյ զՊայապիս՝ հասած ըլլայ մինչեւ ի Տորոս և յափունս Միջերկրականին։ — Դառնանք հիմայ մեր պատմութեան յետ մահուանն Արայի, և Շամիրամայ շինութեանց։

Իր սովոր կամ անսովոր գործոց մէջ ամենէն նշանաւորքն են շէնքերն կրնան ըսուիլ, անոնց մէջ ալ ստուգագոյնքն են ի Հայաստան, որ իր բնիկ Հայկազուն տէրը կորուսանելով՝ առաջին անգամ օտարի և տիկնոջ

*մը հպատակ և հարկատու եղաւ, և այնպէս մնաց բոլոր Ասորեստանեայց ինքնակալութեան ատեն, ինչպէս յետոյ և Պարսից. քանի որ Շամիրամ անձամբ ի Հայս էր՝ ինքնին կ'իշխէր հոն. և առջի գործն եղաւ քննել ճանչնալ այն աշխարհը՝ զոր 4–500 տարի Թորգոմայ որդւոց քաջութիւնն ազատ պահեր էր ի Սեմայ և Քամայ զաւակաց բռնաւորութենէն: Քիչ մ'ատեն Արարատայ կողմերը կենալով, և անշուշտ յԱրմաւիր իշխանաբար տիրելով՝ երբ գարնան օրերն անցան և սկսաւ տաքը զօրանալ Արարատեան ընդարձակ դաշտին մէջ՝ ելաւ զուարճասէր դշխոյն մեր աշխարհին ամառուան եղանակի յարմար կողմերը երթալու, և դէպ յարեւելեան հարաւ ոլորելով Արածանոյ և Աղթամարայ բարձրաւանդակաց վրայ ելաւ, տափէ տափ լեռնէ լեռ անցնելով, «զբօսնուլ կամելով ի հովիտս և ի դաշտս » ծաղկաւէտս: Եւ տեսեալ զգեղեցկութիւն երկրին և զօդոյն մաքրութիւն, » և զաղբերացն յստակագոյն բղխմունս և զկարկաջահոսութիւն գետոց » բարեգնացից, Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոց » և մաքրութեան ջուրց և երկրի՝ քաղաք և արքունիս շինել բնակութեան, » որպէս զի զչորրորդ մասն ի բոլորմանէ տարւոյն՝ որ է ամառնայինն եղա- » նակ՝ ըստ ամենայն բարեխառնութեան անցուցանիցեմք ի Հայս. և զայլն » եւս երիս որոշմունս օդոցն զովութեան՝ ածիցեմք ի Նինուէ»: Եթէ այս եւքի խօսքս պատմողին խորհրդածութիւնն չէ՝ ըսել է որ Շամիրամ ալ կը ճանաչէր տարւոյ չորս եղանակ կամ կլիմայ, և կրնար ալ ճանչնալ իր սիրած տեղեաց ընդարձակութեանը նայելով. ինչպէս որ իր տէրութեան յաջորդող Բաբելացիք և Պարսք այլ նոյն վիճակաւ իւրաքանչիւր եղանակի համեմատ իրենց բնակարան հաստատեցին զանազան աշխարհաց մէջ. իսկ Շամիրամ, ըստ մեր պատմչին, ամառը ի Հայս կ'անցընէր, մէկայլ եղանակներն յԱսորեստան: Դեռ ի Հայս չեկած՝ մեծ Մարաց մէջ Եկբատան մայրաքաղաքին մօտ Բաղաստան (Պաճիստան, Պիսուդուն) լերան վրայ զարմանալի շէնքեր, քանդակներ և պարտէզներ շինել տուեր էր. (քանդակներն և բեւեռաձեւ արձաններն ինչուան հիմայ կան և զարմացընեն զհետաքննիչս. թէ և գրուածքն և գործքն, ըստ քննութեան գիտնոց՝ Աքեմենեայց Պարսից գործք են.) անոնց նմաններ շինեց նաև մեր աշխարհին մէջ. շատ կողմեր ալ լերանց քարէ կողերը տաշելով բեւեռաքանդակ արձաններ գրել տուաւ. նոյնպէս ալ գաւառաց և աշխարհաց բաժանմունքը որոշելու համար սահմանաքարեր կանգնել կամ տաշել տալով արձանագրեց. ինչպէս որ յիշէ մեր պատմիչն, առանց ըսելու թէ որ լեզուաւ. թէ և պէտք չէ տարակուսիլ՝ թէ իր խօսած ասորայի լեզուան էր, մասամբ ալ Հայերէն: Հիմայ*

Digitized by Google

Սեպագիր կամ բեւեռագրական արձանագրութիւնք տարուէ տարի նոր նոր կը յայտնուին ի Հայս . հնագէտք ընթերցողք և (որոց ընթերցուածին և հասկացածին չիք երաշխաւոր) դեռ չեն կրնար ըսել թէ ի՛նչ լեզու է՛ զոր կը թարգմանեն. գտածնին վերջին Ասորեստանեայց և Պարսից յիշատակարաններ են , բայց ոմանք չեն տարակուսիր թէ կարելի է Շամիրամայ գրուած ալ գտնել, և թէ այն ատենի Հայերէն լեզուաւ գրուածք այլ պիտի գտուին, մանաւանդ Վանայ կողմերը, որ Շամիրամայ գլխաւոր շինութեանց կեդրոնն էր։

Այն ընդարձակ և գեղեցիկ աղի ծովուն եզերքը՝ ուսկից ոչ հեռի Հայկ իր մեծ քաջագործութիւնն կատարեց, և իր որդւոց և թոռանց յանձնեց, որոյ մէկուն անուամբ Բզնունեաց Ծով ըսուեցաւ , նշանաւոր չէնք և քաղաք հիմայ Վան է, հին ատենն այլ նոյնպէս էր ի մէջ շատ քաղաքաց և աւանաց որ ծովեզերքը շինուեցան . Շամիրամէն առաջ շէ՛ն էր թէ չէ՛ յայտնի չէ . բայց նա եղաւ իր գլխաւոր շինող և զարդարողն , որոյ և անունն առաւ Շամիրամակերտ կոչուելով և պահեց երկար ժամանակ ։ Շամիրամ անոր հիւսիսային կողմէն եկաւ հոն, և վերոյիշեալ Լէզք գեղէն հարաւակողմը ընական քարայլուր մը գտաւ իր ախորժակին համեմատ , որ միշտ կամ կը փնտռէր կամ կը շինէր աւանի բարձր դիրքեր իր բնակարանաց քովերը. այս բլուրս որ հիմայ աշխարհածանօթ է Վանայ բերդը (Վան-Գալէսի) կրելով, ժամաչափ մը երկայնութիւն ունի արեւելքէն դէպ ի մուտք ի ծովակողմն ձգուած. հիւսիսային կողմը քիչ մը զուր և զար տեղուանք ունի, իսկ հարաւակողմը պարսպի պէս շիտակ և իբրեւ կտրուած կը բարձրանայ, և հիմայ կը նայի քաղաքին վրայ, որոյ պարիսպքն այլ անոր կպած են ։ Այդ Շամիրամ այս քարայլրոյն ոտքը շինեց իրեն ամառուան զբօսանաց քաղաքը՝ որ և անոր համար Ամարաստան ըսուեցաւ , և նախ անոր մօտէն անցնող գետակը որ մինչեւ հիմայ Շամիրամայ ջուր կամ Առու կ՚ըսուի, քարաշէն ամբարտակներու մէջ առաւ , շատ ծանր աշխատութեամբ, որոյ համար իր մարդիկներէն 42,000[233] հոգի և 600 վարպետ ծառայեցուց . խիստ ամուր և մեծագործ շէնք մ՚եղաւ , քարերն այլ աւազով և կրով անանկ միացուց իրարու՝ որ դրուանց հալած և կպուցած կարծուէր, և անանկ սնդացուցեր էր՝ որ գրեթէ փրցնել և կոտրելն անկարելի էր . բայց ժամանակն , թերեւս ժաժելով՝ խանգարեցին զայն և մեծամեծ պատառուածք բացին, որոց մէջ երբեմն բնակիչքն վախի և պատերազմի ատեն կ՚ապահովէին, երբեմն , ալ աւազակներ կը դարանէին, և այս ինչուան ետքի ատենները. այս գետեզերեայ քարատափք որ

ամբարտակք կ'ըսուին՝ մղոններով երկայնեց հասուց մինչեւ այն տեղը ուր շինեց զքաղաք և անոր մէջէն այլ անցուց մինչեւ ի ծովեզրն. ինչպէս նաեւ երկու ճիւղ այլ հանելով՝ ի գետոյն քաղքին երկու կողմէն անցուց՝ որ ջուր տան այն տեղի պարտիզաց և այգեաց, վասն զի քաղաքի երեք կողմն ալ ունեցեր պիտանի և զուարճալի բոյսեր, ի ներս և ի դուրս պարըսպացն, որովք ամրացուց քաղաքը, հանդերձ աշտարակներով և պղնձի դռներով. ընդարձակ և մաքուր փողոցներով բաժնելով զայն թաղ թաղ, և վայելուչ ու բարձր բնակարաններ շինելով զանազան գոյնով քարերով, որ կ'երեւի թէ այն ատեն մասնաւոր նշանակութիւն ունէին ոչ թէ միայն վայելչութիւն. շատ այլ լուալիք և բաղանիք շինեց թէ ջրոց առատութեան և թէ իրեն զբօսասէր բարուցը համեմատ: Միով բանիւ ամառուան յարմար և զուարճալից զովագին քաղաք մը ձեւացուց, անոյշ ջրերով և ծովով, ծաղկով և ծառով զարդարած, հանդերձ ամրութեամբ՝ յապահովութիւն թշնամեաց: Եւ աւելի զգուշութեան համար՝ քաղաքին հիւսիսակողմն եղած բնական քարաբլրուրն արուեստով այլ աւելի ամրացուց, և շատ տարիներ աշխատել տալով թէ ամրութեան, թէ գանձուց պահպանութեան, և թէ բնակութեան ու գիտարանաց տեղուանք շինեց անոր վրան և մէջերը. քարին երեսն ու մէջն տաշելով ու փորելով ուզածին պէս, թէ վեր ելնելու ճամբայի համար, թէ ջրոց ամբարի համար, և թէ պահուըտելու կամ բնակելու համար. մանաւանդ քարաբլրին արեւելեան կողմն որ դէպ ի Վարագ կը նայի՝ ձեռագործ քարայրներ բացաւ, քառակուսի սենեակներով և սրահակներով, որոցմէ դեռ ոչ սակաւ կ'երեւին անմաշ կանոնաւոր ուղղագիծ ձեւերով, թէ և մէջի զարդերէն մերկացեր են: Ջատոնք պատմիչն մեր կոչէ «պէս պէս տաճարս, սենեակս օթից, տունս գանձուց և վիհս » երկարս», որոց ոմանց մուտքին կամ դրսի դրան վրայ բեւեռաքանդակ արձանագիրք կան, ինչպէս նաեւ քարաբլրին ուրիշ կողմերն այլ. որք և բոլոր Ասիոյ մէջ ամենէն նշանաւոր բեւեռագրութեանց մէկն են, թէ ոչ և առաջին. սակայն ինչպէս առաջ այլ ըսինք՝ թէ բոլոր գրուածքն թէ փորուածքն ստուգիւ Շամիրամայ ըլլալն չի կարծուիր հիմայ. այլ հաւանօրէն վերջին Ասորեստանեայց, Մարա–Պարսից թագաւորք այլ նոր բաներ աւելցուցեր են հոն. և ըստ ոմանց՝ առանձին թագաւորութիւն մը կար Վանայ պարատափին վրայ, որ ժամանակաւ դեռ աւելի ծանօթանայ պիտի մեզի երբ այն զարմանալի գրուածքն (որոց մեծ մասն անմաշ մնացեր է) աւելի հաւանօրէն կարդացուին: Այսպիսի գրուածներէն մէկն այլ կայ քաղքէն քառորդ մի հեռի Ակրրի (տճկ. Աք–քիփրի) կոչուած քարալեռան մը երես,

Digitized by Google

խորանարդ տաշած և փորագրած. առիկայ է պատմչին ըսածն, «ի յարեւելից կողմանէ հանեցեալ բլրոյն (բերդին) Լեառն մի փոքրագոյն»։ — Արդ այս քաղաքս իր շէնքին համեմատ Ամարաստան ըսուեցաւ, և բերդին հետ մէկտեղ Շամիրամակերտ. յետ ժամանակաց Երուանդ Արշակունի Թագաւորն քաղաքը նորոգելով իր անուամբ կ'ըսեն Երուանդաւան կոչեց, յետոյ և հիմայ Վան կոչի. երկրիս հնագոյն և միշտ շէն ու իշխանանիստ քաղաքաց մէկն ըլլալով յետ բազմակերպ փոփոխութեանցն իրր 4000 տարիէ վեր։ Վանայ ծովուն բոլորտիքը Շամիրամ ուրիշ ձեռակերտներ այլ ըրած է, և դեռ իր անուամբն յայտնի տեղիք կան. ինչպէս ծովուն դիմացի (արեւմտեան) կողմը՝ Նեբրովթ լերան ստորոտը Շամիրամ գեղը և անոր քով բերդը։ Վասպուրական աշխարհին ուրիշ գաւառաց մէջ ալ, ինչպէս յԱղբակ և ի Ճուաշ, կան Շամիրամայ անուամբ բերդք և գեօղք. ինչուան Արցախ աշխարհին մէջ այլ Շամիրամաձոր և Շամիրամաբերդ անուամբ վիճակք և շէնք յիշուին ԺԲ դարուն մէջ. որոց ինչ պատճառաւ այսպէս կոչուիլն անյայտ է, բայց կրնան հաւատալ պատմչին ըսածը՝ թէ Շամիրամ ամէն տարի ամառները կու գար ի Հայս, և ի հարկէ պտըտելով լեռնային և հովտային կողմերը՝ նոր նոր բերդեր բնակարաններ շինել կու տար։ Մեր աշխարհին մէջ շէնքերուն համար Ասորեստանէն ալ վարպետներ բերաւ. իսկ Հայաստանէն ալ իր աշխարհին և մանաւանդ Բաբելոնի համար՝ հարկաւոր նիւթեր հանեց. որոց մէջ մանաւորապէս կը յիշուի կոթող մը միակտուր քար, զոր կարել տուաւ Հայոց լեռներէն, 125 ոտք երկայն և 5 ոտք ի լայնութիւն և ի թանձրութիւն, և եզներով ու գրաստներով քաշել տանելով մինչև ի գետեզերս, Եփրատայ վրայով իջուց կանգնեց ի Բաբելոն՝ հրապարակի մէջ, որ և անոր հրաշալի շինուածոց մէկն համարուեցաւ։ Շամիրամայ անունն և յիշատակներն շատ ուրիշ աշխարհաց մէջ այլ կան, բայց Հայաստան իրեն եղաւ իբրև երկրորդ հայրենի երկիր սիրական, միանգամայն և գերեզման։

Թողլով իր գործունեայ վարուց մնացորդն՝ մեր պատմութեան հարկաւոր եղածն ըսենք. 42 տարի քշեց իր տիկնութիւնը. և եթէ պատերազմներն և շինութիւններն պայրեցուց, բայց բռնութիւնը, զրօսանքն և կախարդութիւններն ոչ, ինչպէս կ'աւանդեն. և ասոնց մէջ անզգայ ըլլալու համար՝ իրեն հաւատարիմները զանազան աշխարհաց վերակացու կը դնէր. որոցմէ մէկն այլ էր Նիւղոս՝ մեր աշխարհին վրայ, որոյ և օրինաւոր պայազատն էր, և Արայեան Արայ կոչուած. որ պատանեկութիւնը Շամիրամայ արքունեաց մէջ անցընելով՝ անոր զգուանօք և զրօսանօք մեղկած և

Digitized by Google

թուլցած կ՚երեւի. և Ասորեստանեայց՝ մանաւանդ իրեն երկրորդ մայր մ՚եղած Շամիրամայ սովորոյթքն մտուց ի Հայս. և կարծեմ թէ այն օտարներէն սովրած՝ հմայից և կոոց հաւատքն այլ ինքն նախ համարձակեցուց. և իր իսկ պայազատ որդին՝ Անուշաւանը նուիրեց իր արքունեաց մօտ տնկած (Արմաւրայ) սօսեաց անտառին, որք յանուն Արմենակայ կոչուէին. ծառապաշտութեան կարծիք մը տալով։ Ամառներն ի Հայաստան եկած ատեն՝ Շամիրամ Մարաց գլխաւորը կամ մեծ օրէնսդիր Զրադաշտը, որ և Զրադաշտաց մէջ առաջինն է, բոլոր Ասորեստանի և մերձակայ աշխարհաց վրայ իրեն երեսփոխան և կառավար կը դնէր, իր հարազատ կամ անհարազատ որդիքն զրկելով և զզուշացընելով ամեն իշխանութենէ. ինչուան որ անոնք ալ սկսան հնարք մը մտածել մօրերնուն ձեռքէն ազատելու. բայց այն աշալուրջ ժանտուհին և ոչ անոնց արեւուն և իր արեանը խնայեց, զամենքն այլ սպաննել տուաւ. միայն Նինոսէն ունեցած մէկ զաւակն ազատեցաւ Նինուաս կամ Զամէս ըսուած. որ և ամենեւին վախկոտ և անփոյթ երեւնալովը պահուեցաւ մօրն յաջորդ։ Բայց ասիկայ արդէն տարիքն առած երթալով աւելի զարշելի և անտանելի եղաւ. և ատենով մը Զրադաշտի հետ այլ աւրուելով, ուզեց զայն ալ իշխանութենէն ձգել. բայց անիկայ աղէկ ամրացեր և զօրացեր էր. պէտք եղաւ պատերազմով կռուիլ։ Շամիրամայ առոյգ հասակին հետ բաղդն այլ կամ բաղդաւէր ընկերներն այլ պակսեր էին. յաղթուեցաւ Շամիրամ, փախաւ եկաւ ի Հայս։ Վրէժխնդիրն Զրադաշտ յորդորեց թագաւորեցուց զՆինուաս. որ հրաման տուաւ հալածել զմայրն մինչեւ ի մահ։ Շամիրամ իր սիրական և հաւատարիմ Արայեան Արային հետ զօրք ժողուելով նորէն ուզեց դէմ ելնել ապստամբաց, որք եռեւէն հասան. և նորէն յաղթեցին պատերազմաւ, որ կ՚երեւի թէ վերոյիշեալ Շամիրամ գեղի և բերդին մօտ եղաւ. ուր այն զօրող և աշխարհազօր դշխոյն ստիպուեցաւ գերի աղախնոյ մը պէս ոտքով փախչիլ. և յոգնած ու սաստիկ ծարուած ջուր ուզեց ու խմեց, (զուցէ այն համանուն գեղին քովը ուրիշ գեղ մը՝ որ մինչեւ հիմայ Ջրխոր կ՚ըսուի). և այս ծարաւը մարելու կարօտն՝ իր կեանքը մարելու պատճառ եղաւ. վասն զի եռեւէն ընկնողներն սուրերնին բաց վրան հասան. տեսաւ որ այլ ամեն բան լմննալու վրայ է, (կ՚ըսէ մեր ազգային աւանդութիւնն) հանեց վզէն իրեն հմայից և յուռութից առիթ օղամանեակ ուլունքը, զոր գտեր էր կ՚ըսեն օր մը Հայ աղաց ձեռք ծովուն եզերքը պտտելու ատեն, և իրեն հմայեկ լուեր էր, անոր համար յուռուր—ուլունք կ՚ըսուէին, և հօն առաւ նետեց ի ծովը, որ չըմնկնի ուրիշի ձեռք և ուրիշի այլ չանցնի բաղդը[234]։

Ուրիշ աւանդութիւն ուրիշ կերպ կ'ըսէ այս բանիս. ինչ այլ որ ըլլայ՝ հաւանական է թէ Շամիրամ կախարդութեան կամ հմայեկի պէս ուլունք մ'ունեցած է, և անկէ մնացեր էր ի Հայս մինչեւ քրիստոնէութեան և մեր թարգմանչաց ատեն այս խօսքս կամ առածս «Ուլունք ի ծով Շամիրա-մայ[235]», գուցէ հին ազգային երգերէ առնուած: — Իր հետ Արայեանն Արայի ազգապետութիւնն ալ վերջացաւ. վասն զի նոյն պատարագմին մէջ ինքն այլ սպանուեցաւ իր կենաց իբր 38դ տարին. և իբր 1964 տարի նախ քան զՔրիստոս: Շամիրամ յաղթեցն հետ իր կեանքն այլ կորուս. (և փոխանակ ուլունքը՝ անխնայ սուրն պատեց վիզը): Այս կերպով, ըստ հաւանագոյն կարծեաց, եղաւ այս գերահռչակ աշխարհակալ դշխոյին կատարածն, որ ուրիշ ազգաց պատմութեան մէջ անծանօթ մնացեր է. և թէպէտ մեր մէջ աւանդածն ալ խառն է առասպելեօք, այլ գուցէ աւելի մօտ ստուգութեան: Մեր Պատմիչն Ցուռութուլանից հետ ուրիշ առասպել մ'այլ կ'աւանդէ առանց բացատրելու «Այլ թէ ախորժես առասպել, և Շամիրամ քար առաջին » քան զՆինոսէ»: Գուցէ սոսկ կ'իմանայ մեր քերդողահայրն այս Նինոսեայ վրայ ոմանց առասպելածն (որ սովորական կարծիքէն կը տարբերի) թէ Նինոսէ երկանը մահուան ցաւէն խելագարած իր զաւակները սպաննեց, և ինք զինքն այլ ժայռէ մը վար գլորելով մեռաւ. գուցէ Շամիրամ այլ իր ետեւէն թշնամիներուն ձեռքէն փախչելով ինք զինքն ժայռէ մը վար գլորելով մեռած կարծուի. կամ թէ մեր նախնիքն Նինոսէ միւս աւելի հռչակուած առասպելին նման կարծէին՝ թէ ի քար փոխուած ըլլայ. զոր և մեր հե-գինակն ժամանակաւ երիցագոյն սեպելով ըսէ, «Եւ Շամիրամ քար առա-» ջին քան զՆինոսէ»:

Արայեանն Արայի հաւատարմութիւնն առ Շամիրամ՝ յանցանք մ'էր յաչս Նինուասայ, անոր համար անոր որդին Անուշաւան, զոր թերեւս ինքնին Շամիրամ իր արքունիքը տարեր էր ի Նինուէ՝ իբրեւ պատանդ կամ արքանեակ, Նինուաս աւելի խստութեամբ հոն պահեց իբրեւ իրեն թշնամւոյն որդի. մանաւանդ որ Անուշաւան շատ ձրից տէր և հանճարեղ երիտասարդ մ'էր: Արդէն յիշեցինք՝ որ Հայրն զինքը նուիրեր էր Արմաւրայ սօսեաց ծառաստանին, ուր կարծեմ թէ և Զրադաշտայ նորահռչակ կրօնից համեմատ մոգուց ժողովարան մը հաստատեր էր, որոց յանձնեց իր պա-յազատին կրթութիւնը. որ և եղաւ իսկ ըստ պատմչին «ամենահարուստ » և շատահանճար յիր և բան». Հարստութեամբն կ'իմանամ իր յաջողու-թիւնը և զօրութիւնը միանգամայն և զգօնութիւնը՝ զոր յետոյ ցրցուց. իսկ շատահանճարութեամբն՝ իմաստութիւնն և հնարագիտութիւնն, զոր խօ-

Digitized by Google

քոփ այլ յայտնէր, անոր համար գովուի և ի բաց։ Այս ձրից վրայ ունէր և նուիրական համարում մը սօսեաց մէջ իբրեւ աստուածութեան ընծայուած ըլլալու, ինչպէս այն հին ատեն Աստուծոյ աղօթից կամ վերաբերութեան տեղ անտառք կամ մեծամեծ ծառք ընտրուէին, որպէս և ժամանակակից Աբրահամ նահապետին և իր որդւոց պատմութենէն յայտ է ի Ս. Գիրս. իրեն սեփական եղաւ Սօսանուէր կոչումն[236]. ըստ միոյ հեղինակաց մերոց մասնաւոր սօսի ծառ մը կար Արմաւրայ ապարանից գրան քով որոյ նուիրած էր Անուշաւան, մօտ այն աշտարակին՝ յորոյ վրայ կախեցաւ Նիւքար։ Նոյն իսկ Անուշաւան անունն այլ սրբազան նշանակէ ի սանսկրիտ լեզու։ Իսկ Գր. Մագիստրոս մեկնաբանէ. «Անուշաւան՝ անուշակացն կազմիչ և բարութեան յարդարիչ»։

Նինուաս կարդոսի հետ մօրը սպաննուելէն ետեւ խաղաղութեամբ տիրեց անոր ընդարձակած իշխանութեանը, և փոխանակ պատերազմաց և նոր աշխարհակալութեանց, մօրը ժողուած գանձերը վայելելով շռայլութեամբ, ինչպէս որ իր յաջորդքն այլ ըրին։ Անուշաւան երկար տարիներ անոր քով մնալով ճարտարութեամբ պալատականներէն մէկ քանին շահեցաւ. և հաւանել տուաւ Նինուասայ որ զինքը խաւրէ ի Հայս իր նախնեաց աթոռը նստելու հաւատարիմ հարկատու մնալով Ասորեստանեայց. Թէպէտ և նախ ոչ բոլոր մեր աշխարհին՝ հապա մէկ մասին միայն վերակացու դրաւ զնա Նինուաս, այլ վերջը բոլորն այլ իրեն յանձնեց, զոր և իմաստութեամբ կառավարեց Անուշաւան՝ հպատակութեամբ ինքնակալաց Նինուէի, ինչպէս և իր յաջորդք ըրին, որք և Ասորեստանեայց թագաւորին մէկ կուսակալն սեպուէին ի Հայս։ Պատմութիւնն կը ցուցընէ զԱնուշաւան շատ գովանի և պիտանի անձ, բայց ճարտարութեամբ իր հայրենի աթոռը ժառանգելէն զատ՝ ուրիշ բան չի պատմեր վրան[237], և ոչ այլ իր յաջորդաց վրայ երկայն դարեր. որոնց անուանքը, կարգը և մնացեալ հազուագիւտ յիշատակները քննենք յաջորդ գլխով։ — Անուշաւանի հետ կը դադրի մեր պատմութեան մէջ Հայկայ սերնդեան պայազատութիւնն, 10 ազգ (պորտ) և իբր 550 տարի քշելէն ետեւ. վասն զի իր յաջորդն և անկէ ետքինները իրարու որդի ըլլալնին ոչ յայտնի է և ոչ հաւանական։

---

# ԺԴ

# ՀԱՅԿԱԶՈՒՆՔ ԿՈՂՄՆԱԿԱԼՔ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

## ՄԻՆՉԵՒ ՑԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄԱՐԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ

ՅԱՆՈՒՇԱՒԱՆԱՑ յետին ազգածին պայազատէն Հայկայ, կամ ի մահուանէ հօր նորա Արայեանն Արայի և Շամիրամայ մինչև ի սկիզբն առաջին թագաւորութեան ազգիս ի Պարուրայ Հայկազնոյ՝ և ի սպառուած ինքնակալութեան Ասորեստանեայց երիւ 12 դարք ժամանակի (1167 ամք) համարին ըստ յոլովագունից ըստ մեզ ողջամտաց ժամանակագրաց, զոր այլք հնգիւք կամ վեցիւք դարուք և աւելի եւս համառօտեն, զհետ երթեալ բանի ինչ Երոդոտեայ՝ որ յառաջ քան զհարստութիւն Մարաց՝ Ասորեստանեայց տայ տիեզերակալեալ ամս 5... և զի առաջին ինքնակալ Ասորեստանեայց զՆինոս ասեն ամենեքին՝ ապա որք զայլր բանի Երոդոտեայ զհետ երթան՝ կամին զՆինոս 13 դարուք եւեթ կանխել քան զթուականն Փրկչին, զոր այլք որպէս և մեք 21 դար յառաջ ասեմք. զբան պատմահօրն Յունաց իմանալով զնորոգութիւն ինչ ինքնակալութեանն. և պինդ ունիմք զԴիոդորայ, զԵւսեբեայ և զայլոց ժամանակագրութիւն. ըստ որոց ի Նինոսէ ցՍարդանապաղ յ'12 դարս թագաւորեցին Ասորեստանի և ամենայն յառաջակողման Ասիոյ ինքնակալք 30 կամ 35. և ոչ ոք ի նոցանէ ասեն նուազ քան զ'20 ամ թագաւորեաց, քանզի անպատերազմասէր և անխուճապ կենօք՝ հեշտի և զբօսանաց պարապեալ խաղաղութեամբ կեցին զամենայն ժամանակս իւրեանց, ըստ հնարագիւտ կարգաց և օրինաց առաջնոյն իւրեանց Զամեսեայ ժամանակակցի Անուշաւանայ, որ կարգեաց յամենայն ազգաց նուաճելոց ընդ տիեզերակալ ակրութեամբ իւրով զումարել ամ ամի և փոփոխել զսահմանեալ թիւ զօրաց ի պահպանութիւն աշխարհին հանդերձ առաջնորդօք նոցին, զի մի ոք յապստամբութիւն մտաբերեսցէ. նոյնպէս և կողմնակալաց իւրաքանչիւր աշխարհաց պայմանեցին՝ ժողովել զհարկ աշխարհին իւրեանց և պատրաստ յանդիման լինել սակս աշխարհամուտ զբան իւրեանց։ Ընդ նովին օրինօք և կարգօք անկեալ կայր և Հայաստան աշխարհ. և նահապետք նորին կամ տանուտեարք

թէպէտ և Հայկազունք՝ համարեալք էին ինքնակալացն այնոցիկ ամփոփետաց գործակալք և վերակացուք աշխարհին կամ մեծ կողմնակալք, որպէս ասէ Պտղոմէոսն ։ Եւ ոչ աւելի քան զտերանց իւրեանց ընծայի և մերոցս ազգապետաց յիշատակ գործառնութեանց. քանզի անփոյթ արարեալ նոցա, ասէ, զյիշողութեան վերակացուաց՝ որք ի դրան տիեզերակալացն զգործս նոցա նշանակէին «Մնացին աննշանակելի ի վերջինսն» մերայոցս գործք. և եթէ ինչ ինչ եհաս առ մեզ՝ շնորհապարտ այնմ գտանիմք «հնոցն գլուանաց » Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից, վասն մտելոց անուանց և » գործոց նոցա (ազգապետաց Հայոց) ի քարտէս արքունի» ։ Անդուստ և զանուանս իսկ ազգապետաց մերոց ասէ Խորենացի գտեալ և ստուգեալ, յայտ է թէ առաջնոցն քան զինքն, այսինքն Մարիբասայ և այլոց, նաև որպէս հաւանութեան է՝ յանգիր իսկ աւանդութեանց կամ ի Մնացորդաց ինչ միպատանութեանց. յորոց և յառաջ բերէ զկարգ յաջորդութեան նոցա յԱնուշաւանայ մինչ ի Պարոյր նուքիմրք հանդերձ՝ 28 կամ 29[238], ըստ որում և այլք ի պատմագրաց մերոց նորին հետեւողաց, բայց միայն ըստ զաղափարչաց վրիպման յոմանս նուազագոյն գտանի թիւ պետացն[239]. որ և ի բուն իսկ ի գիրս պատմահօր մերում (Խոր.) կամ յառ մեզ հասեալ յօրինակսն, նուազեալ թուի. քանզի յԱնուշաւանայ ցԹագաւորութիւն Պարուրայ 1167 ամք բաժանեալ ի 29 պետս՝ մէն միոյ 40 ամ համարի, որ և աւելազանց երևի. և հարկ է կամ բազում ամս միջոցի պարապոյ եդեալ ասել, կամ ի բաց անկեալ զանուանս ոմանս պետացն. նա զի և զուգաժամանակ կարգ Թագաւորաց Ասորեստանեայց ի Զամեսեայ ցՍարդանապալ 35 հաշուի. և զէթ այսչափ և զՀայկազունս մեր արժան էր թուել, մանաւանդ եթէ յայս միտս կարծիցեմք ասել Խորենացւոյ (Ա–ժԹ) ։ «Բայց » զուգութիւն բարբառոյ և հաւասարութիւն թուոյ կարգի պատմեաց՝ զճշմարտութիւն աշխատասիրութեանս մերոյ ակնարկէ» ։ Դարձեալ համեմատութիւն ժամանակի ծանօթից ոմանց յազգապետացս մերոց ընդ Եբրայեցւոցն՝ կամ ընդ այլոց օտարաց որոց ստոյգ է ժամանակ, ակներև յայտ առնէ զմեծ բացատ ժամանակի ընդ երկոսին ծանօթսն, յորում միջոցի սակաւք ոմանք նշանակեալ կան ի կարգին. օրինակ իմն. Սուր ժամանակակից ասի Յեսուայ՝ որ իշխեաց ի 1605 ամի նախ քան զՔրիստոս, իսկ Անուշաւան յամի 1964. ընդ սա և ընդ Սուր 4 ազգապետք միայն կարգին. միջոց ժամանակի 360 ամ է, որ բաժանեալ ընդ վեցեսին՝ մէն միոյ 60 ամ անկանի, և աւելազանց է ։ Դարձեալ Զարմայր առ իլիական պատերազմօքն ասի լինել, և առումն Տրովադայ հաստատի ի ստուգագոյն քննութեանց

յամի 1184 նախ քան զՔրիստոս. արդ յաջորդ Զարմայրայ կարգի Պերճ, և միայն ժամանակակից գոլ Դաւթի որ թագաւորեաց յամի 1056 (կամ 1040) Ն. Քրիստոս, և թէպէտ բազմակեաց ասի լինել Պերճն, այլ աւելի քան 120 ամք իշխանութեան պիտին առ անմիջոց յաջորդ Զարմայրի և ժամանակակից Դաւթի զնա առնել. որ անհաւատալի է։ Վասն որոյ հաւանելի է ըստ նորոյ Պատմահօրս (Միք. Չամչ.) զայլս ոմանս միջակարգել զոցա, որպէս և առնեն իսկ՝ գտեալ ուստեք ուստեք, որպէս ասէ (Պատմ. Հայ. Ա. 178) և յետ Զարմայրի կարգէ զՇաւարշ Բ, և յետ Արբունի յաջորդին Պերճայ զՊերճ Բ, և Բ ևս այսմ ի ճահ գայ ժամանակակցութիւն Դաւթի, քանզի այսու ընդ սա և ընդ Զարմայր 3 ևս պետք ի մէջ անկանին։ Նոյն դարձեալ և յառաջ քան զԿարպակ դասէ զԱմբակ Բ. և այնպէս մինչև թիւ ազգապետացն բովանդակի յ'32։ Այլ տակաւին և այդ անբաւական երևի առ երկարութեան ժամանակին։

Եւ զի հաւաստեաւ ի կարգէ ազգապետաց մերոց ի բաց անկեալ է ոմանց՝ աներկբայ լինի ի պատակարգէն որ յետ Պարուրայ գՀրաչէ. քանզի առ Խորենացւոյ սաստանոր ակներև կայ աղաւաղութիւն բանի և հակասութիւն. քանզի անմիջոցս ընէ զզոսա ի կարգին. և ըստ պատմութեան զՊարոյր զուգէ Վարբակայ Մարի սկզբնաւորի թագաւորութեան Մարաց, և զՀրաչէ՝ Նաբուքոդոնոսորայ որ 40 ամաւ միայն կանխէ քան զվերջ թագաւորութեան Մարաց, զոր գիտեմք զէթ 200 ամ տևեալ. դարձեալ զՊարոյր Վարբակայ զուգակիցն՝ նոյն և Սենեքերիմայ զոյգ ցուցանէ, մանաւանդ թէ անտեղագոյն և անհնարագոյն ևս զնախորդ նորա զԱկայորդի զոյգ Սենեքերիմայ՝ որ այնքան կրսեր է ժամանակաւ քան զՎարբակ. և ամենեցուն սաստանոր յայտ յանդիման կայ խանգարումն պատմութեանն և անլինելութիւն, զուցէ յօրինակողաց կամ յանհմտից ոմանց ձեռնարձակութենէ։ Եւ ահա զմիջոց ժամանակիս ի Պարուրայ գՀրաչէն կամ ի Վարբակայ ցՆաբուք. որ ըստ ոմանց ժամանակագրաց 150 ամք են և ըստ այլոց աւելի քան զ'200, որում և մեք հաւանեալս եմք, ընդ 5 կամ ևս աւելի թագաւորք Հայկազունք՝ զորոց ամենևին զանց առնէ Խորենացին և այլ ոք երիցագոյն քան զնա ստուգիւ արձանագրեալ և այլք աւանդեալ հասուցին մեզ, որպէս տեսցի ի յետագայն։ Եւ ըստ այսոցիկ համագումար թիւ ազգապետացս որ ի Հայկայ մինչև ցՎահէ՝ 56 համարի առ Խորենացւոյ, աւելի քան զ66 գտանի հաւաքելով յայլոց պատմչաց և գրչաց. և ամենայն ժամանակ իշխանութեան նոցա յ2492 ամէ ց330 նախ քան զՔրիստոս (2162 ամք) բաժանեալ ի 66 պետս միոյ միոյ վիճակին իբր 32 ամք. իսկ յԱնուշաւանայ ցՎահէ

Digitized by Google

համարեալ ամս 1634, միոյ միոյ ի 57 պայազատաց՝ ամք 28. և այսոքիկ ոչ անճահք և անպատշաճք. Թէպէտ և ինձ տակաւին ոչ հաւանութեան երևի, կամ սակաւք են պայազատքն Հայկազունք (66) յ՚2162 ամս իշխանութեան, կամ միջոցք անիշխանութեան եղեալ են երբեք երբեք. ապա թէ ոչ հարկ էր յեղաշրջել և փոփոխել զգատակարգ պայազատացդ՝ և ըստ երկարութեան կամ սղութեան միջոցաց ծանօթաժամանակ արանցն յետ և յառաջ զատակարգել զնոսին. յոր ոչ յանդգնեալ մեր և ոչ իսկ փաստս գտեալ տեղափոխութեան՝ միայն ի կարգ արկանեմք զգտեալս արտաքոյ Խորենացւոյ առ այլս ի պատմչաց կամ առ Ջամչեանն. և յ՚երկարեալ միջոցսն՝ պակասեալ խոստովանիմք զպայազատս մեր, կամ յանիշխանութենէ, կամ յանյիշողութենէ ժամանակագրաց, և կամ ի վրիպմանէ գրչաց։ Առ կարի հեռաւորութեան և մթութեան ժամանակաց չիշխեմ ստուգապատում առել և զթիւ ժամանակաց և զազգապետաց և զաւանդեալսն ինչ յիշատակս զնոցանէն կամ զոր նոցին ժամանակ բայց միայն առ ի գումարումն և ի պատմութեանս քննութիւն յետնոց՝ ջան տարայց հաւաքել զսոսին, հանդերձ հետաքննութեամբ ամենայնի՝ որ միանգամ պատշաճեալ բերցէ կամ գործոց անուանց հայկազանցս պետաց, մինչև յառաջակէմ լուսաւորութիւն արևելեայցն պատմութեանց կամ գիւտ ինչ անակնկալ՝ փարատեսցէ շատ կամ սակաւ զմթութիւն զարուց ժամանակացս այսոցիկ, որ գրեաթէ մածեալ ունի զեռ զպատմութեամբ առհասարակ ամենայն ազգաց ժամանակակցաց, բաց յԵբրայեցւոցն և ի սակաւուց ումանց այլոց. քան զորս յոլովս առաւելաշնորհ գտանիմք զոնեայ և այսու իսկ միացուածով անուանակարգութեամբ ազգապետացս, և սուղ ինչ յիշատակօքն, այնքան ես պատուականագոյնք որքան «կամ հաւատի կամ » զոյգն ինչ կասեալ յարդարոյն», ըստ քերթողարան պատմահօրս ասից։

Յետ տասանց ազգածին նահապետաց՝ որք ի Հայկայ մինչև ցԱնուշաւան որդի ի հօրէ առին զառաջնորդութիւն ազգիս, առաջին յաջորդ նոցա և (ԺԱ) ազգապետ՝ հաստատեալ ի դրանէ Ասորեստանեայց եկաց Պարէտ՝ զոր ոմն ի յետին պատմչաց մերոց միայն՝ ընթեռնու Զարէտ. և զի առաջին սա եկաց զրժող Հայկազանցն ցեղապետութեան յայտ իմն լինի անհաւան եղեալ Անուշաւանայ կամ որդւոց նորին, և հաճոյ ի սպասու ինքնակալացն Նինուէի. կամ թէ շողոմութեամբ և կաշառօք զբռամբ ածեալ զառաջնորդութիւնն. յոր միտս մարթ էր համարել զՄակիսարոսի ասացածն «Պարէտ պարառարար պերճացեալն», եթէ ոչ վարկպարազի և ձայնական ինչ յարմարուածք էին բանի նորա. որպէս և զյաջորդէն նորա (ԺԲ) որ

Digitized by Google

Արբակ կամ Արբոկ կոչէր՝ ասէ «Արբակ արքանեակ բարեաց»։ Պարէտ ամս 21 վարեաց զիշխանութիւն ըստ Զմիւռնացւոյն. իսկ Արբակ յոլովագոյնս. և նորին յաջորդի որ է (ԺԳ) Զաւէն կամ Զաւան «զօրաւորն» զինու» ըստ Մագիստ. ամս 51. նորուն յաջորդ (ԺԴ) Փառնակ (Ա) «փառացի պեղաշուք» կամ Փառան 80 ամ. իսկ զյաջորդ սորա (ԺԵ) Սուր պատշաճեցուցանէ յառաջին ամն Յեսուայ, որ ըստ մերս ժամանակագրութեան փոխանակեաց զնախամարգարէն Մովսէս յամի 1585 նախ քան զՔրիստոս. ըստ որում և յԱնուշաւանի պայազատութենէն ցայս վայր գումարին ամք իբր 380, յորս 5 միայն ազգապետք մեր յիշին, իսկ Ասորեստանեայց աւելի քան զ'10 յայնքան ժամանակ (այսինքն յ'380 ամս). վասն որոյ հարկ է և ի մեզ այլոց ազգապետաց զօլ կացեալս, մանաւանդ ընդ մէջ Արբակայ և Զաւենայ, եթէ միայն սոսյզ իցեն, որպէս համարիմք, Նինուասայ և Անուշաւանայ ժամանակքն ըստ եպեւսեմս (1964 նախ քան զՔրիստոս)։

Յայս միջոց ժամանակի Դից պարուց (Ի ԺԷ նախ քան զՔրիստոս) կամ Թէ և սուղ մի յետ և յառաջ դէպք ինչ զանխուլք ի բազմաց և երկբայականք աւանդին ի համար մերոյ աշխարհիս և ազգիս, յորոց է ինչ որ և ի սուրբ Գրոց պատմութեանց, և այսոցիկ առաջին Աբրահամու պատերազմն ընդ չորից Թագաւորաց արեւելից, (2046 նախ քան զՔրիստոս) որոյ ժամանակ ըստ մերոյս ընարելոյ ժամանակագրութեան յամս Արամայ քաջի պատահէ, ըստ այլոց՝ յետոյ ուրեմն. ի չորից անտի Թագաւորաց Ամարփաղն՝ Սենաարայ՝ զԲաբելացւոցն յայս առնէ իբր կողմնակալի կարգելոյ ի Նինուէ որում և պատշաճի իսկ ժամանակն. Արիովք արքայ Ելասարայ կամ Թալլասարայ՝ Պոնտոսի կողմանց իշխեցող կարծի, իսկ Թարգաղն Թագաւոր ազգաց կամ Օտարականաց, կամ Սկիւթաց (ըստ Ակիւղասայ) յիշեցուցանէ զԹարգամ. և յայս է, որպէս ի սկզբան տեսաք, զի այդ էր առաջին անուն ազգիս և աշխարհիս, որ և Սկիւթք կոչեցեալ. բայց ոչ ի նմանութենէ անուանցն կամ ի սահմանակցութենէ այլոցն երից Թագաւորաց յայսպիսի կարծիս ընթաք որպէս Թէ միոյ ի չորից Թագաւորացն նիզակակցաց՝ մերոյ ազգիս նահապետ լինել, այլ զի և պատմիչ ոմն հեթանոս քաջ ի բաց հին, զոգջիր ժամանակակից Մարիբասայ, Եւպողեմոս, զայլոց ինչ չառնելով զրոյց՝ միայն զմերս ազգ յիշէ. «Մինչդեռ ի Փիւնիկաստան, ասէ, բանակեալ էր Աբրահամ, եկեալ Հայոց մարտիւ պատերազմաւ հարկանէին զշահաւէրսն փիւնիկեցիս, ի գերութիւն վարելով և զեղբօրորդին Աբրահամու զՂովտ. յորոց վերայ ժամանեալ Աբրահամու օգնական փիւնի-

*կեցուց, ի պարտութիւն մատնէ զյաղթականսն և թափէ ի նոցանէ զերի զմանկունս և զկանայս, զորս տպա յաղերսել նոցա արձակէ յազատութիւն, առեալ միայն փրկանս ի ձիշակ զօրականին։ Եթէ արդարեւ, որպէս Թուի, յԱրամայ ժամանակս լեալ իցէ արշաւան Թագաւորացն արեւելեայց՝ կարի իսկ հաւանութեան է լինել և զօրացն նորին ընդ նոսա, որ և հզօրագոյն էր, որպէս տեսաք յիշխողս ժամանակին և վանիչ բռնաւորաց. և Թերեւս առաքեալ էր զմի զօրավարաց իւրոց։*

*Դէպք իրացս յուշ առնեն մեզ և զաններկրայ բարգաւաճանս փիւնիկաւան ժողովրդոց ի հնագոյն դարս անդ, մանաւանդ ի վաճառականութեան հայթայթանս, որովք ծանուցեալ էին առ ամենայն քաղաքացեալ ազինս ժամանակին, մանաւանդ առ որս շահաբեր ինչ արդասիք գտանէին. և ամենեւին հաւանութեան է թէ գոյր նոցա և մերոցս Հայկազանց տուրեւառիկ վաճառուց և երթեւեկք, որում վկայ դարձեալ յետոյ ուրեմն Ս. Գիրք ի ձեռն Եզեկիէլի մարգարէի։ Արամ ի հալածելն զԲայապիս մինչեւ ի կղզիս Միջերկրականին, որպէս տեսաք, եհաս ուրեմն մինչեւ յափունս նորին առ Կիւլիկեաւ և Ասորւօք, որոց զոգ գրակից լին̃ էին Դ Հայք և Միջագետք Հայոց՝ զորս կացոյց նա մարզ իշխանութեան իւրում. և նրաց կամ դիւրեաց զճանապարհն ընդ աշխարհն Ասորւոց և Քանանացւոց, յոր իջուցանէր անդստին յերկրէ իւրմէ Եփրատ գետ. և զի մերձաւոր քան զայլս ի չորից ազգացն յիշելոց Հայք էին յայսմ կողմանէ ի Փիւնիկէ, չիցէ անդէպ յիշմաթիւս և առաջնորդս զնոսա կարծել նիզակակիցացն, և վասն այսորիկ զմերոս միայն յիշել Եւպոլեմեայ, որ գէթ ճանաչէր զՀայս իբրեւ ազգ հզօր և ինքնակաց և այնպէս իսկ համարէր լինել ի ժամանակս Աբրահամու։*

*Եւ զի զմեծէ նախահայեաւէս բանք են, Թերեւս չիցէ աւելի կանխել յիշել աստանօր զմեծ աւանդութիւն ազգիս, որ զնա ինքն զԱբրահամ հնագոյն և հեռագոյն հաւ ճանաչէ հզօրագունի հարստութեան ազգին, Արշակունեացն առեմ կամ Պահլաւաց, իբրեւ սերնդոց քետուրածին սրբոց նորին, յորոց Վաղարշակն, և նոյն ինքն Ս. Գրիգոր հայր հոգւոց Հայաստանեայց. որ զերագոյն եւս զօգեա հրաշիւք քան զՄելքիսեդեկն քահանայապետ՝ յայտնեալն յետ յաղթութեան Աբրահամու ի վերայ արեւելեայցս ազանց, նուաճնայր վերին տեսչութեանն 23 դարուք յառաջ, և տեսեալ քան զգինուցն՝ զհաւատոյն յաղթութիւն եւս դրաւականէր առ յապա զարմիցն Թորգոմայ և իւրածինն Եմրանայ։ Անուն նախահայրն Հրէից առանց երկրայութեան՝ յաղթական գործովք հռչակեցաւ յարեւելս*

Digitized by Google

և յաշխարհիս մերում, որպէս զմիոյ ի հզօրաց թագաւորաց մանկանց կամ ցեղապետաց ցրուելոց յընդարձակութեան աշխարհացն Ասորւոց և Արաբացւոց: Կարծեմ թէ և յայլ ի վերին անուն կոչեցաւ տոհմն մի պատուական ի Հայս Աբրահամեանք կոչեցեալ, որոց և բնակութիւն երեւի լինել ի Հարաւակողմանս աշխարհիս ի սահմանս արեւելեան հարաւային Վասպուրականի, ոչ շատ հեռի ի բուն հայրենեացն Աբրահամու (Ուր Քաղդէացւոց). այլ թէ երբ գալուստ տոհմապետին առ մեզ, ի գերութեանն Հրէից առ Նաբուգոդոնոսորաւ և Հրաչէիւ, եթէ վաղագոյն կամ յետնագոյն եւս ժամանակաւ, զայն ոչ գիտեմ:

Միւս եւս աբրահամեան կամ եբրայական պատմութեանց կցորդութեան աւանդ առ ումեմն հնագոյն պատմչաց մերոց առ որովք իսկ մեծի Նահապետին հանգիպեալ, առ Իսահակաւ. յորոյ երեւաց փախստական լեալ ասէ ի Դամասկոսէ զՄարսեակն զընդոծինն Աբրահամու, և եկեալ բնակեալ ի Հայս «առ ստամբ երկուց լերանցն՝ որ հայէին հանդէպ մեծի դաշտին » Արայի, յԱրագած կատար և ի Գեղ լեռան. և անուանէ զլերինն յանուն » իւր: Եւ լինին նորա երեք որդիք (առաջինն) Փառոխ, նա է Եղիազար, » որում Ազատն կոչեն լեառն». այսինքն յանուն Եղիազարու թարգմանօրէն զմի ի լերանց Դաշտին Արայի կոչեաց Ազատ, յորմէ իջանէ գետակն համանուն և անցեալ առ Դուինաւ օժանդակէ զԵրասխ, բայց Փառոխ թուի թէ այլում յոլովոցն անուն էր, զորոյ ասէ «Փառոխ (Փառախոս?) կոչեն » զտեղի բնակութեան, և Փառախին՝ զաշտ որոց և արշաւանաց նոցին. » որ խառնեցան յազգս Աբրահամեանց»: Յայտ իսկ ակնարկեն անուանքս ի բան Ս. Գրոց «Եւ որդի Մարսեկայ ընդոծնի իմոյ, այս է Եղիազար » Դամասկացի»: (Ծնն. ԺԵ. 2). զոր պէսպէս իմանան մեկնիչք, զՄարսեակն ոչ անուն յատուկ՝ այլ վերակացու տան նշանակել, և զԴամասկացին Դամասկոս՝ որդի Եղիազարու. այլ աւանդութիւն մերոցս ոչ գիտեմ յորմէ առեալ է կամ ի հին զրուցաց թուի ինձ ցուցանել զՄարսեակս զայս ոչ հայր Եղիազարու հաւատարմին Աբրահամու, այլ թոռն նորին և հայր երկրորդ Եղիազարու և Փառոխայ և միւսում՝ զորս ծնաւ ասէն. և խառնեալ յազգ Հայկազանցս ի միա լեզու վերածէր զանուանս և զէնս նոցին. որք և ըստ այսմ աւանդութեան որիշ են ի համաձայնիցն որ արտաքոյ դաշտին Արայի, այսինքն մեծ Մասիս լեռան որ և Ազատն վերակոչի, և որ ըստ Թիկանց նորին Փառախոսն աւան շինեալ յԱմասիայ նահապետէ ի տակս որդւոյ իւրոյ Փառոխի, որպէս նշանակեցաք ի կարգին, յորոյ շնորհուկս կամ առ յիշատակէ թերեւս անուանեաց Մարսեակն զոր-

դին իւր, նմէ արդարեւ սոսյց իցեն իրքդ․ որք ըստ կարգի ժամանակագրութեանս զոր ընտրեցաք՝ ի դէպ գան ժամանակի Անուշաւանայ կամ Պարէտի, իբր ի կէս դարու նախ քան զՔրիստոս։

Ցիշատակք սուրբ գրոց որ հզօրագոյնս գրաւեալ էին զմիտս վարդապետաց ի հնումն, և մերձաւորութիւն տեղեաց անցիցն պատմելոց ի գիրս անդ ընդ երկրին Ասորւոց և նոցին դրակցաց, անուանակցութիւն տեղեաց ոմանց, և անծանօթութիւն այլոց տեղեաց կարծեցուցին բազմաց ի նոցանէ՝ մերձ ի սահմանս Հայրենի աշխարհին իւրեանց համարեալ զհնագոյն անցսն. և զի զնահապետաց Եբրայեցւոց գրոյց առնէր աւանդութիւնս մեր, յիշեցուք աստանօր և զանհաւանագոյնն աւանդութիւն զմիւսոյ նահապետէ և զանգոյգ առնէ, զՅովբայ, զորոյ հայրենիս Աւսիդ ըստ մերում թարգմանութեան առեն մեր միջին աշխարհագիրք լինել զԹիլթուրան աւան ի Միջագետս Ասորւոց, և ըստ Ցայսմաւուրաց (Ահկի ԺԹ)․ «ի մէջ երից քաղաքացն՝ Ամդայ, Մէրանայ և Ուռհայոյ»։ Իսկ այլք ոմանք օտարք, զԵդկիուս բարեկամն Յովբայ «զԲուզացի յազգականու» թենէ Արամայ աշխարհին Աւստացւոց», ըստ մերումս թարգմանութեան, զոր ի դէպ է կարծել յորդւոց Բուզայ որդւոյն Նաքովրայ (Ծննդ. ԻԲ), համարին մերձաւոր կարծեցեալ տեղւոյն Աւսիդայ, և զԲուծն լինել Ծոփս կամ Մծբին։ Դարձեալ զնոյն ինքն Եղիուս ասէ Ս. Հերոնիմոս ոմանց կարծեալ զերկմիտ մարգարէն Բաղաամ, որ իբր երկու դարուք կրսեր իսկ է քան զՅոբ, թէ և հայրենեօք գուցէ ոչ հեռագոյն ի մերոյ աշխարհիս սահմանաց, քանզի որպէս և ասէն ինքնին «ի Միջագետաց » ի լերանցն արեւելից», կոչեցաւ առ Բաղակ. և եթէ բուն ծանօթ Միջագետք են հայրենիք նորա անդ և ծանօթ լերինք են Մասիոս, յարեւմուտս հարաւոյ Ամդայ։

Աշխարհս այս մեր որ և Դ Հայք, ի ծայր արեւմտից հարաւոյն Մեծաց Հայոց և երբեմն որիշ իսկ ի Հայոց, դրակից Ասորւոց և Միջագետաց, ոչ միայն Մծբնայ, այլ և աշխարհի միոյ Ասորւոց յարանուն գտանի, այն է Սուբ․ զոր գիրք Թագաւորացն յիշեն և Սաղմոսք, վասն որոյ և կարծեցաւ ոմանց թէ նա և թագաւորք նորին իցեն ընդ որս գործ պատերազմի կալան Սաւուղ և Դաւիթ և Սողոմոն. այլ արդ ամենայն գիտնոց ընկալեալ է զՍուբդ մասն մի խորին Ասորւոց լինել ի հիւսիսոյ Դամասկոսի առ Որոնդէս գետով (զոր Եբրայեցին Արամ–Սոբան կոչէ և Լատինն Սիրիա–Սոպալ) մերձ ի Հէմս (Եմեսիա) և յԵպիփանեա (Համաթ)։

Ի յայսոսիկ ժամանակս միգամած պատմութեան՝ համփալեալ առեն

տարեգիրք Վրաց զառաջին արշաւանս հիւսիսային կամ սկիւթական ազանց յերկիր Թորգոմեանց, ի Կովկաս, ի Վիրս և ի Հայս. արշաւանք՝ որ բազում անգամ կրկնեցան ի դարս յետինս ց'3000 և աւելի ամս՝ ի զանազան ցեղից չուառնակ ազգաց հիւսիսոյ Կովկասու և արեւելից Կասպիականին մինչև ցաշխարհաւեր և յետին արշաւանս Լէնկթիմուրայ յելս ԺԴ և ի սկիզբն ԺԵ դարու։ Իսկ զառաջինս զայս հանէ ժամանակագրութիւն Վրաց յ'ԺԷ դար նախ քան զՔրիստոս. և խազիրս ասէ զասպատակողսն, ազգ որ այդու անուամբ անագան ուրեմն ծանօթանան ի պատմութեան յետ Քրիստոսեան թուականին. Թէպէտ և յանհնարիցն է զոգցես որոշել զսահմս և զանուանս ժողովրդոցն այնոցիկ՝ զորս հինքն միով անուամբ առ հասարակ կոչեն Սարմատացիս և Սկիւթս, սոյնս զարեւելաբնակսն ծանուցեալ, յորոց յետոյ Բուշանք և Հոնք, Թուրք և Թաթարք. իսկ առաջնումն զհիւսիսայինս, յորոց ցուցանէ պատմութիւնս և զասպատակն առաջին որ անցեալ ընդ կիրճս բարձրաբերձ լերանցն սփռեցաւ նախ ի սահմանս Լեկաց և Կովկասու. նահապետ սորա Դուրձակ որդի Տիրայ կամ Տիրիթայ, որպէս կոչէ պատմիչն, յօգնութիւն կոչեաց զազգակիցսն զԹորգոմեանս, «որք ի խնդութեան և ի խաղաղութեան կային յաւուրսն յայնոսիկ. որք
» և չոգան իսկ յօժարութեամբ և կազմ պատրաստութեամբ, և անցին ընդ
» լեառն Կովկասու, և գերեցին զերկիրն Խազրաց»։ Բայց սոցա վերստին և հզօրագոյն գումարեալ հրոս «եղեն բանակ մեծ և ելին ընդ դուռն Դար-
» բանդու ի վերայ Թորգոմայ մինչև ցԱրարատու դաշտն և Մասեաց. և
» կոտորեցին և գերեցին զնոսա, զի էին անբաւք. և մնացին միայն բեր-
» դաքաղաքքն ծմակայինք, և Մոխրաբերդն, Խունան և Սամշուլդէ և Դարի
» և Եգրիս։ Եւ գտին Խազիրքն դուռն մի այլ, որ ասի Դարիալայ (Ալա-
» նաց), և յաճախեցին զզալն ասպատակաւ ի վերայ Թորգոմայ, և արա-
» րին ընդ հարկաւ։ Եւ զառաջին գերեալսն ի Հայոց և ի Վրաց եա Թա-
» գաւորն Խազրաց որդւոյ իւրոյ Ուոբոսի, և մասն ինչ ի Կովկասու, ի
» Լոմեկայ գետոյն մինչև ցապառումն լերինն առ արեւմտիւք։ Եւ շինեաց
» Ուոբոս ազգաւն իւրով զերկիրն, որ կոչի Օսէթ»։ Եթէ սորա իցէ այդամենայն՝ զայս օրինակ սկիզբն ընծայի Ալանաց ազգի, որ որպէս յայտ է բնակէին յերկրին որ ցայժմ, յանուն Օսաց ճանաչի, և կարգ բանիցդ ցուցանէ զդոսա խառնուրդ Արեաց Թորգոմազանց և Սարմատացւոց։ Մերձաւորքն բնակութեամբ Կովկասեանք և Լեկք՝ և այլք և հիւսիսականք հնազանդեալ մնացին «ընդ հարկաւ Խազրաց», ժամանակս բազումս. որք հաւանութեան է թէ և ոչ սակաւ անգամ զնոյն օրինակ արշաւանս փոր-

Digitized by Google

ձեցին յերկիր Հարաւոյ. այլ պատմութիւնք ոչինչ սաուգիւ ցուցանեն ցՀազար ամ, մինչեւ ցմեծն այն և աշխարհահռչակ արշաւանն Սկիւթաց ի կէս Է դարու. նախ քան զՔրիստոս. յորում կալան զամենայն արեւմտեան Ասիա։

Նոյն ժամանակագիր Վրաց յանդիման առնէ մեզ իբրեւ 40 ամաւ զկնի Հիւսիսականացն՝ զարեւելեայ արշաւանս, բայց ոչ զՍկիւթեայն, այլ զՎարդինջուց Պարսից զՓիշդադեան տոհմին, որում և օտարք վկայեն, թէպէտ և յառասպելապատում ժամանակաց դէպս համարեալ է. այն է աշխարհակալութիւն գերահռչակ դիւցազին նոցա Ֆրիտոնայ, որ ըստ մեզ Հրուդէն. որդիք Ճէմշիտայ օրէնդիր թագաւորի նոցա, զոր մերժեալ և բռնապետեալ էր անուանին Աժդահակ Բիւրասպի, Զոհաք կամ Տահաք ըստ Պարսից, բիւրոց հեծելոց Արարացի առաջնորդ և գիւթ. զոր օգնութեամբ դարբնին Կաւհայ վանեալ հալածեաց Հրուդէն մինչեւ ի լեառն Դմբաւընդ (Տէմավէնտ), ուր և սպանեալ արկին ի վիհ մի մեծ ծծմբոյ. կամ ըստ առասպելաց Պարսից՝ արկեալ յայրս ինչ լերինն և կապեալ պղնձի սարեօք՝ անդրի աճարկու ընդդէմ նորա զիւր պատկերն կացոյց, « յորմէ պակուցեալ » հնազանդեալ կայ շղթայիցն, և ոչ զօրէ ելանել և ապականել զերկիր » ։ (Խորէն)։ Այս Հրուդէն առեն աշխարհակալութեամբ նուաճեաց մինչեւ ի կողմանս Ասորւոց, և ի մեռանելն՝ Սելմայ կամ Սալմայ երկրորդի որդւոյ իւրում ժառանգեցոյց զարեւմտեան Ասիա։ Արդ համաձայնեալ սոցին առէ զնմանէ վիպագիրն Վրաց, « թէ կալեալ ադանդուլք զիշխանն օձից (Աժ- » դահակ) յերկաթս, զկոչեցեալ Բիւրասպ՝ յանդիման լերինն Բայխայ (Աէ » աշխարհի) որպէս և գրեալ է ի մատեանս Պարսից։ Սա արար ընդ Հար- » կաւ զազգս բազումս, և տիրեաց ամենայն Պարսից, և տարեաց զզօրա- » գլուխն իւր (Աղամ անուն) ի ծննդոցն Ներրովթայ յերկիրն Վրաց. որ և եկեալ աւերեաց զքաղաքս և զբերդս, և կոտորեաց զորս եգիտ ի Խա- » զրաց, և տիրեաց երկրին ։ Սա շինեաց յեզր ծովուն զԴարուբանդ, որ » է փակեալ Դուռն » ։ Յետ Աղամայ կացին այլ եւս չորք կողմնակալք, մինչեւ ցծնունդ որդւոցն Հրուդենայ և սպանանել զիրեար, զոր ժամանակ գիտող վարկուցեալ՝ կոտորեն և Վիրք և Հայք զՊարսիկսն սահմանակալս. բայց միայն արեւելեան կողմանք Կովկասայ և Ալուանից մնան ընդ իշխանութեամբ պարսկայնոյն։ Թէպէտ և ժամանակ և յեղանակք իրացս անընտոյգք և առասպելք երեւին, այլ չեն ամենեւին անհիմն. սակայն պատմիչն (Վրաց) ըստ անոճ և անհմուտ զրուցաց Պարսից հուպ զհետ Հրուդենայ որդւոցն և զործոց կարգէ զգործս Քէյխոսրուայ, զոր այժմ քննիչք

Digitized by Google

Հազար ամաւ կրսեր զատանեն և զԹագաւորս Մարաց ճանաչեն ի նմա և ի յաջորդս նորուն։

Ստուգագոյն և աներկբայ դէպք և գործք Մարաց և յեղափոխութեան ազգաց յիշատակին ի Ս. Գիրս յելս ԺԷ դարու կամ ի սկիզբն կոյս ԺԶ դարու նախ քան զՔրիստոս, յելս Իսրայելական ազգին յԵգիպտոսէ և ի մուտս յերկիր նախահարց իւրոց Աբրահամեանց՝ ի Պաղեստին, որ է փղշտաց-ւոց երկիր, յորում սերունդք Քանանայ Քամեան տրոհեալք ի առհմս և ի ցեղս բնակէին մինչեւ ի սահմանս Ամաղեկայ և Եգիպտոսի. Մովսէս՝ և յետ նորա Յեսու վանեցին մի ըստ միոջէ զազգս և զԹագաւորս նոցա և բաժանեցին զերկիրն յորդիս Իսրայելի. ապրեալքն ի կոտորածէ սոցա փախստական գնացին առաւել մասամբ յափունս Ափրիկիոյ, և որպէս Թուի և Արաբիոյ. ուրանօր Թուի ինձ և Ազատան ապաւէն մի նոցա, զի է իսկ յարեւելեան ափունս աշխարհին և յեզերս Կարմիր ծովու երկիր համանուն. յորմէ դարձեալ ելեալ դիմեցին յարեւմուտս կոյս. և հաստա-տեալք յեզերս Ափրիկիոյ՝ արձանացուցին յիշատակս գրոյ զփախուստ իւրեանց և զբնակութիւնն աստանօր, զոր և յաւուրս իւր ծանօթ ամենե-ցուն գոլ վկայէ Խորենացի (Ա. ԻԱ) «և է այսպէս. ի Յեսուայ գողոյ » փախուցեալ մեք նախարարք Քանանացւոց, եկաք բնակել աստ. յորոց մի » և Քանանիդաս պատուականագոյն մեր՝ ի Հայս»։ Յետոյն տողդ՝ որ մեզ կարեւորագոյն է, արձանագրին եթէ պատմագրին իցէ բան, և որքան ստուգութիւն արձանին, յո՛ր լեզու գրեալ և ո՛րպէս, մեզ անծանօթ և անխնդիր իրք են, այլ դիպողագոյն այս է զի պատմիչս մեր աներկեւան առնէ զգալուստ Քանանիդայ ի Հայս, քանզի «Ստուգեալ հաւաստի գտաք, » ասէ, զսերունդս Գնթունեաց ի նմանէ (Քանանիդաս) առանց հակառա- » կութեան լեալ. զայս և բարք արանց ազգին յայտնեն Քանանացի գոլ»։ Եւ զի գուն ուրեք Խորենացի այսպէս պնդութեամբ խօսի ի հաստատու-թիւն պատմութեանն՝ անհակառակ և մեզ ընդունելի երեւի, եթէ ոմն յաւա-զաց պրծելոցն յանխնայ սրոյն Յեսուայ՝ կամ և անուամբն իսկ կամ ընդ ազգաւն Քանանացի (վասն այնորիկ Քանանիդաս կոչեցեալ) ուղիղ յԵ-փրատ կոյս դիմեալ, կամ նախ յարեւմուտս յԱփրիկէացւոց սահմանս, և անտի ուստ վերափոխեալ՝ եկն իւրայովք ամօք բնակեցաւ ի Հայս, ընդ որոց գուցէ էր իսկ նորա յառաջին ծանօթութիւն, վաճառականութեան աղա-գաւ կամ այլով իւիք։ Եւ այս առաջին գաղթական է օտարազգի, ոչ միայն լեզուաւ և տոհմիւ, այլ ընաւ իսկ նախասկիզբն ցեղիւ. քանզի ի Քա-մայ շառաւիղաց էր, յամենեւին հեռացելոյն ի յաբեթեանց և յարիական

ազանց. և նախօրինակ բազմաթիւ տոհմից և տանց որք ի զանազան ժամանակս և պարս հեռի և մօտ ժամանակօք՝ եկին ի հիւսւոյ և ի մերձաւոր աշխարհաց և յարեցան ի մերայինս, և խառնեալ եղեն մի ազգ և մի լեզու. զիւրընկալք լինելով և յիշխողաց ազգիս և ի ժողովրդեանն. որք ներէին և առանձինն ինչ կրօնից և օրինաց եկացն, մինչև յաճախ և յերկար ընդելութեամբ և բնակութեամբ՝ ի հայկականն անդր համախառնէին, զբարս ինչ և զաւանդս նախահարցն միայն ընդ սերնդեանն փոխաբերեալ ցդարս բովանդակ. որպէս և յետ 2000 ամաց զալստեանն Քանանիկեանց՝ տակաւին նշմարէ Խորենացի զբարս Քանանացւոց՝ ի Գնթունիս. որք յետ Հայկազանց՝ հնագոյն ի Հայս ճանաչին տոհմն և ազգապետութիւն, յոր պատիւ գրեցան յաւուրս կարգապրութեանց Վաղարշակայ. Գնթունի կոչմամբ, որ և զգեցուցանող արքայի Հայոց սահմանեաց զնախապատիւն կամ զպայապան տոհմին՝ որ կոչէր Ջեռես. անուն՝ որ ծեքաձայնութեամբն զուշակէ զծագումն իւր։

Առ սովաւ ազգապետ կամ նախարար Հայոց ՍՈՒՐ ճանաչի ի պատմիչաց մերոց (Յովհ. Կաթ. և Վարդան), թէպէտ և Մ. Խորենացի ոչ ցուցանէ զայս ստուգիւ. Մագիստրոս ըստ անուանն իմաստասիրէ զսա լինել զօռ մարտիկ և ահաւոր առ թշնամիս. իսկ առ ումեմն ի յետին պատմչաց Տուրք գրի։ — Սմա յաջորդ կարգի ՀԱՒԱՆԱԿ կամ Յանակ. որում՝ ՎԱՇՏԱԿ, զոր Մագիստրոս Վաչեակ ստուգաբանէ՝ չգիտեմ յինչ միտս. և սմա ՀԱՅԿԱԿ Ա. բայց ինձ թուի և այլոց ընդ մէջ սոցա կացեալ, եթէ արդարև Սուր Յեսուայ ժամանակակից իցէ և Հայկակս Բելոքոսի (Բ), զի սա ըստ ժամանակագրական զաւազանաց նշանակի մեռեալ իբրև յամի 1404 նախ քան զՔրիստոս, և Հայկակայ մեռեալ առ նովաւ իսկ. և լինի միջոց ժամանակին իբրև 160 ամ, աւելի կամ պակաս, այսինքն է չորից ազգապետացն Սրոյ, Հաւանակի, Վաշտակայ և Հայկակայ՝ պայազատեալ այնքան ամս, մին աւելի քան զ'40 ամ, որ ոչ շատ հաւանութեան է։ — ԶՀայկակայ ասէ պատմիչն «ամբոխս ինն արարեալ անխորհուրդս, և մե-
» ռանել ի նմին». որ յայտնապէս երեւի զինու զօրութեամբ ապստամբութիւն յինքնակալ թագաւորէն Ասորեստանեայց ի Բելոքոսէ, և մահ ի կռուին. որոյ պատճառք թուին և Բելոքոսի իսկ անխորհուրդ գործք կամ բռնութիւնք. յորոց ոսկս արդեօք և ինքն իսկ չարաչախճան եղեւ, սպանեալ ի Բալատոռեայ վերակացուէ պարտիզաց իւրոց, որ և առեալ զդուստր նորա Ատոսսա յիւր կին՝ թագաւորեաց փոխանակ նորա։ Զիարդ և իցէ այլոցիկ եղեալ՝ սոյգ թուի յայսմ ժամանակի հանդիպեալ փո-

*փոխութեան իւրք կամ արշաւանաց թշնամեաց ի Հայս. քանզի և այլ ոմն ժամանակագիր (Փրեկուլփ. Բ. Ժ.) առ սովին Բելոքոսի ժամանակաւ գրէ զՀայաստան նուաճեալ ի Կադմոսէ Փիւնիկեցւոյ. թէպէտ և առասպելախառն են իրք Կադմոսի և աշխարհակալութիւնք, զուցէ թէ բնաւ և օտարոտի ինչ իցէ նուաճումն այդ, և վրիպիցի ժամանակագիրն յանուանցն մերձաւորութենէ. քանզի հին ոմն պատմիչ (Աթենէ. ԺԴ. ԻԴ) ասէ զԿադմոսէ կառավար լինել արքային Փիւնիկեցւոց և տարփել ի դուստր մի Հարմոնիա անուն և յափշտակել զնա. մի՞ արդեօք Հարմոնիա ընդ Արմենիոյ շփոթիցի։*

*Ի Հայկակայ Ա որ առ (Բ) Բելոքոսիւ՝ մինչեւ ի Զարմայր մեր նահապետ որ առ Տեւտամեաւ Ասորեստանեայց, առ որովք պատերազմն Տրովադայ և առումն Իլիոնի՝ մետասան ազգապետք համարին Հայկազանցս իբր յ'200ամեայ ժամանակի ԺԴ և ԺԳ դարուցն նախ քան զՔրիստոս, և մարթ է ստոյգ համարել և զկարգ նահապետացս այսոցիկ, զի և բաժանեալ զժամանակ, նուազ քան զ'20 ամ միոյ միոյ ի նոցանէ անկանի։ Որոց առաջին յետ Հայկակայ կարգի* ԱՄԲԱԿ *կամ* ՀԱՄԲԱԿ, *«միշտ մա-*
*» նուկ պատանեակ», ըստ Մագիստրոսի իմաստարկութեան. յետ նորա* ԱՌՆԱԿ *զորմէ նա ինչ ոչ ստուգաբանէ, այլ գիտելի է զի յայդ անուն թուի ճանաչել նախնեաց մերոց զհոգեհանն կամ զգրաւչն ասացեալ ի ռամկաց, յորմէ Առնակդ ստուգաբանի իբրեւ որ առնու, գրաւէ. այլ թէ յառաջ քան զնահապետս այս և եթէ յետոյ այս կարծիք հոգեհանին մտին ի Հայս, զայն ոչ գիտեմ։*

*Յետ սորա* ՇԱՒԱՐՇ, *զոր «ըստ պարսկականին, ասէ Մագիստրոս, Շա-*
*» րիբաշ, միշտ ուրախ թարգմանեալ». և նոր պատմահայրս Զամչեան զսա համարի շինող Շաւարշանայ որ յԱրտազն գաւառի. սոյն ինքն յետ Զարմայրի միւս եւս Շաւարշ կարգէ, վասն որոյ զսա զյաջորդս Ամբակայ՝ Ա համարի։ Յետ սորա եկաց ազգապետ* ՆՈՐԱՅՐ, *«վասն զի նոր*
*» արութիւն ցուցանէր», ըստ Մագիստրոսի, այլ ո՞ւր կամ յո՞յր վերայ, զայն չասէ սա. բայց թուի սովորական նշանակութեամբ բառիցն անուանեալ, որպէս է և յունականդ Նէանդր։*

ՎԱՍԱՄ. *«սա մեծարու զօրացն վեհսատամ կոչեցաւ». և յետ նորա* ԿԱՐ *«իբրու կարող բոլորին», ըստ իմաստակութեան Մագիստրոսի. որ քաջ զայս առնէ որոշել զերկոսինս. քանզի առ այլս ոմանս ի պատմչաց կամ ի գաղափարողաց միանգամայն գրի Վստամկար կամ Վստակար իբրեւ մի մարդ, և գտանի իսկ առ Պարսիկս անուն Վստակար նաեւ յաւուրս Սասանեանց, իբրեւ պաշտաման իւիք կամ և պաշտօնէի հազարարձութեան*

Digitized by Google

*նշանակիչ. իսկ կար առանձնակ անուն յաճախագոյն ևս, և ոչ միայն առ Հայս և Պարսիկս, այլ և առ Յոյնս իսկ վաղեմիս, զի այսպէս ասեն կոչէր որդին Փարնեայ և թոռն Խնաքոսի, յորմէ և Կարիա աշխարհ մի փոքուն Ասիոյ։*

ԳՈՒԱԿ *կամ Գաակ, Գրակ, որ ըստ Մագիստրոսի «խիզախող ի մարտի » և մեծաձայն գոռ ունէր»։*

ՀՐԱՆՏ *կամ Հրանդ, որ և Հրատ, կամ Հրատն, և առ Վարդանայ* ՅՈՒԱՆ *գրեալ։*

ԸՆՁԱԿ *կամ Ընձաք, «ընծայեալ ի բազմաց արքայից», ըստ Մագիստրոսի, գուցէ ի սորա անուանէ կոչումն Կապուտկող լերին յարեւմտեան հարաւային եզեր ծովուն Աղթամարայ՝ Ընձաքիսար, որ ոչ աղիկ թուի առ Բուզանդայ գրեալ Ընձաքիսրս, բայց հէթ յարք բառէ ածանցեցի՝ որպէս և այլք նման նմին անուանք։*

ԳՂԱԿ, *«գեօղս բազումս կերտացեալ», ըստ Մագիստրոսի, բայց գրի առ ոմանս Գլակ, և վրիպակաւ առ ումեմն Դղակ։*

ՀՕՐԱՅ *կամ Հօրոյ, զոր Յովհ. Կաթ. և Վարդան գրեն Հաւան։*

*Ցայսմ ժամանակի* 11 *ազգապետացս դէպք ինչ նշանաւորք առանձինն ի Հայս ոչ ուրեք յիշին, այլ հանդերձ սահմանակցօքն աշխարհօք ի սկզբան դարուն, գուցէ և յառաջս իսկ Ամբակայ հանդիպի գործ մի մեծանշան ի վէպս հին ազանց, արշաւանք Լիբէացի աշխարհակալին, Թագաւորին Եգիպտացւոց մեծին Սեսոստրի, որպէս յաճախ սովորութեամբ կոչի, այլ ի բնիկ լեզուին Հռամսէս Բ Մէյամուն յորջորջի. որոյ գործք և պատերազմունք և արշաւանք ընդ մեծ մասն Ասիոյ մինչեւ ի սահմանս Եւրոպիոյ՝ յարձանաց իսկ նորա վկայեալ՝ ոչ օտարք ի ճշմարտութենէ ճանաչին և այժմու քննողաց բանասիրաց. զորոյ թողեալ մեր զառաջին գնացսն և զկարս, յիշեսցուք որ ինչ ի ճահ մերոյ պատմութեանս. զի կամ առ ի սպառ ոպուռ հալածել զմնացորդս Հիքսոսն անուանելոց Հովուաց բռնաւորաց Եգիպտոսի զամս աւելի քան զ*400*, և առ ի խնդրել վրէժ մինչ ի հայրենիս անդ նոցին, որ թուին Սկիւթիա, և կամ արբեցեալ յաղթութեամբքն յՆթովպիա և ջեռեալ աշխարհակալութեան ըղձիւք, գիտելով իսկ և զթուլութիւն Ասորեստանեայցն ինքնակալաց՝ ահեղ զումարտակօք* 70 *բիւրու զօրաց, աւելի կամ պակաս, յառաջեաց նա ընդ արեւելս յԱսիա, նուաճեաց կամ ի հարկի կացոյց զնոյն ինքն զՆինուէի և զԲաբելայ զսինգլիրահրաման իշխողն, և զօժանդակս նորա զՄարս և զՀայս, որոց անուանք իւրեւ նուաճելոց ազգաց դրոշմեալ կային ի մեհեանս Եգիպ-*

Digitized by Google

տացւոցն. ուրանօր ի Թեբէ՛ Գերմանիկոս յՕգոստեան դարու ետ ընթեռնուլ քրմաց, և ընդ այլսն յիշէին և Հայք և Կապպադովկացիք և ամենայն Ասիա մինչև ի Բիւթանիա և ի Լիւկիա, հանդերձ սակիւ հարկացն զոր արկ ի վերայ նոցին։ Հնախոյզ ոմն պատմիչ (Պիանքինի. Լ.) ձգնի ցուցանել թէ յարշաւանս աշխարհակալին՝ Ասորեստանեայց ինքնակալն փութացաւ ապաւինել յօգնութիւն Հայոց, իբրև արանց մարտկաց և ամրագոյն երկրի բնակչաց. սակայն ոչ յաջողեաց նմա. այլ ասի յոմանց (Պլին. ԼԴ. ԺԵ) ի Կոլքիս և Սեսոստրի անյաջող եղեն զէնք և պարտեալ լինէր ի Թագաւորէն Կողքեաց ի Սալաւկայ կամ յԵզուբողայ։ Այլ որպէս գիտել ինչ և ելք արշաւանին եղեն՝ այս յայտ է զի ոչ ընդերկար ինչ եղև Եգիպտացւոց նախաձեռնութիւնն յԱսիա. այլ վաղվաղ հաստատեցաւ միապետութիւն Ասորեստանեայց։

Այլազգ ինն շահատակութիւնս ստեղծաբանեն Յոյնք (Պլուտ. ի Կիմոն) զիւրեանց դիւցազանց յայս միջոց ժամանակի. յորոց հնագոյն ոմն Պերսէոս՝ Արամազդայ և Դանայեայ ծնունդ, զասեր Թագաւորին Արգիացւոց, ի վերայ այլոց նահատակութեանցն և Եթովպական մրցանացն՝ ասեն կռուեալ եւս ընդ Մարաց և ընդ Հայոց. այլ որպէսն մեզ չէ յայտ և ոչ յուսալի յընդունելութիւն հաւատոց։ Իսկ ժամանակ իրացս պատշաճի ի կէս ԺԴ դարու նախ քան զՔրիստոս։

Բայց ի վերջ կոյս նշանակեալ հատուածի ժամանակիս հանդիպի կատարեալ առաջին ստուգակերպ և մեծագոյն արշաւանք Յունաց յԱսիա կողմանս, Արգոնաւորդացն ծովագնացութիւն ընդ Պոնտոս յափունս Կողքիսեայ և յափշտակութիւն դիւցափառ Ոսկեայ գեղմանն, կամ ոսկեգինակ խոյին մորթոյ, և կամ, որպէս հաւանելի է բանասիրաց և քննչաց, բովուցն ոսկւոյ, որ ի վաղնջուց դարուց ծանուցեալք և պեղէին ի բնակչաց կամ հին յեկաց կողմանց Խաղտեաց և Կողքեաց կամ Եգերաց. Թէպէտ և առասպելազարդք են վէպք և դէպք իրացն, այլ ոչ անհիմն ի ստուգութենէ իրիք, ըստ արդեացս քննութեան, որք և ըստ արձանաց Պարոսի և այլոց յիշատակութեանց իբրև ի 1226 (այլք, 1263) ամի նախ քան զՔրիստոսի Թուականութիւնն համարին զշահատակութիւնն զայն դիւցազանցն Յունաց. որք ոչ միայն ի Կողքիս՝ յաշխարհն գրացի, այլ և ի նոյն իսկ ի Հայս յառաջեալ մտին՝ ի քնին կամ ի վտակ բովուց Սպերոյ. և ոչ այսչափ միայն՝ այլ եթէ արժան իցէ հաւատալ Երատոսթենեայ ըստ Ստրաբոնի՝ (Ստր. Ա, Գ. ԺԱ. Դ.) զաղթականս եւս հաստատեաց անդ Յասոն առաջնորդ դնդին, այլ և յԵկեղեաց գաւառ, զորս Սիապիրիա

և Ակիլլևսնի կոչէ, և յայտ է զի յայն ժամանակս ընդարձակագոյնք էին՝ իբրև զմի ի նահանգաց կամ յաշխարհացն Հայոց։ Մարթ է յոմանց Յունաց բնակեալ անդստին յայնց ժամանակաց յեզերս կամ սակաւ մի և ի ներքս աշխարհիս Հայոց՝ ի շահաստան քաղաքս և ի խանութս բոլուց. այլ ամենևին իսկ անհաւան է՝ զոր յաւելուն ասել (Սար. ԺԱ. Դ. 8. ԺԱ. ԺԴ. 12.) եթէ մի յընկերաց Յասոնի Արմենոս անուն յԱրմենոն քաղաք Թեսաղիոյ որ ընդ մէջ Փերայ և Լարիսայ, յիւր անուն կոչեաց զաշխարհս մեր, ըստ պատմելոյ Կիւրսիլայ Փարսաղացւոյ և Մեդիոսի Լարիսացւոյ, ուղեկցաց Աղեքսանդրի Մեծի։ Դարձեալ ասեն ի նոցանէ կոչեցեալ Երասխ զհայկականս մեր գետ բնիկ, վասն նմանութեան ընդ Պենէոսի՝ որ կոչէր Արաքս վասն հերձակտուր առնելոյ (ἀπαράξαι) զՕսսա լ. յՈլիմպոսէ և հուն ի հովիտն Տեմպեայ գործելոյ. և զի և Երասխ գետ Հայաստանեայց իջեալ ասեն ի լերանց սփռէր ծաւալէր ծովաքատակ ի դաշտս՝ ոչ ունելով ելս, Յասոն եբաց նմա հուն անցի գնալոյ թափելոյ ի ծով Կասպից, և այսպէս թափեաց զԵրասխայ հովիտն ի ջուրց անտի՝ որք ընդ խոխոմս քարանց վազեալ անցանեն գնան յարեւելս կոյս։ Այլ և ոմանց յԷնիան քաղաք Թեսաղիոյ ասեն բնակել յՈւտէացւոց աշխարհի, և ոմանց առ ստորոտով Աբոս և Նիբար լերանց հարաւային կամ միջին Հայոց. դարձեալ և Թրակացւոց ոմանց՝ անդր քան զՀայս վարեալ, զտեղի կալեալ ի լերինս սահմանաց Գուրանաց (Կորդուաց) և Մարաց, և Սարապարս կոչեցեալ, այսինքն է գլխահատս, վասն զի վայրենի և խժագոյն ունելով բարս՝ զանցորդսն ընդ լերինս իւրեանց կալեալ կառափնատէին։ Եւ այսպէս յուղեկցաց ընդ Յասոնի ասեն սփռեալ բնակեալ ի Կողքիս, ի Հայս, ի Վիրս, յԱղուանս մինչև ի սահմանս Մարաց, և ի Կալական՝ զոր ընդ մէջ Հայոց և Ադիաբենի ցուցանէ լինել Ստրաբոն, և մերձ ի Նինուէ. և յամենեսին ի սոսա ասեն Յասոնի արձանս իմն կամ տաճարս կանգնեալ յիշատակաց, որք ընդ երկար դարս յիւր անուն յասոնեականք կոչէին, և ի զկնի եկելոց տեարց աշխարհացն նորոգեալք եղեն բազում անգամ։

Արդ յայս ամենայն զրուցաց երկու ինչ հաւանութեան թուի մեզ, մի յունական եկաց ոմանց վաճառականութեան աղագաւ, յափանց Եգերաց միջակտուր առնելով զաշխարհս մեր մինչև ի Մարս և յԱտրպատան և ի Կասպից ծով գնացեալ. և այս ոչ մի անգամ միայն, այլ սկզբնաւորեալ ի Յասոնէ և անտի հետէ. և օրինակ իմն Գենուացւոց ի Միջին դարս յառաջելով յԱսիա և կարաւանատունս կամ ամրոցս ապաւինի կանգնե-

լով, ըստ այնմ լինել և Ցասոնեան շինուածոց և արձանաց։ Միւս, ոմանց յեկացն Ցունաց հաստատել բնակութիւն ի Հայս, և թերևս յիւրեանց անուն կոչել զչէնս ինչ և զտեղիս. այլ ոչ զողջոյն իսկ զաշխարհն մեր Արմենիա, և ոչ զգետ՝ Երասխ. Նա մանաւանդ զհպողագոյն համարիմ ի մերոյ աշխարհիս անուանց զԹեսաղացւոց տեղիս և զմարդիկն յորջորջել՝ քան զմերս առ ի նոցանէ։ Եւ ըստ այսմ յետ Հրէից՝ առաջին զաղութ ի Հայս լինի Հելլենացդ, ոչ այլով ինչ աղագաւ՝ բայց եթէ շահու օգտի. այլ եթէ արդարեւ ի գիւտ և ի խնդիր ոսկւոյ եկին՝ թուի թէ ոչ անծանօթ էր ի նոցանէ արուեստ բովուց, կամ թէ ուսեալք ըստ ընիկ սրամտութեան իւրեանց՝ յաջողագոյնք գտան, և ազգաւ բնակեալ առ քրայիւքն՝ խառնեցան ընդ բնիկս տեղւոյն ընդ Խաղտիս և Հայս, յորոց խառնրդոց կազմէր ազգն Հայա—Խաղտեաց, Արմենո—Խալիւբք, որոց սերունդք թուին Խալտքն բնակեալք ընդ մէջ Տրապիզոնի և Մանախայ Արծաթհանից քաղաքին Կիւմիւշխանէի. և շինեալ վայրացն արդարեւ խառն իմն լսին Հայեցի և յունական ձայնիւ։ — Անուն Հայախառն ազգին ի Խաղտեաց արդեօք եթէ յարուեստէն ըստ Ցունաց կոչեցաւ Խալիւբք, զի Խալիփս Χάλυψ նշանակէ երկաթ, ոչ գիտեմ ստուգիւ, զի Ստրաբոն և Պլուտարք Խաղտիս իսկ կոչեն զԽալիւբս. և առաջինն ասէ թէ Խաղտիք ի սկզբան կոչէին Խալիւբք. այլ զի անունդ այդ կարի հին է, վկայ արձանանայ և հնագոյնն արտաքին մատենագրաց և պանծագոյն՝ Հոմերոս, Ալիբս կոչելով զնոսին,

« Ոդիոս Հալիզոնեաց եւ Եպիստրոփ էին իշխանք,
» Յ՚Ալիբեայ ի հեռուստ՝ ուստի ծընունդք են արծաթոյ »․ (Իլիակ․ Բ․ 865)

և թէպէտ բազմապատիկ զաղիցս կարծիք են բանասիրաց, այլ յոլովից արդեաց հաւանութիւն է զԽալիւբս (կամ Խաղտիս) իմանալ զԱլիբն՝ ուր ծնունդք արծաթոյն, իսկ Հալիզոնս կամ Ալիզոն կոչել բնակչացն՝ թուեցաւ ոմանց՝ (Վիվ. Ս. Մարդէն. Փ. Ասիա Ա. 181. Բ 396. 438) զի գաղթականք էին եկեալ յափանց Ալազանի գետոյ Վրահայոց, և ոմն (Տիւպուա) զԽալիւբն իսկ անուն համարեցաւ ի Կողբայ գաւառէ Հայոց կամ ի Գուգարաց աշխարհէ, որ ոչ կարի հեռի է ի հովտաց Ալազանն գետոյ, և ոչ ի բովուց։ Այսոքիկ թէպէտ հեռիք և թէպէտ մերձաւորք իցեն ստուգութեան, արդարացուցանեն զԽաղտեացն և զՀայախաղտեաց հնութիւն, և զվաստակ նոցա ի բովս արծաթոյ և այլոց մետաղաց, իսկ բանք քերթողահօրն Հոմերի հրաւիրեն զմեզ առ այլ տեսութիւն կարեւորագոյն եւս ի դէպս պատմութեան մերոյ, ի գիրահռչակ հանդէսս հակակիր մրցանաց

դիւցազանցն Հելլենաց և Ասիացւոց ի ծագս արեւմտից Փոքր Ասիոյ, առ Տրովադական քաղաքաւն, ուր և մերոյ ազգիս նահապետի եհաս զիմամարտիլ քաջացն Աքայեցւոց։

Քանզի զՀօրոյ ազգապետ պայազատէ ԶԱՐՄԱՅՐ ի Հայս. զսա ասէ Մ. Խորենացի, ոչ գիտեմ ուստի առեալ, լինել ի ժամանակի տիեզերահռչակ պատերազմացն և կործանման Իլիոնի, և յառաջ քան զպարիսպն առանձնեայ բախեալ՝ տապաստ անկեալ։ Եթէ ընաւ իսկ մտայօղ պաճուճանք էին Հոմերոսի հագներգութիւնք, տակաւին տարփալի էր և մերազնեայցս գտանել ի հրաշահիւս տողսն զանուն կամ զհետս ազգին և զազգապետին իւրեանց. և այս ըղձիւք ջեռեալ ոմանց և հետախոյզ եղեալ խնդրեն և ճգնին ճանաչել անդ զԶարմայր՝ ոմն ի փարկիս յառաջնորդ փռիւգացւոց, և ոմն յԱսկանիոսն աստուածազան իբրու յԱսքանազեանց վարիչ, և այլք ի վերոյիշեալսն յԱլիբեայ եկեալս. մանաւանդ զի Դիկտիւս հին պատմիչ կամ կարծեցեալն այնպէս՝ ասէ զՈդիոս և զԷպիստրոփ որդիս լինել Մինեայ արքայի Ալիզոնաց (Բ. Լե). Թէպէտեւ զՓռիւգացիս իմանայ յԱլիզոնս. բայց ոչ դնեն միտ, զի Հոմերի ոչ միայն աշխարհագրութիւն չանցանէ անդր քան զԽաղտիս ընդ արեւելս (Թէպէտ և յիշէ նա զՄեմնոն), և անծանօթ է նմա Եփրատէս սահմանահատն ընդ Փոքր Ասիա և ընդ Հայս, այլ և միպասանեալն առ ի նմանէ գործ իլիական մարտից ոչ ժամանէ ի գալուստ Զարմայրայ յօժանդակ Պրիամու. քանզի յետ մահուան Հեկտորի քաջի և տարաբաղդ որդւոյ նորա, որով աւարտին երգքն հոմերականք, զրուցեն հին պատմիչք տրովադական մարտիցն՝ գրեալ որդեկորոյս հօրն առ Տեւտամոս ինքնակալ արքայ Ասորեստանեայց, զուժելով զմահ մանկանցն և աղերսելով առաքել զօր ի Թիկունս օգնականութեան. և նա առաքէ զՄեմնոն[240] զորդի Տիթոնեայ և զԱրշալուսոյ ըստ Հելլենաց առասպելաց, իւրով միով Շօշացի (Պարսիկ) զօրու և բիւրով Եթովպացւովք, և 200 մարտիկ կառօք. այլ և նաւատորմղաւ որոյ գլուխ կարգեաց զՓալաս զոմն. որոյ եկեալ և նախճիր մեծ գործեալ ի Յոյնս, ընդ բազմաց ի դիւցազանց նոցին մենամարտեալ և վիրաւորեալ զնոսին, նաեւ զԱքիլլէս ինքնին ապա և ինքն ի սմանէ հարեալ մեռանի, (Դիկտ. Դ. Դ) կամ ըստ Կեփալիոնի՝ «նենգ գործեալ սպանին Թեսաղացիք» (Առ Եւսեբ. Բ. 134)։ Արդ ընդ սմա ասէ պատմիչս մեր իբրեւ զօրավար հայկական գնդին եկեալ և զԶարմայր, զոր թուեցաւ ոմանց՝ առաջնորդ նոցին իսկ տացիլոց Եթովպացւոցն լինել, իբրու զի և ի Հայս գոյր երկիր յանուն Քուշայ կամ Եթովպիոյ, որպէս ի ճառս տեղւոյ Դրախտին յիշեցաք. և ինքն Մեմնոն՝

որոյ արժան էր ապխաակ լինել եթէ Արշալուսոյ կամ Հիմերայ (առնչեան) որդի, նա և գեղեցկագոյն քան զամենայն մարդ առ ի, Սեաւ կոչի[241]. բայց զի լի են առասպելեօք որ ինչ զՄեմնոնէ աւանդին, մանաւանդ զի բազում ինչ յոյժ վիպեն զնմանէ յինքեանս ձգելով և արեւելեայք և Եգիպտացիք և Եթովպացիք և Ասորիք, և ամենայն ուրեք երեւեցուցանեն մեմնիոնս, այսինքն մահարձանս Մեմնոնի, մեք շատ զրեսցուք կարծել զնա եկեալ յարեւելից կողմանց Ասորեստանեայց՝ և առեալ գունդս գունդս զօրաց յաշխարհաց ընդ որ անցանէր, հաստանելով և զբովանդակ Հայաստան, և ի կովկասական բարձանց ըստ Դիկտիւսեայ բանին (Դ. Դ) ի Տրովս իջուցանելով բանակ մի մեծ, ընդ նմա նիզակակցեալ խաղայ «և մեր
» Զարմայր՝ ի ծառայութեան Ասորեստանեայց զօրով (հանգոյն Տրովացւոց)
» ընդ Եթովպիացի զօրուն, օգնական Պարամու. և անդ ի քաջացն Ելլե-
» նացւոց վիրաւորեալ՝ մեռանի. այլ կամիմ յԱքիլլեայ՝ և մի՛ յայլ ու-
» մեքէ ի քաջացն». Գեղեցի՛կ ասեն, որ արգահատէ զմեզ ընդ լռութիւնն Հոմերի զմերոյ ազգէս և զազգապետէ, զի եթէ ոչ քերթողահայրն հանուրց՝ զանեա մերս և քերդող և պատմահայր՝ այսպիսիս կամէր զառաջնորդս իւրոյ ազգին, և այսպիսիս նացին զիմամարտս: Եւ զի վիրաւորեալ մեռանի առէ ի քաջացն Ելլենացւոց՝ թուի թէ և աւանդութիւն վիպասանական կամ օրինակ ինչ մահուն Զարմայրի պատմեալ կամ երգեալ էր ի նախնեաց անտի, յորոց ստուգեաց Խորենացի զերթ և զմահ նորին ի Տրովս. և առ ի չգոյէ յայժմու յիշատակարանաց հնոց՝ բանասիրաց մերոց իղձք եղեն ստեղծաբանել զրուագս ի համար նախնոյն իւրեանց. բայց ես ոչ կամէի համարձակել ումեք և ի պատմական ստուգութիւնս շարակարգել զայնոսիկ, որպէս առնեն Ջրպետ, Մարգէն, պէսպէս յօդելով վէպս իբրեւ աներկբայ դէպս:

Դէպքս այս առաքման հայկական գնդի ի դրանէ ինքնակալին Ասորեստանեաց ի գործ մարտի՝ աներկբայ եւս կացուցանէ զյետագայսն. զի որպէս և յայլոց ազգաց նուաճելոց՝ գունդ և ի Հայոց երթայր ամ ըստ ամէ ի գործ ծառայութեան և մարտի ի գուռն ինքնակալին, և առաւել ի ժամանակս մարտի. զայսոսիկ թուի ինձ նշանակել և մարգարէն Եզեկիէլ (ԼԲ. 30) «Անդ ամենայն իշխանք հիւսիսոյ և ամենեքեան նոքա զօրավարք Ասորես-
» տանեայն». զի և ոչ այլոյ ժողովրդեան քան մերումս և կովկասայնոց դիպողագոյն էր կոչել իշխանս հիւսիսոյ:

Յետ Զարմայրի նահապետք Հայոց շարակարգին ՇԱՒԱՐՇ Բ. (զսա Զամչեան յիշէ): ՊԵՐՃ Ա. ԱՐԲՈՒՆ (ըստ զանազան գրութեանց Արբուն, Ար-

Digitized by Google

բոյն, Արբղան)։ «Բնականագոյն զօրութեամբ», իմաստակեալ ի Մագիստրոսէ. ՊԵՐՃ Բ. որ և առ ի ժամանակակից զոլ Դաւթի մարգարէի. յորոյ աւուրս յաամանէն Իլիոնի լինին ամք իբրև 140, աւելի կամ նուազ. և յայսքան ամս չորից միայն ազգապետաց կալ անհաւատարիմ թուի, մանաւանդ զի Խորենացի և այլք ըստ նմանէ, յետ Զարմայրի դասեն զՊերճ, և մի լոկ Պերճ, և սոյն առ ի Մխ. Այրիվանեցւոյ լինել ի ժամանակս Դաւթի. սակայն և նոյն ինքն ծանուցանէ Բազմակեաց զսա եղեալ, գուցէ թէ և զերկոցուն ժամանակս (զհօր և զթոռին որպէս է գուշակել) ի մի հաւաքելով։ Որ զիարդ և է՝ վկայութիւն սորա զերկարակեցութենէ և Մագիստրոսի ասելն զսա ի Սանեան կամ Սինեան նահանգէ՝ պաճուճաւէր և սէգ այր, ցուցանեն զի ի նշանաւորաց ոմն էր Պերճ (Բ), և գործ ինչ երևելի եցոյց յաւուրս ժամանակաց թագաւորութեան Դաւթի, այլ ոչ ընդդէմ Դաւթի, որպէս կարծեաց ոմն յարտաքնոցն (Ժաքիէ Գաղղիացի. տ. յԱսիակ. Օրագիր) զԱդրաազար թագաւոր Սուբայ ընդ որում մարտեաւ Դաւիթ և յաղթեաց, լինել զնախարարն Ծոփաց, և յերկար բանիւք ճգնի ցուցանել Ծոփս զասացեալդ Սուբ որ և Սիրաղ և այլ այսպիսի նման ձայնիւք կոչի առ մեզ և առ օտարս. սակայն ի հմտից և ի գիտնոց ճանաչի մասն Ասորւոց երկրին ոչ հեռի ի Դամասկոսէ, և ըստ ոմանց (Բիգդէր) Դաբաղ ի հիւսիսակողմն Ափրիկէի։

Ցետ բազմակեացն Պերճի նահապետք Հայոց մինչև ի սկիզբն թագաւորութեան Մարաց և Հայոց. յ200 և աւելի ամս՝ յիշատակին ԲԱԶՈՒԿ զոր Բզնունեան նահապետ կոչէ Մագիստրոս. ՀՈՅ (գուցէ զուգիմաստ Խոյոյ, և հաստատեաւ) արժան հոյակապ փառահոչակ անուան. ՅՈՒՍԱԿ. յետ որոյ ըստ Զամչեան պատմահօր՝ կացեալ է ԱՄԲԱԿ Բ. — ԿԱՅՊԱԿ կամ Կապակ կամ Կապակն[242]. ՍԿԱՅՈՐԴԻ «որ և հսկայ էր տեսլեամբ» ըստ Մագիստրոսի. ոմանք ի գրչաց ըստ Մխ. Այրիվանեցւոյ մի անձն համարին զԿայպակ և Սկայորդի, և թերևս յետին անուանդ նշանակիցէ Ցուսկայ որդի լինել զԿայպակ, և ի գաւազանագիրս ինչ չկայ բնաւ Սկայորդւոյ անուն (Գ. 50. չիք և ի Վարդան)։ Բայց յայսմ վարկի նուազագոյն ևս հանգիտի թիւ նահապետաց առ երկարութեամբ ժամանակին՝ որ ի Պերճայ ցՊարոյր, կամ ի Դաւթէ ցՍարդանապաղ, որոյ աղագաւ Զամչեան ոչ միայն երկուս ճանաչէ անձինս, այլ և ընդ մէջ երկոցուն կարգէ զերկուս այլս անյիշատակս ի Խորենացւոյ, այսինքն է զՓԱՌՆԱՒԱԶ Ա. և զՓԱՌՆԱԿ Բ. այլ մարթ է և յետ Պարուրի դասել զսոսա. քանզի և ի Պարուրէ որ առ Սարդանապաղաւ մինչև ի Սենեքերիմ՝ ոչ գտանի յիշատակեալ այլ

Digitized by Google

*նահապետ կամ թագաւոր ազգիս, և այսմ պատճառք թուին ինձ յարուցմունք ազգաց՝ ընդ որս և մերոյս՝ ընդդէմ Ասորեստանեայցն բռնակալաց, և ստէպ պատերազմունք, և ի կրկին զօրանալ պետացն՝ ջանալ ջնջել զյիշատակս ապստամբեցելոցն, այլ և զանուանս ի գիւանաց արքունեաց, և փոխանակ ընկլաց ազգայնոց կողմնակալաց՝ կարգել վերակացուս Ասորեստանեայս կամ օտարս. զորս փոխադարձաբար և նախնիք մեր ոչ ընկալան ի դասակարգ Հայկազանցն նահապետաց, և ի բաց թողին զյիշատակ նոցին և զանուանս: Ցայս միտս սիրեմ առացեալ և Ցոլհ. կաթողիկոսի մերոյ Պատմչի, վասն առաջնոյ թագաւորի մերոյ, եթէ «Պա-*
*»րոյր անուն յազգէ Հայկայ՝ զանազգիսն ի բաց լքեալ հերքեալ, և զնա-*
*»հապետութիւն ազգին իւրոյ վերստին նորոգեալ՝ պայազատէր»: Եւ թէ որպէս այս՝ տեսցուք այժմ աւասիկ:*

---

# ԺԵ

# ՔԱՅՔԱՅՈՒՄՆ ԻՆՔՆԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՑ

## ԵՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԶԱՆՑ

Ի Նինուայ և այսր ընդ դարս 10 կամ 12 լռեն ի սպառ ի հին պատմութիւնս յիշատակք մեծի տէրութեանն Ասորեստանեայց, ընդ նմին զօգջիր և ամենայն արեւելեայց, մի միայն թողլով ըստ Յունաց վիպագրաց յիշատակ անհամբոյր զթուլութեան և զմեղկութեան վարուց, յորս պեգերեալ զանց առնէին զօգտակարօքն և զարիականիւք։ Սակայն նոյն ինքն յերկար և միահեծան տեւողութիւն պետութեանն և նուաճումն գրեաթէ բոլորում արեւմտեայ Ասիոյ, ոչ արդարացուցանեն զայդ, այլ թէպէտ և ի պերճութիւն և ի զեղխութիւն հարեալ էին ինքնակալքն՝ այլ հարկ է թէ կամ ոչ ամենեքին և կամ՝ ի ձեռն զօրավարաց ոչ սակաւ ջանահնար եղեն զինու զօրութեամբ ի հնազանդութեան պահել զհիւսիսայինսն և զարեւմտեայ ժողովուրդս՝ զծայրագոյնսն քան զհարաւայինս. և զի գործք նոցին ոչ գտանին առ պատմիչս՝ այս ոչ ցուցանէ ամենեւին ի դատարկութիւն հատեալ զնոսին. նա մանաւանդ մնացուածք բազմաքանդակ տաճարաց նոցին և ապարանից՝ զորս հետաքննութիւն դարուս ի լոյս հանէ ի հազարամեայ հողաթաւալ փլատակաց Նինուէի և սահմանացն՝ յայտ առնեն ոչ միայն զարուեստից բարգաւաճանս, այլ և զպատերազմական հրահանգաց և յաղթանակաց, քանզի բազում պատկերք վիմագրեալք տեսանին մարտից, և պարտելոց ազանց ձաղանք։ Եւ եթէ ընկալցի ոք հաւատս զընթերցուածս բեւեռաքանդակ արձանագրութեանց՝ լուիցէ ոչ սակաւ շահատակութիւնս թագաւորաց, որոց անուանք ոչ գտանին ի կանոնս ժամանակագիր պատմորանից Յունաց և համառօտողացն առ ի նոցունց նախնի հարց եկեղեցւոյ. և առաւել ի չորեսին դարս ժամանակի որ յառաջ քան զհռչակեալ բաժանումն միահեծան տէրութեանն՝ գտանեն հնախօսք բեւեռարձանաց՝ զդէպս նշանաւոր գործոց մարտից. յորս բազում անգամ յիշին, ըստ նոցա, և պատերազմութիւնք նահապետաց Հայոց և վերստին նուաճումն յինքնակալացն. այլ զի տակաւին բազում քննութեանց և

Digitized by Google

տտուգութեան կարօտին այսորքիկ, թողումք ապագայից ճշդել և կշռել և զարժանին հաւանութեան ընդունել. բայց զմի միայն յիշեցից դէպ՝ որ եթէ ոչ մեծ ինչ ի գիտութիւն մերոյ ազգիս պատմութեան, սակայն ոչ սակաւ վարկ ընծայէ ընթերցուածոց բեւեռագրականաց. քանզի բազում ամօք յառաջ ընթերցեալ էր ոմանց ի նոսին եթէ (Սալմանասար Դ.) ընդ թագաւոր տանէր կանգնեալ զպատկեր իւր առ պատկերօք Հօր և Հաւուն իւրոյ յայրի ուրեմն առ աղբերօք գետոյն Տոփաց կամ Սուփանայ. և ահա յամին 1864 անգղիացի հիւպատոս Ամդայ (Դէյլըր) որ չէր ինչ տեղեակ այսպիսի իրաց և ընթերցուածոց, ի հետաքննին շրջագայութեան իւրում եգիտ ի հիւսիսակողմն Ամդայ ի քարայրի ուրեմն առ ակամբք գետոյն որ ցարդ Սուպենէ կոչի և օժանդակէ զՏիգրիս, մանաւանդ թէ նորին իսկ աղբերացուցիչ գետ է, պատկերս երկուս ասորեստանեայ թագաւորաց հանդերձ բեւեռարձանաւ, որ հաւատարմացոյց զառաջին և զբացակայ ընթերցուածն։ Առաջին կանգնող պատկերին, ըստ Օպպերդի, Թագլաթփաղասար Ա է, 1130 ամօք յառաջ քան զթուական Փրկչին. իսկ արձանագրողն Համարի Սալմանասար Դ իբր 800 ամաւ նախ քան զՔրիստոս որ նուաճեաց զՀայս։ Անուանք թագաւորացդ Ասորեստանեայց զոր ընթեռնուն հնախօսքդ՝ ծանօթ են ի Ս. Գիրս, որպէս և գործք պատերազմաց նոցին, սակայն ժամանակաւ յետնագոյնք են. իսկ յիշեալքդ տառանօր նոյն անուանք նոցին, եթէ առաջ և եթէ ոչ՝ բազում դարուք երիցագոյն ասին։ Առաջին ամենայն թագաւորաց յիշեցելոց ի Ս. Գիրս Փուա կամ Փուլ է, զոր ոմանք նոյն համարին ընդ Թագղաթփաղասարայ. արդ նախորդ և երիցագոյն քան զսա է Սարդանապաղն անուանի թուլութեամբ և արկածիւք, որ և Թոնոս Կոնկոլերոս ձուի իմն ծեքանօք կամ առ նշանակէ ինչ կոչեցեալ. առ որով բարձաւ առաջնոյ հարստութեան Ասորեստանեայց։ Սակայն և ոչ ի ժամանակ կարեւոր դիպացս միաբանին ժամանակագիրք. մինչդեռ հնագոյնք ի վերջ կոյս Թ դարու նախ քան զՔրիստոս դնեն զդա կամ ի սկիզբն Ըին, այժմուս ի վայր եւս իջուցանեն, և ըստ այլ և այլ համարոյ նոցին առումն Նինուէի, բաժանումն միապետութեան և մերոյ ազգիս սկիզբն թագաւորութեան լինի մի յայսոցիկ ամաց նախ քան զՔրիստոս 797. 788. 771. 769. 759. 749. կալցուք մեք զառաջինն զ797 ըստ հին ժամանակագրաց և ըստ մերոյս Թ. Արծրունւոյ և ըստ ոչ սակաւուց յարդեաց ընդ որս և Օպպերդ։

Արդ ի սկիզբն Ը դարու նախ քան զՔրիստոս, յետ Ակրազանի թագաւորէր Ասորեստանեայց կոչեցեալդ Թոնոս Կոնկոլեռ կամ Սարդանապաղ,

մեղկագոյն և կնամարդի զոլով քան զամենայն Թագաւորս, ըստ վիպագրացն բանի, կամ զի և էր իսկ այնպէս, և կամ զի նա եղոյծ զվրէժ նախ այլոցն, և ի գլուխ նորա կուտեցան ամենայն բարուրք բասրանաց. Նստէր ասեն յապարանս իւր ընդ հոմանիս և ընդ հարճս անհոգացեալ յայլմէ ամենայնէ և միայն ցանկութեան և խրախճանաց պարապելով, ի զօրավարս հաւատարիմս վստահացեալ զպահ պետութեանն. յորմէ Թէպէտ և բազումք յիշխանաց ազգացն նուաճելոց զկծէին, այլ չգտաւ ոք համարձակագոյն և խորագիտագոյն քան զնախարարն կամ զվերակացուն Մարաց Արբակ կամ Վարբակ ըստ մերոյս պատմչաց. յորոց երիցագոյն Խորենացի այսպէս ասէ. «Վարբակէս գաւառաւ Մեդացի, ի փոքուէ կողմանց ծագաց գաւառին » ամրագունի...»:

Էին էին և այլոց մարդից վերակացուք համախոհք ապստամբութեանն, որպէս Բելեսիս, որ և միանգամայն քրմապետ էր Բաբելացւոց աշխարհին, սակայն գլխաւորք գործոյն, որպէս մերս ցուցանէ վիպագիր և այլք, առաջնորդք արիական տոհմիցն էին և լեառնորդեայք, Մարք և Հայք, նոցա Վարբակէս գլուխ և վարիչ՝ մերոյս «Քաջն մեր և աջողակն Պարոյր», ըստ կաթողիկոսի կոչման, Հայկազն և ի զարմէ նահապետաց, որդի Ցուսակայ կամ Սկայորդւոյ, և զկծեալ յասորեստանեայ կողմնակալին բռնութենէ: Ի սոսա, ի Մարս և ի Հայս յարեցան և մերձակայ ժողովուրդք մինչև գումարել նոցա միահամուռ բանակ 400,000ոց արանց: Բայց ոչ բազմութիւն ինչ նոցա և ոչ յանդգնութիւնն կարաց վաղվաղակի յաջողել ի գլուխ տանել զիրսն. կամ զի ընտելացեալք ընդ երկար ծառայութեամբ և ի դաւաճանաց մատնութեամբ՝ չէին անխէթք և անկասկածք, և կամ զի ոչ որպէս ասենն՝ ապիկար և անզօր ոք էր ինքնակալն Ասորեստանի, զուցէ բազմաձեռն քան զապստամբսն կարաց գումարել զիւրև ամբոխս մարտկաց. որովք երկիցս և երիցս յաղթական իսկ գտաւ և հալածեաց զնոսա. սակայն և համբուն ցրուել և վատնել ոչ կարաց. քանզի զօգի ի բռին եդեալ համախոհիցն՝ ձայն ետուն և հեռաւորաց ազանց և զօր ի Թիկունս հասուցեալ յարեւելեան մարդից՝ խաղացին միւսանգամ, պատեցին բախեցին հարին զինքնակալն, և արկին ի մայր քաղաքաց տէրութեան իւրոյ ի մեծն Նինուէ. որ զի ոչ միայն ճոխութեամբ այլ և ամրութեամբ հզօր էր, զամս երկուս տևեաց ժուժալ պաշարման. զի և չէր իսկ յայն ժամանակս զարգացեալ արուեստ քաղաքամարտութեան. մինչև հնարս գտեալ պաշարողացն, որպէս և յայլ դէպս ի հնումն, ի բաց դարձուցին ի քաղաքէ անտի զընթացս Տիգրիս գետոյ, և ընդ հուն նորին խուժեցին ի ներքս. ոչ զամաց միայն

Digitized by Google

այլ և զերկար զարուց վրէժս ստրկութեան լուծանել ի տիեզերակալ զօտոզէն Ասիոյ. այլ նա վաղ իսկ լիովի ճեպեցուցեալ էր զպատակնիք իւր, աշխարհահռչակ կոտորածիւն. Հրաման տալով ի մի վայր կուտել յապարանսն զցանկալի և զմեծագին գանձս պետութեան, զանշունչ և զշնչաւոր օժանդակս զեղխութեանց շուայտութեանցն, զհարճս և զկանայս անդամ, և իբրև ի սպանդ և ի խարոյկ համաշխարհական պատրաստեալ փակեալ զնոսա անճողոպրելի, ապա և զինքն խառնեալ ի նոսին՝ տայր հուր արկանել, և նովին միանգամայն ճարակել զմեծութիւն և զկեանս իւր, մոխիր ցուրտ թողլով յաղթականացն յամենայն փառաց և արհաւրաց մեծի միահեծան տէրութեան աշխարհի։ Եւ եթէ արժան իցէ հաւատալ՝ անդրագոյն ինչ ևս քան զխարոյկն և զմահ զմտաւ ածեալ թողուլ յիւր յիշատակ, ինքնին տապանագիր յօրինելով, արժանի անբանական վարուցն զոր նմա ընծայեն, ասել իմն ցանցորդ և տեսող գերեզմանին, թէ «Ուսիր յինէն » ուտել ըմպել և խրախանալ, զի այլն ամենայն ընդունայն է». որպէս թէ չիցէ ինչ այնպէս շուայտութիւն և զեղխութիւն։ Եւ թէպէտ այլք այլ ինչ ազգ առեն զտապանագիրդ, կամ թէ երկուս Սարդանապալս, և մէն միում պատշաճել զգրուածսն, սակայն այսոքիկ արտաքոյ մերոյս կացցեն խնդրոյ։

Համախոհիցն նիզակակցաց յայս գործ ոչ այնքան ուշ եղեալ էր ի բարձումն տիեզերատաստ պետութեան Ասորեստանեայց, որքան ի վրէժ բռնաւորացն և յազատութիւն իւրաքանչիւր ազգի և աշխարհի. վասն որոյ որպէս և խորհեալ էին արարին՝ զնահապետս իւրաքանչիւր աշխարհաց թագաւորական շքով կարգելով ի գլուխ նոցին. նա և նոցին իսկ Ասորեստանեայց ի նոյն ի Նինուէ կարգեցին ոստիկան կամ նախարար, որպէս և այլոց. որք ի հպատակութեան յաղթականին կացեալ զառաջինն, ապա յետ իբր ամաց 28ից յաջողեցան անդրէն զբռամբ ածել զմիապետութիւն զոր յինքն կալեալ էր Վարբակէս և տարեալ անկեալ յաշխարհ իւր ի Մարս. ընդ ձեռամբ ունելով որպէս զՆինուէին, նոյն և զԲաբելացւոց նախարարն Բելեսիս, և զմերոյ ազգիս նահապետ Պարոյր, առաջին ի Հայս, որպէս ասի, պսակազարդ ճոխացեալ, առաջին թագաւոր Հայոց եղեալ. և յետ հազարամեայ ժամանակի զորդիս Հայկայ յինքնուրոյն վարչութիւն հանեալ. ազգաւ և սերնդեամբ տիրելով և աւանդելով զտէրութիւնն։ Բայց զի մերձաւոր էր մերս սահմանաւ քան զՎարբակ աշխարհին Ասորեստանեայց, և մարթ էր զաւոյ և վրիժուց ինչ պատահել յայնմ կողմանէ՝ եթող Վարբակ նիզակակցին իւրում գունդ օգնականի յիւրոց զօրաց. և եթէ արժան իցէ զԹոմայի մերոյ պատմչի բանսն աներկբայ ընդունել, ոչ

Digitized by Google

միայն զօրս եւ, այլ և «ապիհարկէ ի հարկապարձութենէ և թագապատւ » իշխանութեամբ մեծարեալ»։ Զայսոսիկ խորհրդածելով վիպահօր մերոյ յետ 1200 ամաց յայն ինչ զեռ բարձման մեծի Արշակունի հարստութեանն Հայոց՝ բաղձայր ընիկ Հայկազանցն փարազանց «Ինձ այսօքիկ արք ի » մերոց թագաւորաց են սիրելիք և իմոյ արեան տոուք և հաւատոյ հա- » րազատք. և սիրելի էր ինձ յայնժամ գալ Փրկչին և զիս գնել, և առ » նոքօք յաշխարհ զմուտն իմ լինել, և նոցա տէրութեամբն զուարճանալ » (Այլ ՕՕ. տեսութեամբն խրախճանալ), և յարդեացս ապրել վտանգից։ » Բայց վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումն այն թէ արդեօք և վի- » ճակ»։ Իսկ մեզ որ հետագոյնք եւս ժամանակաւ գտանիմք յօգոյէ բա- նիցս ի Խորենացւոյ քան նա ի Պարուրայ, և յոլովագոյնս գիտեմք վտանգս պատահեալ ազգիս ի 14 դարս որ ընդ նորայն և ի մեր ժամանակս, զի՞նչ արդեօք մնայր ասել բանս, եթէ խորհրդածութեանց և ըղձից և ոչ պատ- մութեանց էր հանդէս գործոյս։ Եւ ցաւէ իսկ յոյժ զի ի կարեւորագոյնս յայսմ միջոցի հերպարանաց ազգիս մերոյ՝ անդէն և անդ մթանայ վերըս- տին պատմութիւնս, մանաւանդ թէ զմնդակ քան զառաջինն կնճիռն առ- նու, եթէ կամիցի ոք հետեւել Խորենացւոյ։

Քանզի Պարուրայ յաջորդ անընդմէջ կարգէ զՀրաչեայ, և առ Նա- բուքոդոնոսորիւ ասէ զնա լինել, որպէս և այլք ի պատմչաց. և զի Թա- գաւորդ Բաբելացւոց կեայր ի սկիզբն Զ դարու նախ քան զՔրիստոս, ապա ընդ ժամանակ նորա և Հրաչէի և ընդ ժամանակ Պարուրայ և Վարբա- կայ՝ է միջոց ամաց գէթ իբրեւ 150ից, յորս Վարբակայ ընծայեին յաջորդք եօթն. իսկ զիմիրդ Հայկազանցս և ոչ մի ոք։ Եւ դարձեալ անճահագոյն և խառնակ եւս գտանեմք առ նմին Վիպահօր՝ զԱսորդանայ զօրաւոր Սենե- քերիմայ ժամանակ՝ որ ի միջոցի անդ է Պարուրի և Նաբուքոդոնոսորի՝ պատ- շաճեցուցանէ Սկայորդւոյ, զոր յառաջին հայր Պարուրայ ասաց լինել. և հարկ է կամ գրչաց ինչ սխալանս լինել այդանօր, կամ այլոյ ուրուք Սկայոր- դւոյ լինել ընդունողին զեղբարս Ասորդանայ, կամ թէ և բնաւ ոչ Սկայոր- դւոյ այլանուան ուրուք Նահապետի կամ Թագաւորի, զոր յետոյ տես- ցուք. այլ եթէ այս և եթէ այն՝ հարկ է թէ ընդ մէջ Պարուրի և Հրաչէի ժամանակք բազումք անցին. և առ ի լնուլ զայն ասացին ոմանք (Եղ. Զմիւռն.) շատակեաց եղեալ զՊարոյր, նա և «ամս հարիւր յերկարեալ » կամ այլ աւելի, մինչեւ ցՍենեքերիմ», որպէս առէ ոմն. այլ հաւանա- գոյն է թէ յետ նորա կացին այլ թագաւորք Հայկազունք անյիշատակք մնացեալք ի Խորենացւոյ, զուցէ և ի Մարիբասայ. և այս ոչ առ անշքա-

Digitized by Google

*թեան ինչ նոցին, այլ մանաւանդ և կարի իսկ պայծառանշանին գոլոյ, ձեռներէցք յիշխանութիւն և յաշխարհակալութիւնս. զորոց անուանս առ նախանձու ջնջեցին ի դիւանաց միահեծան բռնաւորք Բաբելոնի և Նինուէի, յորոց դիւանաց յետոյ ուրեմն Մարիբաս և Խորենացի առեալ կարգեցին զշարս մերոց ազգապետաց։ Բայց զմիրիպեալսն ի սմանէ կանխաւ ցուցեալ և արձանագրեալ էր առաջին հեղինակ Հայկական դպրութեանցս՝ Համմէացին ազգաւ Ագաթանգեղ, և ըստ նմանէ այլք, յորոց և Սեբէոս յէ դարու, որ հասոյց իսկ մեզ զյիշատակ և զանուանս նոցին Թագակապ և հոյակապ արանց հնգեցուն։ Բայց և այսոքիկ, զորոց ընդ հուպ կայ մեզ ճառել, երեւին կացեալ յետ Սենեքերիմայ մինչ ի Նաբուպաղասար, յէ դարու նախ քան զՔրիստոս. իսկ ի կանխագոյն յութերորդին՝ յորոյ ի սկզբան կամ ի մէջ կոյս Թագաւորեացն Պարոյր, յետ սորա Թուին կեցեալ յիշատակեալքն ի նորոյ Պատմահօրէս Զամչեանց, Փառնաւազ Ա. և Փառնակ Բ. և յետ սոցա Թագաւորն ժամանակակից Սենեքերիմայ և սպանողական որդւոց նորին, զոր անեսաք ի վերոյ «Սկայորդի քաջ մեր » նախնին» կոչեցեալ ի Խորենացւոյ, և այլք յայլ անուն կոչեն. Ասողիկն և Սամուէլ ժամանակագիր առ Պարոյր սոսին նկեալ զնոսա. Վարդան՝ առ Նկայպակ՝ նոյն համարելով ընդ Սկայորդւոյ, բայց ոչ միայն այսքան ի վայր իջուցանէ սա զժամանակս սորա՝ այլ և զնոյն առնէր պատկեալ ի Վարբակայ՝ իբր առաջին Թագաւոր Հայոց. և դարձեալ ոչ ի սմանէ միայն սպանողականեալ առնէ վասն Սենեքերիմեանցն այլ Թէ «և պատուեցան եւս » ի Պարուրայ»։ Այլ ումն անանուն վարդապետ (Քարոզական պատմութիւն Եսայեայ մարգարէի) Արտաշէս Թագաւոր կոչէ զընկալուչ նոցին. և միւս ումն ի յետնոց (Եղիա Ջմիւռնիացի) վասն նոյն ինքն Պարուրի ասէ «որ է » Արտաշէզ»։ Իսկ քան զԱսողիկ երիցագոյն պատմիչ Թովմա Արծրունի՝ որ տեղեկագոյնս պատմէ զԱսորեստանեայց և զհաւուց իւրոյ տոհմին՝ այսինքն է զորդւոցն Սենեքերիմայ, ասէ զսա լինել «առ մերովք Հարամայիւ» (յայլ օր. Արամա). և մեք զսա հաւանագոյն համարիմք. իսկ զԱրտաշէսդ կամ արդարեւ մակդրական անուն փառանիշ առաջնոյ Թագաւորին մերոյ յետոյ ընծայեալ նմա, զի ոչ յառաջ քան զԱրշակունիս յիշի այլուր անունդ այդ, կամ Թէ միոյ ի յաջորդաց Պարուրի։*

*Արդ յետ կործանման առաջնոյ ինքնակալութեան Ասորեստանեայց՝ և բաժանեալ ի չորս պետութիւնս, մինչեւ ի ժամանակս Սենեքերիմայ և Դիւլկի զատանեմք միոյ միոյ կացեալ 5 կամ 6 Թագաւորս. Բաբելացւոց՝ յետ Բելեսեայ (կամ նոյն ընդ նմին ըստ ոմանց) Նաբոնասար,*

որոյ առ ի տումարական կարգս ինչ հաստատեալ, և անուն թուական մի եւս, սկսեալ ի 26 օրէ փետրուարի ամսեան 747 ամին նախ քան զՔրիստոս. և ըստ ումեմն ի մերոց վարդապետաց (Ստ. Ռոշք. բառագիր) յանուն իւր կոչեալ զառաջին ամիս տարւոյն, յորմէ և մերս Նաւասարդ. բայց մեր հնագոյն եւս զպատճառ անուանս ցուցեալ է. իսկ եթէ Նաբո-գումթիւն ինչ կամ ուղղութիւն ըստ Նաբոնասարայ ընկալեալ իցէ և ի տումարն Հայկին, զայն չունիմ ասել կամ մերժել: իսկ Ասորեստանեայց յետ 28 ամաց անիշխանութեան կամ ասորակարգ իշխանութեան՝ կացին հզօր թագաւորք Փուլ, Թագղաթփաղասար և Սալմանասար. որք անգրէն ի բուռն առին զպահերեցութիւն և կալան աշխարհակալութեամբ, յառաջեցին ընդ արեւմուտս մինչեւ ի սահմանս Եգիպտոսի, նուաճելով զամենայն միջակացեալ ազգս և թագաւորութիւնս մանունս, ընդ որս և զՀրէից՝ զԵփրեմայն կամ զտասն ցեղին. զառաջինն իբր յօգնական և ի թիկունս հաստատելով նոցա ընդդէմ թագաւորաց ոմանց Ասորւոց, և ապա ընդ հարկաւ և ընդ լծով արկանելով զնոսա. հուսկ յետոյ և գերութեամբ վարելով յերկրէ բնակութեան նոցին յաշխարհս հեռաւորս: Թագղաթփաղասար նախ իբր զ'738 ամաւ նախ քան զՔրիստոս վարեաց ի Սամարիոյ կամ յԵփրեմէ բազմութիւն ամբոխի և բնակեցոյց «յԱսորեստանեայս, և բնակե-
» ցոյց զնոսա յԱլաթ և յԱբովր՝ զգետովքն Գովզանայ և զլերամբքն Մա-
» րաց» [243] (Դ. Թագ. ԺԷ. 6), զոր Լատինն ի քաղաքս Մարաց ասէ. և թուի ըստ քննչաց երկիրն ընդ մէջ Մարաց և Հայոց, ի կողմանս Կորդուաց, ի խուրակեանն անուանեալ գաւառ, ուրանօր դարձեալ յետ իբր 20 ամի՝ յաջորդ նորա խաղացոյց Սարկին կամ Սաղմանասար որ և Նեմեսար ըստ գրոց Տովբիթայ, զհասարակ գերութիւնն Սամարիոյ. և աստի երեւի միւսանգամ մեծազօր տէրութիւն թագաւորացն Ասորեստանեայց ի վերայ շրջակայիցն ազանց, և Հայոց և Մարաց, զի մինչեւ ի սահմանս նոցին վարեալ բնակեցոյց զպաղթականսն Հրէից. և ոչ այսչափ միայն, այլ և ի նոցին սահմանաց հանեալ զբնիկսն փոխաբնակեցոյց ի Սամարիա, որպէս վկայեն նոյն Ս. Գիրք. «Եւ ած արքայն Ասորեստանեայց ի Բաբելոնէ և ի Քութայ և յԱ-
» այ և յԵմաթայ և ի Սեփփարուիմայ, և բնակեցոյց ի քաղաքս Սամա-
» րիայ փոխանակ որդւոցն Իսրայելի» (Դ Թագ. ԺԷ. 24): Յեկացդ այգոյիկ որ ի զանազան աշխարհաց տէրութեան Ասորեստանեայց՝ գլխաւորքն արք Քութայ, թուին ինձ ի Խութայ [244] որ հարաւային սահման էր Հայոց մինչչեւ էր կոչեցեալ յանուն Սանասուն, և թուի սեմական գոլ յայնժամ բնակչացն, որոց երթեալ ընդ այլսն ի Սամարիա՝ անկեցին անդ զհայրենի

գիս իւրեանց զԱնգեղ, ըստ մերս թարգմանութեան յԵօթանասնից, որ ըստ լատինաց և եբրայականին Ներգէլ լսի և կարծի հաւն աքաղաղ կամ Հրատն մոլորակ կամ Հրոյ պաշտօն։

Ցաւոյ քան զգերութիւն Հրէից (Դ Թագ. ԺԶ. 9) Թագղաթփաղասար նուաճեալ զԴամասկոս, զբնակիչսն վարեալ էր ի գերութիւն ի Կիւրէն կամ ի Քիր ըստ եբրայականին, զոր ոմանք (Մարքինի) ի կողմանս Մարաց համարեցան, այլք (Ռիէննէլ) ի Կորճայս կամ Կորդուս, և յոլովք (Միւլլէր. Նիպուր 134. 157) այժմ ի կողմանս Կուր գետոյ. ամենեքին ի սահմանս Հայոց Մեծաց, որ անդրագոյն մարզ էր յայնժամ Ասորեստանւոյն ի հիւսիսոյ կողմանէ, և մինչև ցՍենեքերիմ անդրէն նուաճեալ տեսանի. և զուցէ յայս սակս յետ Պարուրայ ոչ յիշին յազգային պատմչաց՝ յաջորդք նորին։

Բայց առ Սենեքերիմաւ միւսանգամ յեղափոխեցան բաղդք ազգացն նուաճելոց կամ մարզից Ասորեստանի. մանաւանդ ի վատթարել բանակի նորա ի Պաղեստին և ի Պելուսիոն, և իբրև փախստական դառնալ՝ լքեալ զպաշարումն Երուսաղեմի (711 նախ քան զՔրիստոս)։ Եզեկիա՝ որ յառաջ հարկս հարկանէր նմա, խապառ թօթափեաց և զլուծն զայն։ Բաբելոն որ ապստամբեալ և նուաճեալ էր ի նմանէ սակաւ աւուրք յառաջ՝ վերստին ընդվզեաց, ի ձեռն Մարդոկեմպադայ կամ Մարովդաք–Բաղդանայ ըստ Գրոց, (Դ. Թագ.) այն որ առաքեաց խնդակիցս Եզեկիայ և հազիւ ուրեմն հանդարտեաց ընդ ձեռամբ Ասորդանայ՝ իբրև տեղակալ կարգելոյ անդր ի հօրէն իւրմէ։ Մարք որ յաւուրց անտի Վարբակայ բազում այն էր զի ազատօրէն աղիկամի վարէին, թէ և ոչ միաբանութեամբ ամենայն աշխարհին, քան ծառայաբար և ի հարկի, խրատեալք ի վնասուէ անմիաբանութեան իւրեանց՝ հաւանութեամբ գլխաւորացն կացուցին իւրեանց գլուխ և առաջնորդ և թագակալ իշխան զկոչեցեալն Դիովկ (որոյ անուն թուի յԱժ Դահակն անուանէ զեղչեալ), որ շինեաց և ամրացոյց զեօթնապարսպեանն, մանաւանդ թէ զեօթներանգն Ահմատան կամ Եկբատան ի հարաւակողմն արևելից աշխարհին Մեծի Մարաց։ Պարսք որք ընդ Մարաց և իբրև ի նոսին յարեալ քաղաքավարէին՝ կացուցին և նոքա ի նմին ժամանակի թագաւոր զԱքեմենէս կամ զՀաքամանիշ ոմն. յորմէ սերեցան Կիւրոս մեծն և Դարեհ Վշտասպայ։ Սենեքերիմ թէպէտ և եկեաց յետ ձախողակ դարձին յԵրուսաղեմէ՝ ժամանակս ինչ[245], այլ ոչ կարաց միւսանգամ ի ծառայութեան հարկի կացուցանել զոսա. նա և ոչ զՀայս, որպէս բանիս կարգ է ասել։ Քանզի հայեցեալ ի դրացիս իւրեանց, ընդ ոսա բազում

մասամբք և կրօնիւք հաղորդք էին, նաև յօտարս անդր, չիք երկբայել՝ թէ և ինքեանք զամուրս աւերատակն լերանց արկին միւսանգամ անջրպետ և պատուար զինուց Նինուէի. և յայնժամ երեւի զլուխ ամբառնալ և Հարամայ Հայկազնոյ և տիրապետել միւսանգամ հանգոյն Պարուրի. մանաւանդ յետ սպանմանն Սենեքերիմայ յորդւոց իւրոց և գալստեանն սոցա ի Հայս։

Քանզի որպէս և Ս. Գիրք կրկնութեամբ իսկ յիշեն, Սենեքերիմ դառնացեալ ընդ կորուստ բազմահեռն բանակին ընդ պարսպօք Երուսաղեմի և ընդ ամբարձումն ազանցն երբեմն հնազանդեցելոց, խստամբակօրէն վարէր ընդ պատանդսն, ընդ գերիս և ընդ գաղթականս նոցին վաղ ուրեմն բնակեալս ի բուն յերկրի իւրում յԱսորեստանի, և որպէս Տովբիթ վկայէ՝ նախճիր բազում գործէր և ի գերութեանն Հրէից, զորոց դիակունս թաղէր բարեպաշտն այն Նեփթաղիմացի, որ էր ընդ գերութեանն եկեալ ի Նինուէ. և պարապէր ի սուր և առ վաճառուց ընդ Մարս. բայց՝ որպէս և ինքնին ասէ (Ա. 18) ի վերջին ամս Սենեքերիմայ «ոչ եղեւ (նմա հնար) երթալ յերկիրն Մա- » րաց». յայտ է թէ վասն խռովութեանն եղելոյ ի մէջ երկոցուն աշխարհացն և կասկածանաց համախոհութեան։ Եւ ոչ առ օտարս միայն, այլ թուի և առ առհմայինսն և առ ընտանիս վայրենացեալ և գազանացեալ բանաւորին, վասն որոյ յաւուր միում «մինչդեռ երկիր պագանէր Նասրաքայ » կռոց իւրոց՝ Ադրամելէք և Սարասար որդիք նորա սպանին զնա սրով, » և ինքեանք գնացին փախստական ի Հայս». (Ես. Լէ. 38։ = Բ. Մնաց. Լբ. 21։ = Դ. Թագ. ԺԹ. 37). կամ որպէս Տովբիթ ասէ «ի » Լերինս Հայոց» (Ա. 21)։ Վարդապետ մի անանուն ի Պատմութեան Եսայեայ, ասէ. «Մտին երկու որդիքն ի տաճարն ծածկեալ զսուրն, և կա- » ցեալ յաջմէ և յահեկէ. և նա ոչ ունէր կասկած յորդւոց իւրոց. և » սպանին զհայրն և ձգեցին զգլուխն առաջի կռոցն, և ասեն. Դու լեր » զմա զոհ. և ինքեանք փախստական գնացին ի Հայս առ Թագաւորն Ար- » տաշէս, և նա սիրով ընկալաւ զնոսա»։

Կարի նշանաւոր են այս դէպք ի հին պատմութեան մերում, ոչ միայն զի և ի Գրոց սրբոց վկայեալ է, այլ զի և խառնուրդ իմն ընծայեցին եկքն այնոքիկ արքայազունք՝ ընդ հայկական սեռիս, և յարուցին երկուս կամ երիս մեծամեծ և նախակարգ նախարարութիւնս յաշխարհի մերում, զորոյ և զքաղաքական վարչութիւն յեղափոխեցին իմն յայնժամ, որպէս սերունդք նոցա յգկնիսն թելադիր և զօրավիգն լինելով յապստամբութիւն և յինքնագլխութիւն. որում վկայեն Յովսեպոս, և Ս. Հերոնիմոս յաւանդութենէ Հրէից, և մերս հին պատմիչ[246]։

Digitized by Google

*վասն որոյ և արժան է ոչ առանց քննութեան անցանել զնոքօք: Եւ նախ յիշեցուք զանուանսն. յորոց առաջինն Ազրամելեք որ յապաւմամբ գրի և Ադրամել (առ Խորենացւոյ), նշանակէ ի սեմական լեզու տոհմին Թագաւորափառ կամ աստուածափառ, քանզի ըստ ընիկ ձայնին լսի Ադար մէլէք, և Ադարդ աստուածական անուն էր առ Ասորեստանեայս. առ Աբիւդենեայ կոչի Ադրամելուզան, ծնեալ ի Յունաց կամ ի Հայոց[247]: Եղբայր նորա Սարասար, առ մեզ Սանասար կոչի, իբրև ի լծորդատառութենէ, քանզի և յայլ անուանս տեսանեմք զփոխադրութիւն Ն և Ր նայ տառից. ըստ ընիկ հնչման թուի և Սարէսէր կոչեցեալն. այլ Աբիւդենոս աւելադրէ զոյգ նմին և զՆերգել անուն Ներգելա—Սարասար կոչելով, կամ լոկ Ներգել, որ նշանակէր առ Ասորեստանեայս զգիս հրատի կամ զհաւն առաւօտին: Ըստ Աբիւդենեայ պատմութեան երեւի թէ ոչ անդէն իսկոյն յետ սպանման հօրն իւրեանց փախուցեալ եկեալ նոցա ի Հայս, այլ նախ փորձեալ և ի բուռն առեալ զթագաւորութիւն, և ընդ մրմեռնս իսկ մարտուցեալ. նա և Սանասարայ թագաւորեալ՝ զոր Ներգելոս կոչէ, և սպանեալ յԱզրամելեքայ, որպէս թուի ի Հայս, ուր ապաւինեալն էր յամուրս Սիմ լերանց, ի Տարօնական սահման, ի թիկանց Տարօնոյ, ուր և պաշտպան կայր նմա ազգապետն Հայոց. բայց որդիք և արբանեակք նորա մնացին անդէն և սերեալ յազգ՝ կոչեցան Սանասունք, որ յետոյ և մինչեւ ցայժմ համառօտիւ Սասունք կոչին, որպէս թէ Սանասարունի կամ Սարասարունիք: Սոքա թէպէտ և ընդ հնագոյնս ի հայկական տոհմից խառնեալ և թուեալ՝ այլ ոչ յաճախ յառաջադէմք յաւագութիւնս, վասն համանման իմն անհարթ տեղւոյ բնակութեանն իւրեանց և աղխատրոյգ բարուցն, թէպէտեւ զօրք ելով ի կռուի, և հանապազակիրք զինուց, այլ և հանճարեղք ի գործ պատերազմական արուեստից: Համառօտ աշխարհագիրք մեր և յիշատակօղք զնոյացս, առեն վասն սորա «Սանասար շինեաց զՍասուն». իսկ պատմահայրն մեր ասէ. զսա «յարեւմտից հարաւոյ աշխարհիս մերձ*
*» ի սահմանս նորին Ասորեստանի բնակեցուցանէ Սկայորդի (Հարամա)*
*» քաջ մեր նախնին... և ի նմանէ աճումն և բազմամարդութիւն լեալ,*
*» լցին զՍիմն ասացեալ լեառն. իսկ որ պերճագոյնք ի նոցանէ և գլխա-*
*» ւորագոյնք՝ յետոյ ուրեմն մեծամեծութիւն վաստակոց առ թագաւորն մեր*
*» ցուցեալ՝ զբդեշխութիւն կողմանցն արժանաւորեցան առնուլ». յայտ է թէ զԱղձնեացն աշխարհի՝ որոյ գաւառ է Սասունք: «Իսկ Ադրամելեքն*
*» յարեւելից հարաւոյ կողմանն բնակեալ. ի սմանէ ասէ պատմագիրն*
*» (Մարիբաս) լինել զԱրծրունիս և զԳնունիս»[248]:*

Digitized by Google

Բայց և ոչ Ադրամելէք որ սպան զՍանասար՝ անպատուհաս մնաց. քանզի և Ասորդան ոչ համամայր եղբայր նորա (Աքսերդիս ըստ Աբիւդենեայ) հետամուտ եղեւ վարձկան զօրականաց ամբոխիւ հայրասպանին և եղբայրասպանի, և որպէս թուի, ոչ փոքր գործ մարտի և ընդդիմութեան եգիտ ի Հայս. բայց յաղթող գտեալ՝ զհետ պնդեցաւ փախըստականին, եթէ արժան իցէ հաւատալ Աբիւդենեայ, և անդր քան զսահման աշխարհիս մերոյ հանեալ՝ սպան զնա ի քաղաքի ուրեմն որ Բիւզանդիոն գրի (առ Եւսեբեայ), և յոմանց (Նիպուր 180) Տրապիզոնդ կարծի։ Աւանդէ վարդապետ յիշատակող սուսերահար սպանման Սենեքերիմայ՝ զԱդրամելէք գնացեալ յԱղուանս[249], գուցէ արդեօք ի կրկնումն փախըստեանն. բայց առանց հակառակութեան է Խորենացւոյ վկայութիւնն, զոր առեալ և յերկար հաստատէ ընիկ տոհմին պատմիչ՝ Թովմաս Արծրունի։ Ցառուկ տուն և տեղի բնակութեան նահապետին Արծրունեաց՝ եղեւ ի հարաւային արեւմտեան ծայր ծովուն Աղթամարայ, ի հովտի Թուխ գետոյ, որ և կոչեցաւ ընիկ գաւառ Աղձնեաց և յետոյ Հողց կամ Խողց. և երկոքին անուանքդ՝ գաւառին և աշխարհին՝ որպէս և որ ցարդ համաձայնք լսին Խարզան և Խզու՝ վկային օտար ի հայկականէս և Սեմական լեզուի կոչումն։ Զպայազատութիւն տոհմի Ադրամելէքայ, Արծրունեացն կոչեցելոց ի Հայս՝ մանրախուզիւ քննեալ Թովմայի՝ շարակարգէ ի պատմութեանն, բայց զի յօրինակս գրոցն որ առ մեզ հասին պակասեն բանք ի յիշատակէ աստի մինչեւ ի Տիգրանայ ժամանակս, զանխուլ մնան և գործք երկոցուն եղբարցն և զաւակաց նոցին, և բնակութեանն և շինութեան որ յԱղձնիս և որ անդրագոյն ի Գնունիս յարեւելից ծովուն Աղթամարայ, զսահմանօք Ամկոյ։

Հարամայ յաջորդեաց որդի նորա, որ թուի նոյն ինքն ԱՐՏԱՇԷՍ նախայիշեցեալ և վանատուր որդւոցն Սենեքերիմայ, վասն այնորիկ և թշնամութեամբ ընդ Ասորդանայ կեցեալ, և յաղթահարեալ ի նմանէ, թէ և ոչ իսպառ նուաճեալ և կապեալ յիշխանութենէ. զոր յաջորդ իւր և որպէս թուի որդի՝ ԶԱՐԵՀ, իսպառ զերծոյց ի բռնակալութենէ Ասորեստանւոյն, և ի վերջ կոյս թագաւորութեան Ասորդանայ՝ ինքնագլուխ թագաւորեաց Հայոց, իբրեւ 670 ամօք յառաջ քան զթուական փրկչին։ Եւ էր նա, ըստ հաւանութեան, թոռն Հարամայ[250], կամ ի զարմէ նախնոյն մերոյ Արմենակայ, վկայեալ ի մնացորդաց պատմչէն «այր զօրաւոր և կորովի աղեղամբ». որպիսիք ոմանք եղեն և յաջորդք իւր չորեքին, թէպէտ և ազգաւ սերեալք մի ըստ միոջէ, և զամս իբր 70 ոչ միայն ինքնօրէն աշխարհի տիրապետեալ Հայկազանցս, այլ և

Digitized by Google

*նուաճեալ զշրջակայ ժողովուրդս, ընդդիմացեալ ձեռներիցութեան Մարաց և Ասորեստանեայց, և ըստ վիպասանին Մամիկոնեանց*

*« Այս հնդկերանըս խրոխտացեալ*
*» Ըզպատերազմն ազանց վանեալ »:*

*Եւ են սոքա յետ Զարեհի Արմոգ, Սարհանգ կամ Սարաք, Շաւաշ և Փառնաւազ Բ. որոց և ոչ անուանք գտանին առ Խորենացւոյ վասն նախատացեալ պատճառի. այլ ի հնագունէ եւս հետազօտ պատմչէ կամ ի նոյն ինքն յԱգաթանգեղայ, գտեալք և մեծաւ իմն շքով գրոշմեալք և հռչակեալք եղեն, վասն մեծամեծ և քաջանշան գործոց նոցին, որովք գերազանցեալ քան զամենայն նախնիս իւրեանց և զյետինս ի Հայկազանց, համարեցան ընդ աշխարհակալս անուանիս. զորոց թէպէտ օտարք և նախանձոտք ջանացան բնաջինջ առնել զանուն և զյիշատակ, այլ վիպասանք ազգին պահեալ հասուցին ցհազար ամ. մինչեւ յաւուրս մեծին Տրդատայ յարքունի դիւանին գտանել ատենադպրի նորին Ագաթանգեղեայ, և հրամանաւ նորին գրոշմել զանուանս և զժամանակս նոցին հելլէն գրով ի միմեղէն արձանի հանդէպ դրան արքունի տաճարին ապարանից Սանատրկոյ ի Մծբին քաղաքի. որ յետ ժամանակաց ոչ գիտեմ սատանութեամբ եթէ թշնամութեամբ կործանեալ հողաթաւալ մնայր. իսկ թագաւորին Պարսից լուեալ ի համբաւոյ՝ տայր յուզել հանել զշքնաղ սիւնս տաճարին և բերել ի դուռն իւր. և անդ ի բրել՝ յայտնեցաւ և արձանն հանդերձ անուամբք քաջաց թագաւորացն Հայկազանց, և Պարթեւաց նոցին յաջորդաց[251]: Ի դէպ իսկ էր ժամանակն յաջողելոյ Հայկազանցս, քանզի Մարք ապստամբեալք յԱսորեստանեայն՝ որպէս և առ Սարդանապալլաւ՝ եթէ ոչ զինուք՝ գէթ հաւանութեամբ կամաց ի թիկունս կային. Բաբելացիք և Ելամացիք յար ընդվզել հնարէին, և Ասորւոյն հազիւ կարէր ի ձեռն հաւատարիմ զօրավարացն նուաճել զնոսա. իսկ որդի նորա և յաջորդ Սամուկ կամ Ասամոդէս որ և Սաւոդոկիմ, վատթարագոյն քան զհայրն գտաւ և ապիկար, թագաւորեալ իբրեւ 21 ամ. առ որով թագաւորէր Հայոց յետ Զարեհի՝ ԱՐՄՈԳ: Բայց զի Խորենացի ի յաջորդս Տիգրանայ կարգէ յայս անուն անընդմէջ Զարեհ և Արմոգ թագաւորս, ոչ այնքան հոմանունս առաջնոյս կարծելի է, որքան զնոյն իսկ՝ տեղաշարժեալս և անդր մուծեալս. քանզի որպէս ասացաք, ի բուն կարգի սոսա և ոչ զմի ի հնգեցուն յիշէ նա. ի հաստատեալ դաշնոյ իւրաքանչիւր ազգաց երբեմն հպատակաց միոյ վեհապետի, աճարկուք իրերաց և խնթալիք այնուհետեւ լի-*

*նէին. և թուի յայս միջոց ժամանակի հին դաշնակցացն Մարաց և Հայոց բաղխեալ ընդ միմեանս պատերազմաւ, և մերոցս զառաջինն յաղթող գտեալ և վանեալ զՄարս։ Պատմիչն Վրաց խառն ի խուռն վարելով զժամանակս և զանուանս թագաւորաց, երեւի զԴէոկէս կամ զյաջորդ նորա կոչել Քեկապոս (Քէյքաուս), յորմէ վտարանջին Հայք և Վիրք, և նա առաքէ ի վերայ նոցա զորդի իւր Փարարորտ (Փրաւորտ), զոր հարեալ վկանդեալ Հայոց հալածեն յԱտրպատականն. յետ ամաց, միւսանգամ գայ ի վերայ նոցա (Կի–աքսար) Քէյ–Խոսրով, որդի Փարարորտի, որ յաղթող գտանի, և շինէ յԱտրպատական տուն պաշտաման կրակի. այլ ի հեռանալ նորա Հայք և Վիրք հալածական առնեն անտի զզունդն (Մարս)–Պարսից, և գրաւեն զաշխարհն այն։ Այս դէպք թուին յետ կիսոյ Է. դարու նախ քան զՔրիստոս հանդիպեալ. յորում ժամանակի շփոթութիւն իմն տեսանի ի պատմութեան Ասորեստանեայց, և անմիաբանութիւն առ ժամանակագիրս. բազում անուանց թագաւորաց ի մէջ մտեալ ի սուղ ժամանակի, ոմանց այլ և այլ անձինս և ոմանց զմի և զնոյն բազմանուն համարել. այսպէս յետ Սամուկայ Սաւողոկինայ, առի թագաւորեալ եղբօր նորա, զոր ոմանք ընդ սանանուն կոչեն. այլք համարին զյաջորդ նորա կամ միանգամայն կոչեն Քինալադան, Ասարդանաբաղ, Նինոս Գ. և Նաբուքոդոնոսոր Ա. և ոմանք դարձեալ նոյն կամ յետ նորա առեն կեցեալ զՍարակ առ 648 ամաւ նախ քան զՔրիստոս, զոր շատք հուսկ յետին թագաւոր Նինուէի գրեն. և զթագաւորութիւն Ասորեստանեայց ոմանք համարին գրաւեալ առ 625 ամաւ. այլք յայնմ ամի թագաւորեալ Սարաքայ, և թագաւորութեանն ընդարձ լեալ յամի 606։ Կալցուք ստոյգ զյետին թիւս, որպէս և յետ սակաւու հաստատեսցի ի պատմութենէ. և զյետին թագաւոր նորա ևթէ Սարակ և թէ այլ ոք՝ թագաւորեալ զ625 ամաւ, և յառաջ քան զնա զ648 ամաւ զՔինալադան։ Բայց ի միջոցի անդ երկոցուն զաւանի և Հայկազանցս թագաւոր համանուն երկբայելի թագաւորի այնմ Ասորեստանի, ՍԱՐԱԿ, կամ Սարկաւ, զուցէ լաւ ևս Շարակ կոչելի. որ թերեւս նոյն իսկ անձն է, և զինու զօրութեամբ բռնացեալ ի վերայ բռնացելոցն Ասոյ, ի ժամանակի յորում Մարք և Բաբելացիք առ անին զբաղեալ էին. և տայ թերեւս շփոթութիւն մի ժամանակագրաց և վարանումն վասն Սարաքայ, զոր թէպէտ բազումք առեն յետին թագաւոր Նինուէի, այլ է որ (Նիպուր) և ընդ իսկ չյիշէ, և անանուն կարգէ զյետին թագաւորն որ եկաց անարգարար (յամին 625–606)։ Եւ հարկ է գործ մի մեծ և նշանաւոր ընդունել ի մերոցս տասի հաշակեալ թագա-*

Digitized by Google

ւորաց զի այնպիսւոյ արձանագրութեան արժանի լինէին, իբրեւ հոյակապ և արիագոյնք քան զամենայն Հայկազունս մինչեւ ի թագաւորութիւն Պարթեւաց, որք պատերազմողք և վանողք ազանց։

Արդ զպատմեալդ ի Վրաց պատմչէն գործս Մարաց ընդ Հայոց և Վրաց՝ նոյն համարիմ ընդ յիշեալսն յարտաքնոցն պատերազմ Մարաց ընդ Ասորեստանեայց, և պաշարումն Նինուէի ի Փրաւորտայ (Փարաբորտ Վրացւոյն), զոր կամ ի ներքուստ պաշտպանէին և Հայք ընդ իշխանութեամբ թագաւորին իւրեանց Սարակայ, կամ արտաքուստ դիմեալ անկեալ ի վերայ Մարաց՝ հարին զնոսա հարուածս մեծամեծս, և զթագաւորն իսկ Փրաւորտ անդէն առ պարսպօքն սպանին, փախստական տարեալ վարեալ զմնացորդս բանակին մինչեւ ի բուն յաշխարհն Մարաց[252]։ Եւ լինէր այս յամի 634ի նախ քան զՔրիստոս։ Ի մրէժխնդրութիւն փութայր Կիաքսար (Քէյխոսրու) նորագումար խմբիւք, և մինչ ակն ունէր յաղթութեան կամ յամառեալ պատերազմի, ստիպէր յետս նահանջել ի յանկարծուց ինչ համբաւոյ ազգի բարբարոսի խուժելոյ յերկիր իւր։ Եւ էր այն գերահռչակն ի պատմութեան հնում՝ հրոսակ Սկիւթացւոց, որք զամս իբր 30 ասեն տիրեցին ամենայն Ասիոյ՝ ի դրանց Հնդաց մինչեւ ի սահմանս Եգիպտոսի, ինքեանք հալածեալք ի համազգեաց Մասգեթայ՝ հալածեցին նախ զԿիմմերեանս բնակեալս ի հիւսիսոյ Պոնտոս ծովու, և հետամուտ լեալ թափեցին ի Փոքր Ասիա. անտուստ պատեալք զհարաւային ստորոտովք Կովկասու լերանց, սփռեցան ի դաշտակողմանս Կուր գետոյ ի սահմանս Աղուանից, յորմէ և այսր զգետովն անցեալ յՈւտի աշխարհ՝ մասն մի ճամբարին կալաւ զարձակածաւալ և զարգաւանդահող դաւառն՝ որ ի նոցին իսկ Սկիւթացն անուն յայնմ հետէ և առ յապա կոչեցաւ Շակաշէնն, ըստ վկայութեան Ստրաբոնի աշխարհագրի, և յայս անուն լսիւր ց'Ը դար։ Իսկ մեծ մասն ճամբարին յառաջ էանց ընդ արեւմուտս և ի հարաւ, կոխելով զՀայաստան աշխարհ. բայց թուի ոչ ընդ երկար թշնամութեամբ, այլ թեթեւ և ի դէպ ժամանակի օժանդակս առեալ զնոսա Հայոց ընդդէմ զայրացեալ զօրուն Կիաքսարայ. որոյ լքեալ զպաշարումն Նինուէի և փութացեալ ընդ առաջ հարստացեալ թշնամեացն, և որպէս կարծի (Նիպուր) պատահեալ նոցա ի տարածութեան Մուղանն անապատին՝ հարաւ խորտակեցաւ ի նոցանէ. այլ խորամանկութեամբ ստրջացեալ յանօգուտ կռուոյ և ի սպառսպուռ բեկմանէ, խօսեցաւ ի հաշտութիւն, յանձն առեալ ընդ լծով մնանել տապաստակացն և հարկս հարկանել խաքանի նոցա զամս 28, և այսպէս հեռացոյց զմասն մի հրոսուն ի սահմանաց իւրոց, և ընդ միւսոյն խաղա-

Digitized by Google

ղութեամբ վարեալ՝ արծարծէր զզօրս իւր և վառէր ի նոր հրահանգս կրթութեան, և վերստին ի կռիւ կազմէր, առ փոքր փոքր յառաջեալ անցեալ ընդ հիւսիսի Հայոց՝ և մխեալ ի Փոքր Ասիա, մարտ յարդարէր ընդ Ալիատեայ Լիւդացւոց արքայի (615–610) որ յայնմ մարզէ աշխարհակալութեամբ հասեալ էր մինչև ի սահմանս Եփրատայ։

Ցայն ժամանակս թուի տիրապետեալ Մերադնեայցս ՇԱԽԱՇ յետ Սարակայ, և ոչ կարացեալ զդէմ ունել Կիաքսարայ, որ ոչ միայն զինու զօրութեամբ մրցէր այլ և հնարիմաց քաղաքագիտութեամբ. որով յետ հնգամեայ և յեղափոխ բաղդիւ մարտիցն ընդ Լիւդացւոյն՝ միջնորդութեամբ Կիւլիկեցւոց արքային հաստատեալ ընդ նմա դաշն ուխտի հաշտութեան (609) յայնմ կողմանէ, և սաստիւ յինքն յանկուցեալ զՆաբուբալասար կուսակալ Բաբելոնի, և ընդ երկոցուն եւս խնամութեամբ մերձաւորեալ, զԱրիանէ զուստր Ալիատեայ առեալ ի կնութիւն որդւոյ իւրում Աժդահակայ, և զդուստր իւր Ամուհի կամ Զամուհի տուեալ ի կնութիւն որդւոյ Բաբելացւոյն՝ այն է մեծն Նաբուքոդոնոսոր, և հաստ զթիկունս արարեալ, այնուհետև նախ զԱկիւթական հրոսակն եբարձ ջնջեաց, էր զոր դաւաճանութեամբ ի խնջոյս խողխողելով և էր զոր կոտորածով ի դաշտի և հալածելով ի սահմանացն. ապա դառնայր ի վերայ գոռ և անհաշտ թշնամեացն Ասորեստանեայց և Հայոց, յորոց վրիպեալ էր առ պարսպօք Նինուէի 25իւք ամօք յառաջ։ Եւ համախմբեալ զզօրս իւրեանց երեցունց ազանց դաշնակցաց՝ Մարաց, Բաբելացւոց և Լիւդացւոց, հանդերձ այլովք ի նոսին յարեցելովք, վերապատնային գային ի պաշարումն մեծի տիեզերական քաղաքին, ուր ամփոփեալ էր յայնժամ երկրորդն Սարդանապաղ, Սարակն այն կամ անանուն յետին արքայն երբեմն մեծի միահեծան ինքնակալութեան Ասիոյ. իսկ Հայոց յետ Շաւաշայ տիրէր յայնժամ ՓԱՌՆԱՒԱԶ որ և Նափուռ–փառնուազ կոչեցեալ, կամ շփոթելով կամ խնամութեամբ ինչ ընդ սեմականացն։

Ցերրորդում ամի պաշարմանն առաւ Նինուէ (606 նախ քան զՔրիստոս). յետին յաջորդն Նինոսի և Շամիրամայ՝ անանունն մանաւանդ թէ վատանունն այն՝ Ասուրէտիլիլի կամ Սարաք, զօրէն առաջնոյն Սարդանապաղայ, տանն, հրկէզ արար զանձն համօրէն տամբն. յանձին նորա շիջաւ 1400ամեայ ինքնակալութիւն Ասորեստանեայց. և ի գլուխ ելին սպառնալիք մարգարէիցն, յորոց ասէր ոմն (Սոփոն. Բ. 13) ի բերանոյ Տեառն. «Ձգեցից
» զձեռն իմ ի վերայ հիւսիսոյ, և սատակեցից զԱսորեստանեայսն, և եդից
» զՆինուէ յապականութիւն, անջրդի իբրև զանապատ. և արածեսցին ի

Digitized by Google

» միջի նորա հօտք և ամենայն գազանք երկրի, և գետնասողք և ոզնիք
» ի յարկս նորա բնակեսցեն, և գազանք գոչեսցեն ի նկուղս նորա, և
» ագռաւք ի դրունս նորա, քանզի իբրեւ զմայր է բարձրութիւն նորա։
» Այս քաղաք մրիժագործ բնակեալ յուսով, որ ասէր ի սրտի իւրում,
» ես եմ, և ոչ ևս ոք իցէ յետ իմ. զիա՞րդ եղեւ յապականութիւն ճարակ
» գազանաց. ամենայն որ անցանիցէ ընդ նա՝ շչեսցէ և շարժեսցէ զգլուխ
» իւր». լուաւ զայս յԵկբատանս Մարայ և Տուբիա ծերացեալ ուր դա-
դարէրն ըստ խրատու հօրն, թէ «հաւատամ ես, որպէս և խօսեցաւ Յով-
» նան մարգարէ վասն Նինուէի՝ եթէ կործանեսցի»... «և ուրախ եղեւ
» Տուբիա մինչչեւ մեռեալ էր նորա՝ ի վերայ Նինուէի, փառս ետ գոհա-
» նալով զԱստուծոյ». զի երարձ զապականիչն ազանց։

Զգեցաւ աստանօր ձեռն Տեառն և ի վերայ հիւսիսագոյն պետութեան Հայկազանց նիզակակցաց Նինուէացւոցն. յետ առման և անշքութեան խռոխտացեալ մայրաքաղաքին՝ յաղթականքն դաշնաւորք յարձակեցան յԱրարատեան աշխարհ. և վատթարեալ զյետինն հնգեցուն ինքնագլուխ Հայկազանց՝ զՓառնաւազ, որպէս թուի նախ դաշտային պատերազմաւ, ապա պաշարմամբ ի քաղաքի կամ յամրի ուրեմն, կալան զնա և գերի վարեցին ի Բաբելոն, ուր հաստատեաց զերկրորդ ինքնակալութիւն Բաբելական կամ զՔաղդէական Նաբուբաղասար, ամաւ յառաջ քան զմահն լուծեալ զլրէժ երկոցուն ոխերիմ թշնամեացն. և եթէ արժան իցէ իմաստասիրել ընդ Վիպասանին մերոյ

« Ըղձայրականըն քէն յիշեալ
» Զոր ընդ Բելայ Հայկն արարեալ.
» Որպէս երբեմն Նինոս խորհեալ,
» Զի զքաջութեան համբաւն առեալ (զԱրամայ)
» Բայց թագուցեալ կեղծաւորեալ...
» Աստ թիւնաթափ սոցա եղեալ,
» Զհուր բարկութեանըն հրդեհեալ
» Բազում ամօք զՀայք տոչորեալ »։

Վիպասանս համարի ի ձեռն Նաբուգոդոնոսորի ի գլուխ ելեալ իրացս, և էր իսկ նա արդարեւ զօրավար փոխանակ հօր իւրոյ, որում և թագակից իսկ.

« Նաբուգոդոնոսորն իշխեալ
» ԶԱսքանազեան զունդըն կոչեալ,
» Զթագն ի գլխոյ նոցա առեալ,
» Փառնաւազայ այս պատահեալ,
» Ի Բաբելոն վախճան եկեալ »։

Բայց ոչ եթէ ի Բաբելոնի վախճան առեալ կենացն և պետութեան, Թուի թէ ի գիրս եկաց փառնաւազ յետ գերութեան. քանզի հին պատմիչն ասէ միայն. «Այս փառնաւազ հնազանդեալ Նաբուգոդոնոսորայ ար- » քայի ի Բաբելոն, և ապա յայնմհետէ Բաբելացւոց և Մարաց թագա- » ւորքն տիրեցին մինչեւ զԱղեքսանդր Մակեդոնացի»: Այն զի և մեծն այն արքայ Բաբելոնի և մի մեծագոյն աշխարհակալաց՝ Նաբուգոդոնոսոր պայազատեալ ընդ հուպ զհայրն (604) յետ՝ ոչ բազում ամաց (593) ոխացաւ ընդ դաշնակցին և ընդ աներոյ իւրոյ Արփաքսադայ Մարացն արքայի, և պատերազմաւ ընկճեալ կացոյց յերկրորդական կարգի[253]: Եւ առ այս թուի դէպ համարեալ գրիչըն Հայոց, զի մի յապստամբութիւն մտաբերիցեն, և կարգեալ նոցա վերակացու և թագաւոր ընդ ձեռամբ իւրով զՀՐԱՉԷ ոմն, այսպէս կոչեցեալ «վասն առաւել պայծառերես և բոցակնա- » գոյն իմն լինելոյ». (Խոր. Ա. ԻԲ) զոր տեսցուք ընդ հուպ նիզակակից նմին ի շահատակութեանն նշանաւորի:

Բայց փառնաւազայ որդի թէպէտ ոչ թագաւորեաց, այլ ոչ և անշուք մնաց, զի տիրեաց արեւմտեայ հարաւոյ կողմանն Հայոց, ի Դ Հայս. քանզի, ասէ հինն այն պատմիչ, փառնաւազայ որդիս լեալ երկուս, Բագամ և Բագարամ, որ ծնաւ զԲիւրամ, և նա զԱսպատ: Եւ ինքն Բագարամ կոչեցաւ «և Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսացն » աստուած կոչեցին»: Եթէ ստոյգ իցեն ասացեալքս և կամիցիմք միաբանել ընդ Խորենացւոյ՝ զՊաքրամ նախահայր տոհմին Անգեղ տանն[254] հարկ է ըստ մերձաւորութեան անուան նոյն համարել ընդ Բագամայ (ի յաջորդս Տիգրանայ լոյ և Բագամ թագաւոր Հայոց) կամ Բագարամայ. և զի կոչի նա, թոռն Հայկակայ (յօրինակ ինչ Հայկայ), ապա և զսա՝ հայր փառնաւազայ: Խորենացի զսկզբնաւորութիւն տոհմի և տան Անգեղ 400 ամօք անագանէ, ի սկիզբն Արշակունեաց տէրութեան. այլ մարթ է միաբանել դարձեալ զպատմիչսն՝ վարկանելով և զՏորք այն ժամու նահապետ տոհմին՝ սերեալ ի նմին տանէ Բագարամայ կամ Պաքրամայ, և ըստ օրինակի նահապետի տոհմին դիւցազնական կատարեալ գործս. բայց աստուածականն ընծայեալ պատիւն՝ դիպողագոյն եւս է հնագունին ժամանակաւ՝ Անգեղն Բագարամայ, զոր անկ է թուել ընդ սակաւուց ծանուցելոց բազմակերտաց Հայկականն Ոլիմպեայ. և զի ոչ վայրապար ունիք այսպիսի ընծայի պատիւ, հարկ է թէ և գործս դիւցազնականս կատարեալ իցէ նորա հանդոյն իմն Հերակլեայ և միւսոյ Վահագնի, կամ թէ քաջութիւնս արութեան գործեալ, ընդդիմանալով հետամտիցն Մարաց և

Digitized by Google

*Բաբելացւոց, և յամուրս անդ լերանց աշխարհին Դ. Հայոց զազատութիւն իւր անկողոպուտ պահեալ, և ոչ խոնարհեալ ընդ ձեռամբ Հրաչէի, իբրև կապտողի իւրոցն հայրենական իրաւանց, միանգամայն և ինքնիշխան պայազատութեանն Հայոց, որում իբրև բարձր ի գլուխ պանծային յաւուրս Սենեքերիմայ և այսր։*

*Համայն և այնպէս նուաճմամբ իսկ ընդ ձեռամբ Նաբուգոդոնոսորի ոչ շատ գձձեցան Հայկազունք, որպէս ի վերդ նշանակեցի. զի թագն կարգեալ ի փառնաւազայ տուաւ այլոյ ումեք. «Եւ զի արդարև, ասէ Խորենացի, » զայնու ժամանակաւ էր ազգիս մերոյ թագաւորութիւն, վկայէ և Երեմիա » մարգարէ.ի բանս իւր, հրաւիրելով ընդդէմ Բաբելոնի ի պատերազմ. » Հրաման տուր, ասէ, Այրարատեան թագաւորութեանն և Ասքանազեան » գնդին»։ Եւ ըստ հաւաստելոյ քննչաց ի սոյն իսկ յամս թագաւորութեան Հրաչէի կամ պատերազմին Մարաց և Բաբելացւոց գրէր զայս աստուածաշունչ և հռաչաձայն մարգարէն, առ ի մրէժ իմն քինու գերութեան ազգին իւրոյ, և թագաւորութեան տան Յուդայ և վկայման Երուսաղեմի, որ վաղագոյն ևս ի գլուխ ելանելոց էր քան սպառնացեալն յիւրմէ բնաբարձ կործանումն Բաբելոնի. արդէն իսկ յամի նուաճման փառնաւազայ՝ համօրէն երկիրն Ասորւոց անկեալ էր ընդ լծով Բաբելացւոց, հանդերձ թագաւորաւն Յուդայ Սեդեկիայիւ, որոյ անհանճար և տարաժամ խորհուրդ ապստամբութեան՝ նախ իւրում ինքեան գերութեան և կուրութեան եղև պատճառ, սպանմամբ որդւոցն, և յետ սակաւ ամաց (585 նախ քան զՔրիստոս) հրկիզութեան և կործանման բովանդակ աստուածախնամ այլ և աստուածալիք քաղաքին Երուսաղեմի, և աշխարհածանակ գերութեան Յուդայ և ամենայն Հրէաստանի։ Յայսմ մեծի և ահեղ սպառարկութեան Նաբուգոդոնոսորի կամաց Աստուծոյ՝ ի վերայ ապերախտ ազգին ընտրելոյ, արբանեկէր նմա և մերս ազգապետ Հայկազն Հրաչէ, որպէս և յետ իբր ամաց 80ից մի ի յաջորդաց նորա աջակցէր Մարապարսացւոյն՝ յառումն և յաւեր Բաբելոնի։*

*Ոչ նիզակակցութեամբն միայն ընդ Բաբելացւոցն յայս գործ վտարանդութեան Հրէից՝ ի հանդէպ ածէ զազգս մեր, այլ և ասպնջականութեամբն ի նոցունց իսկ գերելոցն. յորոց զոմն մի ի պատուաւոր արանց, որ Թերևս զոհ ցասման Նաբուգոդոնոսորայ լինելոց էր, որպէս զայլսն զըմբռնեալսն ընդ Սեդեկիայ կամ զգերեալսն ի Նաբուզարդանայ, Շամբատ կամ Շամբա անուն, խնդրեաց Հրաչէ ի պարգևի մասին, տամբ կամ արամբք նորին զուցէ և այլովք յարեցելովք ի նոյնս, և ած բնակեցոյց յերկրիս Հայոց*

*ըստ արժանի մեծութեանն պատուով, յորմէ և սերեալքն ի նմին պատուի կացին, և առաւել ևս մեծարեցան առ Արշակունեօք, նոյն և յաւուրս քրիստոնէութեան ազգիս առ յայլս, և յանուն պայազատի տոհմին որ յաւուրս Վաղարշակայ կեայր՝ կոչեցան Բագրատունիք, աւագութեամբ գասու և պաշտամանց ընդ առաջինս ի նախարարութեանց կացեալ, և ի վերջէ ուրեմն գահակալութեան ևս հասեալ և վերականգնեալ զթագաւորութիւն Հայաստանեայց, այլ և զՎրաց, յորս և երկարեալ պայազատութեամբ հասին մօտագոյնս ի մերս դար, և կեան իսկ տակաւին ի սերնդոց նոցին և յազգէն, առաւելագոյն առ գրացիսն՝ քան ի բնիկ յաշխարհիս մերում, և ցարդ իսկ ի պատուի ազնուականութեան, որով թերևս հնագոյնք իսկ են և նախնագոյնք քան զամենայն ազնուատոհմս և արիազունս ծանուցեալս զէթ յԵւրոպիա։ Եւ զի այսքան մեծ և նշանաւոր եղեւ տոհմդ այդ առ հինսն մեր և առ նորս, բազում խնդիր և գրոյց եղեալ է վասն սկզբնաւորութեան նորին և նախահաւու։ Վրացիք՝ թէ և յետնագոյն ասեն զգալուստ նոցա յերկիր իւրեանց, այլ յարքունի զարմէն Դաւթի պնդեն լինել զնահապետն՝ որպէս և ոմանք ի մերոցս. իսկ այլք անդստին իսկ յաւուրս թարգմանչաց մերոց կամ ևս յառաջ՝ ասէին ի Հայկայ սերնդոց լինել և զԲագրատունիս, զոր բասրեալ մերժեաց Խորենացի, որպէս և վերագոյն ուրեմն նշանակեցաւ. իսկ ոմանք ընկալեալ ի Հրէից զծագումն՝ զտանէ Շամբայի զրուցեցին լինել զնա որդի Կոլոսամայ՝ զոր աւետարանագիրն յիշէ Ղուկաս, և է ԺԲ ի Դաւթայ և չորիւք ազգաւ նախնեաց քան զԶօրաբաբէլ։ Առանց երկբայութեան է հրէական ծագումն տոհմիդ և բազում հաւանութեան ի Յուդայի ցեղէն լինել. իսկ տեղի բնակութեան նոցա ի Հայս, զառաջինն երեւի ի հիւսիսի արեւմտից աշխարհիս լինել, ի Սպեր և ի կողմանս Խաղտեաց, ուրանօր յիշին և ի ժամանակս Արշակունեաց մերոց թագաւորաց։ Ոչ հեռի ի սոցանէ ասեն հին պատմիչք[255], յաջակողմն Պոնտոս ծովու բնակեցուցանել կամ վտարել Նաբուգոդոնոսորայ մասն ի գերութենէ կողմանց Լիբիոյ և եւրոպիականն Իբերիոյ, թէպէտ և նոր քննիչք ոմանք (Նիպուր. 222) ոչ հաւանին այսմ։*

*Յետ Հրաչէի մինչև ի Տիգրանն Բաջ նահապետք և թագաւորք Հայկազանցս կացին՝ հինգ, թէպէտ վեց համարի Խորենացի, յաջորդ նմին եդեալ զՓառնաւազ (Բ), որ ըստ իս է նախորդն և գերեալն ի Բաբելոն. ապա յետ Հրաչէի կարգեմ զՊԱՃՈՅՃ, յետ նորա ԿՈՌՆԱԿ, որ գրի և Կուռնակ և Կռունակ, վասն որոյ Մագիստրոս ստուգաբանէ կռնակ, ի կուռն բառէ, դարձեալ գրի առ այլս և Կոռմեազ (Ուխտանէս), այլ և Կայ-*

Digitized by Google

նափ (Վարդան)։ Յետ նորա ՓԱՒՈՍ կամ Փաւոզ, որ «ըստ պարսկականին Բազմանի» նշանակէ ըստ Մագիստրոսի. առ Վարդանայ գրի Փովս։ Յաջորդէ նորա ՀԱՅԿԱԿ Բ. կամ Հայկակ Միւս, որում յաջորդէ ԵՐՈՒԱՆԴ (որդի նորա ըստ Զամչեանի) և Սակաւակեաց մականուանեալ, յայտ է թէ վասն կարճատեւ իշխանութեանն և արագավախճանի կենացն. բայց անունն յայտնապէս յարիական լեզուէ՝ պահեալ գտանի և ի հին բարբառ Բրետոնաց և Կելտաց, և նշանակէ միշտ կամ գեւ։ Ծանօթ է գաւառն Երուանդունիք ի Վասպուրական աշխարհի Հայոց, այլ ճահագոյն եւս թուի յանուն Արշակունւոյն Երուանդայ կոչեցեալ, քանզի զեզերէր նա երբեմն զսահմանօքս, հետամուտ լինելով Արտաշիսի Բ. բայց ծանօթագոյն եւս են արտաքնոց Երուանդ լերինք Մարաց, որ ի Զարասպայ յառաջացեալ ձգին, և ցարդ պահեն զանունն Էրվէնտ կամ Էլվէնտ։ Ծանօթ էր Լատինաց հնոց և Երուանդ անուն ժողովուրդ, որոյ երկիր ցարդ իսկ կոչի Բէլվանտըզ, երբեմն միջակացեալ մարզ Հայոց և Մարաց։ Ուստի և իցեն եղեալ մարզիցդ և լերանց անուանդ այդ, հնագոյն լոկ այն ի թագաւորս մեր Հայկազն, որ ոչ աննշան ոք այր թուի եղեալ և ի սակաւակեաց տէրութեանն։

Ոչ շատակեացք կամ երկարիշխանք ոմանք թուին և նախորդք նորա. քանզի աներկբայապէս մեռեալ էր նա յառաջ քան զԱժդահակ, որոյ վախճան ստոյգ ժամանակագրութեամբ նշանակի 558–60 ամաւ յառաջ քան զթուական Փրկչին. արդ այն ամ է 28 կամ 30 առմանն Երուսաղեմի, առ Հրաչէիւ. ապա յայս միջոց երեսնից ամաց կացին հնգեքին յաջորդք նորա։ Ընդ հակառակն՝ որդի նորին և յաջորդ՝ Տիգրան, երեւի կեցեալ կրկին նոյնքան ժամանակս, և փոխանակ հօրն երկարակեաց եղեալ. քանզի ի 20 ամին Դարեհի ասի վախճանեալ. յորմէ ի վեր ցմահ Աժդահակայ են ամք 60, և զՏիգրան պատմութիւնն ցուցանէ ամօք եւս յառաջ քան զայն թագաւորեալ։ Քսենոփոն որ յետ 100 ամի մահուանն Տիգրանայ ճանապարհորդէր ի Հայս և բազում ինչ յօդէ զնմանէ ի վիպասանական Կիւրամարզին, յիշէ և զգործս հօր նորա առանց անուան, միայն Հայն կոչելով, իբրու թագաւոր Հայոց. թերեւս առ սակաւատեւ իշխանութեանն իսկ զանխուլ ի բազմաց մնացեալ անուանն. որով և անճահս իսկ վիպասանն ընծայեցուցանէ նմա գործս՝ երկար ժամանակի պատշաճս, որպէս կրկին անգամ ապստամբութիւնք նորա ի Մարաց, շինուածք բերդից, մարտք ընդ Խաղտեաց, Տիգրանայ նկրթալն ի մարտ ի վերայ թշնամեաց հրամանաւ հօրն, և այլն. և այս ամենայն նոր իմն փաստս տան անհաւատալի

և քմազարդ բանահիւսութեան Քսենոփոնի, առ որ կարգ պատմութեանս հարկ առնէ զկայ առնուլ և ի քնին մտանել. զի որպէս և իցեն բանքն և վէպք՝ ոչ վարկպարազի և աննշան առն են զրոյցք, այլ և կարի հինք, և ոչ սակաւ կարեւոր իրաց նշանակք են ի նմա. նաեւ գլխաւոր դէպք պատմութեանն՝ որ և գլուխ գործոց մերոյս Տիգրանայ համարի, այսինքն ընկճումն Մարական գերիշխանութեան, կամ վախճանն Աժդահակայ. ոչ սակաւ ցոյցս հաւանութեան ընծայէ՝ և ի չմիաբանելն իսկ ի վերին երեսս ընդ Հերոդոտի և ընդ մերում պատմութեան. մանաւանդ զի մերձաւորագոյնս ուրեք գտանի նուիրական տառիցն Հրէից: Զիք թերեւս ինչ մի կարեւորագոյն ի հին պատմութեան, (որ աստանօր սկսանի մերկանալ զաւանդական քօղս՝ և ի ստուգութեան կերպարանս մտանել) որպէս գյաջորջորդութիւն ինքնակալութեան արեւելից՝ փոխանցելով ի Պարսս ի Մարաց անուտի, որք յետ մահուն Նաբուգոդոնոսորի՝ յիւրեանս գրաւեալ էին զնախիշխանութիւնն. այլ և մի ի մթագոյն կամ ի դժուարակնճիռն դիպաց է այդ, վասն զանազանաձեւս աւանդելոյ զայն պատմչաց ոչ աննշանից և ոչ շատ հեռագունից ժամանակաւ, այլ և Ս. Գրոց նոցին զուգընթացութիւն: Նշանաւոր է պարզեալ ժամանակն վասն հոյակապ արանցն հանդիսացելոց ի միում կամ ի մերձաւոր ժամանակի, և գրեաթէ ի նմին ասպարէսի, գործ ընդ իրեարս ունելով մարտից կամ հաշտից: Ի տասնեկի միում ամաց յառաջ քան զկէս Զ դարու նախ քան զՔրիստոս (565–558), գրեաթէ միանգամայն վարէին խրոխտաբար զիշխանութիւն ազգաց Նաբուքոդոնոսոր, Աժդահակ, Տիգրան, Կիւրոս և Կրեսոս[256]. առաջինն որ քաջութեամբք և մեծագործութեամբք հռչակեալ էր ընդ համօրէն աշխարհ, յափանց Լիբիոյ մինչեւ ի Կովկաս և ի հերակլեան արձանս, և զմիապետութիւն տիեզերաց ունէր, յաղթող կամ ահարկու ամենայն ազգաց, իբրեւ չունէր զոք ընդդիմակալ ի վերայ երկրի, յերկնաւորէն խրատեալ ահեղ իմն և նորօրինակ նշաւակութեամբ, զոր պատմեն Գիրք Դանիէլի. և զգօնացեալ յանսանձ գոռոզութենէն, հասեալ և ի ծայր ծերութեան և յալս կենաց, սկսանէր ամփոփել իմն զճառագայթս բազմափայլ փառացն, և յետ 42 ամաց տիեզերակալութեան անհետանայր յասպարիզաց († 562 նախ քան զՔրիստոս), թողեալ զայն համարձակ հզօրագունին յետ իւր և փառաւորագոյն թագաւորի Մարաց, որ ոչ շատ կրսեր ինչ քան զԲաբելոնացին տիօք և ժամանակօք թագաւորութեան, և ի սկզբան անդ իւրոյ տէրութեանն կոփեալ ի նմանէ՝ զգուշութեամբ կեայր, ակն եդեալ բաղդի կամ մահու (խնամւոյն) առ ի կորզելոյ զնախիշխանութիւնն որպէս և հարք իւր փորձեցին. և որ

Digitized by Google

*ուրեմն յաջողէր նմա այն վասն ապիկար և Թուլամորթ անտեսութեան Եւիլմարոդաքայ որդւոյ և յաջորդի մեծի Թագաւորին Բաբելոնի, որ յերկրորդում ամի իշխանութեան կորուսանէր զայն հանդերձ կենօքն, և Ներիգալսարոսար Թագաւորէր ըստ ձեռանէ զօրողին Մարաց։ Այլ և սմա ընդ հուպ առ նմին հասանէր վախճան փառաց և կենաց, եղերական օրհասիւ զոր մնայ մեզ տեսանել ընդ հուպ. ի ձեռն երկոցուն, եւս քաջացն հանդիսացելոց և նիզակակցութեամբ մտերմաց՝ Տիգրանայ և Կիւրոսի։ Սմա յաջողէր երկայնամիտ վաստակօքն, մարդիւք և մարտիւք և ազգականութեամբն եւս՝ պայազատել մի ըստ միոջէ զԹագաւորութիւն Պարսից, Մարաց և Բաբելացւոց, և ի տուհմն իւր յաքեմենեան փոխել զմիապետութիւն Ասիոյ, անդրագոյնս եւս աշխարհակալեալ քան զՆաբուգոդոնոսոր, առ որոյ Թագաւորութեամբ ծնաւ, զարգացաւ, եհաս ի չափ, և էր իբրեւ ամաց* 38 *ի մահու նորա. յառաջեալ ընդ արեւելս և հիւսիս առաւել քան զնախնի ստուգապատում աշխարհակալս, և յարեւմուտս եւս ցոր վայր ոչ պատմի հաւաստեաւ տիրել Ասորեստանեայց. զի եհաս, եհար եղոյծ զԹագաւորութիւն Լիւդիացւոց, զոր ընդարձակեալ զօրէն զունակ հօր իւրոյ Ալիատեայ՝ և առաւել եւս բարգաւաճեալ Կրիւսոսի՝ տիրէր մեծի մասին Փոքր Ասիոյ ճոխութեամբ որպէս զմի յարեւելեան պերճաշուք Թագաւորաց, այլ ի հզօրագունէն վատթարեալ պարտութեամբ և ձերբակալ լեալ անհետ լինէր դեռափայլ Թագաւորութեամբ* (547 *նախ քան զՔրիստոս) յառաջ իսկ քան զիսպառ նուաճումն և կործանումն Բաբելոնի։ Զուգաժամանակ պայծառութեան սոցա, ականատես և գործակից, և միջասահման իմն նոցին տեղեաւ և հանուրց հնախազոյն Թագաւորէր Հայկազանցս Երուանդեան* ՏԻԳՐԱՆ Ա, *որ նախ սպասարկութեամբ առ Նաբուգոդոնոսոր որպէս և նախնիք իւր ի Հրաչեայ հետէ, խաղաղութեամբ ունէր զիշխանութիւն, և յետոյ բարեկամութեամբ ընդ Կիւրոսի կայր մնայր ի նմին և ոչ միայն տեսող լեալ կործանման այլոցն հզօր պետութեանց և հոյակապ քաղաքաց, Սարդիկեայ, Եկբատանայ և Բաբելոնի, այլ և վրիժահան նոցին, ընդ օծելոյն Տեառն Եսայեայ (Կիւրոսի) հրաւիրեալ և ինքն ի ձեռն Երեմիայ ի գործն մեծ։ Աւանդութեանց ազգիս վկայք միաբան ընդ Քսենոփոնի յայտնապէս և այլք ի պատմչաց լռութեամբ հաստատեն զսերտ դաշնակցութիւն Հայկազնոյս ընդ բարեբաղդ պայազատին Պարսից, որ ի փոքուէ և ի ծայրէ աշխարհէ անտի հարցն յառաջեալ կալաւ եկուլ իմն զաշխարհատարած զպետութիւնս արեւմտից (Կրիւսոսի) զարեւելից (Մարաց) և զհարաւայնոյն (Բաբելոնի), ոչ զրժեալ հիւսիսայնումն այլ և օժանդակեալ իսկ ի նմանէ ի*

Հայկազնեանն ասեմ պետութենէ. որ յանշքելն անդ Բաբելացոց և Մարաց վերստին թեկն ածեալ զազատ իշխանութեամբ՝ յօրանայր Հարստանայր որպէս յաւուրս Հնգեցուն ինքնիշխան թագաւորացն որք յառաջ քան զՀրաչէն։

Առ արտաքին պատմիչս հազիւ իսկ նշմարի Տիգրան ի հանդիսի մեծիս այսմ յեղափոխութեան Ասիոյ. որոյ որպէս գլխաւոր գործի Կիւրոսն էր, նմա և ամենայն աջողութիւնք և գործառնութիւնք ընծային. և նա միայն ճանաչի դիւցազն թատերացս, և աշխարհակալ տիեզերահռչակ. որպէս և եղեւ իսկ ըստ այսմ մասին, և առաւել քան զՄարս բռնացեալ՝ զՊարսկաստան կացոյց ակն տիեզերաց և հրամանատու ազանց. մինչ դեռ ի զաղս իմն և ի հեռուստ ծագաց ծովու սակաւատոհմ ազգք և պետք Յունաց միաբանեալք և միահոծեալք անդստին պատրաստէին նմա զէնս դիմակալութեան և կործանման, որ եղեւ իսկ և կատարեցաւ յետ 200 ամաց։ Բայց մերս տոհմական պատմութիւն՝ ատանօր ոչ հանդուրժէ Կիւրոսի միայնում համագրաւել զփառս յաղթանակացն, մանաւանդ զնուաճմանն Մարաց, հակառակորդին Բաբելացւոց և գլխային ազգին Հայկազանց. նախնիք մեր զուգապատիւ Կիւրոսի նա և յառաջադէմ ի գործ մարտին Մարաց զթագաւորն իւրեանց զՏիգրան ծանեան, հռչակեցին և զրուատեցին միաբանորէն և դիւցազնական տաղիւք. որոց թէպէտ հազիւ յիշատակքն մնան, այլ բաւական և այնք են առ ի յայտ առնել, զի ոչ միայն սեփական կամ անձնամատոյց սիրոյ և հպարտութեան յաչաղանք էին Հայկազանց դիւցազնացուցանել զՏիգրան, այլ զի և էր իսկ արդեամբք արժանացեալ այնպիսեաց գրուատից և գովասանութեանց. լսէր տակաւին և զայնոսիկ յետ 1000 ամի անաչառ և ճշմարտասէր պատմահայր մեր Խորենացի, որ և ոչ զմի ոք յազգապետաց մերոց ոչ ի Հայկազանց և ոչ յԱրշակունեաց այնքան գովաբանէ, մեծացուցանէ, և սիրելի և սիրալի ընծայեցուցանէ ըստ քաջութեան և ըստ քաղաքավարութեան հրահանգաց որպէս զԵրուանդեանս Տիգրան, և գրեթէ մոռացեալ զիւր բարս և զոճ զհամառօտ և զհատու, յաճախ և բազում անգամ դարձադարձ առնէ ի ներբողեանն, մերթ (Ա. ԻԳ) կոչելով «Հուժկու, անուանի և յաղթող ըստ այլ աշխարհակալս». մերթ (ԻԴ) «Ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն, և արանցն » այնոցիկ և ամենեցուն քաջ». և ըստ այսմ մասին սիրէ կոչել (ԼԱ) զազգապետս մեր «Հայկ՝ Արամ, Տիգրան. քանզի (ըստ իմ) քաջաց ազգք՝ » քաջքն. իսկ միջոցքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել». և դարձեալ ի յուշ ածեալ զհամանուանս նորին և զգերահռչակեալ ի նոսա զծանօթ ազգն

Digitized by Google

Հռովմայեցւոց զԹագաւորաց Թագաւորն Տիգրան Արշակունի, առ ոչինչ իմն
Թուի համարել զամենայն մեծութիւն նորա, և յաւելեալ ի բանս իւր յետու
յարի յառաջինս այս, և «Բազումք անուանեալ Տիգրանք, ասէ, մի է
» և միայնակ սա ի Հայկազանցս», հռչակելին յայս անուն, որպէս ի միջի
Արամազդեաց բազմաց մէն միայն գերափառ աստուածոց. մինչև կոչել իսկ
զնա (ԼԱ) «արդարև, բուն և առաջին Տիգրան» զուցէ այսու և ստուգա‿
բանել իմն կամելով զանունն «որ ըստ պարթևին Մեծ և Մանր», ըստ բառ
Մագիստրոսի[257]. այլ երիցագոյն քան զյայտնութիւն պարթևական լեզուին
է ի սմա և յառաջ իսկ քան առ ամենայն օտարս ի մեզ ծանօթացեալ և
սեփականագոյն մերազգեացս անունս այս Տիգրան[258]: Եւ դարձեալ առատա‿
ցեալ ի բանսն հաւանութեամբ մտացն զոր ինչ և զայսմ Տիգրանայ բանք՝
քան զամենայն զիւր բանս պատմութեանն սիրելի ինքեան ասէ (ԼԱ), նոյն‿
պէս կամի լինել «և քեզ ընթերցողիդ» տի նա և զարմանալ և յանհնարիցն
իմն համարի եթէ «ոք ի ճշմարիտ արանց և որոց ի բարս արութեան և
» խոհականութեան և սիրելութեան կայցեն սորա յիշատակօքն ոչ զուար‿
» ճասցի, և յորդորեսցի այսպիսի լինել այր, արանց կացեալ գլուխ»: Եւ
կարգեալ Թուեալ զունակ զունակ ազգս լաւութեանց և ուղղութեանց, զոր
փոքր մի զկնի տեսցուք, համառօտ իմն բովանդակեալ զամենայն ծանու‿
ցանէ զանխլակի, թէ «Որպէս այրն, և գործք, նոյնպէս և զնմանէ բանք».
որ է ասել այր ազնիւ լեալ և արի, գործովք իսկ վկայեաց եցոյց թէ
որպիսի ոք էր, և ըստ արժանի վարուցն և գործոց ասացան կամ գրեցան
«զնմանէ բանք» արժանաւորք:

Եւ ո՞րք արդեօք իցեն բանքն և հեղինակք բանիցն, յորոց աղբերէ
առեալ յեղյեղէ ինքն Խորենացին. — յայտ է թէ ոչ լոկ Մարիբաս, թէ
և յերկար ինչ գրեալ էր սորա, որպէս զԱբրայէ. այլ և Վիպասանքն Հայոց,
որպէս և յիշէ նա ուրեմն (Ա. ԻԴ) թէ «զորմէ ասէին ի հինսն մեր որք
» բամբռամբն երգէին». և այլուր (Լ.) վասն գերութեան Մարաց և զարմից
նոցին Վիշապազունս կոչեցելոց, թէ «Ցայտնեն զայս ճշմարտապէս և Թուե‿
» լեացն երգք, զոր պահեցին մարդիկ Գողթան»: Այլ և զատ ի նոցունց՝
ուրոյն վիպասանութիւն յօրինեալ և զխօսակցական իմն բերգուած ցուցանեն
հին քերականք և մեկնիչք նոցին՝ ի սկիզբն հայերէն դպրութեանց ի Դիւ‿
բայ ումեմնէ, ի փիլիսոփայէն, կամ զուցէ յերիցագունէ ևս յիշատակելոյ
ի Խորենացւոյն ըստ Գորգեայ և Բանանայ հնաւանդից, որ կոչէր Պատե‿
րազմն Մարաց և Հայոց. յորում զկնի հիւսեալ կայր և ողբն ի մահ Տի‿
գրանուհեայ ըստ իմաստից առաջին ողբերգակին՝ որ ողբաց զնա և զի‿

*պատանքն առաջինք հասուցին զբանս նորա մինչեւ յայդ Դաւիթ։ Աներկ-բայ կացուցանեն զայս ոչ միայն մեկնիչքն քերականի Համամ, Մագիստրոս և հնագոյնք և նորագոյնք քան զնոսա, այլ նոքին իսկ բանաստեղծական բանք և բառք՝ որովք վարին ի բանս պատմութեան Տիգրանայ Խորենացի, և յետ հնգից եւս դարուց՝ Թովմա Արծրունի։ Ըստ սմա (Ա. Ե) Բազ-մախոհեմն Կիւրոս. որ և ընդ Տիգրանայ կոչի «յամենայնի համանմանք, » համակամք, միասիրտք, քաջախոհեմք և բազմադղրուատք»։ Եւ բանն՝ «Զի մի՛ քաջասրտագոյն թուեցի Մարն քան զՀայկազնեանն»։ Թող զման-րապատում ինչ դէպս պատմութեանն, որպէս զԱրծրունեացն շահատակու-թիւն ի մարախն։ Եւ որ սխրալին է յառաջ քան զնոսա Հելլեն արձակ վիպապատումն Քսենոփոն, թէպէտ ստոյգ թէպէտ և անստոյգ պատմեալքն իցեն, զնոյն խոհեմութեան, սիրելութեան, արութեան և ընդ Կիւրոսի մտերմութեան բարս ընծայեցուցանէ Տիգրանայ զոր վիպասանքն Հայոց տան նմա. և չիք ինձ երկրայել զի թէ ոչ յերգոց հնագունից և վիպասանից Հայոց, գէթ յաւանդութենէ ազգին լսէր Քսենոփոն զգրուատս Տիգրանայ՝ յետ 10 ամի մահուն նորա անցանելով ընդ Հայս. սակայն զի իւր կամք և տեսութիւնք ի Կիւրոս միտեալ էին՝ զսա զիւցազնացոյց յերիւրեալ ըստ գաղափարի դիտմանն զպատմութիւն, և մերումս Հայկազին զանձխաելին չնորհեաց կերպարանաց զգօնութիւն և լաւութիւն։*

*Այլ թէպէտ միաբանի յայսմ ընդ Քսենոփոն մերոցս պատմչաց, այլ ի բուն դէպս գլխաւոր գործոցն, այսինքն նուաճման մարական պետութեան՝ անմարթ է միաբանել զնա ոչ ընդ մերայս և ոչ ընդ այլոց տոհմակցաց նորա պատմչաց, ընդ Երոդոտեայ, Խտեսիասայ, Դիոդորի, Ստրաբոնի Յուստինոսի, և զոգջիր ամենայն հին պատերազմագրաց. որք ամենեքին վկայեն զԱժդահակ զահընկէց լեալ ի Կիւրոսէ, ըստ ոմանց կենագրաւ իսկ, ըստ այլոց միայն յաղթահարեալ ի մարտի և ի դիպահող գրաւեալ ի կենաց. Քսենոփոն միայն համարի խաղաղութեամբ զնա վճարեալ ի գահուն և պայազատեալ Կիաքսարայ որդւոյ նորա. և թէպէտ ստոյգ է պայազա-տութիւն սորա, և ի Դանիէլի գրոց իսկ վկայեալ, յորում կոչի սա Դարեհ Մար կամ Աստիագես[259], այլ առ չնորհուկս իմն Կիւրոսի՝ իբրու քեռի սորա կայր նորա ի գլուխ թագաւորութեան Մարաց, բայց գործք մարտից և առաջնորդութեան ի ձեռն Պարսիցն կատարէին. և զի այսպէս երկոքին իսկ միանգամայն թագաւորէին՝ ըստ մեկնութեան տեսլեան Բաղտասարայ, վասն այնորիկ և ի ճահագոյնս Մարապարսացի կոչէր այնր ժամանակի աշխար-հակալ իշխանութեան Ասիոյ. ապա ուրեմն ոչ ստնանէ ինչ մտերմութիւն*

Digitized by Google

Կիւրոսի ընդ քեռայն առ ատելութեան նորա ընդ հաւուն (Աժդահակայ), զորոյ զառիթ և զարգասիս հարկ է և մեզ յիշատակել աստրեւ առ ի քաջիկ ծանօթութիւն ընկիս մերոյ պատմութեան ։ Իսկ այս զոր ասացաքս շատ լիցի ի ցուցանել զի Քսենոփոն ի գլխաւոր կէտի կամ ի հանգուցի անդ իրացն անմիաբան ընդ հասարակաց՝ ըստ կամաց և քմաց ստերիւրէ և ոչ յերիւրէ զպատմութիւն. և չեն ինչ զարմանք եթէ յանկարեւորագոյն դէպսն (որպիսի են որ զՀայոց թագաւորութենէ բանք) ամենեւին իսկ յօդուածոյս կարկատիցէ. նա և ի հիմն եւս բանիցն հեռի գտանիցի ի ճշմարտութենէ. ի ժամանակս ասեմ իրացն պատմեցելոց. քանզի առ Կիաքսարաւ որդւոյ Աժդահակայ վիպէ զապստամբելն Հայոց ի Մարաց թագաւորութեան հօրն Տիգրանայ, և Կիւրոսի նուաճեալ զնոսա և առեալ զՏիգրան զիւր վաղեմի ծանօթ՝ խաղալ ի վերայ Բաբելացւոց. յորում ի յետնում մասին ասիցն համաձայնի ընդ արտաքնոցն և ընդ ազգային մերոց պատմչաց, իսկ քան յառաջնումն ամենեւին իսկ անմիաբան և հիմնաշրջիչ իմն թուի զմեր պատմութիւնս և զամենայն զվարկ և զգործ Տիգրանայ առնել, այսինքն է զմարտ նորա ընդ Աժդահակայ. զոր ժխտել՝ ոչ փոքր թուի քան թէ անհետ առնել զՏիգրան ի պատմութենէ Հայոց յորում այնքան մեծ տեղի գրաւեալ է, և զոր ինքնին իսկ Քսենոփոն այլովք բանիւքն օժանդակ հասեալ յիշատակաց ազգիս՝ պնդագոյնս կայկայեալ հաստատէ։ Ապա ուրեմն համօրէն նիւթ և առէչք վիպաց Հելլենացւոյն խառն են ի ստոյ և ի ստուգէ, իսկ հիւսածն և մանաւանդ զրոյցք ճարտարաբանք և ողորկք, հանգոյն իմն պղատոնականացն զրուցաբանութեանց, թէպէտ և ուրեք յաղուականէն ցաղուաշն իսկ զիջեալ ասացուածս, գէթ ըստ մեզ՝ որոց չէ մարթ անզգայունս լինել ուր այդքան երկարօրէն և յայդքան հնութեան ճառք իցեն զմերոց նախնեաց Հայկազանց, և զսիրելագոյն մեզ ի նոցունց ընծայեցելոյ անձնէ զՏիգրանայ։ Եւ այս իսկ հարկ դնէ մեզ յառաջ քան ի ստոյգն մատչել պատմութեան՝ զհիւսուած ատտիկեան Մեղուին յանդիման առնել համառօտիւ, ի քնին առեալ զհաւանականսն և զհաւաստիս։

Արդ համարի Քսենոփոն առ Կիաքսարաւ և մերձ ի բաբելոնական մարտն, այսինքն ի բարձումն մեծի ինքնակալութեան առմամբ մայրաքաղաքին, թագաւորեալ ի Հայս հօրն Տիգրանայ, զոր ոչ յիշէ յանուանէ, այլ Հայկազնին կոչէ, և ապստամբել նորա ի Մարաց ի վասարանջութեան այլոց եւս ազանց հպատակաց, յորոց սակի եղեալ և Հայոց՝ հարկ 50 տաղանդոյ հարկէին յԵկբատան։ Ի զօրաժողով լինել Կիաքսարայ ի վերայ Բաբելոնի՝

վաղաժաման լինի Կիւրոս յօժանդակ քեռւոյն, և մինչչեւ գումարեալ համաշխարհական բանակին՝ ձեռն արկանէ ի նուաճել զմերձաւորս Մարաց ապստամբեալս. յորս առաւել խիթալիք էին Հայք։ Առեալ գունդս զօրաց Մարաց և ի Պարսից՝ մխի ի Կիւրոս ի սահմանս Հայոց իբր որսոյ պատճառանօք, և խաղայ ելանէ ի լերինս սահմանակից աշխարհին Վասպուրականի. և գունդ մի հաստատեալ առաքէ զկողմամբք ուր Թագաւորն Հայոց գտանիւր յայնմ ժամանակի յամարանոցս դեգելով, և ի չինուած ամրոցի ապաւինութեան յերեսաց Թագաւորին Մարաց, յորմէ և յայլում նուագի ընդվզեալ և նուաճեալ խոստացեալ էր քակել զամուրսն և կալ ի հարկի։ Իսկ այժմիկ զգացեալ զյեղակարծոյն գալուստ Մարապարսիցն, փութայ Թագաւորն մինչեւ ի հաւաքել զօրացն՝ զերծուցանել զտիկնայսն և զազարդի մանկունսն յամուրս ուրեք վայրաց, և ինքն յայլ դէմ խուսէ ի լերինս. բայց մինչչեւ գումարեալ հայկական զօրուն գունդն զօրահատոյց արարեալ ի Կիւրոսէ ձերբակալ առնէ զտիկնայս արքունի և զՇաւարշ կրսեր որդի Թագաւորին, քանզի երէցն Տիգրան երթեալ էր ի գործ յաշխարհ հեռի. և ինքն Կիւրոս հասեալ ունի զստորոտս լերինն՝ յոր անկեալ էր Թագաւորն. և յղէ պատգամ հնազանդութեան. որում հաւանի Թագաւորն՝ ոչ ունելով անկալութիւն փրկութեան, Թափուր գոլով ի զօրականէն։ Ի բուռն արկեալ զնա Կիւրոսի՝ կամի խրատել զատաստանաւ. և ի նոյն ժամ է և Տիգրան ի հեռաւոր երկրէն և տեսանէ զվտանգ աշխարհին և ընդ հօրն և տանն ի գերութիւն վարեալ և զնորահարսն զամուսին իւր խանդակաթ. ընդ որս թէպէտ և ի խոր խոցեալ՝ անձն ունի և հնարի զփրկութիւն ի Կիւրոսէ, ընդ որում վաղ ուրեմն երբեմն ծանօթացեալ և մտերմացեալ իսկ էր, ի գալ ելանել նորա յորս զլերամբք Հայոց։ Արդ ի դատ մատուցեալ Կիւրոսի՝ պարտաւորի Հայն իւրով իսկ խոստովանութեամբ՝ զմեղանս ապստամբութեան և զուխտազանցութեան, ի ծառայութիւն և ի պատուհաս, և ապարան լինի. յայնժամ ընդ մէջ անցանէ Տիգրան, սկսանի պայքարել գեղեցիկ բանիւք ընդ Կիւրոսի, որպէս գրիմախոսս Պղատոնի իմաստակացն, և ոչ ի չքմեղս լեալ զհօրն յանցուածս, օգտակարագոյն և իմաստասիրագոյն ցուցանէ յաղթօղին զներելն առ նուաճեալսն, որոյ ի միտ առեալ իցէ զինչս իւր և զգօնացեալ. և այնպիսի իսկ առէ զհայր իւր եղեալ ի սակաւ յայնմ ժամանակի նուաճմանն քան յառաջին յօրացմանն։ Հաճեալ Կիւրոսի ընդ իմաստուն բանս հայրասէր որդւոյն զիջանի ի ներումն՝ պահանջելով զսակ հարկին՝ կրափանեալն և զառաջիկայ ամին, և զօր արքային ի թիկունս բաբելոնական կուոյն. զոր առաւելեան հանդերձ յօժարի հատուցա-

նել Հայն. այլ Կիւրոս առնու միայն զհարկն պահանջեալ և 100 տաղանդ ի փոխ, և զկէս զօրացն Հայոց. այսինքն 4000 հեծելոց յ'ուժից անոր և 20000 հետևակաց ի չորից բիւրուցն. որք եթէ սեփական գունդք էին թագաւորին ցուցանեն զմեծ զօրութիւն նորա, իսկ եթէ համօրէն Հայաստանի՝ սակաւք են։ Ի վերայ այսոցիկ առ փորձ ինչ խնդրէ և փրկանս ի թագաւորէն վասն իւր և ընտանեացն, և նա խոստանայ տալ որչափ և ձեռն հասանիցէ. իսկ զՏիգրան հարցեալ վասն կնոջն՝ նա զանձն գլխովին առէ մատնել ի փրկանս նորին։ Որոյ փոխարէն նազաբանէ և կինն սիրային յորժամ յետ արձակմանն և դարձին հարցանէր զնա Տիգրան թէ որպիսի՞ ինչ երևէր նմա Կիւրոս ըստ գեղոյն և վայելչութեան, և նա ասէր և ընաւ անգամ չնկատեալ իսկ զնա, իբրև ամենեւին պշուցեալ կայր յայն որ ասացն անձամբն լինել փրկանս իւր։ Եւ այս զի սոցա նազաբանութիւնք, կամ Քսենոփոնեան հանճարաբանութիւնք՝ անցին ի կարգս առակաց, և յիշատակին ի հաւաքմունս գեղեցիկ ասից։ Յետ այսց բանից պատմէ Քսենոփոն յառաջ խաղացեալ Կիւրոսի իւրովք գնդօքն և Հայկականօք և յարձակեալ ի լերինս՝ ուր Խաղտիք ամրացեալ սաէպ արշաւէին և նեղէին զՀայս. և նուաճեալ զնոսին՝ ստիպեաց ի դաշն խաղաղութեան ընդ Հայոց. և առ անկասկածութեան սոցին՝ հիմն արկ շինութեան բերդի մեծի և կացուցեալ ի նմանէ պահապան զօրս ի Մարաց, ինքն առեալ զհարկ և զզօրաբաժին Հայոց՝ Տիգրանաւ հանդերձ՝ դարձաւ ի Մարս առ Կիաքսար։

Այսպիսի ինչ է համառօտութիւն սեթևեթեալ երկար վրուցաց Քսենոփոնի, յորում ոչ միայն ժամանակն Տիգրանայ անճահ է ըստ վերոյ ցուցակութեանս, և եթէ եղեալ էր իսկ նման ինչ դէպք ապստամբութեան Հայոց ի Մարաց՝ հարկ էր ի հնագոյն ժամանակս լինել յառաջ քան զտիրապետութիւն հնդեցուն աշխարհակալացն, կամ յառաջ քան զաւուրս Նաբուգոդոնոսորի՝ առ որով՝ Բաբելացւոց և ոչ Մարաց ի դէպ էր հարկել Հայոց. իսկ յետ նորա մահուն՝ թէպէտ և գլուխ ամբարձ Աժդահակ ձեռներիցութեամբ այլ ոչ զօրեաց արկանել և ի վերայ Հայոց, զՏիգրան գտեալ զիմակաց և զԿիւրոս նմին համախոհ և համակամ. և մի քան զմի արուարագոյն ի մարտի և խոհականագոյն յատենին և ի կենցաղական գործս։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. (էջ 1). Հ. Ղ. Ալիշանի ծրագրին համեմատ՝ ներկայ գործս երկրորդ հատորը պիտի կազմէր Հայաստանի աշխարհագրութեան մը։ Յետ անոր մէջ երկրին բընախօսական հանգամանքները դիտելու, հոս բնակիչներուն վրայ պիտի ճառէր։ Գեղեցիկ ծրագիր, որուն երկրորդ մասը իրագործեց նախ, իբրև աւելի հետաքըրքրական և ուսումնասիրելի։ Հ. Ալիշանի աշխարհագրական գրութիւնները բազմաթիւ են, բայց չենք գտներ անոնց մէջ այնպիսի մը՝ բաց ի, թերեւս, քաղաքական աշխարհագրութեան ետեւը զետեղուած Հայաստանն գրաբար գրուածքէն, որ սահմանուած ըլլայ սկզբնաւորութիւն կազմելու սոյն երկասիրութեան։ – Հոս ներկայացուած բոլոր ծանօթութիւնները Հ. Ալիշանի կը պատկանին, երբ Ծ. Հրտ. ստորագրութիւնը չեն կրեր։

Ծ. Հրտ.

2. (էջ 2, տող 27). Իրաւունք ունէր Հ. Ալիշան գանգատելու թէ սակաւ յիշատակարաններ և պատմագրութիւններ կան Հայաստանի մէջ, քանի որ, իր գրած ժամանակ, դեռ այնքան յառաջ գացած չէր Ուրարտագիտութիւնը։

Գիտեն ընթերցողք թէ Վանայ և իր շրջակայից մէջ և Արարատայ ստորոտը, որքան բեւեռագիր արձանագրութիւնք գտնուած են, որ կը ցուցնեն թէ Քրիստոսէ հազար տարիներ յառաջ կը բնակէր Հայաստանի մէջ Խալդի անուամբ ժողովուրդ մը. իր հայրենիքը կ'անուանուէր Ուրարդու (Արարատ), իր մայրաքաղաքն էր Բիայնա (Վան)։

Ի սկզբան անընթեռնլի համարուեցան այդ արձանագրութիւնք՝ որ Խորենացւոյ ժամանակէն սկսեալ՝ ամենուն զարմանքը կը շարժէին. «Հայեցուածն միայն զա» մենայն ոք ի զարմանս ածէ» (Խոր. Ա. ԺԶ)։ Հայաստանի սահմաններուն մէջ կը թուի թէ շատ բեւեռագիր արձանագրութիւնք թաղուած կան. «Ի բազում տեղիս յաշխարհին Հայոց արձանս հաստատեալ նովին գրով յիշատակ ինչ հրամայէ » գրել, և ի բազում տեղիս՝ սահմանս նովին գրով հաստատէր» (Խոր. Ա. ԺԶ)։ Մորտմանն գերմանացին հանեց նախ իր Entzifferung und Erklaerung der armenischen Keilinschriften von Van, ուր ամէն բան հայերէնով մեկնել ուզեց, նոյնը պաշտպանեց, բայց տարբեր դրութեամբ և տարբեր մեկնութիւններով Յովսէփ Վ. Սանտալճեան իր « Les inscriptions cunéiformes urartiques » (Venise, 1900) մանրակրկիտ և ընդարձակ գործին մէջ. նոյն նիւթին վրայ աշխատած են գլխաւորապէս M. A. H. Sayce «The cuneiform inscriptions of Van» երկասիրութեամբ, գաղղիացին Լընորման, որուն ուսումնասիրութիւնը թարգմանեց Հ. Մինաս Վ. Նուրիխան (Բազմավէպ, 1876, էջ 137, և այլն)։ Ռուսաց մէջ Նիկոլսկի եղաւ որ Բեւեռագիր արձանագրութիւնք Անդրկովկասում (թրգմ. Խաչատուր Յովհաննիսեան, Ս. Ղազար, 1897) գործոյն մէջ ցուց՝ թէ մեր Հայկազուն թագաւորներէն

Digitized by Google

չատեր՝ բեւեռագիր արձանագրութեանց մէջ ալ կը գտնուին, ինչպէս Մենուաս, Արամէ, Արգիշտի (Արագած=Արմենակ) և այլն։ Բաց ի Սանտալճեան Վ. Յն, Հայոց մէջ ուրարտագիտութեամբ զբաղեցան Հիւարյեան էֆէնտի, Կարապետ Բասմաճեան, (նախ Բազմավէպի մէջ, յետոյ իր խմբագրած Բանասէր թերթի մէջ)։

Հ. Բ. Վ. Սարգսեան ալ ընդարձակօրէն համեմատած է ուրարտական արձանագրութեանց տեղեկութիւնները հայ աւանդութեան հետ. «Տեսութիւն Մարիբա- » սեան աւանդութեան ըստ Մովսիսի Խորենացւոյ» Բազմավէպ 1883, 1884, 1885։

Սակայն Ուրարտուի արձանագրութիւնք՝ փոխանակ հայ ազգի հնութիւնը հաստատելու, ըստ ոմանց՝ ցուցին թէ Հայաստան ամենէն առաջ ուրիչ կովկասեան ազգի մը հայրենիքն եղած էր, որովհետև արձանագրութեանց լեզուն՝ վրացերէնի ազգակից է. Խալդիացւոց աստուածները՝ հայկականներէն բոլորովին տարբեր են։ Այսու հանդերձ դեռ կը գտնուին գիտնականներ՝ որ կը ջանան հայերէն խօսեցնել տալ այդ քարերուն, և յամենայն դէպս, Ուրարտու չջնջուեցաւ այլ նորեկ գաղթականներուն (Հայերուն) հետ խառնուեցաւ, ապա թէ ոչ պիտի չկրնային ուրարտական աւանդութիւնները՝ Հայկազունեաց անուան տակ Հայոց մէջ ապրիլ։

Ծ. Հrs.

3. (յէջ 3, տող 5). «Պատուէր տուք յինէն Արարատեան գնդին և աքանա- » զեան թագաւորութեանցն». Երեմիա, ԾԱ, 27։

Կարապետ Բասմաջեան (Բազմավէպ էջ 63, 1898) պաշտպանեց թէ սխալ է այս խօսքը Հայոց վրայ առնուլ. նա կը յիշէ թէ հոս, օտար թարգմանութեանց մէջ, Մինիի անունն ալ կայ. զայս պէտք է Հայ հասկնալ, իսկ Արարատեան գունդ «Ուրարտու» կը նշանակէր, ինչպէս Աշքանազեան թագաւորութիւնն՝ դրացի ուրիշ տէրութիւն մը։ Սոյն հայ գիտնականին կարծեօք Արմէնիա միացումն է Ար (արատ) և Մինիի բառերուն. մինիի ժողովուրդը Ուրմիոյ եզերքը կը բնակէր, և իր թագաւորներէն մին՝ կը ներկայանայ մեզ Յոբայ գրքին մէջ, իբր մխիթարիչ սոյն նահապետին։

Ծ. Հrs.

4. (յէջ 3, տող 17) «Ամենէն կատարեալ և ճոխ հին լեզուն Հնդկաց՝ այսօր » ոչ մայր, այլ քոյր ճանաչի զանդկին Պարսից և մեր հայկականին». Հ. Ալիշանի այս խօսքը բոլոր գիտնականներու կարծիքն է, և գրեթէ հիմն է արդի լեզուաբանութեան։ Ծաղրական է այժմ վիճել թէ արդի լեզուներէն որը եղած է արմատ և աղբիւր միւսներուն։ Գիտնականք կ'ենթադրեն թէ ամենահին լեզու մը գոյութիւն ունէր, որ սկսած էր գաւառաբարբառներու բաժնուիլ, ինքը անհետացաւ, մինչ վերջինները իրենց գոյութիւնը պահեցին, նոր ստորաբաժանմանց ենթարկուելով։ Մայր մ'էր որ կը մեռնէր, իր դստերքը թողլով երկրիս վրայ։ Ըստ այսմ սանսկրիտը, զէնտը, և հայերէնը քոյրեր են, թէ և անդրանկութեան պատիւը միշտ սանսկրիտին կը պատկանի արիական ճիւղին մէջ։

Հմմտ. Բոբ. Համեմատական քերականութիւն, Մաքս Միւլլէր «Lectures on » the science of language» Փր. Միւլլէր «Grundriss der Sprachvissenchaft», Sayce «Principes of comparativ philology», Humboldt «Ueber die Verschiedenheit des » menschlichen Sprachbaues» և այլն։ Հ. Ալիշան զՀայաստան աշխարհաց կեդ-

Digitized by Google

րոն, միջադիր կը համարի. (տես յէջ 3, տող 22)։ Արդեօք ի՞նչ կը վկայութեան վրայ կը հիմնէ ասիկա։ Մենք կը կարծենք թէ աւելի անձնական ենթադրութիւն մ'է, որովհետեւ եթէ ուրիշ փաստ մ'ունենար — Հայաստանի աշխարհագրական դիրքէն տարբեր – Հ. Ալիշան պիտի չյապաղէր զայն պարծանօք ի մէջ բերել ինչպէս ըրած է՝ ուրիշ կէտերու նկատմամբ։ Սակայն կարելի եղաւ մեզ տեղ մը գտնել Խորենացւոյ մէջ՝ որ նոյն կէտը անկնարկէ. «ի Հայոց՝ որ ի միջոց աշխարհիս» (Բ Գիրք, Դ գլուխ, Տպ. 1865, յէջ 72)։

Բայց ըստ ըստ մեզ հոս «աշխարհս» բառը երկրագունտ չնշանակեր, որչափ Հայաստանն, և միջոց աշխարհիս՝ «Արարատ»։ Որովհետեւ՝ Վաղարշակայ զօրք ժողվելու առթիւ՝ ի՞նչ հարկ կար ըսել՝ թէ Հայաստանն աշխարհիս կեդրոնն է։ Դիտուի նաեւ որ Բուզանդայ մէջ միջնաշխարհ բացատրութիւնը սովորական է Արարատայ համար. «Հասանէր ի միջնաշխարհն Հայոց՝ ի գաւառն Այրարատու» – «Զմիջնաշխարհն քանդեալ բրեալ զօրքն պարսից ապականէին» (Բուզանդ, Դ)։ Հ. Ալիշանի բանաստեղծական համոզմունքը այսպիսի խօսքերէ ներշնչուած կ'երեւայ. Շիրակայ տեղագրութեան մէջ ալ Անին երգելով «աշխարհաց միջնակէտ» կը կոչէ զայն։ Համեմատութեամբ Հնդկաստանի, Հայաստան աւելի արժանաւոր է անշուշտ այդպիսի կոչման մը։

Ծ. Հրs.

5. (յէջ 4, տող 12) Բենիամ. Գուտել Եդոմ կ'անուանէ զՀայաստան Կիլիկեցւոց։

6. (յէջ 4, տող 18) Բարս՝ բարձր, տիլս՝ տեղի։ Իսկ ըստ Պարսից շրջապատ ծառաստանկ տեղի։

Պէտք է դիտել որ, ինչպէս կը գրեն Wetzer և Welte (Dictionnaire encyclopédique de la théologie catholique, tome XVII էջ 180), «le paradis était dans une situation extrêmement élevée sur une montagne dont le sommet s'élancait dans une région surnaturelle. Telle était l'opinion de S. Ephrem, de St. Basile, de S. Iean Damascène»:

Թէպէտ և լեռ մը, որչափ ալ բարձր ըլլայ, չի կրնար գերբնական աշխարհ մը մտնել, այնու հանդերձ սոյն կարծիքը կը զուգադիպի Հ. Ալիշանի ստուգաբանութեան։

Դրախտի վրայ գրած են Hardoin «De Situ Paradisi terrestris», Bochart «Geographia sacra», Michelet «Recherches sur la situation géograpique du Paradis terrestre, Vienne, 1796. Schultess, «Le paradis terrestre, céleste, historique et mystique» Zurich, 1821, և այլն։ Հայոց մէջ՝ Ինճիճեան «Հնախօսութիւն Հայաստանի» Հ. Մանուէլ Քաջունի «Հայաստանի աշխարհագրութիւն», «Ադամայ դրախտին տեղը» Բազմավէպ, 1843, Ա. 268։

Տէլիչ գերմանացին, որ Սուրբ Գիրքը բնաբանութեամբ բացատրել կ'ուզէր, Դրախտը Բաբելոնի մէջ զետեղեց, որովհետեւ Եփրատ ու Տիգրիս արդէն Բաբելոնի մէջ կը գտնուին, իսկ Շադ-էլ-արապը, կ'ըսէր նա, այն աղբիւրն է ուսկից դրախտի գետը կ'ելնէր։ Եւ յիրաւի Շադ-էլ-արապ քիչ վերջ երկու մեծ ջրանցքներ կը յօրինէ, որ բաբելոնական արձանագրութեանց մէջ Գիհոն և Փիսոն անունը կը կրեն։ Բաց ի ասկից, կ'ըսէ, Բաբելոնի երկիրը, ուր մէկ սերմ երեքհարիւր կարող է յառաջ բերել, արժանի է, իր բեղնաւորութեանը համար, դրախտ ըլլալու։

Digitized by Google

*Հմմտ. այս մասին հետաքրքրական յօդուած մը Բազմավէպի մէջ, թարգմանուած նոյն գիտնականի մէկ գործէն. «Ո՞ւր էր երկրաւոր դրախտն» Բզմ.* 1890, *խը*, 441:

Ծ. Հրs.

7. (*յէջ* 4, *տող* 20). *Սակայն պէտք չէ զանց առնել, որ նախնիք մեր փոխանակ Եդեմայ շատ հեռ Ադին կ'ըսեն դրախտին երկրին. արդ զանդիկ գիրք որ յետ Մովսեսի գրոց հնագոյնք են այսպիսի խնդրոց համար՝ Հետեն կամ Հետենէ կամ Հեղենեկ կոչեն երկրիս առաջին բնակեալ և երանելի աշխարհը, զոր աւելի սովորաբար կոչեն էրիէնէ-վէձոյ կամ էրէմէնոյ-վէձոյ, այսինքն վճիտ կամ սուրբ Իրան երկիր.* (*Վահլ, Տիւպոա, Քանդու*) *այս առաջին Իրան կամ Էրէմէն* (*Տիւպոա*) *հիմայ շատք ի գիտնոց անտարակուսաբար համարին զՀայաստան, ոմանք զմասն մի նորա, այսինքն զԱռան, որ է Սիւնիք, կամ զԱտրպատական, բայց զսա ընդարձակագոյն առնլով: — Սէն-Մարդէն կ'ասէ.* « Aeriémeno était incon-
» testablement l'Arménie »

8. (*յէջ* 4, *տող* 29) *Ըստ ոմանց մասնաւոր կերպով Արեւելք կ'անուանին ի Գրոց աշխարհք Ասորեստանի, Քաղդէից, Հայոց և Պարթեւաց.* (*Պօտրան, Կալմէթ*). *Եսայի, խա,* 2. «*Ո՞ զարթոյց յԱրեւելից զԱրդարութիւն կամ զարդարն*», *կ'ըսէ վասն Աբրահամու, որ կոչեցաւ յՈւրայ Քաղդէից-կորդուաց: Նոյնպէս մոգքն Արեւելից ի բազմաց Քաղդեայք կ'իմացուին: Մեր նախնեաց և նորոց մէջ սովորութիւն է Արեւելից կամ Արեւելեան տուն անուամբ իմանալ զՄեծ Հայս:* Bible de Vence *պարզապէս ասէ թէ Մովսէս Արեւելս կոչէ զՀայաստան: Օտար չէ սեպել թէ Մովսէս հոս Արեւելք ըսելով՝ ոչ պարզապէս կողմ կ'իմանար, այլ զանուն աշխարհին յորում էր Եդեմ. գրեթէ նոյնպէս անուանեց և իրեն ժամանակակից հակամարգարէն Բաղաամ, որ կ'ըսէ իրեն համար թէ կանչուեցաւ ի Միջագետաց ի լերանցն Արեւելից, ուր էր իր Փեթուր քաղաքը* (*փեչար, ընդ մէջ Լճէի և Հազրոյ*), *զոր մեկնիչք կ'իմանան ի Վերին Միջագետս, որ է ըսել Հայոց արեւմտեան հարաւային սահմանն, և հաւանօրէն Մասիոս լերինք, Ամդայ սահմանն: — Արժան է յիշել և զայս որ յազգաց բաժանման ըստ Մովսէսի* (*Ծննդ. Ծ*) *Հայաստան արեւելագոյն աշխարհաց կարգն է, մանաւանդ թէ ամենէն արեւելեան հիւսիսային աշխարհն է. Արգոնաւորդք, Հոմերոս, և ինչուան Եկատէոս՝ որ քիչ յառաջ է քան զՀերոդոտ՝ Հայաստանէն անդին երկիր չէին ճանաչեր, որ իրենց համար վերջին արեւելք կ'ըլլար: — Միով բանիւ, ի հին Ս. Գիրս Արեւելք կոչին ամենայն աշխարհք՝ որ Եփրատ գետոյն ձախակողմն են և արդարեւ Հրէաստանի արեւելեան դին կ'ըլլան:*

9. (*յէջ* 6, *տող* 32). *այդ անձաւանքն են Կալմէթ, Ռընան, Պոտրան:*

10. (*յէջ* 7, *տող* 10). Bible de Vence *Եթովպիա համարի զՄիջագետս Երասխայ և Կրի, ուր նախ բնակէին Սկիւթք:*

11. (*յէջ* 7, *տող* 29). *Սիւնիք բառը ըստ արդի լեզուագիտութեան հայերէն սեաւ բառին հետ աղերս չունի: Սիւնիք անունը կը գտնենք նաեւ ուրարտական արձանագրութեանց մէջ Սուինիա ձեւով որ ճիշդ Սեւանի կը համապատասխանէ, և ուրարտերէնի մէջ կը նշանակէ աւազան. հմմտ. Նիկոլսկի, Բեւեռագիր արձանագրութիւնք Անդրկովկասում, Թրգմ. Խաչատուր Յովհաննիսեանի, Ս. Ղազար* 1897, *յէջ* 59, *ուր կ'ըսէ.* « Suinia *կոչումն սկզբնական հասարակ անուն է «լիճ,*

» *աւազան », բայց յետոյ կարող էր յատուկ անուն նշանակել և յատկապէս ցին*
» *Կիօք–չայի։ Այս կոչումն* Suinia *միանգամայն ծածկւում է Հայոց Սիւնիք ա֊*
» *նուամբ… ոչ թէ միայն ձայնական, այլ և աշխարհագրական նշանակութեամբ*
» *համապատասխանում է Սիւնիք անուան »։*

*Զարմանալի է որ բիւզանդացի պատմչաց քով ալ ճիշդ ուղղական ձևը կը գտնենք* Σουάνια, *օրինակ իմն Թէոփիլակտոս Սիմոկատայի մէջ, որ Մօրկայ կենսագրութիւնը ընելով կը նկարագրէ Պարսից և Հռովմայեցւոց մէջ տեղի ունեցած պատերազմները՝ Գանձակի և Սեւանի մօտ.* «φέρε δὴ φέρε καὶ τὰ περὶ Σουανίαν τοῖς » Ῥωμαίοις πραχθένθα τοῖς τῆς ἱστορίας λυμῶσιν ἐπιφυτεύσωμεν » (*յէջ* 194)։ *Յետ այս յառաջաբանին կը խօսի պատերազմին վրայ յիշելով զՍուանիա նաեւ յէջ* 125, (*քանի մ'անգամ*), *յէջ* 154։

Ծ. Հրs.

12. (*յէջ* 7, *տող* 30). *Սի պիտի ըլլայ արմատ Սեւոյ, որպէս և ի թուրք լեզու Սիահ։*

13. (*յէջ* 8, *տող* 6). *Բայց մեծագոյն և յայտնագոյն նշան սեւանուն երկրիս՝ անոր նշանագոյն և եզական մասն է Սեւան կղզին, յորմէ և Ծովն կոչեցեալ, որպէս և ծովն Պարսկահայոց Կապուտան. յորմէ գուշակուի և խորագոյն հնութիւն կղզւոյն և բնակութեանն, և հաւանօրէն խնդրեալ անունն ալ Սիւնեաց։*

14. (*յէջ* 8, *տող* 9). *Խոր. Բ, ը։ — Թէ և յետ Մովսէսի յաւուրս Յեսուայ ասէ խորոնեցի եկեալ զՔանանացիս յերկրէ Քանանու ի Հայս։*

15. (*յէջ* 8, *տող* 19). *Մաններդ և Բաւմէր փասիս համարին զՑրասխ։*

16. (*յէջ* 8, *տող* 23). Rubis, *կարմրագոյն ակունք մ'է, բերք Հնդկաստանի. այժմ ընդհանրապէս Ակն ռուսակ բառի տեղ կարկեհան բառը համապատասխան կը դրուի անոր։*

Ծ. Հրs.

17. (*յէջ* 8, *տող* 33). *Արգոնաւորդք գացին Կողքիս Բսկեգեղմը գտնալու համար. այս զրոյցը, ըստ արդի գիտնականաց, ոսկեհանք մը կ'ակնարկէ։*

Ծ. Հրs.

18. (*յէջ* 8, *տող* 35). *Կամբալ, Փառանգ, Բորոն ոսկեհանքերը։*

19. (*յէջ* 9, *տող* 5). *Բոզէն Միւլլէր համարի զԿողքիս։*

20. (*յէջ* 9, *տող* 13). — *Դեհանեակ, որ գաղղիերէն* malachite *կ'ըսուի, ընդհանրապէս կանաչ կ'ըլլայ և բիւրեղային վիճակի մէջ, ոչ միշտ «ծովագոյն բիւրեղ »։*

Ծ. Հրs.

21. (*յէջ* 9, *տող* 17). *Կալմէթ, Պոչար, Պոտրան, Բոմմէլ, Բոպէն Միւլլէր,* Bible de Vence, *Պիանգոյ, հին աշխարհացոյց Վենետկոյ* (1436), *Դուաինայ հին աշխարհացոյց, Դուռնըֆոր, Պերթոյ, Բաւմէր, Հանրիոն, Մոնիէ։*

22. (*յէջ* 9, *տող* 28) *Սոյն կոչումը, որուն տեղը չէ նշանակած Ալիշան, բայց որ Ցօնակեան ճառընտիրէ մ'առնուած կ'երեւայ՝ հիմնուած է հիներուն այն համոզման վրայ՝ թէ Գեհոն և Նեղոս նոյն գետերն են, նկատելով մանաւանդ որ Նեղոս կը պատէ զԵթովպիա, թէպէտ և Թովմա Արծրունի, Բէլայ վրայ խօսած ժամանակ Բաբելոնի ալ Եթովպիա անունը կու տայ։ «Եւ քանզի էր Բաբելոն*

» վիճակեալ Սեմայ՝ և բռնազբօսութեամբ Նեբրովթ յինքն գրաւէ, և հաստատէ անդ
» զթագաւորութիւնն Եթովպացւոց» (Յէջ 6)։

Այդ է պատճառը որ Հայաստանի մէջ դրախտի երեք գետերը միայն կը տեսնէ մեր հեղինակը, անշուշտ մին՝ Եգիպտոսի թողլով։

Ծ. Հrs.

23. (յէջ 10, տող 8). Ըստ յոգունց կարծեաց ի կողմանս Տարօնոյ դրախտն։

24. (յէջ 11, տող 8). Դուռնըֆոր, Ճեմելլի, Քոխ, երեքն ալ ականատեսք տեղեացն կու հաւանին որ Կարնոյ կողմերն էր դրախտն, առաջինն Էջմիածնայ սահմանն ալ մէջը կ'առնու, որ, իր ժամանակը, հիմակուանէն աւելի մշակեալ կ'երեւայ։

25. (յէջ 11, տող 23). Քոխ, Բ, 371։

26. (յէջ 11, տող 25). Հ. Փիլիպ. կարմեղական ճանապարհորդէ յառաջին կէս ԺԷ դարու ի Հայս. լսեր էր թէ դրախտն դեռ Մասեաց հովիտներուն մէկուն մէջ պահուած է յԱստուծոյ, անվնաս ի ցրտոյ և ի տապոյ։ (Շարտէն)։

27. (յէջ 11, տող 27). Յամին 1687 դէպ ի Քրդաստան ուղեւորած քննող անձինք պատմեն, թէ քրիստոնեայք երկրին յամառմն բացօթեայ լինէին ի Պինկէօլ, որոյ հազար աղբերք հաւաքէին ի հովտին ի չորս տեղիս և գործէին չորս գետս մեծամեծս, Եփրատ, Տիգրիս, Goézo և Chalich (Գայլ), որոց ջուրք բազում անգամ խորասուզեալ ընդ երկրաւ, վերայայտնէին. դարձեալ ասէին անդ եղեալ ըզդրախտն։

28. (յէջ 12, տող 5). Ըստ այսմ և մերս Վարդան. «Դրախտն որ կայ ընդ
» Արեւելս, յերկրի արմատացեալ, ի կատարս լերինն բարձու, որ հաւասար է գըն-
» տին լուսնի, անծորրելի ուղղով, և անթառամ սաղարթիւք»։

29. (յէջ 13, տող 9). Մխ. Այրիվանեցի յետ 42 աւուրց ստեղծմանն՝ ասէ զԱդամ մուծեալ ի դրախտ։

30. (յէջ 13, տող 34). Թէ՛ Պիւֆֆոնի Ադամը և թէ՛ Միլտոնինը կը խօսին զգայարանքներու առաջին բացման և առաջին տպաւորութեանը վրայ։

Միայն Միլտոնի Ադամը աւելի բանաստեղծ է և աւելի շնորհալի գոյներով կը ներկայացնէ իր տեսածները. մինչ Պիւֆֆոնինը՝ աւելի գիտնական է։ Մին դրախտի մը վրայ կը խօսի, միւսը՝ մեր ճանչցած սովորական բնութեան վրայ։ (Սոյն հատուածները կարելի է ընթեռնուլ հայերէն թարգմանութեամբ ի Ծաղկաքաղ հատուածս, Վենետիկ, 1887, Ա. հտ. յէջ 20, և Բ հտ. 162)։

Ծ. Հrs.

31. (յէջ 15, տող 3). Ինչպէս ըսինք 4° ծանօթութեան մէջ, արդի լեզուագիտութեան դէմ պիտի ըլլար ո՛ և է լեզու մը – ինչպէս որ զայն կը ճանչնանք հիմայ, նախամարդոյն ընծայել։ Բառերու հնագոյն ձեւերը ամփոփուած չեն մասնաւոր լեզուի մը մէջ, այլ դրուած այլեւայլ ազգերու քով, և լեզուաբանութիւնն է որ զանոնք պիտի հաւաքէ, դասաւորէ, ըստ կարելւոյն նախնականը վերականգնելու համար, որ անշուշտ շատ քիչ բառ կը պարունակէր, վասնզի բառերն ալ զուգահեռաբար կ'աճին՝ մարդկային գաղափարներու հետ։

Ծ. Հrs.

Digitized by Google

32. (*յէջ* 15, *տող* 30). **Արիստակէս Վրդ. յաղագս Նաւակատեաց.** «*Աւուրս » իս* (*ասէ կացեալ*) *Ադամայ ի պատուէր Արարչին… Զայս աւանդութեամբ ի » բնախօս արանց լուայ, զոր և կարեւոր համարեցայ ի տեղւոջս գրով նշանակել. » քանզի կարի հաւատարիմ էր ասողն*»: – *Զի՞նչ արդեօք տայր մեզ հաւաստիս: Հին Ցօնաւնակք, ոչ աւուրս, այլ ամս* 40 *ասեն կեցեալ ի դրախտին, և ոմանք* 30 *ամ ըստ կենաց Տեառն մերոյ:*

33. (*յէջ* 21, *տող* 10). *Եպիփանու սոյն գրութեան յունարէնն ալ հասած է մեզի. սա վերնագիրն ունի.* «’Αποκαλῦψες τοῦ Αδάμ». *Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան ընդարձակ տեղեկութիւններ կու տայ իւր* «*Հին կտակարանի անվաւեր գրոց*» *ուսումնասիրութեան մէջ, համեմատելով զայն՝ ուրիշ Ադամգիրք կոչուած աստուածաշընչական վիպասանութեանց հետ,* (*տպ. Վենետիկ*, 1898):

*Ադամայ դրախտէն աքսորուիլը քրիստոնէութենէ առաջ եւս, հրէական շրջանին մէջ, գեղեցիկ գրոյցներու առիթ եղած էր, և թարգմանութեամբ ծաւալած գրեթէ ամէն ազգերու մէջ: Հայկականները, որ ժողովրդեան մէջ ալ դեռ շրջան կ'ընեն, այլ և այլ դարերու արտադրութիւնք են, Հ. Սարգիս Վ. Յովսէփեան հաւաքեց զանոնք Ս. Ղազարու ձեռագրաց մէջէն, և հրատարակեց հետագայ վերնագրով.* «*Թանգարան հին և նոր նախնեաց, Ա հտր. Անկանոն գիրք հին կտակարանաց, » Վենետիկ, Ս. Ղազար*, 1896». *լատիներէնի մէջ* Liber poenitentiae Adamae, *յունարէնի մէջ* Βίος Αδάμ *տիտղոսը կը կրէ: Այդ գրոյցները գիտնական աշխարհի, մանաւանդ բողոքական շրջանակի համար, մեծ կարեւորութիւն ունին, ըլլալով Աստուածաշնչի բնագրական քննութեանց համար յաճախ աքանչելի աղբիւրներ. անոր համար ալ շատ ուսումնասիրուած, օր. իմն, Հառնաքէն*, Geschichte der altchristl. Litteratur. Leipzig, 1893, *Հէնրիկոս Գելցեր անուղղակի իւր Die byzant. Chronologie Leipzig. 1885. Դիլման Das christliche Adambuch des morgenlandes, 1853, Տրումպպ Der kampf Adams. և այլն* (*Տես այս ամէն կէտերուն նկատմամբ Հ. Բարսեղ Վ. Սարգիսեանի Ուսումնասիրութիւն անվաւեր գրոց հին կտակարանի էջ* 8–65):

Ծ. Հrs.

34. (*յէջ* 23, *տող* 11). *Եբրայեցերէն Մարդն կ'ըսուի իշ, կինն իշշա. ըստ այսմ Պարսք զառաջին մարդն կոչեն Մեշիա, զկինն Մեշիանա, նման իմն ի լատինն՝ մարդն վիր, կինն վիրակօ: — Առ մեզ և առ արիականս Այր անուն սեփական մարդու և կորճի. իսկ կինն՝ համանունութեամբ առն՝ Էգուար կոչի. և այսմ կու յարմարի Ադամայ ըսածն.* «*Սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ*» (*եղար, իբր եղիալ յառնէ*)*: Սկանտինաւեանք Ասք կոչեն զառաջին մարդն, Էմպլա՝ զկինն:*

35. (*յէջ* 23, *տող* 30). **Թուական. Ստուգ. Ա.** 322, *է յայլ կարծիս. հաւանական աստ՝ փութով ընդ մերժիլն Ադամայ ապականել դրախտին և նմանել շըրջակայ տեղեացն:*

36. (*յէջ* 23, *տող* 35). **Եզեկիէլ. լա**, 8–9. *զԱստուծոյ նմանցնելով բարձր և մեծուղէշ նոճոյ մը, կ'ըսէ թէ* «*Նախանձեցան ընդ նմա ամենայն ծառք դրախ- » տին փափկութեան Աստուծոյ*». *այնպէս կ'երեւցնէ թէ դրախտն դեռ չէն կայր. թէ և բանաստեղծութեամբ կրնայ անցեալ ժամանակէն ալ ներկայացնել:*

37. (*յէջ* 34, *տող* 8). **Մխ. Այրիվ.** «*Քրոբէական սուրն՝ որ պահէն զդրախտն՝*

Digitized by Google

շանթիքդ է որ անկանի յերկնից յահ և յերկիւղ ամպարշտաց. իսկ գեղարդնա-
» ւոր և աշտէաւոր սերովբէքն՝ ընդ հեռանալն Ադամայ ի դրախտէն՝ և նա վե-
» րացաւ»։

38. (յէջ 24, տող 23). Հ. Ինճիճեան եւս գրութիւն մ'ունի «Մնացորդք նշանաց
» Եդեմայ կամ տեղւոյ դրախտին» Հնախօս. Ա, 266։ — Նոյն հօր մի և նոյն նիւթի վրայ աւանդածները կարելի է գտնել նոյն Հնախ. 245-264։

Ծ. Հրs.

39. (յէջ 25, տող 26). Սումէ այսպէս կ'երգէ (Աստուածային վէպ, Ե).

Հովանաւոր ափունք Տիգրեայ, ո՜վ Հայաստան դու երկիր,
Զոր իւրացոյց Եւայն եղեալ առ յԵդեմայ տարագիր։
Bords ombragés du Tigre, Arménie!
Pays qu' Eve adopta quand l' Eden l' eut bannie.

40. (յէջ 25, տող 33). Այսպէս կը դնէ Bible de Vence:

41. (յէջ 25, տող 40). Փաւստոս Բուզանդ, խօսելով սոյն Եպիփանի վրայ կ'ըսէ. (Գլ. ԻԵ. էջ 994). «Եպիփան, և էր սա ազգաւ յոյն և նստէր սա ի մեծի
» լերինն ի տեղի դիցն՝ զոր կոչէն աթոռ Անահտայ»։

Ծ. Հրs.

Ընդ մէջ Եդեմայ և Նայիրեայ հաւանօրէն դժուարագնաց, նեղ լեռնանցք մը կամ կիրճ մը կայր և թերեւս հոն էր պահապանն հրասուր. յայս ակնարկէ սըրբազան երգիչն մեր, «Սովաւ (խաչիւ) մտցուք ընդ նեղ դուռն անձձացեալ ճա-
» նապարհին, որում ցանկային երկրածին որդիք մարդկան»։

Ծ. Հեղ.

•

42. (յէջ 26, տող 9). — Մխ. Այրիվանեցի «Ցայլում ուրբաթու յանցեան
» նախաստեղծքն և ելին ի դրախտէն, և անկան ի Սէլան կղզին»։

43. (յէջ 26, տող 13). Անգղիացի մը երկու դար յառաջ։

44. (յէջ 26, տող 27). Ի պատմութեան միում թարգմանելոյ յԵրուսաղէմ ի Սիմէոնէ հոգեւոր Տեառնէ գրի 18 ամ և 2 ամիս։

45. (յէջ 26, տող 32). «Ցարարչութենէն զժամանակս ոչ ոք կարասցէ գիտել
» ի մարդկանէ, բայց միայն յարտաքսելոյն Ադամայ ի դրախտէն»։ Սարկաւագ վարդապետ։

46. (յէջ 27, տող 8). Վարդապետ ոմն ասէ. «Եւա յերեսուն տարին մէկ
» փոր կու ծնէր Ջուխտ. մէկն արու և մէկ աղջիկ»։ Իսկ Մխ. Այրիվանեցի. «Եւա երկու երկու ծնանէր, և ծնաւ 15 Ծնունդս»։ Սա կ'ընծայէ 30 զաւակ, իսկ առաջինն 60։

Ինչ որ Հ. Ալիշան հոս վարդապետ ոմն կոչէ է Պատմութիւն որդւոցն Ադամայ Կայենի և Աբելի (տպ. Ս. Ղազար. 1896, ի Հ. Սարգիս Յովսեփեանէ)։ Հ. Բարսեղ Վ. Սարգսեան իւր Անվաւեր կտակարանաց ուսումնասիրութեան մէջ կը ցուցնէ թէ այդ աւանդութիւնը Յունաց և Ասորւոց քով ալ կայ (Հմմտ. Մեթոտիոս, Գլ, 3. Ապուլֆարաճ, Պտմ. Հարստութեանց, էջ 4, Եւդեքիոս Աղեքսանդ-

*բացի, Տարեգր. Հտ. Գ, էջ 15. Միք. Ասորի Ժամանակագրութիւն, Սինգեղոս և Կեդրենոս։ իսկ ի մերայնոց (հմմտ. բաց ի Մխիթար Այրիվանեցիէն Վարդան և Սամուէլ)։*

Տ. Հրs.

47. (*յէջ* 27, *տող* 12). *Վարդան, Մխիթար Այրիվանեցի։*

48. (*յէջ* 28, *տող* 23). *Ցառասպելայօղ վկայաբանութեան Ցովսիմոսի Ռափեւս կոչի հրեշտակն կամ ոգին՝ «որ ընդունէր զզոհն Աբելի, և իջեալ դիզէր » զսեղանն, առ ի պատրաստական շինելոյ զընծայսն իւր»։*

*Աւանդեն Հնդիկք թէ յառաջին դարուն մարդիկ մեծ պատարագ մը մատուցին Աստուծոյ, որ իջաւ յերկիր տեսնալու զայն. և թուի թէ այս պատարագն Աբելի էր։*

49. (*յէջ* 29, *տող* 2). *Եպիփան, նման այլոց աւանդողաց, այսպէս նկարագրէ. «Ասէ Կայէն ցԱբել զուարթագին երեսօք» երթանք դաշտ զբօսնելու. Աբել կու խաբուի, որթատունկի մը քով կ'երթայ, իր դաժան եղբայրը զայն կու պատառէ ճիւղերով, և այսպէս կու դիւրացնէ մարդասպան գործը։ Այսպէս կ'աւանդէ Եպիփան իւր Յաղագս սպանմանն գործին մէջ, Գլուխ Ա։*

50. (*յէջ* 29, *տող* 7). *Վարդան առ Հեթում։*

51. (*յէջ* 29, *տող* 30). *Ոմանք մեծագոյն նշան՝ զդողալն և երերալն իմանան. այլք զուտելն և զկշտանալն, զդադրելն և զհանգչիլ, զթմրիլն և զքնանալ։*

*Հայոց մէջ այնքան տարածուած էին Կայէնի վրայ յերիւրուած զրոյցները՝ որ յիշատակարան կամ արձանագրութիւն գրողք, յաճախ իրենց կտակը ջնջողները նզոված ժամանակ կը չարամաղթեն երերալ Կայէնի պէս. «Եղիցի եւեւեալ և » տատանեալ, որպէս Կայենի» կ'ըսէ, օրինակ իմն, 1233ին գրուած արձանագրութիւն մը որ կը գտնուի Գուգարաց Կայեան բերդին մօտ (տե՛ս սոյն բառը Բնչխ. Բառ. յէջ 271, ուր զետեղուած է ամբողջ արձանագրութիւնը)։*

Տ. Հրs.

52. (*յէջ* 30, *տող* 4). *Եթէ տեղ մը յարմարցնել պէտք է՝ որպէս Նայիտայ զՆեբերօնս, Ենովքայ ալ յարմարցնենք զԱնի, մանաւանդ որ ի Թուրքաց երբեմն կոչուեր է Եանաք գալէսի։ — Տ. Հեղ.։*

*Հ. Ալիշանի յիշած կոչումը կը գտնուի յէջ* 6 *Վարդան պատմչի (Վենետիկ,* 1862) *և բաւական մթին է. «Ղամէք խոստովանի կանանցն այր և երիտասարդ սպանեալ, զոր ասեն եղբարք արդարոյն Ենովքայ, և ոչ թէ զԿայէն և զորդի նո- » րա, զոր նման հօրն ասեն, զոր Աստուած ասաց՝ ոչ ումեք սպանանել զնա»։*

Տ. Հրs.

53. (*յէջ* 30, *տող* 18). *Վարդան Պատմիչ ասէ աւանդել ոմանց՝ թէ այրն սպանեալ՝ էր Կայէն, և երիտասարդն՝ որդի նորա, բայց ըստ այլոց՝ սպանեալքն էին եղբարք արդարոյն Ենովքայ, զորոց կանայս էառ Ղամէք. իսկ Կայէն նախատալից եղեալ՝ մեռանի։*

54. (*յէջ* 30, *տող* 25). *Ոմանք զԿայէն ապաշխարեալ և փրկեալ համարին, հասարակաց կարծիքն հակառակ է այդմ։*

55. (*յէջ* 30, *տող* 27). *Եպիփանեանն յետ* 7 *անգամ* 7 *տարւոյ* (49) *սպանուած համարի զԿայէն ի կոյր Ղամէքայ։*

56. (*յէջ* 31, *տող* 17). *Եղ. Ջմիւռնիացի ասէ՝ ըստ Աֆրիկանու, ՑՆ. Դամասկ. և Ենանոսի*։

57. (*յէջ* 31, *տող* 19). *Մահմետականք երկու որդի ալ կ'առասպելեն Ադամայ՝ Ապալհարեբ և Խոքայել*։

58. (*յէջ* 31, *տող* 27). *Ըստ Մովսէս Խորոնեցւոյ. Ա. « Յօգնականութիւն կոչէ » զԱստուած »*։

59. (*յէջ* 32, *տող* 10). *Եւտիքիոս Տարեգր. առ փաբրիկ*. 241։

60. (*յէջ* 32, *տող* 23). *Ոմանք համարեցան ի Քեբրոն Պաղեստինոյ թաղեալ զԱդամ. վասն զի բանն Յեսուայ ԺԴ.* 15 « *Անուն Քեբրոնի էր յառաջ քաղաք » Արբոկ. նա էր մայր քաղաքաց Ենակիմացն ». յայլ թարգմանութիւնս ասի. « անդ էր Ադամ առաջինն հսկայից »*։

61. (*յէջ* 34, *տող* 12). *Ոսկեփորիկ. « Եհան Սէթ զազգ իւր զլերամբն յանդի- » ման դրախտին. իսկ Կայէն և ազգ իւր բնակեցաւ՝ ուր եղբայրասպանութիւնն » գործեցաւ »։ Ըստ այսմ և Մեթոդիոս*։

62. (*յէջ* 35, *տող* 7). *Ենովքայ ընծայուած երկասիրութիւնը հետագայ տա- ղօսը կը կրէ. « Ենովքայ արդարոյ տեսիլ ». երկու ձեռագիր միայն հասուցած են զայն մեզի. օրինակ մը Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքին մէջ, ուրիշ մը՝ Էջ- միածնայ մէջ* (*ձեռագիր թիւ* 924)։

*Նոյնպէս կրկին հրատարակութիւն ունեցած է. նախ Արարատ ամսաթերթի մէջ*, 1894*ին, երկրորդ Հ. Սարգիս Յովսեփեանցի հրատարակած Թանգարան հին և նոր նախնեաց գործին մէջ* (*Վենետիկ*, 1896)։

*Ենովքայ երկասիրութիւնը քննադատուած է Հ. Բարսեղ Վ. Սարգիսեանէն Անվաւեր կտակարանաց ուսումնասիրութեան մէջ* (*Վենետիկ, Ս. Ղազար*, 1898, *էջ* 133)։

Ծ. Հրs.

63. (*յէջ* 35, *տող* 16). *Ջայս աւանդէ Յովսեպոս. Խորէն. « Սորա երկուցն » յարձանագրութեանց ընդդէմ երկուց հանդերձելոցն, թէ որպէս ասէ Յովսեպոս, » թէպէտ և ուրն անյայտ ». (կամ « ուրանան՝ յայտ է »)*։

64. (*յէջ* 35, *տող* 20). *Վանական վարդապետի*։

65. (*յէջ* 35, *տող* 33). *Ոսկեփորիկ. « Սեթայ որդիքն փոքր էին, կարճամէջք » և կարճավիզք »*։

66. (*յէջ* 37, *տող* 32). *Թողլով զտարաձայն կարծիս քաղդէական շրջանացս, յիշեցուք զհաւատարիս այսպէս իմանալոյ զամսն. Կալլիսթենէս ասէ զաստեղա- քննութենէ Քաղդէացւոց զԱղեքսանդր* 1903 *ամ. Եպիգենէս* 720,000 *ամս ասէ, զորս փոխեալ յաւուրս լինին* 1977 *ամք*, 68 *ամ աւելի, և թուի ժամանակ գրու- թեան հեղինակին նոյնքան ամօք կրսեր քան զԿալլիսթենէս*։

67. (*յէջ* 38, *տող* 7). *Տէվինեօլ։ — Նմանութիւն անուանց Ազովրոս և Ովրոս, Աղազ – Արոս և Առէս և այլն*։

68. (*յէջ* 38, *տող* 16). *Զլոկոս յիշէ Սոեփ. բիւզանդացի*։

69. (*յէջ* 39, *տող* 20). *Վասն զի յերկրորդ ամի ջրհեղեղին* 100 *տարու էր, երբ ծնաւ զԱրփաքսադ։ Դարձեալ Ս. Գիրք* (*Ծննդ. Թ.* 21) *յասելն « Սեմայ... » եղբօրն Յաբեթի երիցու », Յաբեթի երիցութեանն վկայէ։ Ըստ մերոց Յայսմա- ւուրաց* (*մայիս* 17) *Սեմ է անդրանիկ ծնեալ* 100 *տարի նախ քան զջրհեղեղն.*

Digitized by Google

*Քամ ծնեալ յետ* 30 *տարւոյ, և Յաբեթի՝ այլ եւս երեսուն տարւոյ. որով ի մտանելն ի տապանն՝ յետինս քառասնամեայ էր, Քամ* 60 *ամաց Սեմ՝* 100 *ամաց: Քամայ կրսերութեանն ալ վկայէ Ս. Գիրք. Ծննդ. Թ.* 24:

70. (*յէջ* 39, *տող* 28). *Ըստ Յունաց՝ Յափետ մի ի Տիտանանց ունէր կին զԱսիա:*

71. (*յէջ* 41, *տող* 11). *Շատ մեկնութիւնք և հաշիւք կան չափու տապանին, որ էր* 300 *կանգուն երկայն,* 50 *լայն՝ և* 30 *բարձր. արդ կանգունս այս, ըստ ոմանց է եգիպտական կանգուն. որով երկայնքն է* 512′ *իտալական,* 85′ *լայն,* 51′ *բարձր. և բովանդակէ* 42413 *տակառաչափ. ընդարձակագոյն քան զՍ. Պետրոս տաճար Հռովմայ:*

72. (*յէջ* 41, *տող* 20). *Թովմ. Արծ.* «*Ոմանք ասեն ի Լաւոդիկիա փռիգացւոց շինեալ տապանին, որ յերից մասանց երկրի ասիական կոչի կողմ, և յոյժ անհաւատալի են ասացեալքն. քանզի սուրբ Նահապետացն տասանց՝ բնաւ ոչ երբէք ումեք երեւի ասել ի միջերկրայս ունէր բնակութիւն, այլ ի հրամանէ Աստուծոյ՝ յանդիման դրախտին բնակելով*». *Թովմ. Արծ. Ա դպր. Ա Գլ.* 27 *էջ* (*Ս. Պետերբուրգ,* 1887):

*Խոր. Աշխարհգ.* «*Կիւդոս* (*քաղաք փռիւգիոյ*) *այսինքն տեղի տապանին Նոյի » շինելոյ, եթէ առասպել է, և եթէ ճշմարիտ՝ ոչ գիտեմ*»: *Այսինքն Քիվոդոս ըստ Յունաց, զաւաթ ըստ մեզ: Այս յիշատակս վաւերացնեն Ապամիա փռիւգիոյ քաղաքի հին կայսերական դրամքն, որոց վրայ տապանին պատկերը դրոշմեալ է:*

73. (*յէջ* 41, *տող* 23). *Ս. Գիրք ասէ ի* ԺԷ (*ըստ մերումս* ԻԷ) *աւուր* Բ *ամսոյն ցսկիզբն ջրհեղեղի. ոմանք զամիսս իմանան Նոյի կենաց և ծնունդի օրէն հաշուելով. այլք Հրէից տարին, բայց ոմանք զքաղաքականն և ոմանք զսրբազանն. մեք կարծեմք զյետինս, այսինքն զսրբազանն որ սկսանի ի գարնայնի հաւասարակօրէին, ի* 21 *մարտի ըստ նոր տոմ. որով մուտք Նոյի ի տապան լինի ի* 27 *ապրիլի. ըստ այսմ հաշուեմք և զայլ աւուրս դիպաց ջրհեղեղին, որ ի թարգմանութեան մերում տեւեաց ամ մի ամբողջ, իսկ ըստ այլոց և ըստ մեզ* 10 *օր աւելի, այսինքն* 375 *օր մինչեւ յելս ի տապանէն: Յայսմաւուրք յ*17 *մայիսի ասեն զսկիզբն ջրհեղեղիս:*

74. (*յէջ* 41, *տող* 25). *Վասն Անուղեայ աւանդէ ոմն ի մերոցս՝ թէ յաւարտել զշինութիւն տապանին՝ ի քուն մտաւ, և երբ արթնցաւ՝ արդէն ջուրն սկսեր էր ծածկել զերկիր՝ և տապանն հեռացեր. բարձր լերան մը վրայ ելաւ՝ և հոն խեղդեցաւ. և երբ Նոյ արձկեց զագռաւն՝ Անուղեայ դիակն գտնելով՝ սկսաւ ուտել և չդարձաւ ի տապանն:*

75. (*յէջ* 41, *տող* 29). *Վարդան առ Հեթում.* «ԺԵ *կանգուն ջրոյն բարձրանալն քան զբուն լեառն բարձր, պատճառն այն էր զի հսկայքն այնչափ էին, » զի ծածկեսցէ զնոսա*»:

76. (*յէջ* 42, *տող* 13). *Աբիւդենոս* 3 *օր վերջը ասէ արձակել զագռաւն:*

77. (*յէջ* 42, *տող* 33). *Թէպէտ և դարձեալ տարախոհք ոմանք ինչուան ի Սկանտինաւիա, ի Հնդիկս, ի Չինս և նաեւ յԱմերիկ իջուցեր են տապանն:* Իսկ *մօտագոյն տեղերէ կ'անուանեն ոմանք զԵլպրուզ ի Կովկաս կամ ուրիշ լեռը, զԱընճար Ասորւոց, — Կելենիս ի փռիւգիա, Պոնտական լեռներ, Ճանեաց աշխարհ, և այլն:*

Digitized by Google

78. (*յէջ* 43, *տող* 9). Յ*Արարատ* (*Մասիս*) *ասեն* Եղիշէ, Կալմէթ, Ս. Հերոնիմոս. *փիլոսոփ*ոփ Գ. Խը:

— Ցայսմ. Արեգ. «*Նստաւ տապանն ի լերինն Արարատայ որ է Աւագ Մա-*
» *սիս. և այն գովութիւն և պարծանք է ազգիս Հայոց և աշխարհիս մերոյ: Եւ*
» *ոչ միայն տապան այլ և Բ գետքն, Տիգրիս և Եփրատէս*»:

Թոմ. Արծ. «*Տապանն յարեւելեայն ի միջոց աշխարհի, հանգեաւ ի Լերինս*
» *Կորդուաց*»:

— Տօն պատշաճ. «*Նոյ, որոյ ասացաւ, Սա հանգուսցէ զմեզ պատարագաւն որ*
» *արար ի սեղանն զոր շինեաց ի լեառնն Կորդուաց*»:

79. (*յէջ* 43, *տող* 12). Բազմավէպ, Բերոսոս, Յովսեպոս: — *Ոմանք զՆպատ լեառն համարեցան յանուն Նոյի իբր Նոյապատ կոչած. և այլք զնոյն Լուպար յիշեալ յԵպիփանէ. ըստ այսմ Նոյի Նախիջեւանն այլ կրնայ յարմարիլ Նաւկայ գեղջ, որ չէ շատ հեռի ի Նպատայ*:

80. (*յէջ* 43, *տող* 17). Եղիշէ Մեկն ծննդ. «*Արարատու լեառն ոմանք զԿոր-*
» *դուացն ասեն*»: *Այս սուրբ վարդապետս զանազանութիւն մ'ալ կ'ընէ*. «*Գոյ և*
» *ի Պաղեստինեայ և ի Գամիրս Արարատ, այլ մերս Արարաթ լսի*». Սիբիլլական *մատեանն ի Փռիւգիա համարի զԱրարատ. և կարծի Մոնտանոսի Փռիւգացւոյ հերեսիովտապետի հնարեալ զՍիբիլլական տաղսդ գէթ զԱ և զԲ երգսն*: Սարարադ *ասեն* Բուզանդ, Կիւրեղ *ի մեկն ծննդ.* Բարսղի Հարցման, Խորոնեցի *ի պատմ.* Հռիփս:

*Տպագրական սխալմամբ Հ. Ալիշանի բնագրին մէջ Սարարադ անլուր անունը դրուած է, որ պիտի ըլլայ Սարարադ*:

*Նորայր Բուզանդացի շատ հանճարեղ կարծիք մը յայտնած է այս մասին. կ'ըսէ նա թէ փոխանակ Ս. Գրոց հայ թարգմանութեան մէջ՝* «*ի լերինս Արարատայ*
» *կարդալու՝ պէտք է ընթեռնուլ՝ ի լերին Սարարատայ*», *զոր Բուզանդ յիշատակած է* (*յէջ* 22, 24):

Ն. Հրs.

81. (*յէջ* 43, *տող* 27). Տես Եպիփան. Հերետկ. Ա. ա. 4 և 5 և Նիկ. Դամասկացի: — Կեդրենոս, Բուզանդացի պատմիչը յետ սա տարտամ բացատրութիւնն ընելու «τὰ ὄρη 'Αρ ράτ ἐν Παρθίᾳ τ ς 'Αρμενίας εἶναι, τινὲς δὲ φάσιν, ἐν Κελαιναῖς
» τῆς Φρυγίας» (Անդ, *յէջ* 20). *յէջ* 21 *կ'ըսէ.* «*Նոյ տնկեց այգի ի լեառն Լուբան*
» *Հայաստանի*», «Νῶε ἐφ ευσεν ἀμπελῶνα ἐν ὄρει Λουβὰν τῆς 'Αρμενίας»:

*Կ'երեւի թէ կամ Կեդրենոս Եպիփանէն առած է, կամ այսպիսի աւանդութիւն մ'ալ կը գտնուէր հնոց քով, թէ և դժուարին է Հայաստանի մէջ Լուբան անուամբ լեռ գտնել*:

Ն. Հրs.

*Միլիաս այս՝ ըստ ոմանց է Մանաւազեան երկիրն, ըստ լատին թարգմանութեան Սուրբ Գրոց. Պարիսն՝ ըստ ոմանց Վարսալ Բագրեւանդայ, ըստ այլոց Պալիս ընթեռնլի, լծորդ Մասեաց: Ոմանք ըստ յունին փարիս* «*նաւ*» *թարգմանեն, և ոմանք կարծեն* «*բարձր*»: — Ս. Ամբրոսիոս՝ *կոչէ* «*Կուադրատ*», Փրեկուլմին, Պոզաձչիդ՝ «*Ակիլա*», Յովսեփոս «*Կերոն*» *յԱդիաբեն*, Արատոս, Յհ. Ոսկերերան, Արիգենոս՝ *պարզապէս* «*լերինք Հայոց*»:

Digitized by Google

82. (յէջ 43, տող 29). Խոր. Աշխարհ. « Ջոր և Կոստանդիանոս Անտիոքացի » ի քրիստոնէական տեղագրութեան ասէ յաղագս տապանին անցանելոյ յարեւե֊ » լեան երկրէն առ մեզ ի մէջ կոյս »։ (Աշխարհացոյց, յէջ 589, տպ. 1865)։

83. (յէջ 44, տող 19). Այս խնդիրներուն վրայ ընդարձակօրէն գրած է Սիմոն Վէպէր գերմանացին Հանդէս Ամսօրեայ 1901։

Թոփչեան նոյն գրութեան համառօտութիւնն ըրաւ Նոր Դարի մէջ, 1901, 152–4։

Միսքճեան Վ. 1901ի « Հանդէս Ամսօրեայ »ի մէջ մանրամասն ուսումնասիրեց թէ որ լերան վրայ իջած էր Նոյայ տապանը։

Murad գերմանացին առանձին գործ մը նուիրեց սոյն խնդրին (որ թարգմա֊ նեցաւ նաեւ ի Բազմավէպ Հանդիսարանի, 1902), հետագայ խորագրով. « Ararat und Masis », Heidelberg, 1901։

Հ. Ալիշան կ'ըսէ. « Այսչափ կարծեաց և զրուցաց միաբանութիւնն այս է նախ թէ տապանն և Նոյ իջան Հայոց երկիրը բարձր լերան մը վրայ. և երկրորդ որ այս լեռն կամ [illegible] [illegible] Արարատայ պարուն մէջ էր և կամ ի Կորդուացն »։

Անհրաժեշտ չէ այս երկուքէն մէկը ընդունիլ, որովհետեւ երրորդ մեկնութիւն մ'ալ կայ. Արարատ բառը հոս լեռ յատկանշելու տեղ, կրնայ աշխարհ մը նշա֊ նակել. և « ի լերինս Արարատայ » կարող ենք հասկնալ ի լերինս Ուրարտուի։ – Գիտենք թէ Ուրարտուի կեդրոն էր Վանը. Գրգուռ լերան աւանդութիւնը, այսպիսի մեկնութիւն մը չա՞կնարկեր, և դիտմամբ գործած չե՞ն այն Սուրբ Հայերը որ պարզապէս « ի լերինս Հայոց » կը դնէին։ — Ընդհանրապէս այժմ Արարատ բառը այսպէս կը մեկնուի։

Ծ. ՀՐԱՏ.

84. (յէջ 44, տող 30). Աննիոս ստուգաբանէ (Արարատ) յերասխայ, իբր Արա֊ քսատ։ — Նիպուհր 416 զՈւրարտու ասէ ձայնափոխութեամբ եղեալ Արարատ։ Տես զկնի վասն անուանց Հայաստանի։

85. (յէջ 44, տող 33). Առաջին երկիր բնակութեան մարդկան զոր Զանդիկք կոչէին Էրմէնէ–վէճոյ, առ նախնի Հնդիկս ի սանսկրիտ կոչէր Արիա–Վարդա և նշանակէր Արեաց երկիրը։ (Ուիլսըն)։

86. (յէջ 45, տող 11). Թէ և չեմք կրնար ստուգել Րատ կամ Արատ կոչումն։

Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան հմտալից յօդուածի մը մէջ որուն վերնագիրն է [illegible] Մովսիսի Խորենացւոյ (Բազմավէպ 1882, էջ 54, 111, 224, 308 դարձեալ 1883 յէջ 35, 123, 220, 315), Րատ մասնկի նշանակութիւնը գտած ըլլալ կարծէ.

« Արարատ բառն ընդհանուր առմամբ՝ եբրայական և ասորի լեզուաց մէջ » [illegible], [illegible] և կամ [illegible] կը նշանակէ։ Սակայն եթէ վերլուծելու ըլլանք՝ երեք մաս կ'ունենանք, և անոր արմատականն է Ար (Ar) որ լեռ կը նշանակէ՝ ճիշդ նշանակութեամբ, ա (a) միացուցիչ է այն արմատակա֊ նին ընդ րատ (râd կամ râdha) մասնկան, որ արիական լեզուի աւելի կը վերա֊ բերի, քան եբրայականի, և տուող կամ տէր կը նշանակէ, հետեւաբար Ար–ա–րատ կը նշանակէ լեառն Տեառն։ (Բզմ. 1883, էջ 133)։

Նոյնը կ'ըսէ.

«Իսկ ըստ հայերէն կազմութեան լուծելով զԱրարատ բառն, անոր արմատականն կ'ըլլայ Արա, հայ նահապետի մը յատուկ անուն, և վերջնական մասնիկն րատ, որ արիական լեզուաց մէջ՝ ինչպէս շատ, պատ, այնպէս ալ այս մասնիկն տեղ, բնակութիւն, արարք, և դաշտ կը նշանակէ»։

Այս ամէն ստուգաբանութիւնները այնքան հաւանական չեն երեւիր, քանի որ Արարատ պարզապէս Ուրարտուի այլաձեւումն է։ Այս վերջինին վերլուծումը միայն՝ կարող է գոհացուցիչ ըլլալ։ Արդեօք Ուր-արտու անուան մէջ իրենց Արդ-ինի չաստուածոյն անունը կարող չե՞նք տեսնել (հետեւաբար Ուրարդու = Երկիր Արդ-ինիի) ինչպէս որ Հայտիս չաստուած ալ՝ Խալդի-ացիք անունը յառաջ բերեր էր։

Ծ. ՀՐՏ.

87. (յէջ 46, տող 4). Մասեաց բարձրութիւն հաւանական փաստ մ'ալ է տապանին ընկալուչ ըլլալու, բայց ոչ թէ բոլոր երկրիս բարձրագոյն կէտն էր, այլ և ոչ շրջակայ աշխարհաց մէջ բարձրագոյնն. վասն զի Ելպրուզ աւելի քան զ1000 բարձր է քան զՄասիս, և Տէմաւէնտ այլ աւելի քան զԵլպրուզ։

88. (յէջ 46, տող 15). Clovijo ճանապարհորդ յամին 1404, Գալմարին կոչէ զառաջին քաղաքն բնակութեանն, մերձ յԱրարատ, փոխանակ Նախիջեւանու. Ioh. Aventinus, Գիրք Ա, գլ. Գ. 8–9. Subsidentibus deinde aquis paulatim, navis ipsa recubuit in vertice Gordei montis Majoris Armeniae. Siccatoque orbe egressus Noas (ita enim ille vocabatur) Deo sacrificavit et litavit. Urbem inde *Sagalbinam* cujus Ptolomaeus quoque meminit (juxta Araxim amnem Majoris Armeniae) condit, ubi cum filiis habitare caepit.... Cum itaque Armenia oppleta esset hominibus, anno 101° id quod et Moses tradit si diligentius consulueris, (hoc anno Peleg natus est Hebro) posteaquam genus humanum in Armenia riparatum fuit, divisit ipse Noas terram, servatis antiquis nominibus (uti ante diluvium fuerat aquarum) in partes tres, Asiam etc.

Decimo deinde anno reversas in Armeniam Tuisconis (quem in Armenia genuerat) posteros adoptat, omnem haud dubie Italiae orbisque potiundi. Ipsum inde ex Armenia in Europam mittere costituit et parat. Quicquid intra Rhenum et Tanaim amnes continentus, eidem adsignat. Authores rerum Germaniam vocant et.

89. (յէջ 48, տող 13). Այդ անգղիացի ճանապարհորդն էր Sullivan։

90. (յէջ 48, տող 19). Դեռ նոր ատեններս այլ (1861) տեղացի չէյխ մը պատմեց որ ամենուն ծանօթ է հոն լեռը, և ամէն տարի Ջրհեղեղի տօնայիշատակը կը կատարեն։

91. (յէջ 48, տող 6). Ժամանակն անյայտ, այլ թուի ոչ յետ քան զ'Է դար։

92. (յէջ 49, տող 9). Ի վարս Հարանց յիշի ծեր ոմն բնակեալ յաղբերն Ս. Յակոբայ, այլ զի յիշէ նա զՄաքենոց վանս որ յԸ դարու շինեալ ապա չէ շատ հին։

93. (յէջ 49, տող 15). Ֆրոթմուտ փրանկ վասն սպանութեանց ի թագաւորութեան Լոթարիոսէ և ի Պապէն Բենեդ. Գ. ստիպեցաւ յուխտաշրջութիւն, և յետ Պաղեստինեայ եկն և ի Հայս յուխտ տապանակիր լերինն յամին 855–7։

94. (յէջ 49, տող, 19). Երանելին Ոդերիկոս փրանկիսկեան ի սկիզբն ԺԴ դարու անցանելով Արարատայ քովէն փափագէր ելանել ի քնին տապանին, այլ ոչ թողին ընկերակիցքն անելանելի ասելով զլեառնն։

Մանտըվիլ ի նոյն դարու, ասէ մինչեւ այն ատեն երեւար տապան. ի պայ-

Digitized by Google

ծառութեան օդոց, և բազումք ասէին երթեալ և մտեալ ի նմա. բայց ոչ հաւատայ վասն սառնապատ բարձրութեան լերինն։

95. (յէջ 50, տող 2). Բայմէր՝ Պաղեստին. — Բիդդեր։

96. (յէջ 50, տող, 32). Վարդապետ ոՄն մեր ասէ, վասն Նոյի ասացեալ. «Սա » հանգուսցէ զմեզ պատարագաւն որ արար ի սեղանն զոր շինեաց ի լեառն Կոր» դուացն »։ Այլ ոՄն. «Նոյ օրհնեցաւ իւր որդւովքն ի լեառն Մասեաց, աստուա» ծային բերանովն »։

97. (յէջ 51, տող 35). Ոչ միայն սեղան մը այլ և տաճար մը շինեցին Նոյեանք, ըստ Մեթոտիոսի, հոն, «հեռի իշխանութենէ իւրեանց Ծնացելոց ի ջրոյն »։ Թուի իմանալ հեռի յերկրէն ուր բնակէին յառաջ քան զջրհեղեղն։

98. (յէջ 53, տող 24). Գիտեմք զի կան և հնագոյն սիբիլլայք. այլ գրուածքն որ արդ Ծնան՝ չեն հնագոյնք։

99. (յէջ 54, տող 21). Եպիփան. — Հռոնիոս — Բիրխէր։

100. (յէջ 54, տող 26). Նոյնն և վասն տապանի տեղւոյ ասէ Սալէ-Նոյայ կոչել Հայոց, զի այսպէս լսեց ի Գէորգայ վարդապետէ Հայոց։

101. (յէջ 55, տող 11). Շարտէն ի Քարթլ նահանգի Վրաց ասէ փոքր աւան մի կայ Սամախէ անուն որ նշանակէ Երեք բերդ. շինեալ յերից որդւոց Նոյի. որ անդ բնակեցաւ յելանել ի տապանէն։ Սխալ է։ Զի «խմէ» բառն և ոչ եթէ «իխէ»՝ բերդ նշանակէ։

102. (յէջ 55, տող 13). Genebrand, Bible de Vence.

103. (յէջ 55, տող 34). Ա Մնաց. Ա. 52. «Իշխան Եղիսակամայ». ի լատինն Թագաւորութեան ասի Ոլիպամա։

104. (յէջ 56, տող 3). Ըստ Աննիոսի 30 որդիք Նոյի յանուն մօրն Տիտեայ՝ կոչեցան Տիտանեանք։

105. (յէջ 56, տող 5). Ըստ Աննիոսի զԱրազա նկարէին իժակէս խառնեալ ընդ առն հեշտամոլի (Այր-իժ?). — Սանուտ. Թորչելլոյ Արազա կոչէ զԱրամ որդի Սեմայ, և ի նմանէ ասէ զՀայս։

106. (յէջ 56, տող 9). Ճիլտաս պատմիչ Բրիտանիոյ։

107. (յէջ 56, տող 32). Ի կէս ԺԵ դարու ի Կուպպիոյ քաղաք Տոսկանայ գտան։

108. (յէջ 57, տող 30). Խոր. Ա. Զ։

109. (յէջ 58, տող 20). Ի Լիբսեան օր. Խորոն. Ումիդար գրի՝ փոխանակ Տորբանայ։

110. (յէջ 59, տող 4). Բոգ. Մխ. Աբբ.՝ զԱստղօնս դնէ յելից Իննակնեան վանից, ուր նշանակին աւերակք Տաղօնից. «Ցորոյ (Տարբանայ) անուն և զգաւառն » այժմ ասեն անուանել Տարօն», Խոր. Ա. Աշխ. այսպէս ի Լիբսեան օրինակի, որ ուղղագոյն է քան զտպագիրն։

Դժուարին է ընդունիլ որ Աստղօնք Իննակնեան վանուց քով կը գտնուի, եթէ նոյն է անիկա Աստղներբերդի (Աստղօնի՞ց բերդ) հետ։ Ընդհանրապէս սոյն անունը Աստղկան բերդ կը ստուգաբանուի. (տե՛ս Գելցեր, Դիցաբանութիւն Հայոց, Թրգմ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան, Վենետիկ). Հ. Ալիշան սոյն խնդրոյն մասին ուրիշ տեղ կ՚ըսէ. «Աստղիկը պահած են Տարօնոյ կողմերում, ուր առաջ բնակէին » եղբարքն ալ. հոն է Աստղկաբերդն կամ Աստղկան բերդն, համառօտելով » Աստղբերդ կոչուած, զոր նոյն ինքն Աստղիկ շինել տուած է կ՚ըսեն, իր Ջրուան

Digitized by Google

» եղբօր ապահովութեան համար. յետոյ ի պատմական ժամանակս՝ Մոկաց բերդ » կոչուեցաւ, և է յարեւելեան կողմն Մշոյ » (Հին հաւատք Հայոց, էջ 280)։

Նկատելով Տարօնի կրօնական երկիր մ'ըլլալը, — բոլոր մեհեանները Յաշտիշատի մէջ էին, — շատ հաւանական է Աստղկան բերդ բացատրութիւնը. զայս կը հաստատէ թերեւս Մոկունք գիւղի մերձակայութիւնը որ մոգ բառը կը լսեցնէ, եթէ այս անուան մէջ հարկ չէ տեսնել Բուզանդի յիշատակած Տարօնի Գոմկունք գիւղը՝ ուսկից էր Ոլիմբիա Թագուհւոյն սպանողը։

Մ. Հրչ.

111. (էջ 59, տող 9). Նահանգին անուան երկրորդ մասն եթէ բերան է, ինչպէս որ կրնայ հաստատուիլ օրինակի մը մէջ փոխանակ Տուրուբերանի Ջուրաբերան գրուած ըլլալովն, սկզբնական խնդրեալ անուննիս կ'ըլլայ Տուր կամ Տար. բայց երեւի թէ բ տառն մասն է Տարուբ կամ Տարբ անուանց և երան կամ արան՝ ածանցիկ մի։

112. (էջ 59, տող 15). Այսպէս կ'անուանէ Թովմա Արծրունի։

Հ. Ալիշան հոս կ'ակնարկէ Թովմա Արծրունւոյ հետեւեալ տեղին. (Գլուխ Ե, էջ 107) «Մերձ ի սահմանս Տարօնոյ Աւաչին կոչեցեալ Հայոց՝ իշխան Տարօ- » նոյ Բագարատ, վասն զի ունէր յայնժամ՝ զգլխաւորութիւն բարձրութիւն իշ- » խանաց Հայոց»։

կամ աւելի հաւանօրէն հետեւեալ խօսքը. «Զկողմանս Տարօնոյ յինքն կոր- » զեալ՝ թեկն յածէր բնաբանապէս ամիրայապետել ամենայն Հայոց։ Զի և տուն » Հայոց անուանեալ առաջին ասէին զՏարօն» (Գլ. ԻԲ, էջ 236)։ Ինչպէս կը տեսնուի Տարօն Բագարատայ պատճառաւ առաջին տուն կոչուեր է, ոչ թէ Սեմայ։ Դիտուի որ Թովմ. Արծր. նոյն իսկ արքայ կը կոչէ զայն. «Մեռաւ արքայն » իշխան Տարօնոյ» (Գլուխ ԻԲ. էջ 231) դարձեալ «Իշխան Տարօնոյ, որ ասի » Հայոց իշխան» (Թովմ. Արծ. Ի էջ 220)։ Ուստի վերոյիշեալ կոչումը՝ պարզապէս Տարօնի առժամանակեայ քաղաքական գերիշխանութիւնը կը ցուցնէ, և Սեմայ հետ վերաբերութիւն չունի։

Նշանակալից է որ Խորենացի Սեմէն սերած կը դնէ Տարօնի հնագոյն բնակիչները. արդ Գելցեր ալ Դիցաբանութիւն Հայոց ուսումնասիրութեան մէջ, Աստղկան պաշտամունքը զօրաւոր գտնելով ի Տարօն, ասորեստանեայ եղած կ'ենթադրէ Տարօնի հնագոյն բնակչութիւնը, զոր Տիգրան Բ. քաղաքագիտօրէն հայացուցած ըլլայ։ Այսպէս Խորենացի և Գելցեր կը զուգադիպին սեմական ծագում տալով հին Տարօնեցիներուն, բան մը որ կրնայ շնորհուիլ պատմական անծանօթ շրջաններու, բայց ոչ Մամիկոնեանց համար, որ զուտ իրանական ցեղէն էին, ինչպէս իրենց անուանց ստուգաբանութիւնը, նկարագիրը, պատմական դէպքերը կը ցուցնեն։ (Տես այս մասին Բուզանդի Մամիկոնեանները, Հ. Ն. Անդրիկեան, Վենետիկ, 1904, էջս 9-12)։

Այնու հանդերձ սահմանակցութիւնը՝ կրնար գաղթականութեան կամ տիրապետութեան պատճառ եղած ըլլալ, և հայ աւանդութիւնը յայտնապէս կը դաւանի՝ թէ Սասունի բնակիչներ և Արծրունիք ասորի են ծագմամբ, Տուբիթայ վըկայութիւնը՝ «Եւ փախեան ի լերինս Հայոց», ի լերինս Տարօնոյ հասկնալով։

Մ. Հրչ.

Digitized by Google

113. (յէջ 60, տող 15). Որ են Գորգի, Բանան և Դաւիթ։

114. (յէջ 60, տող 24). Զոր և հաստատէ չարունակութիւն բանից ընտրելա֊գունին ի վերոյիշեալ հին մնացորդ պատմագրաց, թէ Հայկն յետ սպանման «դարձաւ ի տեղի իւր և չոգաւ կալաւ զերկիրն Արարատայ... և ի ժամանակի » մահուան իւրոյ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ »։

115. (յէջ 61, տող 23). Աւանդաբան վարդապետի մի աղաւաղ գրուածի մը մէջ ասէ. «Շինեցին որդիքն Նոյի շինուածս յերկրին Տէրտամ, զոր անուանեցին Բամն » ըստ անուանելոցն ի տապանէն անուանց ութից»։ Բամն անշուշտ է Թմն կամ Թմնիս, իսկ երկրին անունն՝ որ աւելի կարեւոր է ի գիտութիւն՝ այսպէս մութ գրուած անծանօթ մնայ։

116. (յէջ 61, տող 35). Վարդան առ Հեթում. «Նոյի որդի մի այլ եմ լսել, » Մանիտոն անուն, որ եղեւ նմա զկնի ջրհեղեղին. և դուստր մի Աստղիկ անուն. » որ առ հայրենեօք զկոզմ հարաւոյ »։

117. (յէջ 62, տող 3). Ընդ հակառակն Մեթոտիոս (զոր յիշէ այլուր Վարդան) ասէ. «գնաց բնակեցաւ յարեւելս ուստի արեգակն ելանէ »։

118. (յէջ 62, տող 6). Բայց ոմն ազատ հետեւող Մեթոտիոսի՝ Մանիտոնի գնա֊ցած երկիրը կոչէ Ովեայր կամ Ովեայ, և բնակութեան սահմանն տարածեալ » մինչեւ ի ծովն որ կոչի Արեգզաւսան »։ Այս տեղն ալ ծովն ալ անծանօթ են մեզ, բայց զի յետ զայս ասելու՝ յաւելու թէ ի ժամանակի ազգաց բաժանման ել Քանան և բնակեցաւ անդ, կրնայ Ս. Գրոց մէջ ծանօթ Քանանու երկիրն ըլլալ, որ է Պաղեստին, և ծովն Միջերկրական։

119. (յէջ 62, տող 14)։ Մեթոտիոս յաւելու թէ յետ իբր 1800 ամաց ջրհեղեգի Սամսոն ոմն ելաւ հզօր յորդւոց Մանիտոնի և տիրեց յեփրատայ մինչեւ յեստրա֊գեն? եօթն քաղաքաց և գաւառաց և գնաց մինչեւ յԳ Հնդիկս. և շատ մարդ ջարդեց յիսմայելացւոց. բայց յետ ժամանակի այս իսմայելացիք ալ զատ ի զանազան աշ֊խարհաց՝ կալան ի «Տիգրիսէ մինչեւ ի մուտս թագաւորութեան Մանիտոնի »։

120. (յէջ 62, տող 24). «Եւ էառ Նեբրովթ յորդւոցն Յաբեթի արուեստաւորս, » և յիւրայոց անտի բազումս, և չոգաւ և շինեաց քաղաք անուամբ Մանիտոնի, » և խաղաղութիւն էր ի մէջ նոցա ». Վարդ. Մեկն. Ծննդ։

121. (յէջ 63, տող 1). Թովմա Արծրունի ասէ ընդ Եւսեբեայ վերին Հնդկաց միշտ թագաւորեն կանայք, իբր զի դստեր Նոյի ժառանգութիւն էր այն։

Թովմա Արծրունւոյ խօսքը հետեւեալն է. (Ս. Պետերբուրգ, 1887, յէջ 18)։ «Յետ ջրհեղեղին՝ ոչ երեւի լինել դարձեալ որդիս Նահապետին. իսկ աշխարհն Վերին Հնդկաց՝ ասի լինել դստեր նորա։

Զոր Եւսեբի Կեսարացի ասէ՝ ի սովորութենէ մինչեւ ցայսօր կին մարդ թա֊գաւորէ ի վերայ աշխարհին Հնդկաց »։

Իսկ Հ. Ալիշանի «իմանան զԱրաբիա » խօսքը՝ կ'ակնարկէ Վարդան պատմչի հետեւեալ տեղին. (Վենետիկ, յէջ 10). «Զերկիրն խնկաբեր որ կոչեցաւ Երջանիկ » Արաբիա, ետ Աստղկայ դստեր իւրոյ, ուստի եկն Տիկինն Սաբայ, զի յայնմ » հետէ՝ կանայք ժառանգեն զնա »։

Ծ. Հrs.

122. (յէջ 63, տող 10). Միայն թէ կայ և հակառակ աւանդութիւն մը յազգիս վասն Աստղկան, որպէս թէ ընդ դիւաց խառնակելով՝ ծներ է զՅաւերժհարսունս։

Digitized by Google

Երբեք եղած չէ դար մը՝ ուր Աստղիկ համեստութեան աստուածուհի եղած ըլլայ։ Նոյն իսկ իր անունը՝ շատ ազգաց մէջ իր անպարկեշտ դերը կը ցուցնէ։ Արաբացիք զայն Զուհարա կը կոչէին, որ կը նշանակէր «Օրիորդ ուռած ստինք-» ներով» (Տե՛ս Le culte d'Aphrodite Anahita chez les Arabes du Paganisme, par E. Blochet. Paris, 1902). Զուհրա բառը, որ Աստղիկ կը նշանակէր և որուն բացասականն էր Ա-նահիդ, նոյնպէս կը նշանակէր «Օրիորդ ուռած ստինքնե-» րով», Ասորեստանեայք ալ՝ իրենց արձաններուն մէջ այսպէս ներկայացուցած են զԱստղիկ։

Ընդհակառակն ժամանակ եղած է, ուր Անահիտ «փոխանակ մայր ամենայն» զգաստութեանց» ըլլալու, «մայր ամենայն մեղաց» եղեր է։ Ստրաբոն կը վը-կայէ յայտնապէս թէ (XI, 532, նոյնպէս Լուկիանոս, Ցաղագս սկզբանց ասորես-տանեայց), թէ Հայեր իրենց դստերքը ամուսնացնելէ յառաջ՝ Անահտայ մեհենին կը նուիրէին, ուր անձնատուր կ'ըլլան ամենայն հաճոյից։ Մ. Էմին անկարելի կը համարի զայս՝ նկատել տալով որ Ս. Գրիգոր Լուսաւորիչ երբեք այդպիսի սովո-րութիւն մ'ակնարկած չէ, մինչդեռ եթէ գոյութիւն ունենար՝ անպատճառ պիտի հակառակ խօսէր։

Սակայն դիտելու է որ Տրդատայ ժամանակ՝ հայկական դիւցաբանութիւն գոյութիւն չունէր, այլ՝ պարթեւական դիցաբանութիւն, որ նախորդին տեղը գրա-ւած էր. Ագաթանգեղոս արդէն կ'ըսէ. Տրդատ «զիւր ազգին Արշակունեաց՝ զհայ-» րենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր». (Ագաթ. 34 էջ)։

Ուստի մեր կարծեօք հայկական Անահիտը՝ Ափրոդիտ մըն էր, պարթեւականը՝ Տիանա։

Մ. Հրs.

123. (յէջ 63, տող 20). Համարի դուստր Բերոսի պատմչի Քաղդէացւոյ. և յոմանց հնագոյն քան զնա։

Այդ Սիբիլլայի մասին, որու վրայ կը խօսի Հ. Ալիշան, կարելի է կենսագրա-կան (ենթադրական) տեղեկութիւններ գտնել՝ Fabriciusի Bibliotheca graecaի XIV հատորին մէջ, ուր Բերոսոսի հատակոտորներն ալ մէջ կը բերուին։

Մ. Հրs.

124. (յէջ 64, տող 34). Փիլաստրոս եպիսկոպոս Պրեշիոյ ի Դ դարու։

125. (յէջ 65, տող 4). Ըստ այսմ գրէ քերթող ոմն ի դիմաց Նոյի.

Tu supplex ora,
Tu protege,
Tuque labora.

126. (յէջ 65, տող 16). Ճեմելլի և Դաւեռնիէ։

127. (յէջ 65, տող 20). Ցոհան կաթողիկոս ի յառաջաբանի Պատմութեանն։

128. (յէջ 70, տող 27). Քերովբէ ոմն մեր վարդապետ հին՝ յիշէ աւանդու-թեամբ (ի գալստեան ճառի) թէ Քամ ունէր և այլ որդի մի Քվակ անուն, յորմէ եղեն որդիք Գայի, Քաղա և Երեքոյ, ովք շինեցին զհամանուն քաղաքսն ի Գա-ղեստին։

129. (յէջ 71, տող 7). Կամ զուցէ սերունդք Քամայ բռնաբնակք ի կողմանս

Digitized by Google

Գամրաց և անտի ի կզզին եկեալք կամ վարեալք գուցէ յԱրամայ հալածեալ Պայապիսն։

130. (յէջ 71, տող 14). Առ Աբրահամու յիշին փղշտացիք. ուրեմն յառաջ քան զնա եկեալք։

131. (յէջ 71, տող 22). Ոմանք զկրետէ ասեն կափթորայ երկիր, և այլք զկոպտոս կղզի Նիւղոսի. և պէսպէս մեկնեն զբանս Ս. Գրոց, ուր յիշին կափթոր կամ փղշտացիք։

132. (յէջ 71, տող 30). Բիւզանդացիք և Հայ պատմիչք ասեն Լիւկիա։

133. (յէջ 72, տող 19). Հուս ի կողմանս Լիբանանու կամ Դամասկոսի, որոյ և չինող ասի։ Գաւիկր ըստ Սիւնկելեայ հայր է Արմենեաց բայց ոչ զՀայս իմա_ նայ այսու անուամբ։

134. (յէջ 73, տող 33). Չի պարտ է Թողանիմ ընթեռնուլ զ'Դողանիմն Եբրայ. ի Ծննդ. Թ. Դ. քանզի և Դոդանիմ գրի ի Յեսազորդսն. իսկ Ամրացին և ի Յուն. Թոդնիմ ասէ։

135. (յէջ 74, տող 14). Զորս այժմ տաճիկք Քէօմիւր անուանեն։

136. (յէջ 74, տող 26). Մ. Նիպուր (135) ի բանի աստ զՄարս իմանայ յա_ նուն Ասքանազայ։

137. (յէջ 74, տող 33). Գտանին դրամք լուսնի դից փռիւգազղակ, գրու_ թեամբս ΜΗΝ ΑΞΚΑΝΟΞ (լուսին ասքանազեան)։

Հ. Ալիշան Հին հաւատք Հայոց գրութեան մէջ, (Վենետիկ, 1875 յէջ 101-102) ընդարձակօրէն կը խօսի փռիւգական սոյն աստուծոյն վրայ, դնելով նաեւ զպատ_ կեր փռիւգազդակ լուսնին։

Պոնտոսի և Վրաստանի մէջ փառնակ կը կոչուէր անձնաւորեալ լուսինը։ (Տես անդ, յէջ 102)։

Ն. Հrs.

138. (յէջ 75, տող 1). Վիմ. Ս. Մարգ. Ա. 170. Բենիամ. Դուտել. ասեն տե_ սեալ ի Դամասկոս զազդր հսկայի 9 թիզ (սպանիակ.) երկայն և զլայն, և արձա_ նագիր զերեզմանին Ազքանազ թագաւոր հզօր ի վերայ ամենայն երկրի.

139. (յէջ 75, յէջ 10). Ըստ այսմ և թմանիք ումից Նոյեանց թուի ինձ կո_ չեցեալն ի մէնջ Տմորիք։ Համմտ. Սանեսան = Սարեսան։

140. (յէջ 75, տող 26). Hanvay. Beschreib. Persien. 19. (Պրոսէ Ա. 16)։

141. (յէջ 76, տող 20). Ըստ Նիպուրայ և այժմեան անուն Պօհդանայ զնոյն արտաբերէ։

142. (յէջ 80, տող 14). Երկրորդ տոհմն Աֆղանաց Տայք կոչի (Ֆերրարիոյ)։

143. (յէջ 81, տող 2). Վասն զի ուր ոմն ի հին պատմչաց մերոց ասէ վասն Ս. Մեսրովպայ թէ գիր հնարեց Աղուանից լեզուին, միւսն զնոյն բան ասէ վասն Գարգարացւոց։

144. (յէջ 85, տող 35). Ալանք՝ ի բազմաց գիտնոց յԱրիական ազինս դասին։

145. (յէջ 87, տող 4). Ստեփ. Բիւզ. Հոողացի ասէ։

Սոյն խնդրոյն վրայ հմմտ. Յովսէփ Վ. Սանդալճեանի (Venise, 1900) Les ins- criptions Cunéiformes urartiques գրքին հմտալից յառաջաբանը ուր յէջ XVII կը

Digitized by Google

*խօսի Արմենուսի զաղթականութեան և յունական այլ և այլ տեղեկութեանց մասին՝ զոր տուած են Հայաստանի և հայ լեզուի ծագման վրայ։*

Մ. Հրs.

146. (*յէջ* 87, *տող* 14). Ստրաբոն ԺԱ, *ա*. 25. Յուստինոս ԽԱ. *բ*. 3։

*Հայերու ծագման խնդիրը վերջին տարիներու մէջ՝ բոլորովին նոր կերպարանք առաւ։*

*Նախ այլ եւս անտարակուսելի կը համարուի թէ Հայեր՝ ի սկզբանէ ի վեր Հայաստանի մէջ բնակած չեն. որովհետեւ կը տեսնենք թէ հոն կը գտնուէր առաջ ուրարտու անուամբ ժողովուրդ մը, որ հայ չէր կրնար ըլլալ.*

1. *վասն զի ինչպէս ըսինք* 2° *ծանօթութեան մէջ, իր արձանագրութեանց մէջ գործածած լեզուն՝ հնդեւրոպական ըլլալու տեղ՝ կովկասեան է, այսինքն վրացեբէնի մօտ։*

2. *Դիցաբանութիւնը բոլորովին տարբեր է հայկականէն։ Այս ճշմարտութեանց ապացուցումը թողլով մասնագիտական գործերուն՝ զոր յիշեցինք վերոյիշեալ* (2°) *ծանօթութեան մէջ, անցնինք տեսնելու՝ թէ ուսկից եկաւ հայ ժողովուրդը։*

*Հիմնուած Հերոդոտոսի սոյն խօսքին վրայ՝ թէ* (VII, 73) *«Հայերը՝ փռիւգացւոց գաղթականութիւն մ'են» եւրոպացի գիտնականք փռիւգիայէն եկած դրին զՀայեր։*

*Կարապետ Բասմաջեան Ուրմիոյ ափանց վրայ փնտռեց Հայոց նախնական հայրենիքը* (*Տե՛ս Բազմավէպ* 1898)։ *Հօս մինի անուամբ ժողովուրդ մը կ'ապրէր. ասոնք յարձակեցան Արարատի* (*Ուրարդուի*) *վրայ, անոր յաղթեցին, զայն իրենց հետ ձուլեցին. Արարատ-մինիի անունը կրճատուելով՝ Ար-մենիա եղաւ։*

*Գերմանացի Եէնսէն նոր ենթադրութիւն մ'հանեց մէջտեղ, որ բոլոր աշխարհքիս մէջ մեծ աղմուկ հանեց։ Ըստ այս հանճարեղ գերմանացւոյն՝* (*հմմտ.* Jensen, Hittiter und Armenier, Strassburg, 1898 *էջ* 17-18) *Հայ ազգը նոյն է Հիտտիտ կամ Հատ կոչուած ժողովրդեան հետ՝ որ Կապպադովկիա կը բնակէր, և որուն արձանագրութիւնները՝ միայն հայերէնով կարող են մեկնուիլ։*

*Օր. Հիտտիտեանք իրենց ազգին անունը ներկայացնելու համար՝ միշտ դանակ մը կը նկարեն. դանակը ի՞նչ վերաբերութիւն կրնար ունենալ իրենց հետ։*

*Պէտք է յիշել, կ'ըսէ նա, հայերէն Հատ-անել բառը. զայս դանակով մը կը յիշեցնէին անոնք՝ ազգին Հատ անունը նշանակելու համար։*

*Հատ բառը Հայի փոխուած է. որովհետեւ, կ'ըսէ նա, տ հայերէնի մէջ՝ յի կը փոխուի. օր.* Pater = *Հայր*, Mater = *Մայր, ըստ այսմ արձանագրութեանց* Vtr *Վայրի հետ նոյն կը համարի։*

*Եէնսընի դրութիւնը դեռ ընդունուած չէ բոլոր գիտնականներէն, բայց շատ հաւանական է, դիտելով մանաւանդ դիցաբանական յարնչութիւնները. — օր. Հիտտիտներու «Սանդիս» աստուածը ի՞նչ բան է, եթէ ոչ հայկական Շանթը։*

*Հայկ նահապետի խնդիրը անձուկ կերպով կապուած է մեր ազգի ծագման հետ։ Ընդհանրապէս առասպելական անձնաւորութիւն մը կը համարուի նա, բայց մենք հաստատապէս կը հաւատանք թէ նա պատմական անձնաւորութիւն մ'է, զոր Խորենացի հինցնել ջանալով՝ անհաւատալի ըրեր է։* (*Հմմտ. սոյն նիւթին վրայ յօդուած մը ի Բազմավէպի*, 1904, *Նոյեմբեր*)։ *Հայկ իրական է, վասն զի*

Digitized by Google

1. Նոր գաղթականութիւնը, Ուրարտուն ջնջելու համար՝ պէտք էր վճռական պատերազմ մ'ընել, և այս իր մայրաքաղաքին Վանայ լճակին քով։

Արդ կը տեսնենք որ Հայկ ալ ճիշդ այս բանս կ'ընէ, հետեւաբար Հայկ ուրիշ բան չէ՝ բայց եթէ հատեան գաղթականութեան առաջնորդը, և Բէլ ալ ոչ այլ ոք՝ բայց եթէ Ուրարդուի յետին թագաւորը։

2. Պատերազմի տեղագրութիւնը Խորենացւոյ մէջ ըստ ամենայնի ենթադրել կու տայ կռիւ մը՝ գաղթականներու և Վանայ թագաւորին միջեւ։

3. Ջուանշէր Վանայ քով ընել տալու տեղ կռիւը՝ Այրարատի մէջ ընել կու տայ։ Ուսկի՞ց յառաջ կու գար այս տարբերութիւնը։ Կ'երեւի հայ երգիչներ Ուրարդացի անունն ալ յայտնապէս կը յիշէին՝ միջնադարեան պատմիչները տագնապի մէջ թողլով։

4. Հայկ, եթէ յիշուած չըլլար, պէտք էր ենթադրուիլ։ Եթէ իբր անձ ճշմարիտ է, իբրեւ անուն ալ եղած ըլլալ կրնանք հաստատել, որովհետեւ թէ Ս. Գրքի թարգմանիչներ և թէ Ագաթանգեղոս՝ Հայկ անունը կը ճանչնան, իբր հսկայ և քաջ որսորդի մը ներկայացուցիչ, և Խորենացի դեռ իր պատմութիւնը չէր գրած։

Պիտի ըսուի թէ ի՞նչ նշանակութիւն ունի Բելայ ռազմական ճանապարհը, Բաբելոնէն Հայաստան։ Ասիկա ոչ միայն բնական հետեւանք մ'էր Ս. Գրոց Բէլի վրայ տրուած տեղեկութեանց, այլ և ուրիշ պատմական եղելութիւն մը կ'ակնարկէ։ Ուրարտու դարերով Ասորեստանեայց հետ պատերազմի մէջ էր, որոնք — ճիշդ Բելայ շաւղով — կու գային Ուրարդուի քաղաքական անկախութեան և կրօնքին սպառնալու։ Ուրեմն կրնանք ըսել թէ Բէլ, մինչ մէկ կողմէն Ուրարտուի վերջին թագաւորը կը ներկայացնէ, միւս կողմէն կը ներկայացնէ նաեւ Ասորեստանի արշաւող ինքնակալները։ Թէ այսպիսի նոյնացում մը կրնայ ըլլալ՝ կը ցուցնէ մեզ Մօրիկ կայսեր դերը հայ աւանդութեան մէջ. սա Հայաստանի մէջ պատերազմող «հռովմայեցի» զօրավար մ'էր, և սակայն իր մէջ կը համառօտուին կայսրները՝ որ հայ էին ծագմամբ և Յունաց վրայ իշխեցին։

Ժամանակագրութիւնը ի հարկէ կը պակսի Խորենացւոյ մէջ. նա զՀայկ Մանաւազէ, Արմենակէ, եւն. յառաջ կը դնէ, մինչդեռ նա անոնցմէ վերջ պէտք է դրուիլ, իբրեւ ջնջող Ուրարդուի։ Եւ Խորենացի՝ Հայկայ հետ միայն այսպէս վարուած չէ. այսպէս Մանաւազը (805–800), Արմենակը (675–670) ժամանակակից կը դնէ. դեռ աւելին կայ. ասոնցմէ վերջ կը դնէ Արամը, որ ըստ Վանայ արձանագրութեանց թագաւորեց 860–843։

Քանի որ Հայկայ շրջան անուամբ հաշիւ մը եւս գոյութիւն ունի մեր մէջ, և տարուան երկոտասան ամիսները կը ներկայացուին իբր դուստրք Հայկայ, կ'ենթադրենք որ Հայկ դիցաբանական էակի մ'ալ փոխուած, Տարին կը ներկայացնէր։ — Օտար ազգաց մէջ կան Հայկայ նմանող դէմքեր, ինչպէս փիւնիկական (տե՛ս Հին հաւատք Հայոց Հ. Ալիշանի) Ագ–ենորը որ Կադմոս անուամբ որդի ունէր, բայց անտեղի է զայն Մովսէս մարգարէի, Դանիէլի հետ համեմատել՝ ինչպէս ըրած էր Բագրատ Խալաթեանց (Հանդէս Ամսօրեայ, 1904, մայիս)։

Ըստ Պրօֆ. Ն. Մառի Հին Հայերը կաւկասեան ցեղ մ'էին, և Վրաց այնչափ մօտ՝ որչափ այժմեան Մնկրէլները։ Ասով մեկնելու է Վրացերէնի և Հայերէնի այնչափ բառական նմանութիւնները, ուր յաճախ միակ տարբերութիւնը՝ յաւելուածոյ «ի» մ'է վրացերէնի մէջ, որ հայերէնի մէջ ալ գոյութիւն ունեցած պիտի ըլլայ, բայց յետոյ ընկած. օրինակ. Արծուի = Արծիւ, Արժանի = Արժան, պիտանի = անպիտան, պատասխանի = պատասխան։

Digitized by Google

Գիտելու է ըստ այսմ, որ Սահմի, Հոռի հայկական ամիսները՝ վրացերէնի մէջ՝ մէկ, երկու, երեք կը նշանակեն։

Ընդհանուր կարծիքը կ'ըսէ թէ, — ի բաց առեալ Վրացիներունը, — այդ բառերը՝ հայերէնէ փոխառեալ են։

Մենք հոս դիտողութիւն մը պիտի ընենք, առ այժմ իբր ենթադրութիւն ներկայացնելով զայն։

Հերոդոտոս «Սավիր» կոչած է Վրացիները։ Ջուանշէր և մեր միջին դարու պատմիչներ՝ բոլոր կովկասեան ազգաց նախահայրերը՝ Հայկայ կրսեր եղբայրներ կը նշանակեն։

Արդ, եթէ Հայեր Կապադովկիայէն եկած են, կարելի չէ՞ այս աւանդութիւնը ի նկատի առնելով, նաեւ Վրացիները նոյն տեղէն յառաջ եկած դնել։

Իթէ Հայերը Հատերն են, Հերոդոտոսի Սավիրները ալ (= Վիրք) Խաւերացիները չե՞ն։ Գիտուի որ օտար ազգաց մէջ առ (հռովմայեցիս, օրինակ իմն, Պոմպէոսէն սկսեալ) Խ–բերացիներ կը կոչուին անոնք։ Ուսկի՞ց Սավիր բառին վրայ այդ Իի յաւելուածը. այս չի՞ ցուցներ թէ Սավիր՝ Ի(սա)վիր նախնական ձեւն ունեցած է։ (Եւ միթէ Քարբվէրի անունը չի՞ կրնար ռ և է կերպով կիլիկեան Քարբաղ լերանց հետ յարնչութիւն ունենալ)։

Պիտի առարկուի, թէ Կովկաս մարդկութեան խանձարուրքն եղած է, ինչպէս կ'ըսուի ընդհանրապէս, և իր բնակիչներն ալ՝ անոր հնագոյն զաւակները։ Նորագոյն հետազօտութիւնք կը հերքեն գիտական այս նախապաշարումները և տարբեր կեդրոններ կը փնտռեն նախնական ազգերուն։

Ի վերայ այսր ամենայնի՝ մարդաբանական հետազօտութիւններն են, որ լոյս պիտի սփռեն այսպիսի խնդիրներու վրայ և ոչ եթէ անուանական քանի մը յարմարութիւններ։ Չենք մոռնար նաեւ թէ Սավիրք, ըստ բազում գիտնականաց, Հոնաց ցեղէն ազգ մ'էր։

Տ. Հrs.

147. (յէջ 90, տող 1). Վասն այսորիկ ամենայն սիրով և պատուով մեծարելով զՀարս իմ Ինճիճեան և Աւգերեան, որք այսպիսի փաստիւք կամէին ցուցանել զնախերիցութիւն հայ լեզուիս, և զորոց կարծիս հետեւողաբար հրատարակեցի երբեմն ի Բազմավէպ օրագրի (1844, էջ 332) անընդունակ և անբաւական ասեմ զայդ դրութիւն։

148. (յէջ 92, տող 6). Վկայեն իմն և Ս. Գիրք ազգակցութեան Հայոց և փռիւգաց. զի Երեմիա զոյգ ընդ Արարատեան թագաւորութեանն յիշէ զԱսքանազեանս, զոր հաւանին և Հրեայք և օտարք հայր լինել փռիւգաց. և Եզեկիէլ (ԻԵ, 14) ի տանէ Թորգոմայ յիշէ բերեալ ի Տիւրոս Հորիս զփռիւգս կամ զՀայս իմանալով։

149. (յէջ 92, տող 7). Արտոկմէս դստրայր Գարեհի։

150. (յէջ 92, տող 11). Սուղ ինչ զանազանէին ի տարազէ Պափղագոնաց։ (Ստեփ. Բիւզ. = Եւստաթ. Մեկն Դ. Բեռիեկ. 694 տող)։

151. (յէջ 92, տող 13). Տես ի Cramet. Anecd. Gareo. Oxon. Դ. 257։

152. (յէջ 92, տող 17). Ի սկիզբն Թ դարու Ն. Ք. ծովակալէն փռիւգք զամս 5 կամ 25. թուի յայնժամ չուել նոցա ի Սիկիլիա։ փռիւգացիք՝ երկչոտք վկային լինել, որով և նուաճեալ ի սահմանակցացն՝ անյայտ եղեն. միտեալք ի վաստակ երկրի կամ ի խաշնարածութիւն և յարուեստս։ Գոյ և յայսմ նմանութիւն ընդ

մերազնեայցս, որք Թէ և պատերազմողք քան զնոսա, այլ ոչ պատերազմասէրք և իշխասէրք, վասն որոյ և հնազանդք կամ հարկատուք արեւելեան ինքնակալաց։ — Արիստագոր Միլետացի Ջ դարուք Ն. Ք. յաշխարհացոյց տախտակի նշանակեալ էր զփիւգացիս խաշնաւէտս և հացաւէտս քան զամենայն ազինս. յետոյ ցուցանէր և զմերազնեայս նոյնպէս խաշնաւէտս։ — Մորտման ի յետին ամս ջանայր հայկական լեզուաւ մեկնել զարձանսն փռիւգացիս։

153. (յէջ 92, տող 29). Վ. Սմիտհ յաշխարհագրական բառարանին Ա 621՝ փաստիւք ցուցանէ զայս։ Ի սմին հաւանութեան են Հէէրըն. Ռոմմէլ. Ռընան. Քանդու։

154. (յէջ 93, տող 20). Հ. փեզրոն զԱկմոն Բ Տիտանեան կոչէ, և ասէ ընդ եղբօր իւրոյ Դովասայ հարցկի ելեալ ի Հայոց աշխարհէ, որք կոչէին Սակք, և եկեալ նախ ի Կապպադովկիա ապա ի փռիւգիա։ Եւ իմաստասիրէ զայսոսիկ ի Սանգոնեատոնի բանից։

155. (յէջ 94, տող 4). Զի փռիւգք ի հնումն տարածանէին յելից կուսէ ի Հայոց մինչեւ մերձ յարեւմտեան եզերս փ. Ասիոյ, ուր սփռեցան ի նոցանէ տոհմք Տրովաց, Մեւոնաց, Միւսացւոց, եւն. և անցեալքն յԵւրոպէ ի Թրակիա, յԷմաթիա Քաղկիտէ, Ատիկէ, Մակեդոնիա (ուր Գռիւգա քաղաք), ի Մեսիա, Պաննոնիա, Դաղմատիա անգամ, մինչեւ հոմանուն համարել զԴալմատն և զփռիւգ։ Եւ հնագոյն ազգ փ. Ասիոյ ճանաչին. Ստրաբ. ԺԲ. Ը. Կ. Վկայք փռիւգաց հնագոյնք են զՏրովաց և զՄիւսացւոց, նաեւ քան զոտարս իսկ. զի Եգիպտացիք որք պարծէին գլել զայլովք ի հնութեան՝ խոստովանէին զփռիւգացիս հնագոյնս քան զինքեանս (Երոդ. Բ. Բ). առ այս պատմէ Երոդ. զփորձ փսամետիկ Թագաւորի ի քննութիւն առաջնութեան ազգաց զծանօթ վէպ բացընկեցիկ վայրենասուն տղայոյ՝ ինքնաբերաբար փռիւգացի ձայնիւ հաց խնդրել։ Որքան և ստարոտի իցեն վէպքդ՝ յայտ առնեն զվարկ նախնեաց զհնութենէ փռիւգաց, և նովին զմերոյ Հայոց ազգիս յարընչութիւն նոցին և քաջ եւս հնութիւն։

156. (յէջ 94, տող 10). Հելլէն անուն նշանակէ աղուտ, ճախնային (Մօրի. Ա. 38)։

157. (յէջ 94, տող 13). Ըստ Էքշդաքայ Պելասգեանք ելին յափանց Տիգրիսի ի հարաւ. Հայոց։ Մօրի. (Ա. 18) ոչ հաւանի, այլ ի փ. Ասիոյ ասէ եկեալ զսա։

158. (յէջ 95, տող 10). Ամենայն գեօղք Տրապիզոնի, Սամարուքսա, Կուխլա, Սաթարիա. Լաղոնա. Թոծ. Ծինկալա. Ճօշերա. Ծիկանոյ. Խոց. Աղրիտ. Ծիվրիկա. Սեւերա. Կռապի. Խամու. — Կիւմիւշխանէի և Մազգայ, Սեսերա. Խածաւերա. Խաւա. փոփառա. փոոզ. Սախնոյ. Աղամա. Ջանոյ. Խորտոկոփ. Քռենասա. Խաւրսա. որոց շատին յետին ա կամ ոյ ձայնաւորները վերացնելով, աւելի զուտ հայկական անուանք մնան։

159. (յէջ 96, տող 5). Տ'Ոհսոն Էպուլք ասիմ. 205։

160. (յէջ 96, տող 8). Զոր կեղծահնար համարին ոմանք, և այլք ոչ. տես յՈհսոն, Ուղեւորութիւն Էպուլ Քասիմայ 210–12։

161. (յէջ 96, տող 22). Հոռնիոս ի Հայոց ասէ ծագեալ զՊաննոնացիս, որպէս զԳերմանացիս յԱսքանազեանց, զԼիւրիկեցիս ի Թիփաթենց։

162. (յէջ 97, տող 17). Նոյն Պրիկան զկելտացն համարէր առաջին լեզու, որով և զհայկական եւս առաւել։

163. (յէջ 97, տող 21). Ըստ ոմանց Կելտք՝ յորոց Իռլանտք (որք Էրին անուանեն զինքեանս) առաջին գաղթականք են Արեաց յԵւրոպա, անդրագոյնս քան

Digitized by Google

զայլս (Գերմանս, Յունալատինս, Սլաւս, և այլն) վարեալ յեզր արեւմտից Եւրոպայ։ Revue de deux Mondes, 1884.

164. (յէջ 99, տող 31). Յայս կարծիս է և Նյօլտ, որպէս ինքնին ասաց զիս (1864)։

Պարսկագէտներ սոյն կարծիքէն են այժմ. որովհետեւ Ն. դարու ոսկեղենիկ կոչուած հայերէն լեզուն՝ իրեն ժամանակակից ունէր ի Պարսկաստան՝ գրազանտ, որուն ազդեցութիւնը այնչափ պէտք է կրէր՝ որքան արդի աշխարհաբարը՝ տաճկերէնինը։ «Հայերէնի գիտութիւնը շատ անգամ աւելի նպաստամատոյց կրնայ լինել բահլաւի և բազանտ գրութիւնները հասկնալու համար՝ քան » պարսկերէնի հնագոյն և նորագոյն ձեւերը», կ'ըսէ փորթուգալ փաշա իւր Եղիշէի քննադատութեան մէջ, յէջ 110։

Բազանտի մասին շատ ճոխ և հմտալից տեղեկութիւններ կարելի է գտնել սոյն փաշայի վերոյիշեալ հոյակապ քննադատութեան (Եղիշէի վարդապետի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին և քննադատութիւնք Միքայէլ փաշայի փորթուգալ, Վենետիկ, Ս. Ղազար 1903) Ներածութեան մէջ, ուր նոյն իսկ բազանտ լեզուով հետաքրքրական հատակոտորներ ի մէջ բերուած են։

Ծ. Հրs.

165. (յէջ 99, տող 34). Ողջոյն իսկ արիական ազգաց և պարսիկ լեզուին բնավայր համարին բազում գիտունք (Ս. Մարդէն, Ալթմայէր) զԱռան աշխարհ Հայաստանի և զկողմանս Ատրպատականի, և անտի տարածեալ ձգեալ մինչեւ ի յ'Ինդոս։ Այլք ընդհակառակն (որպէս Revue de deux Mondes, 1884) բնավայր ըզԲակտրիս համարին և անտուստ ընդ հարաւակողմն Կասպից գաղթեալ յարեւմուտս զամենայն արիական ազինս և լեզուս։

166. (յէջ 101, տող 10). Պերկման հաւանի Ստրաբոնեայ։

Արդի լեզուագիտութեան առջեւ Ստրաբոնի կարծիքը անընդունելի կ'երեւի՝ հայը լեզուով և ցեղով հնդեւրոպական է, և բոլորովին տարբեր սեմականէն։ Այնու հանդերձ Ասորւոց մերձաւորութիւնը՝ առանց ազդեցութեան չմնաց։ Այժմեան հայկական տիպարը կէս իրանեան է, կէս միջերկրականային (méditerranéen), թե-եւ յաւելուածով մը սեմականի, ինչպէս կը հետեւի Chantresի և այլ մարդաբան ուղեւորաց դիտողութիւններէն։ Հայեր կարճագանկներուն կը վերաբերին։ Ստրաբոն չափազանց հին է՝ մարդաբանական խնդիրի մը մէջ՝ հեղինակութիւն ունենալու համար։

Ծ. Հրs.

167. (յէջ 103, տող 22). Դժբախտաբար դեռ եւս հայ ծագում ստանալու առիթը չեն ունեցած բանասիրական գրքերու մէջ։ Նոյն իսկ Roberts Ellisի The armenian origin of the Etruscans (ոչ Etrurians, ինչպէս չփոթմամբ նշանակուած է վերոյիշեալ տեղը) London, բանագիտութեամբք լի տետրակ մ'է, թէ և չուեստացի գիտնական մ'եւս նոյն դրութիւնը պաշտպանել ջանաց իրմէ վերջ։ Օրինակ, փռիւգական fanaktei կ'ըսէ նա, հայերէն անախտ բառն է (!) ոսկից կ'ելնէ, Անահիտ. այսպէս յունաց 'Aναξ բառը (= Աստուած) ուրիշ բան չէ՝ բայց եթէ Հայոց նախ բառը. ինչ է Աստուած, եթէ ոչ առաջին յէակս! ինչպէս կը տեսնուի՝ Ռոպէրթ

Digitized by Google

էլլիս անգլիական հանդարտութեամբ կը վարուի տառերու երկայննալուն և յաւելնալուն նկատմամբ, հակառակ արդի լեզուաբանական մանրակրկիտ ուշադրութեանց։

Ծ. Հրs.

168. (յէջ 109, տող 13). Այսպէս ասէ Վիվեան Ս. Մարդէն ի պազալդ սլաքվէմի Սաղմանասարայ, որ իբր ի կէս Թ. դարու Ն. Ք. Ք.։

Արարատ ոչ թէ միանգամ, յաճախ յիշուած է ասորական բեւեռաքանդակաց մէջ Ուրարդու անուամբ. հմմտ. Նիկոլսկի, Բեւեռագիր արձանագրութիւնք, Sandaldjian, *Les inscriptions cunéiformes urartiques* և ուրիշ ուսումնասիրութիւնք՝ զոր թուարկեցինք 2° ծանօթութեան մէջ։

Ծ. Հրs.

169. (յէջ 109, տող 21). Շարտէն. Ա. 253. Հեթմոյ պատմչի ասէ այսպէս կոչել։ Ցիչէ և Boullage le Gouz ի մարզս Պարսից Aramnoh աշխարհ։

170. (յէջ 109, տող 32). Վարդ. Մարաթ. Աղօթք ժե. « ԶՏուն Թորգոմայ
» Ազքանազեան ի Հայկազնեայ՝ երկու գլխովքն անարատ պահեա »։

171. (յէջ 110, տող 17). Գիանքինի՝ յԱրգօնաւորդաց անուն կարծէ զանունդ և զԱր-մինիի ստուգաբանէ չեաւն Մինեայց։

Արիթ ունեցանք արդէն ընդարձակօրէն սոյն կէտին և Բասմաջեանի կարծեաց վրայ խօսելու։ Ըստ Jensenի Տաւրոս լերանց մէջ բնակող մի առանձին ցեղ կար Արմինի անուամբ, որ իր անունն միւսներուն տուաւ՝ ինչպէս Ալամանները՝ Գերմանացւոց։

Յովհան Օձնեցւոյ յիշատակարանի մը մէջ (1833, էջ 80) այսպէս կ'ըսուի. « Ես տրուպս Գէորգ, որ ի թիկունս լերինս Արմինիի նստիմ ». եթէ այս անունը հին է, կրնայ թերեւս կարեւորութիւն մ'ունենալ։

Տպագրական սխալով մը Հ. Ալիշանի բնագրին մէջ մոռցուած է հոս՝ ծանօթութեան 171 թուանշանը, որ գործածուած է սակայն՝ յաջորդ ծանօթութեան համար, ուստի մենք ալ ստիպուած ենք կրկին 171 դնել և զանազանելու համար՝ վերջնոյս վրայ բ աւելցնել։

Ծ. Հրs.

171. բ. (յէջ 114, տող 24). Նոյն խորէն. ի Հռիփսիմ. ներբողի « Պայծառ
» լուսով շրջափայլեալ ի տանն Թորգոմեայ »։

— Ժողով Շահապիվ. ի կէս Ե դարու. « Ամենայն խոտորնակ չարագործ աշ-
» խարհիս Հայոց ի մէջ Տանն Թորգոմայ »։

— Սիմէոն վարդապետ, որ թուի Ասորի ի նոյն դարու կամ քիչ առաջ ու ետեւ. « Հաճելով առ ուղղադաւանսն՝ որ են ազգ Թորգոմեան »։

— Շարակ. « Բերելով զգիր օրինաց ի Հայաստան աշխարհ, որով լուսաւորե-
» ցան ազգ որդւոց Թորգոմայ »։

— Գանձար. « Թորգոմածին վկայն Գարեգին »։

— Վարդան ներբող Լուս. « Տուն Թորգոմայ թարգմանիչ մեծի խորհրդոյն լինէր »։

172. (յէջ 115, տող 22). *Թովս իշխան Մեսովքայ և Թոբելայ, ըստ մեզ. ըստ Հրէից՝ իշխան Ռովսայ, Մեսովքայ եւն. Լատ. իշխան և առաջնորդ Մեսոքայ. զի Ռոս իբր. Գլուխ նշանակէ, և Թուի սխալ իմացեալ Հրէից, կամ ըստ Մ. Նիպուրայ Ռոս ըստ Արաբաց՝ նշանակէ զԾրասխ։*

173. (յէջ 116, տող 7). *Աղեքսանդրեան ժամանակագիր զԹորգոմ հայր ասէ Վորատ կամ Բորատ ազգի Սկիւթացւոց։ — Կալմէդ յայս կարծիս է։*

174. (յէջ 116, տող 18). *Եւ Մատթէոս վարդապետ աշակերտ Գր. Տաթեւ. « ի բռնակալութեան ազգին Թորգոմեան (յամի 1411) որ յետին գազան հանդի- » պեալ Դ. փէլական »։*

175. (յէջ 116, տող 34). *Վրաց պատմութիւնն ալ զԹորգոմ դնէ ի Նոյէ, (ըստ վրացի բնագրին Պրոսէյի, զի հայ թարգմանութիւնն՝ ըստ հայ պատմչաց է) բայց բոլորովին տարբեր ազգաբնակութեամբ, զի ասէ զնա որդի Թարշշի, որդւոյ Յաւանայ, որդւոյ Յաբեթի։*

176. (յէջ 117, տող 24). *Ըստ Վրացի բնագրին և ոչ ըստ հայ թարգմանչին։ Նման այսոր և Թաթարք ասեն Յաբեթ, Յանոս, Թուրք։*

177. (յէջ 117, տող 26). *Խազրաց Թագաւորի նամակն զԹորգոմ անմիջապէս Յաբեթի որդի ըսէ։*

178. (յէջ 117, տող 28). *Թերեւս ոմանց դրած փռիւգացւոց ազգաբանութեամբ այլ՝ Գոմէր, Մանէս, Ակմոն, նշանակեն Գոմեր, Թորգոմ, Հայկն. և յայսմ միա- բանին ըստ Ս. Գրոց Գ դնելով ի Յաբեթէ զԹորգոմ։*

179. (յէջ 119, տող 18). *Յովհ. կաթ. այլ այսպիսի դրութիւն մ՚ունի։ « Ըստ ազգաբանութեան Սեմայ զմեր՝ Յաբեթ կշռադատեալ գտանին մինչեւ ցԹոր- » գոմ և յսկզբան պայազատութեան որդւոյ նորա Հայկայ՝ ամք* 400 »։ *Մեզի աւելի ուշ կ՚երեւի Հայկայ պայազատութիւնն։* .

180. (յէջ 122, տող 31). *Տ. Ըհսոն, Ճանապահորդութիւն* 207։ *Նամակն Յով- սէփ Թագաւորի Խազրաց, հրատարակեցաւ նախ հրէարէն յետ կիսոյ ԺԶ դարու. Պուքստորին լատին թարգմանութեամբ տպագրեաց յամին* 1660. *որ է յառաջ քան զծանօթութիւն Վրաց և Հայոց պատմութեանց յԵւրոպա։*

181. (յէջ 123, տող 31). *Հոս պէտք չէ մոռնալ և զԹորգոմեան գետն յիշեալ յԵպիփանայ (ի գիրս ականց), որոյ դիրքն թէ և ոչ որոշ նշանակի այլ կարծեմ կամ յերկրին Ամազոնաց, և կամ զԿովկասայինն Թերեք, զոր Վրաց պատմիչն Լոմէկ անուանէ։*

182. (յէջ 127, տող 27). *Ոս մասնիկն յունական վերջաւորութիւն է, և երեւի թէ հին պատմիչն ի յոյն կամ անկէ թարգմանեալ գրքէ առած է այդ անունը, ինչպէս նաեւ իր ազգապետին անունն այլ Քարթլ–ոս, կամ մերոյն Թոռան անունն Կադմ–ոս։*

183. (յէջ 127, տող 35). *Հայ անուամբ զանազան քաղաքք նշանակին ի Ս. Գիրս ինչուան Աբրահամու ատեն, ըստ Եբրայական բնագրին, որ ի մեր թարգ- մանութեան ըստ յունին փոխեալ են յԱնգէ, Գայի և Գեհ։*

184. (յէջ 128, տող 35). *Առ Յոյնս Հայկայ նման անունն մ՚այլ է Հիակինէս կամ Այակ որով ճանաչուի հաւն Աքիլլեայ, ծնեալ յԱրամազդայ և յԵւրոպեայ կամ յԵգինեայ։*

*Կարելի չէ՞ այս առթիւ Հիակինի տեղ՝ Վա–հագնը Հայկայ հետ համեմա- տել. դիտուի որ Հնդկաց քով՝ Վահագնի սովորական ձեւն է Ագնի։ Եթէ ոչ իբր*

Digitized by Google

հաւանականութիւն, գոնէ իբր երթադրութիւն մը կրնայ մտնել Հ. Ալիշանի մէջ բերած կարծիքներու հաւաքածոյքին մէջ։

Ն. Հրs.

185. (յէջ 129, տող 5). Զինաց առաջին թագաւոր կոչի Եաօ. Արեայք զնախամարդն և զնախահաւ իւրեանց կոչեն Այու, որ է Մանու (Մօրի Ա. 89)։

186. (յէջ 129, տող 34). Սեբիոս, որ ի հնագունից պատմչաց քաղէ. (149, 51)։

187. (յէջ 130, տող 35). Ջբան Ս. Գրոց «Յերկրէն յայնմանէ Ասուր և շինեաց զՆինուէ» ոմանք ընթեռնուն վասն Բելայ թէ յերկրէն յայնմանէ՝ ի Բաբելոնէ ել յԱսուր, այսինքն յԱսորեստան և շինեաց եւն։

188. (յէջ 131, տող 5). Նման Մարիբասայ և Աբիւդենոս (առ Եւսեբ. Ա. 25)։

189. (յէջ 134, տող 8). «Յայնմ ժամանակի թագաւորեաց ի Բաբելոն որսորդ » հսկայն Բէլն տիտանեան, ճոխն չաստուածացեալ, որոյ հզօր զօրութեամբ և » սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ։ Եւ էր իշխան ամենայն ազգաց որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի. որոց արարեալ առաջօք կախարդու» թեամբ հնարս և հրամանս թագաւորական ամենայն ազգաց. և հպարտութեամբ » ամբարտաւանութեան իւրոյ կանգնեալ զպատկերս իւր, և ետ երկիր պագանել » իբրեւ Աստուծոյ, և զոհս մատուցանէ։ Եւ վաղվաղակի կատարէին ամենայն » ազգք զհրաման նորա. բայց մի ոմն Հայկ անուն ոչ հնազանդեցաւ ի ծառա» յութիւն նոցա. և ոչ կանգնէր ի տան իւրում զպատկեր նորա, և ոչ մեծարէր » զնա աստուածօրէն չքով»։ (Սեբէոսի Նախաբան)։

190. (յէջ 134, տող 14). Խոր. Ա. Ժ. «Հանդերձ որդւովք իւրովք և դստերօք, և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրեւ 30), և այլօք ընդոծնօք և եկովք յարեցելովք ի նա, և բոլոր աղխիւ։

191. (յէջ 134, տող 24). Վանակ. վարդապետ յ'13 Նաւասարդի ասէ զտարին, որ համեմատի ըստ Հայկայ շրջանի 2497-2500 ամաց։

192. (յէջ 135, տող 11). Վրաց հին Վախթանգ պատմիչն աւանդէ թէ ամենայն Թորգոմազունք՝ Հայկայ լեզուն կու խօսէին։

193. (յէջ 144, տող 3). «Խաբեցին դիւթքն և կախարդքն (զՆաբուք.) թէ » հայրն քո Բէլ Քանանացի ապստամբեալ յԱստուծոյ շինեաց զաշտարակն. և ի » բաժանել լեզուացն չաստուած անուանեցաւ. թաքուցանելով ի նմանէ՝ զտա» րամահ լինել ի Հայկայ յաբեթեան»։

194. (յէջ 148, տող 18). Σοτιακὴ περίοδος կամ κυνικός κύκλος τὸ μενόφρεως կամ Մենեֆռա, յանուն թագաւորին առ որով սկսաւ շրջան մի 1322. Ն. Ք. յառաջ քան զայն 2782։

195. (յէջ 148, տող 20). Ստուգիւ արեգակնային տարին ոչ է 365 օր և 6 ժամ, այլ իբրեւ 365 օր 5 ժամ և 48. որով ըսել է որ անոր և չարժական տարւոյն զուգասկիզբը ոչ 1460-1 տարին հեղ մը կ'ըլլայ, այլ 1500 (կամ 1505) տարին հեղ մը. այս այլ ծանօթ էր Եգիպտացւոց և կոչէին Մեծ շրջան, կամ Դիւրա՞ փիւնկի. զոր և յետոյ երեքի բաժնելով՝ ամէն 500 տարին մէկ դարձ մը սեպէին։

196. (յէջ 149, տող 13). Եգիպտացիք իբր զ'2800 ամաւ Ն. Ք. հաստատեցին զառաջին օր Թոթ ամսեան ընդ երեւման Շնկան. ըստ այսմ եթէ սկսան շրջան յ'2798 ամի՝ երկրորդ շրջան զոյգ կշիռ աւարտի ի 12րդ ամն Քրիստոսի։

197. (յէջ 151, տող 12). Եւ կոչումն Ցիարիրաիանի ցուցանէ զի շատ հին է սկիզբնաւորութիւն հայկեան տումարիս յազգիս։

Digitized by Google

198. (*յէջ* 154, *տող* 4). *Այս տողից մէկն այլ, զորոյ պատշաճ տեղը չկարցանք գտնել՝ այս է. « Առ քաջն Հայկ յուսադրաբար գայ ասելով »։*

*Հոս Հ. Ալիշան ակնարկած է անշուշտ Ստեփաննոսի Ռոշքեան Կամենիցւոյ բառագրոց մասին, ուր հատակտորներ կը գտնուին հին կորսուած հեղինակներու (հմմտ. Հայկազեան բառագրոց յառաջաբանը)։*

Ծ. Հրs.

199. (*յէջ* 154, *տող* 10). *Թուի մասնաւոր մէկու մը համար ըսել, որոյ գրուածոց հետեւող երեւի Սեբիոսին քով եղածն։*

200. (*յէջ* 154, *տող* 33). *Կլինքա ռուս բանաստեղծին քերթուածն. Բազմ. Բ։*

*Սարգիս Կլինքա ռուս բանաստեղծ մ'էր, Լազարեանց և Հայոց պատմութեան ընտանեցած. գրած է երկու հայկական ոտանաւոր, մին Հայկի վրայ, միւսն ալ Արդուարդի, տպուած Լազարեաններէն 1831ին. — հիացողն է Հայոց աշխարհին և ազգութեան։ Ահա նմոյշ մը.*

*Աշխա՜րհ, կըրկին դու խանձարուրք հայրենի,*
*Նորափետուր մարդկան ազգի օթարան.*
*Ի քեզ թըռիչս առեալ հոգւով կենդանի,*
*Ըզքո շընչել կամիմ ես զօդ հեշտական*
*Յորժամ երկիր ջըրապարփակ ողողէր*
*Եւ սաստ կըրէր ըզմըրըրկեալ կոհակաց,*
*ՅԱրարատեանն ի գագաթունս անդ ի վեր,*
*Այն հրաշաճեմ տապան իջեալ դադարեաց։*
*Անդ ընդ երկնիւք Հայաստանեայց գեղափայլ,*
*Նորոյ ուխտի շողաց նըշոյլ առաջին.*
*Անդ յլ֊ին սէր փարատեցաւ մէգ մըռայլ,*
*Մինչ պատուիրեաց՝ մարդկան, արիւնք մի՛ հեղցին։*

*Տե՛ս Բազմավէպ*, 1844 *յէջ* 79։

Ծ. Հրs.

201. (*յէջ* 157, *տող* 16). *Զսա իսկ կարծեմ այսպէս կոչէ՝ և ըստ բանի ըսածս հաստատէ Վարդան վարդապետ Մարաթացի. « Որք աճեցան ի Հայկականէն և » կոչեցան Տուն Թորգոմայ, և ժողովուրդ և ցեղ և անուանակիր հզօր արքային « Արմենիկայ ». եթէ և սա ըստ այլոց չիմանար զԱրամն, որոյ միայն զօրութիւն ծանօթ է մեզ։ (Եղ. Զմիւռն. ասէ Արմանեակս՝ որ է Արմատ և մեծութիւն)։*

*Հայկազունեաց Արմենակն, ըստ նորագոյն քննութեանց, կը համապատասխանէ Ուրարտացւոց թագաւորութեան մետասաներորդ ինքնակալին, որ կը կոչուէր Էրիմենա, և թագաւորեց* 675–670։ (*հմմտ.* Sandaldjian, *Les inscriptions cunéiformes urartiques*, introduction, p. XLVI)։

*Սակայն « Բեւեռագիր արձանագրութիւններ Անդրկովկասում » գրքի մէջ* (*Վենետիկ*, 1897) *Նիկոլսկի կ'ուզէ ցուցնել, թէ Ուրարդեան պատմութեան մէջ Արմնակի համապատասխանողն է Արգիշտի։ Վասն զի, կ'ըսէ նա, Արմենակ կը*

Digitized by Google

կոչուէր նաեւ Արագած, ապա թէ ոչ լեռը պիտի չկրնար իր անունը կրել։ Իսկ արդ Արագած անունն՝ Արգիշտի կը յիշեցնէ ուրեմն Արմենակ–Արագած հայկազուն թագաւորը նոյն է Ուրարդուի Արգիշտիի հետ. (էջ 40)։

Ռուս գիտնականը չէ բացատրած լեզուաբանական պատճառը՝ որով Արգիշտի Արագած կրնայ ըլլալ։ Մենք այսպէս կը մեկնենք. Արգիշտի հայկական Արգեստ ձեւը առածէ, իսկ Արգեստ՝ Արագած եղած, հմմտ. Զ–գեստ և Զգածնուլ։ Այբի յաւելուածն՝ առարկութիւն մը չկրնար ըլլալ. Ուրարդուի մէջ ալ Ա աւելցած է (Արարատ)։

Բնականաբար գրքիս մէջ դրուած ստուգաբանութիւն (Արմենակայ–ագած) լեզուաբանական ճշմարտութիւն մը չկրնար ըլլալ, որչափ յիշեցուցիչ՝ հիներու հետաքրքրական կարծիքներուն։ Նիկոլսկիի վերոյիշեալ գրքի մէջ (Թրգմ. Խաչատուր Յովհաննիսեանց) ընթերցողք պիտի տեսնեն՝ թէ Խորենացի Հայկազանց պատմութեան մէջ ի՛նչպէս յաճախ արձագանգ կ'ըլլայ ուրարտական պատմութեան (հմմտ. Մենուաշի = Մանաւազ) ո՛չ հեղինակ առասպելներու, ինչպէս հռչակեցին ի սկզբան քանի մը անխոհեմ քննադատներ։

202. (յէջ 158, տող 9). ինչո՞ւ կրկնութեամբ խորխոռունիք, և ոչ խոռունիք չէ յայտ։

Ծ. ՀԵՂ.

Գարագաշեան իւր Հայոց քննական պատմութեան մէջ «Խորխոռունիք» անունը կ'ուզէ մեկնել karker–carcer (բանտ) բառով, իբրեւ «բանտապահներ»։ Շատ հաւանական է՝ թէ անոնք Ուրարտացւոց Թագորդ մ'էին, քանի որ Մանաւազ (= Մենուաշի)՝ իրենց նախահօր իբրեւ եղբայր կը նշանակուի. (Խոր. Ա. ԺԲ) բայց ստուգաբանութիւնը երկբայական է։

Հոս Խոր. կ'ըսէ. «Եւ ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս մանաւազեան » և զբզնունեաց, և որդունին անուանեալ »։

Կարծեմ թէ Որդունի Ուրարտացւոց Urdahini (Ուրարտացի) բառն է, զոր Նիկոլսկի կը գտնէ բեւեռաքանդակ արձանագրութեանց մէջ, բայց մոռնալով զայն համեմատել Հայոց Որդունի ցեղին հետ, որ կ'երեւի Ուրարտացւոց մի մեծ և հարազատ Թագորդն էր։

Ծ. ՀՐՏ.

203. (յէջ 159, տող 1). ի գահնամակին Արտաշրի և Ս. Սահակայ՝ առաջին է։

204. (յէջ 161, տող 31). Մի ի թագաւորաց Եգիպտոսի ԺԸ հարստութեան կոչի Արմայիս, որ և Հռամսէս Բ, և համարի կեցեալ ԺԴ դար նախ քան զՔրիստոս նոյն կամ եղբայր գոլ Սեսոստրի մեծի, և հալածեալ ի նմանէ, կոչի նա և Դանաոս։

205. (յէջ 162, տող 4). Աստի կարծի Brig կոչումն գաղղիական քաղաքաց, և Burg գերմանաց։

206. (յէջ 162, տող 33). Խոր. Արաստ գրէ, այլք Երաստ ասեն։

Թէոփիլակտոս Սիմոկատա իւր (բիւզանդական) Պատմութեանց Գ. գրքին մէջ (յէջ 125) կ'ըսէ. «τὸν 'Αράξην στρατοπεδεύεται ποταμόν, ὃν Ἕρας ἀποκαλοῦσιν οἱ » βάρβαροι». այս վերջին բարբարոս տիտղոսը Հայոց կը պատկանի անշուշտ որովհետեւ Թէոփիլակտոսի Երասն անշուշտ հայկական Երաս(խ)ը կ'ակնարկէ։

Ծ. ՀՐՏ.

Digitized by Google

207. (յէջ 165, տող 10). ի գահնամակի ԼԳ Գաւչոցեան։ ի Ներսիսին Աշտա-ցեան. նոյնք թուին։

208. (յէջ 166, տող 11). Ըստ աւանդութեան մեր հին պատմչաց մէկուն՝ արդարեւ սեմական կ'ըլլայ անունը, եթէ, որպէս ասէ, Արրահամու ընդոծնին թոռն էր փառոխ, որպէս յետոյ պիտի յիշեմք։

209. (յէջ 166, տող 32). Չի այսպէս գրի յՕր. ինչ. «Թողեալ զՇարմա յԱր-» մաւիր, հանդերձ որդւովք բնակել». մինչ այլ Օր. «հանդերձ որովք բնակէրն».

Թէ Գեղարքունի անունը Գեղամէն կ'ելնէ, շատ տարակուսական է այժմիկ. Նիկոլսկի զայն գտնել կարծէ ուրարտական Kiehuni (տես էջ 51) անուան մէջ. մենք կարծենք թէ լաւագոյն կ'ըլլար Arkukini (յէջ 55) անունն ալ ի մէջ բերել և ըսել թէ Kiehuni–arkukini անուններու միացումով կազմուած է Գեղարքունի. ապա թէ ոչ՝ արք յաւելուածը՝ անմեկնելի պիտի մնար։

Ն. Հրs.

210. (յէջ 169, տող 33). Ըստ Զամչեան պատմահօր Շիրուանք իսկ որ ընդ մէջ ողնաշարին Կովկասայ և Կասպից ծովու՝ կոչեցան յանուն Սիրուանայ որդւոյ Սիսակայ։ Բայց ոչ գիտեմ ուստի՞ առեալ է զաւանդութիւնս այս։

Զամչեան անուանց նմանութենէն հետեւցուցած է թէ Սիրուանն սերած պիտի ըլլան։

Գալով Աղուանից, Albani, կրկին ժողովուրդներ կան՝ որ անոնց յաջորդ ըլլալ կը թուին։ 1°. Աֆղաններ, արիական ցեղէ, դեռ կը պահեն շատ սովորութիւններ, քրիստոնէութենէ մնացած. կ'երեւի թէ Աղուանք վերջ ի վերջոյ մահմետականացան մասամբ, ինչպէս հանդիպեցաւ Կովկասու շատ քրիստոնեայ փոքրիկ ժողովուրդներու։ Նոյն իսկ Վրաց մաս մը (կիւրճի), Հայոց մաս մը (քիւրտեր) նոյն ճակատագիրն ունեցան։

2°. Ալպանիացիք կամ ըստ իրենց անուանակոչութեան Սքիփեթարի (արքժայրից)։ Դիտելու է որ Աղուանք Վրացի և այլ շրջակայ ազգերէն Ռանն կը կոչուէին, անոր համար Խորենացի այնքան հանճարեղաբար Առան անուամբ նախահայր մը կը դնէ անոնց՝ որ աղու բնաւորութիւն ունէր։

Արդ այս Առան անունը չկա՞յ Ալնաուտ յորջորջման մէջ, ինչպէս Աղուանքը՝ Ալպանիացիի մէջ։ Տարակոյս չկայ՝ թէ բարբարոսութեամբ իրարու կը հաւասարին այս երկու ազգեր. այժմեան Ալպանիացիք ծանօթ են արդէն, իսկ հին Աղուանք՝ մարդազօհ ունէին, ինչպէս կ'ըսէ Մովսէս Կաղանկատուացի։ Եւրոպացիներ՝ Պեղասգեանները կ'ուզեն տեսնել այժմեան Ալպանիացիներուն մէջ, մինչդեռ ուրիշներ գաղթականութիւն մը կը համարին զանոնք՝ Գոթաց, Ալանաց և այլոց հետ Եւրոպա եկած։ Նախ բնակեցան անոնք Ալվանիա գաւառի մէջ, անոր համար Ալվանացիք ալ կոչուած են։ (Տես այս վերջին կէտի մասին Բազմավէպ, 1847)։

Մովսէս Կաղանկատացւոյ (1860, փարիզ, Կ. Վ. Շահնազարեան) հրատարակութեան մէջ Շահնազարեան ընդարձակ ներածութիւն մը կը նուիրէ Աղուաններու ազգաբանութեան։ Եւրոպայի մէջ որչափ Alb սկզբնաւորութեամբ անուններ կան, ըստ հմուտ Շահնազարեանի, Աղուանք բառէն յառաջ եկած են։ Այնպէս որ Անգղիացիք ալ Աղուաններէն յառաջ կու գան – ոչ թէ միայն Ալպանիացիները, ինչպէս ցարդ կը կարծուէր. — Անգղիա՝ ի հնումն Albion չէ՞ր կոչուեր։

Ն. Հրs.

Digitized by Google

211. (յէջ 171, տող 20). Գր. Մագիստրոս ստուգաբանութեամբ թէ աւանդութեամբ կ'ըսէ. «Ո՞ւր Հարմայն հոյակապ հիմնարկութիւնս». աստի թուի, ըստ Ջամչեան պատմահօր, թէ Հարմա քարակոփ պարսպով պատած ըլլայ զԱրմաւիր, և մեծագործ բնակութիւններ շինած հոն և [illegible]ուրսը, որ մեզ անստոյգ է կ'երեւի։

212. (յէջ 175, տող 6) Քնար ըստ Պարսից պատերազմ, գործ, սերմ։

Վերոյիշեալ բառի մասին կը խօսի նաեւ փորթուգալ փաշա Եղիշէի քննադատութեան մէջ Քրպիկար բառի առթիւ (տպ. 1903, յէջ 252 ծնթ. 1)։

Ծ. Հrs.

213. (յէջ 175, տող 8). Մովսէս կաղանկատուացի ասէ «կախէ զպարանոցէն»։

214. (յէջ 177, տող 7). Գաղղ. պատմիչն որ գրեաց Hist. Delphinat. Lugdun. 1498. աւանդէ զԳոմերայ յետ խառնակութեան լեզուացն բնակեալ նախ ի Հայս, ուստի ինքն կամ որդիք իւր անցին ի Փռիւգիա և ի Կապպադովկիա, յորմէ սերունդք նորա Ակմոն և Ուրանոս սփռեցան ցեզերս Փ. Ասիոյ և անցին յԵւրոպէ։

215. (յէջ 177, տող 18). Այլ ոմն ի պատմչաց մերոց գրէ թէ. «Հալածական » առնելով ի միջերկրացն՝ զՊատաւիքայ ազտիչատեան արկանելով ի կղզի մի » յԱսիա»։

216. (յէջ 178, տող 5). Գիտնալու է որ Արամայ ատեն և անկէ շատ ետքն այս Կապադովկիոյ գլխաւոր քաղաքն հիմակուանին տեղն չէ, այլ քիչ մը հեռու։

217. (յէջ 178, տող 10). Բազմահմուտն Ռոմմէլ (Հանրագիտ բառ.) Ամովս մարգարէին ըսածն (Թ. 7.) «Ո՞չ հանի զԱյլազգիս ի Գամրաց»՝ ուր Լատինն կ'աւելցընէ «և զԱսորիս ի Կիւրենեայ», կ'իմանայ մեր Արամայ քշած և բերած գաղթականները։

218. (յէջ 180, տող 4). Յունական առասպելեաց մէջ կը յիշուի Ակմոն (Α[illegible]) անուամբ չաստուած մը, կամ դիւցազն Սկիւթացի, որդի Մանէի կամ փանէի, և հայր Ուրանոսի և Դիդեայ (կամ Դոասայ) (Երկնի և երկրի)։ Ասոր համար ընդհանուր պատմութիւն գրողաց մէկն կ'ըսէ թէ Հայաստանէն ելաւ եկաւ ի Կապպադովկիա և իր անուամբ շինեց զԱկմոնիա. իրմէ վերջը իր որդին Ուրանոս տիրեց Կապպադովկաց և Հայոց. Ուրանոսի որդին ալ պապուն անուամբ Ակմոն ըսուեցաւ. ասոնցմէ առաջ եկան Կապպադովկաց թագաւորք։ — Չգիտեմ ուսկի՞ց առած է հեղինակդ այս զրոյցը, որ կը յիշեցընէ մեր Արամայ գործը. ժամանակին ալ յարմար կու գայ. վասն զի 2025 տարի Ն. Ք. կը դնէ զԱկմոն։

219. (յէջ 180, տող 35). «Յերկարեալ ժամանակս լինել յարեւմուտս»։ — Խոր. Ա. ԺԵ. Այսպէս կ'իմանայ մեր Յոհ. կաթողիկոս Պատմիչն այլ. «Ընդարձա- » կեալ ասի հարստահարութեամբ բազմաւ զսահմանս Հայոց հասարակ ընդ չորս » ոլորտս երկրի... Ոչ միայն զայլս ոմանս դիւրադաւս այլ և զԿապադովկեցիս եւս » բազում արիական քաջամարտութեամբ ընդ իւրեաւ նուաճեալ սեփականէր»։

Արամայ անձնաւորութիւնն ի՞նչ պատմական արժէք ունի արդի քննադատութեան առջեւ։

Գիտուի որ Ասորւոց նախահայրն եւս Արամ է, (համմտ. Եւսեբեայ Քրոնիկոնը) և Ասորիք այլ իրենց նախահօր պատճառաւ Արամ կոչուած, ճիշդ ինչպէս Հայերը՝ Արմէն։

Այս նմանութիւնը տեսնելով քննադատներ իսկոյն փորձութիւն պիտի զգան Խորենացին փոխառութեան մէջ գտնալու և ուրանալու հայ Արամի գոյութիւնը։

Digitized by Google

Սակայն Որարտագիտութիւնը հակառակ վճիռ կու տայ։ Բաբելացւոց Սալմանասար Բ.ի ժամանակ (860–825 Ն. Ք. Ք) կը գտնենք Վանայ մէջ Արամէ անուամբ թագաւոր մը, որ անշուշտ հիմնադիրն եղաւ *Aramalis* (= Արմաւիր) որ կը նշանակէ քաղաք Արամէի։

Նոյն Արամ կը թագաւորէր 860–843 Ն. Ք. Ք. ըստ Սանտալճեանի։ Կարող ենք զինքը պատմական իրական նախատիպարն ընդունել հայ Արամին, զոր բնականապէս չափազանց ճոխացուցեր է Խորենացի։

Ծ. Հրs.

220. (յէջ 181, տող 30). Վասնզի Ս. Գրոց գրածն «Ցերկրէն յայնմանէ ել » Ասուր», լաւագոյն կը սեպուի կարդալ «Ցերկրէն յայնմանէ (ի Սենարարաց) » ել (Նեբրովթ) յԱսուր, և շինեաց զՆինուէ»։ Ասուր կամ Աթուր որդի է Սեմայ, որուն վիճակուած էր այս երկիրս. և իր անուամբ կոչեցաւ հոն շինուած մեծ քաղաքն՝ որ յետոյ Նինոսի անուամբ կոչեցաւ Նինուէ։ «Սա զքաղաքն Աթուր ըն» դարձակեալ՝ յանուն իւր կոչէ Նինուէ»։ (Վարդան). Մովսէս Քրիստոսէ ԺԶ դար առաջ կը յիշէ զՆինուէ՝ որ Նինոսի անունէն կոչուած է, յայտ է ուրեմն որ Նինոս ալ իրմէ առաջ է, և ոչ եթէ իրմէ երկու երեք դար վերջը, ինչպէս ոմանք ի գիտնոց հիմայ կ'ուզեն դնել. (որպէս Նիպուր). Վոլնէյ, Տոնու, Հէերին։ Ոմանք ընդհակառակն զՆինոս և զՇամիրամ դնեն ի ԻԲ դարու Ն. Ք։

221. (յէջ 182, տող 34). Բերոս. Աննեան, թէ և անհաւաստի, մարթի օժանդակել կարծեացս, զրուցիւքն որ զՍաբաթէոսէ՝ Սակայց առաջնորդէ որով զՀայս իմանայ, և ի դէպ գան Արամայ հակառակութիւնք Սամբաթայ ընդ Նինոսի, զորոյ չկարելով զդէմ ունել՝ խոյս տայ յեզերս Սարմատեան ծովուն (Պոնտոսի ?) թագաւորեցնելով ի Հայս զորդի իւր Բարզանէ։

222. (յէջ 184, տող 1). Խոր. Ա. ԺԴ. «Երկիւղ կասկածանաց խարդաւանակ » լինելոյ իւրոյ թագաւորութեանն զայսպիսիս համարեալ իրագործութիւն (զվրէժ » խնդրելն յԱրամայ) ծածկէ զչարութիւնն, և հրամայէ նմա զայն իշխանութիւն » անկասկածաբար ունել»։

Կաղկ. Ա. «Ջսա Նինոս անուանէ իւր երկրորդ, և համարձակութիւն տայ » վարսակալ ածել մարգարտեայ, թէպէտ և վերին աչօք»։ Նոյնպէս ասէ և Սամ. Անեցի։

223. (յէջ 184, տող 31). Խոր. Ա. ԺԵ. «Բայց թէպէտ և ոչ ի բուն մա» տեանսն, սակայն որպէս Մար Իբաս Կատինայ պատմէ, ի փոքունց ոմանց և » աննշանից արանց ի գուսանականէն այս գտանի ժողովեալ ի դիւանի ար» քունեաց»։

224. (յէջ 185, տող 31). Ինչպէս ըստ զանազանից Բարձր ճշան, Շահկատար օձից, Սեմի կամ Սամից ձետ, Աղաւնի, և այլն։

Հին պատմիչներ բոլորովին անհամաձայն են իրարու Շամիրամայ անձնաւորութեան մասին։ Այնպէս որ կրնանք այլեւայլ Շամիրամներ դնել։

1. Շամիրամ կին Նինոսի, 2000 տարի Ն. Ք. Ք. Նա իր ամուսնոյն մահուանէն վերջ ամուսնացաւ իր Նինուաս որդւոյն հետ, քառասուն երկու տարի թագաւորեց, Բաբելոնի մէջ մեծ շէնքեր շինեց, արշաւեց Հնդկաստան, յաղթուեցաւ, մեռաւ։ (Դիոդոր Սիկիլիացի, Յուստինոս, առնլով Կտեսիաս Կնիտացիէն)։

2. Շամիրամ, որ կ'ապրէր 1400ին (Բերոսոս)։

3. Շամիրամ 800 Ն. Ք. Ք. (Հերոդոտ)։

Շամիրամայ զրոյցին մէջ, կ'ըսէ Օփփէրթ արդի մեծ բաբելագէտը, խառնուած են Աստարտի և Տերգետոյի զրոյցներ, ինչպէս իր աղաւնի կոչումն ալ կը ցուցնէ։ Բայց պատմական անձ մը եղած կ'երեւի Շամիրամ անունով. վասն զի բաբելական արձանագրութեանց մէջ կը գտնուի Քրիստոսէ 800 տարի առաջ, Հերոդոտի ըսածին պէս, Սամմամուրատ անուամբ թագուհի մը, կին Նինուէայի Աղատ–միրարի (858-29). ժամանակակից Ուրարտացւոց Արամիս (860–843) Լուտիպրիս (843–835) Սարիդուրիս Առաջնի (835–820)։

Հետեւաբար Արայի վրայ պատմուածները, ժամանակագրական տեսակէտով, պիտի յարմարէին Արա–միսին, դժբաղդաբար Սամմամուրատ թագուհւոյն անունը միայն մնացած է, և այլ ոչինչ։

Խորենացւոյ Շամիրամը ի՞նչպէս յառաջ եկած է։ Անշուշտ ծանօթ էին իրեն Դիոդորի և Յուստինոսի ի մէջ բերած զրոյցները. անոնք կ'առասպելեն՝ Բաբելոնի շէնքերն և արձանագրութիւնք Շամիրամայ ընծայելով. Խորենացի ալ Հայաստանի մէջ եղածները իրեն կ'ընծայէ։ Կը սխալի Գելցեր երբ կ'ըսէ. «Շամիրամայ զրոյցն ուրիշ բան չէր, բայց ընիկ արամէական դիցախառն առասպել մի» (Հետազօտութիւն հայ դիցաբանութեան, Թրգմ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան, էջ 90–91)։ Բայց մենք Խորենացւոյ Շամիրամին մէջ՝ ուրիշ անձ մը կը տեսնենք։

Քրիստոսէ 800 տարի առաջ Շամշի–Ռամմանի (825–812) անուամբ մէկը կը թագաւորէր Բաբելոնի վրայ. սա Ուրարտուի դաշնակից Նաիրիի երեսուն թագաւորներու յաղթելով, պարտեալներու անուններն ու մայրաքաղաքները նշանակեց արձանագրութեան մը մէջ, զոր տե՛ս Ravvl. Ա, էջ 29–31 տող 45, 64 սիւնակ։

Արդ մենք կ'ենթադրենք թէ հայ երգերու մէջ կը խօսուէր այդ Շամշի–Ռամմանայ արշաւանքի մասին։ Խորենացի Շամ(շ)ի–րամ (ման) հասկցաւ զայն և օտար զրոյցները օգտի բերաւ՝ անոնցմէ պատմութիւնը ամբողջացնելու համար։

Դիտելու է որ Շամիրամ կրկին պատերազմ կու տայ նախ յԱյրարատ, յետոյ ի Վան, երկուքն ալ յայտնապէս արձագանգ Ուրարտու և Բիայնա անուններու։

Ծ. Հրs.

225. (յէջ 186, տող 8). Մեր հին պատմիչաց մէկը Արայի գեղեցկութեան համար կ'ըսէ, թէ «Ոչ գտանէր յայնմ ժամանակի նման նորա այր ոք ամենեւին պատկերաճոխ»։

Հ. Ալիշանի յիշատակած այս հին պատմիչն է Սեբէոս, Պատմութիւն Ա, էջ 5. (տպ. Ս. Պետերսբուրգ 1878)։

Ծ. Հրs.

226. (յէջ 186, տող 25). Կիրտ կամ Կիրտուն, արեւ, գունտ երկնից։

227. (յէջ 186, տող 28). Զայս յայտ առնէ Պատմիչն մեր Վարար կոչելով զնա. ի սանսկրիտ լեզու Վար–արոմա նշանակէ անձրեւորդ։ Յայս ակնարկէ և Թովմ. Արծր. «Հայրրատայեղ կոչելն զնա, միանգամայն և փափաչոտ և նրամանի բարուք?»։

Վերոյիշեալ վարար բառը գործածողներն են Խորենացի, «կին ոմն խոշորագեղ վարար». Բ. 34։

«Անսամոլի վավաշ և վարար» Մագ.։ Շատ լաւ է Հ. Ալիշանի ստուգաբանութիւնն, ինչպէս շատ անհաւանական հիներու կարծիքը՝ որ վարարը կը հասկնային կին վավաշոտ՝ «որ վարի զհետ արուի» (Տե՛ս Հայկազն բառագիրք)։

Իսկ Թովմա Արծրունւոյ խօսքը կը գտնուի յէջ 7, ուր տարակուսական ընթերցուածը այսպէս տպուած է. «Հոմանի բարուք»։

Տ. Հրս.

228. (յէջ 187, տող 15). Ի՞նչ նշանակութեամբ յանուն Արայի այդպէս կոչուիլն՝ անստոյգ է. Թէ և ոմանք արատ բառէն մեկնաբանեն, իբրեւ Արայի արատուելու, վիրաւորելու տեղն։ Աւելի կ'ընտրէի պարսիկ Րևտ բառն՝ Արայի կորովը. ոյժը նշանակելով։

Արարատի ստուգաբանութեան մասին տե՛ս մեր 86 ծանօթութիւնը։

Տ. Հրս.

229. (յէջ 187, տող 16). Ցոհ. Կաթ. «Արայի զշինութիւն աշխարհի տնօրինեալ՝ յիւր անուն զբնակութեան իւրոյ վայրս կոչէր Արարատ»։

230. (յէջ 188, տող 5). Ըստ ձայնին առաւել թուի յանուն Արամայ այսպէս կոչել գեղջս իբր Արամունիք, որպէս Տարօն և Ցրօնք։

231. (յէջ 189, տող 14). «Ունի ի ծածուկ, և ոչ ումեք ի ծանօթից նորա ցուցանէ զնա». (Սեբէոս)։

232. (յէջ 191, տող 6). Սեբէոս վկայէ. «Այսպէս հանէ համբաւ Արալեզաց տիկինն Շամիրամ»։

233. (յէջ 193, տող 27). Ըստ օրինակաց ինչ 12,000 և միւսն 6000։

234. (յէջ 196, տող 35). Ինչուան հիմայ Վանայ կողմը կը պատմեն թէ Արտամետի քով ծեր մը յափշտակեց Շամիրամին ուլունքները և փախչելով Դատուանայ մօտ ձգեց ի ծովն, որ ազատի աշխարհ անոր ըրած անզգամութիւններէն այն ուլանց ձեռքով. (տ. Ուղեւոր. Հ. Ներսիսի)։

235. (յէջ 197, տող 5). Շամիրամայ վրայ պատմուածներէն մէկն այլ այս է (Պոլիեն. Ը) օր մը մազերը չտկելու ատեն կը լսէ որ Սիրակք ապստամբեր են. մէկէն խառնակ մազերովը կ'ելնէ կը հանդարտեցնէ զանոնք. անոր համար իրեն այն կերպարանքով արձան մը կը կանգնեն։ Այս յիշեալ ազգն կամ Սարմատացւոց և Պարթեւաց մէջ է, կամ Վրկանաց քով և կամ մեր Շիրակը։

Մեր ազգային զրուցաց մէջ այլ կ'ըսեն թէ իրեն ուլունք յափշտակող ծերուն ետեւէն վազելու ատեն՝ մազերուն մէջ մեծ քար մը դրեր ու պարսիքէ քարն ընկեր է Արտամէտի մօտ փոսի մը մէջ, զոր և ինչուան հիմայ ցուցընեն։

236. (յէջ 198, տող 6). Մեր օրերս բանաստեղծ երէց մը Գաբ. Պատկան. մեր հին նախնեաց ոճոյն նմանաբան երգով մը այս Ցուռութուլանց այլաբան մեկնութիւն մը կու տայ, որպէս թէ անոնցմէ ի վիզն և ի ծոց ձգած՝ իրեն կը քաշէր երիտասարդաց սէրը, հանդերձ կախարդական զօրութեամբ.

Ցուռութք յուլունսն Շամիրամայ.
Ցուռութք ի ծոց արքայուհւոյն
Սրբէն յաչաց զարտասուս,

Digitized by Google

*Ջարտասուս վասն մահու Արայի.*
*Տեսանեն զԿարդոս ի գահի.*
*Ցուցութք յուլունս արքայուհւոյն*
*Գործք ձեռաց Ջրադաշտայ՝*
*Կացուցանեն զընթացըս գետոց,*
*Շիջուցանեն զթափ նետից նիզակաց,*
*Կթեցուցանեն զսիրտըս քաջաց*
*Ի սէր մատաղաւուրց թագուհւոյն.*
*Արտացուցանեն զերիտասարդս*
*Ի գեղ երեսաց Շամիրամայ։...*

237. (*յէջ* 198, *տող* 30). *Զոր օրինակք ոմանք Սօս անուանէր գրեն՝ բայց որոշակի կը կարդայ Մագիստրոս* (*Թղ. ԺԱ*). « *Սօսին յԱրմաւիր առ դրան ապարանին արքունի, զոր Անուշաւանն պատուէր Արայեանն մանուկ, վասն որոյ Սօսանուէրն կոչիւր* »։

238. (*յէջ* 200, *տող* 14). *Ի Մագիստ. և ի Մխիթ. Այրիվ. զուգաթիւ գտանին* (29) *ի Ցոհ. Կթ.* 26. *ի Վարդան և յՈսկիփ.* 24։

239. (*յէջ* 200, *տող* 16). *Անուշաւանէն մինչեւ Տիգրան Ա. Հայաստանի բազմաթիւ իշխաններ թուարկած է Խորենացի. ասոնց գոյութիւնը շատ տարակուսական է՝ նկատելով որ ոչ ուրարտագիտութիւնը, ոչ օտար հեղինակներ կը հաստատեն զանիկա։ Քսենոփոն Կիւրամարզի մէջ կը ներկայացնէ զՏիգրան Ա, իբր դաշնակից Կիւրոսի. ուրեմն Տիգրան Ա.ը կարող ենք նախահայր ընդունել իրական թագաւորներու։*

Մ. Հrs.

240. (*յէջ* 216, *տող* 25). *Պարեհ կամ Պարիոս միւս եւս հին պատմիչ Տրովական մարտից* (*Գլ. ԺԽ*) *ընդ Մեմնոնի զօրավար մի եւս Եթովպացւոց յիշէ զՊերսէս։*

*Նախորդ էջին մէջ Հ. Ալիշան կը խօսի Խաղդեաց վրայ, որ Յոյներէն* χάλυ *ալ կոչուած են։*

*Նորագոյն հետազօտութեանց համեմատ՝ Խաղտիք հին Ուրարդացիներն էին, որ Խալդիացի կը կոչէին զիրենք՝ յանուն իրենց Խալդի աստուծոյն։ Երբ հայ ցեղը զերազօր եղաւ Հայաստանի մէջ՝ իրենք դէպ ի Արեւմուտք քշուեցան, տանելով հետերնին իրենց լեզուն և սովորութիւնները։ Երկաթագործ և պատերազմասէր ըլլալով, շատ նեղութիւն կը պատճառէին հայ երկրագործներուն. Քսենոփոն* (*Կիւրամարզի մէջ*) *կը ներկայացնէ զԿիւրոս իբր հաշտեցնող այդ երկու թշնամի ազգաց։*

*Այն կէտերու վրայ տես բաց ի Նիկոլսկիի, Սանտալճեանի* (*ուրարտական բառարան, յէջ* 368–70) *վերոյիշեալ երկասիրութիւններէն, Հիւպշմանի « Հին հայկական տեղեաց անունները » Թարգմ. Հ. Ներսէհ Անդրիկեան, Բզմ.* 1904, *էջ* 396, 509, *և այլն։*

*Դիտուի որ Խաղդեացի անունը Խաւդեայ և Խօղէ ձեւերն առած է* (*Տես Հայկազեան բառագիրք*)։ *Ըստ այս լեզուաբանական երեւոյթին՝ Խաղդիացիք բառն ալ պէտք էր Խաւդեայ, Խօղէ դառնալ։*

Digitized by Google

Եւ յիրաւի քրդերէնի մէջ խօդէ կը նշանակէ Աստուած. կարելի չէ՞ այս բառի մէջ խալդի աստուծոյ անունը տեսնել։ Պարսկական խիւտա, գերմաներէն Gott բառի գոյութիւնը չէ՞ն ցուցներ՝ թէ հնագոյն ձեւ մը եղած ըլլայ հասարակաց մայր։

Ըստ Սանտալճեանի Haldisի նախնական ձեւն էր Kas-dis (կայծ տուող, լուսաւորող), հմմտ. սանսկրիտ Kás = լոյս։

Ծ. Հրs.

241. (յէլ 217, տող 2). Սեւան, և Սիսակայ երկիրն, որոյ անուն յանկակից իմն լսի և Սաւսեայ կամ Շոշեայ ուստի Մեմնոն եկն։

Վիրգիլ. Ա. Eosque acies et Nigri Memnonis arma.

Արտին Միլետացի՝ զոր ոմանք արբանեակ Հոմերի ասեն և այլք ի սկիզբն ոլոմպիադացն կեցեալ, արար զատ ի Տրովականէն և զեթիովպականն քերդուած, յորում զՄեմնոնի քաջութիւնսն երգէր յետ մահուն Եկտորին։

242. (յէջ 218, տող 26). Պայպակ գրէ Ն. Պալեան։

Սկայորդիճ որ կայպակի յաջորդեց, ըստ Լընորմանի, կը համապատասխանէ Արգիշտիսի. ինչպէս Հրաչեայ՝ Ուրսաուի։ Այս վերջնոյն անուամբ կոչուած գաւառը Ուրզանա կը համապատասխանէ Արամանիի (հմմտ. Ուրարդու = Արարատ), բայց թէ Ուրսաու՝ «Հրաչեայի» շատ տարակուսական է։ Դարձեալ տեսանք թէ Արգիշտի աւելի Արագածի կը համապատասխանէր։

Ծ. Հրs.

243. (յէջ 226, տող 20). Ըստ Բ. Մնաց. Ե. 26. «ի Քաղա և ի Քաբովր » առ Գետեզերբն Գովզանայ»։ — Գովզան ըստ ոմանց Գզըլ–Էօզէյն գետ Մարաց կամ Իրագայ, ըստ այլոց նոյն ինքն Քաբովր կամ Քովբար է, որ և Եյրաւխ կոչեցեալ ի Յունաց, և է օժանդակ Եփրատայ բղխեալ ի լերանց Աղձնեաց, և խաղալով ի Միջագետս։ — Բայց Քաբովրս այս առ որով առաջին գերութիւնն Սամարացւոց բնակեաց՝ է խաբոր գետ Ջախուի օժանդակ Տիգրիսի, բղխեալ ի հարաւային լեռնասահմանաց Հայոց։ Բարձրաբերձ լերինք կողմանցն Ճիւտի կոչեցեալք կարծեցան յոմանց յանունէ Հրէիցն (Եահուտի) այսպէս կոչեցեալ, և բազմաց կարծիք են բնակչաց կողմանցն լինել ի սերնդոց անտի տասնեցուն ցեղից իսրայէլացւոց գերելոց։

244. (յէջ 226), տող 33). Ըստ այլոց էին ի Պարսից, ի կոսսէա գաւառէ Շոշայ. ըստ այլոց փիւնիկեցիք էին ի սահմանաց Սիդոնի։

Մարդինի համարի զԱկիւրս բնակեալս առ Երասխաւ։

Սգալիճէր՝ զխուրայիս կողքեաց. այլ ոչ կարծեմ ցայնվայր տիրապետեալ Ասորեստանեայց։

Տիքէնսըն (Ասիակ. Երգ. 1837) զԲութա համարի յիրագ կամ ի Բաբելոն։ — Նիպուր՝ յԵլամ՝ որ է յարեւելս Բաբելացւոցն։

245. (յէջ 227, տող 33). Ըստ Նիպուրայ եկեաց իբր ամս 10, և յայնմ ժամանակի երկրորդ անգամ զԲաբելոն, և ի ծովեզերս Կիւլիկոյ խորտակեալ զնաւատորմն յեւլուզակաց Յունաց շինեաց զՏարսոն, որպէս պատմէ Աբիւդենոս։ — Եւսեբ. Ա. 53։ Բայց գիրք Տովբիթայ Ա. 24. ասեն ոչ աւելի քան զ'50 օր կեցեալ յետ դարձին յԵրուսաղեմէ։

246. (*յէջ* 228, *տող* 35). *Առ Սեբիոսի, որ ասէ յետ սպանման Սենեքերիմայ «ապա ապստամբեցին յԱսորւոց Թագաւորաց ծառայութենէ»։*

247. (*յէջ* 229), *տող* 6). *Կամ թէ Հայ Թարգմանին այսպէս յեղաշրջեալ, որ վրիպանօք առ Խորենացւոյ գրի Արգամոզան։*

248. (*յէջ* 229, *տող* 35). *Զնոյն հաստատէ Խոր. և այլուր Բ. Է։ «Եւ են այս» երկու տունքս՝ ի զաւակէ Սենեքերիմայ, Արծրունիս և Գնունիս»։*

249. (*յէջ* 230, *տող* 10). *Ի պատերազմէ Եսայեայ յետ նախակարգեալ բանիցն «Եւ Սանասար չինեաց զՍասուն. և Անդրամելէք գնաց յԱղուանս»։*

250. (*յէջ* 230, *տող* 32). *Սեբ. ասէ. «էր նա որդի որդւոց Արամենիկայ», զոր համարիմ ուղղելի՝ Որդի որդւոյն Հարամայ կամ Արամայի, նուազականաւ կամ փաղաքշօրէն Արամենակ կոչեցելոյ։ Եւ ըստ այսմ հայր նորա անանուն մարթի լինել Արտաշէսն կոչեցեալ յայլոց և նոյն ժամանակ Հարամայի յիշեցեալ։*

*Հ. Ալիշան, Քրիստոսէ* 600 *տարի առաջ Հայոց իշխան եղած կը համարի զԱրտաշէս և Զարեհ. այս վերջինը կը գտնենք Սեբէոսի մէջ* (*յէջ* 6) *իսկ Արտաշէսը՝ ոչ Խորենացւոյ մէջ կայ և ոչ ալ Սեբէոսի. և ըստ ընդհանուր աւանդական պատմագրութեան՝ Արտաշէս Ա. է այն՝ որ Յունաստանի վրայ արշաւեց։*

*Ուսկի՞ց այս տեղեկութիւնները ի մէջ կը բերէ Ալիշան։*

*Քրիստոսէ գրեթէ* 160 *տարի առաջ Անտիոքոս Գ. Հայաստանի վրայ թագաւոր կը դնէր Արտաշիաս անուամբ նախարար մը, որ յետոյ Զարիադրէս* (*Զարեհ*) *իշխանին հետ միացած՝ ապստամբեցաւ Մակեդոնացիներէն Արտաշատ քաղաքը շինեց՝ Աննիբաղայ ծրագրով, դաշնակցեցաւ Հռովմայեցւոց հետ, և անկախ Հայաստան մը հիմնեց։* (*Ստրաբոն ԺԱ, ԺԶ,* 6։ *Պլուտարքոս, ի վարս Լուկուլլեայ։ Պողիբոս ժամանակակից պատմիչ, ԻԶ,* 6։ *Ապպիանոս, Ասորականք,* 46, 66, *և այլն*)։

*Հ. Ալիշան Սեբէոսի քով գտնելով Զարեհ անունը, փորձած է օտար պատմիչները հայ աւանդութեան հպատակեցնել, Արտաշիասն ալ իրեն ժամանակակից ընելով, Քրիստոսէ վեց դար առաջ դնելով զիրենք, և փոխանակ Մակեդոնացւոց՝ յԱսորեստանեայց ապստամբած դնելով զանոնք։*

Տ. Հrs.

251. (*յէջ* 231, *տող* 22). *Յիշատակ իրացս գտանի առ Սեբիոսի պատմչի, մանաւանդ թէ ի մատենին յորում և պատմութիւնն Հերակլի գրեալն ի նմանէ. քանզի այլոյ հնագունի պատմչի բանից հատուած թուի յիշատակն այն, և գուցէ Ղազարայ փարպեցւոյ. զի սմա ընծայէ Սիմէոն Ապարանեցի ի ԺԶ դարու յիւրում վիպասանութեան Պահլաւունեաց և Մամիկոնենից. և երկոցուն իսկ բանք թուեցուցանեն իմն զզործս հնգեցուն թագաւորացն ոչ Ագաթանգեղի ի Մարիբասայ առեալ, այլ մանաւանդ այլոյ ուրուՄ Մարաբայ Մծբնացւոյ՝ փիլիսոփայի հանդիպեալ արձանին ի բերել անդ զփլած արքունի տաճարին հրամանաւ Պարսից Թագաւորին, որոյ ժամանակ ոչ յիշի, այլ թուի լինել ի վերջ կոյս Դ դարու կամ ի սկիզբն Եին, և գաղափարեալ զայն. և թողեալ առ աշակերտսն, յորոց եգիտ և էառ և խառնեաց ի հիւս պատմութեան Հայոց հեղինակ բանիցս, զոր որպէս ասացի՝ զնոյն ինքն Ղազար փարպեցի համարիմ։*

*Սեբէոսի առջեւ կցուած Հայոց պատմութիւնը քննական մեծ վէճերու առիթ*

Digitized by Google

եղած է։ Մարաբաս Մծուրնացի (=Մծբնացի, վասն զի Մծուրնացն՝ Մծուրնացիի սխալ ընթերցումը կը համարուի այժմ) կը համապատասխանէ Խոր. Մար Աբաս Կատինային, որուն հետ կը զուգընթանայ, թէ և նոր և հետաքրքրական յաւելուածներ ալ ընելով։

Ցարդ կը համարուէր՝ թէ Սեբէոսի այդ յառաջաբանը Ժ դարու գործ պէտք էր ըլլալ, վասն զի բաց ի Խորենացիէն կը ճանչնայ նաեւ զՍտեփանոս Տարօնեցի, որ անշուշտ Ասողիկն է։ Սակայն Ստեփան Մալխասեան՝ Ասողիկի տեղ Ե. դարու մէջ յիշատակուած Ստեփան Տարօնեցին կ'ընդունի, ապացուցանելու համար Խորենացւոյ հնութիւնը։

Վերոյիշեալ կէտը՝ թէ Սեբէոսի և Խորենացւոյ Մարաբասները իրարու հետ աղերս ունին՝ տարակոյս չկայ։ Վասն զի եթէ Խորենացւոյնը՝ Մծուինի արքունական դիւանաց մէջէն հրամանաւ Վաղարշակայ կը գտնէ Հայոց Պատմութիւնը, զորոյ Վաղարշակ «զմատեան ինչ ի յարձանի հրամայէ դրոշմել» (Խոր. Բ. 21) Սեբէոսի Ագաթանգեղոսն ալ կ'ըսէ. «Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ առեալ ի դիւանէ արքունի» (Սեբէոս 1)։

Խորենացի տեսած կ'երեւի զԿեղծ-Սեբէոս, քանի որ կը յանձնարարէ չհաւատալ Բագրատունիները Հայկէն առաջ եկած ըսողներուն։ Ասոր մի որոշ նշան ալ այն է՝ որ Կեղծ-Սեբէոս Խորենացւոյ ազդեցութենէն ազատ, յաճախ կը շեղի անկից։

Մենք կարծենք թէ Փաւստոս-Բուզանդայ մաս կը կազմէր այժմեան Կեղծ-Սեբէոսը։ Եւ այս բանս կ'ենթադրենք Բուզանդայ յառաջաբանին վրայ յեցած.
» հոս նա կ'ըսէ. «ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ և նորուն յելից և ի
» մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի և իւրոյ
» հանգստեանն, և յառաքելասպան Սանատրկոյ արքային մինչեւ յակամայ հնա-
» զանդելն հաւատոցն, և ի նորուն հանգստեան արքային Տրդատայ զանցեալ իրացն
» զառաջնոցն զվարսն լաւացն, և որ զնոցուն հակառակ ընդդիմակաց, այն առան-
» ձին ի ձեռն այլոցն գրեցան»։

Հոս Թադէի պատմութիւնը կամ Դերուբնա կ'ակնարկուի։

«Բայց և մեք ի մերում աստ եդաք փոքր ի շատէ ի կարգի պատմութեան, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրաց կարգին։

Վասն զի է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, և է ինչ՝ որ վերջին է, իսկ որ միջին ինչ եղեւ՝ այն ի ձեռն այլոց գրեալ գրեցաւ։

Բայց զի մի ի միջի մերոյ պատմութեանս ընդհատ երեւեսցի հուն մի, նշանակեցաք. զոր օրինակ աղիւս մի կարգած ի մէջ որմոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեան»։

Ո՞ւր է Բուզանդէն գրուած այդ պատմութիւնը որ Թադէոսէն առաջ եղած ժամանակներուն վրայ կը խօսէր, քանի որ նա «միջին» կը կոչէ ի ձեռն այլոց գրուածը։

Այժմեան Բուզանդայ մէջ հետք մ'ալ չենք գտներ անոր։ Տրդատէն կը սկսի խօսիլ։

Ուրեմն բռնադատուած ենք Բուզանդայ ընծայելու Հայկական հին պատմութիւն մը (և ճիշդ ասոր համար ալ Պրոկոպիոս Բուզանդացի պատմիչը հատակտորներ կը բերէ Բուզանդէն հայկական պատմութիւն կոչելով զայն), որուն մէջ Բուզանդ կը խօսէր.

Digitized by Google

1° Հայոց ծագմանէն մինչեւ Թադէոս Առաքեալ (= Ի ինչ մեր պատմութիւն որ առաջին է)։

2° Իր այս գործին երկրորդ հատորը կը նկատէր զՂերուբնա և զԱգաթանգեղոս (= որ միջին ինչ եղեւ՝ այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ)

3° Իր գործին երրորդ հատորը կը նկատէր այժմեան Բուզանդարանը՝ զոր ձեռքերնիս ունինք։ Անոր համար ալ Երրորդ դպրութիւն վերնագրով կը սկսի։ Այն բանասէրները՝ որ զՂերուբնա համարած են Բուզանդի Ա հտ. զԱգաթանգեղոս՝ Բ, և այժմեանը՝ Գ, ուշադրութիւն չեն դարձուցած, որ ըստ Բուզանդայ՝ իր առաջին հատորին հեղինակը՝ նոյն իսկ ինքն է, միջին մասը միայն այլոց է։

փոխանակ Բուզանդայ ընծայելու կորսուած հին գրութիւն մը՝ կարող չե՞նք ըսել թէ այժմեան անտէր Կեղծ-Սեբէոսը, որ ճիշտ նոյն ծրագիրն ունի, իրեն կը պատկանի։

Գիտուի որ Կեղծ-Սեբէոսի Մարաբաս Մծուրնացին քրիստոնեայ է, և հեղինակին ապրած ժամանակ կային նաեւ անոր աշակերտները, վասն զի կ'ըսէ. «Զոր իմ գտեալ ի Միջագետս ի նորին աշակերտացն, կամեցայ ձեզ գրուցա- » կարգել»։

Կեղծ-Սեբէոսը ուրեմն ճանապարհորդած էր նաեւ ի Միջագետս. վասն զի Մար Աբասի պատմութենէն օգտուած ըլլալը ցուցնելու համար հարկ չէր սուտ մը հնարել – երեւակայական ճամբորդութիւն մը ի Միջագետս – այլ կը բաւէր ըսել թէ տեսած է անոր գիրքը։

Այս հանգամանքս նոր կռուան մ'է մեզ համար Բուզանդայ հետ Կեղծ-Սեբէոսը նոյնացնելու. որովհետեւ Բուզանդի – ինչպէս արդի բանասիրութիւնը լուսոյ չափ անուրանալի ըրաւ – հայ խմբագրողն ոչ ոք է բայց եթէ Կորիւն։ Արդ գիտենք յիրաւի նոյն իսկ Կորիւնէն, որ նա Միջագետք գնաց Ս. Մեսրոբայ ուրիշ աշակերտաց հետ. հոն շատ լաւ կրնար Մար Աբասի աշակերտաց հանդիպիլ, անոնց քով ասորական Հայոց Պատմութիւն մը գտնել։

Այս կէտս դեռ աւելի հաւանականութիւն կ'առնու երբ դիտենք որ յիրաւի Դ դարու մէջ ասորական մատենագրութիւնը կը ներկայացնէ մեզ Մար-Աբաս հեղինակ մը, աշակերտ Եփրեմի, որմէ կը յիշատակուին Մեկնութիւններ Աւետարանաց վրայ, Յոբի, և Սաղմոսաց, ինչ որ սրամիտ ասորիին արգելք մը պիտի չըլլար նաեւ իբրեւ Պատմագիր հանդիսանալու։ Տես Rubens Duval, *Littérature Syriaque*, Paris, 1900, p. 76։ Ուրեմն Կորիւն իբր աշակերտ Միջագետք գնացած ժամանակ (շուրջ 410ին) շատ լաւ կարող էր Մար Աբասի աշակերտներուն հանդիպիլ։

Եթէ աչքէ կորսնցնենք Կորեան ճանապարհորդութիւնն ի Միջագետս, այլ եւս անմեկնելի կը մնայ ասորւոց միջամտութիւնը հայկական պատմագրութեան ճիշտ սկզբնաւորած ժամանակ։ Ինչո՞ւ, օրինակ իմն, յոյնի մը պիտի չընծայուէր կեղծ Հայոց պատմութիւն մը, ինչո՞ւ Մծբինի տեղ՝ Բիւզանդիոն կամ Աղեքսանդրիա պիտի չնշանակուէին։

Բայց երբ Ե. դարը ի նկատի կ'առնունք՝ ամէն բան կը լուսաբանուի. այս ժամանակ Մծբնայ մէջ գիտական մեծ դպրոց մը կազմակերպուած էր, որուն ապագայ անդամներուն մէջ կը գտնենք Մար Աբաս Ա հայրապետ մը (536–552, հեղինակ բազմաթիւ գրուածոց, բնականաբար եկեղեցական տեսակէ (Duval, էջ 83)։

Ահա Վաղարշակայ և Մծբնայ մէջ եղած աղերսի մեկնութիւնը։

Digitized by Google

Մինչեւ Ե. դար ոչ միայն եկեղեցւոյ, այլ և արքունեաց մէջ (ինչպէս Ղազար ալ կը վկայէ) ասորերէնը ամենամեծ ազդեցութիւն ունէր։ Եւ եթէ հայ մանուկները մինչեւ Ասորիք կ'երթային ուսանելու համար, կարող չե՞նք ենթադրել թէ Հայաստանի մեծ քաղաքները լի էին ասորի վարժապետներով և քարտուղարներով։

Ասորւոց այս դիրքը Հայոց նկատմամբ՝ մեզի կը մեկնէ թէ ինչպէս Ասորւոց քով կը գտնուին Դանիէլեան հայ նշանագիրները, և ոչ Հայոց քով։ Հայ թագաւորներէն մին՝ հանգամանքներէն պիտի ներշնչուէր ապահովապէս՝ ասորի քարտուղարի մ'յանձնել որ իր ազգին ալ գիր շինէ։ Անոնք իրենց երկիրը վերադարձած ժամանակ հետերնին կրնային տանել այսպիսի աշխատութիւններ։

Ինչ որ հայ այբուբենի համար ըսուեցաւ՝ կրնայ ճիշդ Հայոց պատմութեան համար ալ ըսուիլ։ Երկար ժամանակ Հայաստան ապրող ասորի գիտնական մը, օրինակի համար, մանաւանդ հայ արքունեաց մէջ ապրող մը, կրնար յանձնարարութիւն ընդունիլ, կամ պարզապէս ուսումնական հետաքրքրութենէ շարժեալ, հետամուտ ըլլալ հայ ազգի պատմութեան մը, որ դար մը վերջ, Մծբնայ դիւանին մէջ, Հայու մը նայուածքին հանդիպէր։

Կ'ենթադրեմ, գրեթէ կը հաւատամ, թէ Ս. Մեսրոպայ աշակերտներ հայ այբուբենի հետ՝ Հայոց Պատմութիւնն ալ գտան Միջագետքի մէջ, և Կորիւն եղաւ զայն թարգմանողը։

Տ. Հրս.

252. (յէջ 233, տող 11). Ոմանք զայս համարին զպատմեալն ի գիրս զՑուդիթայ, զմարտ Նաբուգոդոնոսորայ ընդ Արփաքսատայ արքայի Մարաց, զպարտումն նորա ի դաշտին Ռագանայ, զըմբռնումն և յետոյ զսպանումն, զոր մարթ է ասել եղեալ առ պարսպօք Նինուէի։ Բայց այլք առ մեծաւ Նաբուգոդոնոսորիւ ասեն եղեալ գիրս, 40 և աւելի ամօք զկնի։ Եւ տարակոյս մեծ է աստանօր ժամանակագրաց և մեկնչաց վասն իրացս։

253. (յէջ 236, տող 9). Ոմանք աստանօր ասեն գիրս Ցուդթայ, զոր ի վերդ ծանուցաք այլոց առ Քինալտանաւ և կամ Նաբուգոդոնոսորիւ կարգել։

254. (յէջ 236, տող 21). Ընդ երկբայութեամբ համարիմ ոչ միայն զյիշատակ ծագման Անգեղ տան տոհմին, այլ և զանուանս նահապետացն, կամ լաւ եւս ասել զվերջայանգ անուանցն զՄ տառ, որ ի հին երկաթագիրս չփոթի ընդ Տ տառի. և ըստ այսմ մարթ է ընթեռնուլ Բագատ, Բագարատ և Բիւրատ, ծանօթ անուանք հաւուց Բագրատունեաց տոհմին. զորմէ ասէ իսկ Խորենացի թէ ոմանք ի Հայկայ կարծեն սերեալ զնոսա, այլ յիմարութեան բանք են այդ անհաւատարիմ մարդոց։ Նոյն ինքն և զկոչումն Անգեղ ասէ ի Տորքայ սկսեալ՝ որ էր ի ժամանակս Վաղարշակայ Ա։

255. (յէջ 238, տող 26). Խորենացի (Բ. Ը.). Եւսեբիոս, Ստրաբոն, Աբիւդենոս, առեալ ի Մեգասթենեայ. զոր ի յիշատակի անդ բանիւն Խորեն. թարգմանօքէն Մեծազօր կոչէ և մակդիր համարի Նաբուգոդոնասորայ։

256. (յէջ 240, տող 22). Նաբուգ. թագաւորէ. 604 Ն. Ք. 562։

Աժդահակ 596 – 560.

Կիւրոս Մն. 599 – 530։

Տիգրան. թգ. իբր 565 – 502.

Կրեսոս թգ. 559 – 547։

257. (յէջ 241, տող 8). Վոլնէյ և Ար. Սուուզ. համարին ածանց ի Տէր կամ ի Թագաւոր բառից, յորմէ և զtyrannus, բռնաւոր. այլ դիպողագոյն էր այսմ ի Տիրանէ ածանցիլ քան ի Տիգրանէ։

258. (յէջ 243, տող 11). Առաջին պատմական անձն Տիգրան սա ճանաչի. իսկ առաջինն ի գիրս դրոշմեալ զտանին յՆրոդոտեայ յիշեալ Տիգրանք երկու, մին (Է. ԿԲ) յաքեմենեան տոհմէ, միւս Պարսիկ լոկ անուանեալ և առաջնորդ 6 բիւր հետևակազօրու. երկոքին եւս առ Քսերքսեաւ, որոց և կեցեալք իսկ զաւուրս մանկութեան իւրեանց ի յետին ամս մերոյն Տիգրանայ. իսկ զսա ինքն յանձնէ և յանուանէ նախ առաջին յիշատակէ Քսենոփոն, և գրէ Τιγρ[illegible], որպէս և Նրոդոտ։

259. (յէջ 244, տող 30). Աստիագէս որ Աժդահակն անուն է, ի Դանիէլ (ԺԴ. Ի) եդեալ է վասն Կիաքսարայ որդւոյ նորա, որ այլուր ի նոյն գիրս Դարեհ Մար կոչի. իսկ փոխանակ Աժդահակայ՝ Արշաւիր գրի անդ ըստ մերում թարգմանութեան և Ասուերոս ըստ Լատինաց։ Զայս քաջ արժան է գիտել զի մի համարիցի թէ և Դանիէլ զԱժդահակայ ըստ Քսենոփոնի ասիցէ. «Եւ Թագաւոր Աստիագէս » յաւելաւ առ հարս իւր (խաղաղութեամբ) և առ Կիւրոս պարսիկ զթագաւո» րութիւն »։

260. (յէջ 247, տող 31). Յետ տեսնելու Հ. Ալիշանի գծած պատկերին մէջ՝ Տիգրան Ա. ը, այնպէս ինչպէս որ հայ և յունական աւանդութիւնը զայն կը ներկայացնէ, անցնինք նկատելու զայն այնպէս՝ ինչպէս որ է նորագոյն քննադատութեան առջեւ։

Դաւրագաչեան (Քննական պատմութիւն Ա, էջ 194) կը համարի թէ Խոր. ուրիշ բան ըրած չէ՝ բայց եթէ տեսնելով Հերոդոտոսի մէջ Տիգրան մը ընկեր Կիւրոսի, սորա կատարած դերը Տիգրանին ընծայած է։

Իսկ յէջ 176, նոյն քննադատը կ՚ըսէ. «Տիգրանայ և Աժդահակայ կռիւը կ՚ակնարկէ ուրիշ հին առասպել մը, այն է Թրիդայի և Աժի-դահագայ առասպելն, » զոր թերեւս հին հայ երգիչք առած էին ի Զենտաւեստայ »։

Նոյնպէս ըստ Խալաթեանցի՝ Տիգրանի առասպելը «Հերոդոտի պատմածի » ձեւով շինած մի արուեստական պատմուածք է, վասն զի Տիգրանի ու Աժդահակի » ու Հերոդոտի մէջ պատմուած Կիւրոսի և Աժդահակի առասպելների նմանու» թիւնն աչքի ընկնող է »։

Բայց աւելի իրաւունք ունէր Աբեղեան, որ Արարատ հանդէսին մէջ (1900 Նոյեմբ. էջ 548) համակարծիք կ՚ըլլար Գելցերի (Պատմութիւն Հայոց, Վիեննա, տպ. 1887, էջ 81) Տիգրան Ա. ի պատմութեան մեծագոյն մասը վերադարձնելով Տիգրան Բ. ի, և այսպէս ազգային աւանդութիւնը հաշտեցնելով՝ օտար պատմագրութեան հետ։

Այսպէս Խոր. կ՚աւանդէ թէ Տիգրան Ա. իւր Տիգրանուհի քոյրը Աժդահակայ կնութեան տուաւ, որոյ դէմ յետոյ պատերազմեցաւ։

Յիրաւի Տիգրան Բ եւս Մարաց Թագաւորին դէմ պատերազմեցաւ Եկբատանայ պարիսպներուն քով և Մարաց Թագաւորին ապարանքն այրեց, որուն նա իւր դուստրը տուած էր կնութեան (Դիոն Կասսիոս ԼԶ, 6. Իսիդոր Քարակացի, Գ. 6)։

Դիտելու է՝ որ հոս տարբերութիւն մը կայ. Խորենացի զՏիգրանուհի քոյր արքային կ՚անուանէ, օտար պատմագրութիւնը դուստր՝ որ յիրաւի փաստ ունի իրեն նոյն իսկ Տիգրանուհի անունը։

Խորենացւոյ այս խօսքը, «զընդ լծով կացեալսս՝ լծադիրս և հարկապահանջս » կացոյց », համառօտութիւն է Տիգրանայ Բ. ի աշխարհակալութեանց պատմու-



Digitized by Google

*թեան։ Տիգրանայ Արտաւազդ հայրը կը յաղթուի ի Պարթեւաց և արքայորդին պատանդի կ'երթայ։ (Յուստինոս ԽԲ, 2, 12։ Ստրաբոն ԺԱ, 14. 15։ Դարձեալ Յուստինոս ԼԸ, 3)։*

*Միհրդատ Պարթեւաց թագաւորն յանձն չառնուր զինքն արձակել և տալ «զա-
»թոռ հարցն իւրոց, բայց տալով նմա թողուլ դաշամբ 70 գաւառ կամ հովիտս։
» Հայն խոնարհեալ, բայց ոչ նուաճեալ, վկայէ յայտնապէս թէ Պարթեւք ոչ
» երբէք նուաճեցին զՀայս» (Ստրաբոն ԺԶ, 1, 19)։*

*Յետոյ Տիգրան Բ. կը յարձակի Պարթեւաց վրայ՝ վրէժն առնելու համար. կը գրաւէ 70 հովիտներէն կամ գաւառներէն զատ՝ նաեւ զՄիգդոնիա և զՈւռհայաստան (Ստրաբոն ԺԱ, 14, 15։ Յուստինոս, Խ, 1)։*

*Կովկասային ազգերը՝ Վիրք, Աղուանք, յետոյ Մարք, Կորդուացիք, Ադիաբենք, Ասորիք, անոր կը հպատակին։ (Ստրաբոն ԺԱ, 13, 2. Դիոն Կասսիոս, ԼԶ, 16, և այլն)։*

*Տիգրան Ա.ի զօրաց բազմութիւնը, գանձուց ճոխութիւնը կը համապատասխանեն ճշդիւ Տիգրանայ Բ.ի մասին աւանդուածներուն։*

*Տիգրան Ա.ի համար կ'ըսէ Խորենացի. «զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւն և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրեւ նուաճեալ հնազանդէր և զսահման մերոյ բնակութեանս ընդարձակեալ ի հինսն մեր հասուցանէ յեզերս ծայրից բնակութեանց։ Տիգրան Բ. յիրաւի երիցս տիրեց Կապադովկիոյ, Մաժաքայ, և ուրիշ 12 քաղաքաց բնակիչները փոխադրեց։ Ապպիանոս, Միհրդատ, 1, 7։ — Ստրաբոն. ԺԱ, 14, 15, ԺԲ, 2, 9։ — Դիոն Կասսիոս, ԼԶ, 37։ — Պլուտարքոս, Պոմպէոս, 28)։*

*Տիգրան Ա. կ'անուանի «խաղաղութեան և շինութեան բերող, իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ»։ Յիրաւի Ասորիք երբէք այնքան խաղաղութիւն չվայելեցին, կ'ըսէ Ապպիանոս ասորի պատմագիրը, որքան Տիգրանայ 25ամեայ տիրապետութեան տակ։*

*Ի՞նչ պատճառաւ սակայն Տիգրան Ա.ի համար հասկցած է Խորենացի ինչ որ երգիչները Տիգրան Բ.ի համար կ'ըսէին։ — Վասն զի, ըստ Խորենացւոյ պատմական դրութեան, Տիգրան Բ. արշակունի մ'է. ի՛նչպէս նա պիտի մեկնէր ուրեմն Տիգրան Բ.ի հայասիրութիւնը որ, ինչպէս տեսանք, Պարթեւաց ոխերիմ թշնամին էր։ Այս հանգամանքէն ստիպուած՝ նա հայկազն Տիգրան Ա.ի վրայ փոխադրած է երգչաց աւանդութիւնները։*

*Ի հարկէ, ինչպէս Քսենոփոն ալ կը վկայէ, Կիւրոսի ժամանակ կար իշխան մը Հայոց՝ Տիգրան անուամբ։ Բայց ոսկեգանգուր, աղեբեկ ծամերով, մեղոյշ նայուածքով Տիգրանը, — գեղեցկութեան, բարութեան, ոյժի այդ գաղափարականացումը, – ուրիշ ոչ ոք է ապահովապէս բայց եթէ Տիգրան Բ. երեք աշխարհներու յաղթականը, «Ասիոյ հզօրագոյն թագաւորը» (ինչպէս վստահաբար կը կոչէր զայն Կիկերոն), մեծագոյն հայկազնը՝ որուն ծառաները մէկ մէկ թագաւոր էին։*

Ծ. Հրտ*.

* *Մանօթութիւնք Հրատարակչի ինչպէս նաեւ Յառաջաբան մատենիս գրուած են ի*

Հ. ԿԱՐԱՊԵՏ ՏԷՐ – ՍԱՀԱԿԵԱՆ

Digitized by Google

# ՑԱՆԿ



Digitized by Google